# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1394 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ՅՈՒՆՈՒԱՐ 1999 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. ١٩٩٩ ٢١ يناير الخميس — ١٣٩٤ عدد رقم


## ԱՐԴԱՐ ԱԿՆԿԱԼՈՒԹԻՒՆ ՉՈՐՐՈՐԴ ԻՇԽԱՆՈՒԹԵՆԷՆ

### «Շատեր մամուլը կը կարծեն այն վայրը, ուր պէտք է փառաբանուին արժանիներն ու անարժանները հաւասարապէս»

*Ժողովրդավարական վարչաձեւի մը առաջին պայմանը հետեւեալն է.- երեք իշխանութիւններու անկախ, անջատ և ինքնիշխան գործունէութիւն. այդ երեք իշխանութիւններն են՝ օրէնսդիր (խորհրդարան), գործադիր (նախարարութիւններ) և դատական (դատախազութիւն). Նշեալ երեք միաւորները կը ներկայացնեն ժողովրդավարական հանրապետութեան մը վաւերական այն կառոյցները, որոնք կը գործեն իրարմէ անջատ՝ յանուն հանրապետութեան քաղաքական - ընկերային կեանքին յառաջդիմութեան ու բարգաւաճման, հետեւաբար՝ յանուն արդար ու ժողովրդավար վարչակարգի:*

*Յիշեալ երեք իշխանութիւններու կողքին, արդէն աւանդութիւն դարձած է աւելցնել չորրորդ մը՝ «չորրորդ իշխանութիւն» յորջորջումով, որ կը վերաբերի ազատ ու համարձակ մամուլին, լրատուական ցանցին և լսատեսողական մարզին: Չորրորդ իշխանութիւնը կու գայ դառնալու լրացուցիչ գործօն ժողովրդավարական վարչակարգի մը, որ կ'ապրի առողջ և անաղարտ մթնոլորտի մէջ: Այստեղ կը պարզուի չորրորդ իշխանութեան հեղինակութիւնն ու ազդեցիկ բնոյթը, որ իր հզօրութեամբ կրնայ ներազդել հանրային կարծիքին, պատրաստել միտքեր, դատապարտել ու խայտառակել անպիտաններն ու աւազակները, դրուատել արժանիները, վարկազրկել կեղծ դափնիներով յոխորտացող մակաբոյծները և վերջապէս խօսիլ ու արտայայտուիլ ճշմարտութեան ու արդարութեան մասին: Մամուլը պէտք է շնչէ անարատ օդ, որպէսզի ժողովուրդին ներշնչէ վստահութիւն, յոյս և յանդգնութիւն:*

*Որեւէ երկրի, ժողովուրդի թէ հաւաքականութեան մէջ, մամուլին վերապահուած է անփոխարինելի դեր. անհնար է պատկերացնել կեանքը առանց մամուլի. ան միայն լրագիր ու տեղեկատուական հաստատութիւն չէ. ան նաեւ կողմնորոշիչ կողմնացոյց է ուղեկորոյսներուն և շուարածներուն. ան նաեւ ամպիոն է ճշմարտութեան և համարձակախօսութեան. միայն դրուատիքներ և պատուատիտղոսներ բաշխող խօսափող չէ, այլ նաեւ խարազան է անզգամները ցուցնող, հացկատակները քօղազերծող, թալանչիները մերկացնող: Ահա թէ ինչու, ան դարձած է լիիրաւ ժողովրդավարութեան չորրորդ ազդակը, որ կրնայ տապալել գահին վրայ բազմած դրածոները, պատռել պատմուճանները նորելուկ և կեղծ իշխանիկներուն, և իր համարձակութեամբ ճիշդին ըսել ճիշդ և սխալին՝ սխալ:*

*Լիբանանի, ինչպէս նաեւ այլ ժողովրդավարական երկիրներու մէջ ընթացիկ երեւոյթ է մամուլին դէմ իշխանաւորներուն հալածանքները, որովհետեւ՝ անոնք անհանգիստ կը զգան ճշմարտախօս մամուլէն, կը դժգոհին իրենց պախարակելի վարքագիծը բացայայտող մամուլէն և դատական հետապնդումները կ'ըլլան ընթացիկ, դժգոհութեան արտայայտութիւնները՝ սովորական: Մինչ, այն երկիրներուն մէջ, ուր մամուլը միայն կը գովերգէ իշխանութիւնները, ամէն օր և յարատեւօրէն կը ներբողէ օրուան թագաւորը, այդ մամուլն ու երկիրը կը դառնան անհրապոյր, ճապաղ և կեանքը՝ միապաղաղ: Մամուլը թերացած կ'ըլլայ իր առաքելութեան մէջ:*

*Իսկ հայ կեանքին մէջ, շատեր մամուլը կը կարծեն այն վայրը, ուր պէտք է փառաբանուին արժանիներն ու անարժանները հաւասարապէս. մարդիկ մամուլէն կը սպասեն գովասանք միայն, ըստ իրենց, մամուլը պէտք է կոյր ձեւանայ, երբ ազգային հաստատութեան մը գումարները շոգիացած են, պէտք է անիրազեկ ըլլայ երբ կծծիներ իրենք զիրենք կը ներկայացնեն ազգային բարերարներ, պէտք է անտեղեակ ըլլայ, որ փտած ուղեղներով մարդիկ ղեկավար պաշտօններ կը զբաղեցնեն, պէտք է չիմանայ որ շնորհազուրկ մարդիկ գրիչ կը շարժեն և մտաւորականի տիտղոս կ'որոնեն և այլն: Մինչդեռ՝ արդար ակնկալութիւնը չորրորդ իշխանութենէն այլ է- ըլլալ խիզախ, համարձակախօս և մտրակող, այլապէս՝ խնկարկութիւնը քծնանքի կը վերածուի: Իսկ քծնանքը յոռի նկարագիր չէ՞:*

*Մեր ազգային կեանքին մէջ չորրորդ իշխանութիւնը կ'արդարացնէ՞ ինքզինք, արդարասէրներ չորրորդ իշխանութենէն իրենց արդար ակնկալութիւնները կը ստանա՞ն, հայոց չորրորդ իշխանութիւնը մտրակ ունի՞ արդեօք. կը կասկածիմ, որովհետեւ՝ մեր խմբագրատան մէջ եւս մտրակ չկայ, խարազան գործածող չկայ...: Հայ կեանքին մէջ խարազան գործածողներուն տեղ չկայ...:*

«ԱՐԱՐԱՏ» **ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

**ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍ**

## ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐԸ

*Հայաստանի Արտաքին Գործոց նախարար Վարդան Օսկանեան չաբթուայ ընթացքին կարճ ժամանակով գտնուեցաւ Լոս Անճելըս: Այս առթիւ նախարար Օսկանեան առանձին հանդիպումներ ունեցաւ գաղութի կարգ մը կազմակերպութիւններուն հետ:*

*Չորեքշաբթի, Յունուար 6-ին Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան Վարիչ Մարմինի ներկայացուցիչներ՝ ընկերներ Գրիգոր Խոտանեան, Տոքթ. Յարութիւն Սաղրեան, Թովմաս Եթերեան եւ իրաւաբան Ռուբէն Աֆչարեան «Պէվըրլի Հիլզ» հիւրանոցէն ներս այցելեցին նախարարին:*

*Հանդիպման ընթացքին կարծիքներու փոխանակութիւն տեղի ունեցաւ յառաջիկայ Սեպտեմբերին Երեւանի մէջ կայանալիք Հայաստան-Սփիւռք Համազգային Ժողովի կազմակերպչական հարցերուն շուրջ:*

↳ 4

## Ս.Դ. ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՈՂՋՈՅՆԻ ԵՒ ՄԱՂԹԱՆՔԻ ԽՕՍՔԸ 1999 ՏԱՐՈՒԱՅ ՍԵՄԻՆ

Մարդկութիւնը տագնապալի տարի մը եւս բոլորեց: Եկող տարին ալ յուսադրիչ չէ: Մերձ-Արեւելքի՝ մասնաւորաբար Լիբանանի, Սուրիոյ, Պաղեստինի, Իրաքի ժողովուրդները որոնք երկար տարիներէ ի վեր կը ձգտին խաղաղութեան եւ յանձն առած են բազմաթիւ զոհողութիւններ եւ զիջումներ ոչ միայն չյաջողեցան իրագործել շրջանին մէջ համախոհութեան եզրեր գտնել Իսրայէլի հետ, այլ, ընդհակառակը անոնք՝ հզօր պետութեան մը նեցուկը վայելող մենատիրական ու զաւթիչ նպատակներ հետապնդող Իսրայէլի քշնամական դիրքորոշումներուն պատճառաւ կը շարունակեն տառապիլ ամէնօրեայ ռմբակոծումներէ, սպանութիւններէ, քանդումներէ եւ գրաւեալ հողատարածքներու մէջ ճնշումներէ: Կովկասի երկիրները որոնք շարունակութիւնն են Մերձ-Արեւելքի կ՚ապրին մղձաւանջային օրեր:

Հայաստան եւ Արցախ կը մնան շրջափակուած եւ ենթակայ արտաքին ճնշումներու:

Միացեալ Ազգերու Կազմակերպութիւնը եւ Ապահովութեան Խորհուրդը պարպուած են իրենց միսիայի սկզբունքէն եւ ենթակայ են անմրցակից հզօր պետութեան մը՝ ԱՄՆ-ի մենատիրութեան եւ տիքքադին:

Հ. Հանրապետութեան, ԼՂՀ-ի եւ սփիւռքի մէջ ապրող հայ ժողովուրդը, որուն անբաժան մասն է Ս.Դ.Հնչակեան Կուսակցութիւնը իր աշխարհացրիւ բազմահազար անդամներով եւ ենթակազմակերպութիւններով, կը բոլորեն վտանգաւոր ժամանակաշրջան: Անհրաժեշտ է զգաստանալ եւ համազգային կերպով կազմակերպել դիմակայելու համար օր ըստ օրէ զարգացող վտանգները: Ներկայիս ոչ մէկ լուրջ հարց չի բաժներ հայ կազմակերպութիւնները, եկեղեցիները:

Ուստի անհրաժեշտ է.

Ա.-Լուրջ ուսումնասիրուած աշխատանքով կազմակերպել Սփիւռք-Հայրենիք փոխ-յարաբերութիւններն ու համագործակցութիւնը բոլոր մարզերու մէջ:

Բ.-Սփիւռքի քաղաքական կազմակերպութեանց եւ համայնքային ու եկեղեցական ղեկավարութեանց միջեւ իրար-հասկացողութեան նախաձեռնութիւններով հասնիլ համագործակցութեան: 1975-էն-1990 այդ ազգօգուտ փորձը յաջողեցաւ Լիբանանի պատերազմի ընթացքին:

Հայ ժողովուրդը համազգային ուժերու լարումով միայն կրնայ դիմակայել վտանգները եւ տէր կանգնիլ իր ազատ անկախ հայրենիքին եւ Արցախին:

Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը կը շնորհաւորէ իր բոլոր ընկեր-ընկերուհիներուն, մամլոյ խմբագրական կազմերուն, կրթական հաստատութիւններու անձնակազմերուն, մարզական, մշակութային, բարեսիրական միութեանց վարչութիւններուն ու ակտիւ անդամներուն, դարմանատուներու բժիշկներուն եւ աշխատողներուն Նոր Տարին եւ Սուրբ Ծնունդը, թելադրելով բոլորին ամէն տեղ աշխատիլ իրագործելու համար համազգային համագործակցութիւն ի շահ հայրենիքին, եւ հայ ժողովուրդին:

**Ս.Դ. ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ**
**ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

**ՀԱՅԱՍՏԱՆ**

**ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆ.-**

## «1999-Ը ՅԱՏԿԱՆՇԱԿԱՆ ՏԱՐԻ Է ԼԻՆԵԼՈՒ ՆՈՐ ԱՇԽԱՐՀԱԿԱՐԳԻ ՁԵՒԱՒՈՐՄԱՆ ԱՌՈՒՄՈՎ» ԿԸ ՆԱԽԱՏԵՍՈՒԻ ՓԵՏՐՈՒԱՐԻՆ ԵԳԻՊՏՈՍ ԱՅՑԵԼԵԼ

*1998-ին Հայաստանի արտաքին քաղաքականութեան բնագաւառում ձեռք են բերուել բաւականին դրական արդիւնքներ: «Արմենփրեսի» մամուլի սրահում Յունուարի 13-ին կազմակերպուած հանդիպման ժամանակ այս մասին ասաց ՀՀ արտգործնախարար Վարդան Օսկանեանը:*

*Լեռնային Ղարաբաղի խնդրի կարգաւորման հարցով ԵԱՀԿ Մինսկի խմբի ներկայացրած վերջին առաջարկը նախարարը գնահատեց որպէս դրական տեղաշարժ: Նշելով, որ աւելի բարենպաստ առաջարկ երբեւիցէ չէր եղել, պրն. Օսկանեանը հիմնաւորեց, որ փաստաթուղթը պարունակում է Հայաստանի մօտեցումներին եւ քաղաքականութեանը համահունչ մօտեցումներ եւ չի պարունակում նախապայմաններ, ինչը հակամարտութեան կողմերին թոյլ է տալիս ազատօրէն բանակցել եւ փորձել համաձայնութեան հասնել ԼՂ կարգավիճակի շուրջ:*

*Նախարարի խօսքերով, դրական տեղաշարժեր կան նաեւ տարածաշրջանային քաղաքականութեան առումով: Մասնաւորապէս, պրն. Օսկանեանը դրական գնահատեց Եւրամիութեան ԹՐԱՍԵԿԱ ծրագրին Հայաստանի մասնակցութիւնը: Նախարարը դրական տեղաշարժ համարեց Պաքուի խորհրդաժողովում Հայաստանի ներկայացրած առաջարկութիւնները գործի դնելու փորձերը, նշելով, որ Եւրամիութեան բանագնացը փորձում է հետամուտ լինել, որպէսզի ե՛ւ Նախիջեւանով անցնող, ե՛ւ Թուրքիայի հետ երկաթգծերը բացուեն, ինչն աւելի կը մեծացնի ԹՐԱՍԵԿԱ ծրագրի իրականացման հնարաւորութիւնը:*

*Տարածաշրջանային համագործակցութեան մէջ երկրորդ դրական տեղաշարժը, ըստ Վարդան Օսկանեանի, անցած տարեվերջին տրանսպորտի բնագաւառում Հայաստան-Վրաստան-Պուլկարիա եռակողմ*

↳ 3

## ՌՈՊԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆ ՊԻՏԻ ՄԱՍՆԱԿՑԻ ՏԱՒՈՍԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԺՈՂՈՎԻՆ

Հայաստանի նախագահի մամլոյ բանբեր Վահէ Գաբրիէլեան «Նոյեան Տապան» գործակալութեան յայտնեց որ Յունուարի վերջաւորութեան նախագահ Քոչարեան Տաւոս պիտի մեկնի՝ մասնակցելու հոն կայանալիք Միջազգային Տնտեսական տարեկան համաժողովին:

Միւս կողմէ, 12 Յունուարին Մոսկուայի մէջ սարքուած մամլոյ ասուլիսի մը ընթացքին, Ռուսաստանի եւ Ֆրանսայի արտաքին նախարարները յայտարարեցին որ այլեւս եկած է ժամանակը որպէսզի կողմերը նստին բանակցութեան սեղանի շուրջ եւ անմիջականօրէն սկսին քննարկել հակամարտութեան լուծման յստակ հարցեր:

Արպէյճանական աղբիւրներն ալ հաղորդեցին թէ անհաւանական չէ որ Մինսքեան Խմբակի շրջագծով կողմերու բանակցութիւններու հերթական փուլի արդիւնքները ճշդուին այն հանդիպումի ընթացքին որ հաւանաբար պիտի կայանայ Քոչարեան ու Ալիեւի միջեւ, 28 Յունուարէն մինչեւ 3 Փետրուար Տաւոսի մէջ գումարելի Համաշխարհային Տնտեսական համաժողովի օրերուն:

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԴԵՍՊԱՆԸ ՀԵՐՔԵՑ Տ-300 ՀՐԹԻՌՆԵՐՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՏԵՂԱԴՐՈՒԱԾ ԸԼԼԱԼԸ

*Հայաստանի մօտ Ռուսաստանի Դաշնութեան արտակարգ եւ լիազօր դեսպան Անաթոլի Դրիւկով հերքեց Ատրպէյճանի նախագահի պետական խորհրդական Վաֆա Գուլուզատէի այն յայտարարութիւնը, թէ Մոսկուա Տ-300 տիպի հրթիռներ տեղակայած է Հայաստանի տարածքին: Յունուար 12-ին, պատասխանելով լրագրողներու հարցերուն, ան ըսաւ, որ Հայաստանի մէջ Տ-300-ի տեղադրում չէ կատարուած, բայց ռուսական կողմը Հայաստանի տարածքին գտնուող իր զօրամասերու սպառազինութիւնները արդիականացնելու ծրագիրներ ունի:*

*Թրքական «Զաման» թերթին տուած հարցազրոյցին մէջ Վ. Գուլուզատէ ըսած էր, թէ մինչ թուրքերը կը պայքարէին ռուսական նորագոյն հրթիռները Կիպրոսի մէջ տեղակայելու դէմ, Մոսկուան այդ նոյն հրթիռները տեղադրած է Հայաստանի հողին վրայ, եւ որ ռուսերը Հայաստան բերած են ինքնաթիռներ, որոնք նման են Ֆ-16 եւ ՄԻԿ-29 նորագոյն կործանիչներուն: «Ռուսերը գանոնք մեր քիթին տակ տեղադրած են, իսկ դուք բացարձակապէս անտարբեր էք: Իսկական թիրախը ոչ թէ փոքրիկ Ատրպէյճանն է, այլ Թուրքիան է: Ես բացէիբաց կը յայտարարեմ, որ խօսքը Ռուսաստանի եւ Թուրքիոյ միջեւ պաղ*

↳ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՎԱԽՃԱՆՈՒԵՑ ԿՈՄՊՈԶԻՏՈՐ ԷՏԿԱՐ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

*Հայ երաժշտական մշակոյթը ծանր կորուստ կրեց:*

*Կեանքից հեռացաւ մեր մշակոյթի երախտաւոր, մեծահամբաւ կոմպոզիտոր, ԽՍՀՄ ժողովրդական արտիստ, ԽՍՀՄ եւ Հայաստանի պետական մրցանակների դափնեկիր, փրոֆեսոր Էտկար Յովհաննիսեանը:*

*Կոմպոզիտորի լաւագոյն ստեղծագործութիւնները՝ «Սասունցի Դաւիթ» օփերա-բալետը, «Ճանապարհորդութիւն դէպի Էրզրում» օփերան, «Մարմար», «Երկնագոյն նոկտիւրն», «Հաւերժական կուռք», «Անտունի» պալետները, օրատորիաները, սիմֆոնիաները, կամերագործիքային ստեղծագործութիւնները հարստացրել են հայ երաժշտական գանձարանը:*

*Համաժողովրդական սէր են վայելում նրա «Էրեբունի-Երեւան», «Սարդարապատ», «Արփա-Սեւան» երգերը:*

*Երաժշտական հասարակական եռանդուն գործիչ Էտկար Յովհաննիսեանը պատասխանատու պաշտօններ է վարել Հայաստանի կոմպոզիտորների միութիւնում, հեռուստառադիոյում, օփերային թատրոնում, ֆիլհարմոնիայում. եղել է Երեւանի կոնսերվատորիայի ռեկտոր, Հայաստանի մանկական ֆոնդի նախագահ:*

*Արուեստագէտ ընկերները, երաժշտական ողջ հասարակայնութիւնը գլուխ է խոնարհում մեծատաղանդ կոմպոզիտորի, հայասէր քաղաքացու յիշատակին:*

## Վ. ՏԷՐ-ՂԵՒՈՆԴԵԱՆ ԿԱՅՑԵԼԷ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂ

### «Հիմնադրամը խոստումներ չի տալիս, հիմնադրամը գործ է անում»

Դեկտեմբեր 25-էն 27-ի միջեւ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութիւն այցելեց «Հայաստան» Համահայկական Հիմնադրամի ծրագիրներու պատասխանատուներու աշխատանքային խումբը՝ գործադիր վարչութեան տնօրէն Վահան Տէր-Ղեւոնդեանի գլխաւորութեամբ:

Հիմնադրամի գործադիր տնօրէնը Ստեփանակերտի մէջ հանդիպումներ ունեցած է ԼՂՀ նախագահ Արկադի Ղուկասեանի եւ վարչապետ Ժիրայր Պօղոսեանի հետ, որոնց ընթացքին քննարկուած են ԼՂՀ-ի մէջ իրականացուելիք առաջնահերթ ծրագիրները:

Կարեւոր նկատուած են «Գորիս-Ստեփանակերտ» մայրուղիի «Շուշի-Ստեփանակերտ» հատուածի շինարարութիւնը սկսելու, ԼՂՀ շրջանները իրար կապող «Հարաւ-Հիւսիս» աւտոմայրուղիի շինարարութեան համար սփիւռքի տարածքին միջոցառումներ կազմակերպելու, Ստեփանակերտի ֆիզմաթ գիշերօթիկ դպրոցի համալիրը շահագործման յանձնելու եւ աւերուած գիւղերու վերականգնման ծրագիրները:

Դեկտեմբեր 26-ին աշխատանքային խումբը այցելած է Մարտակերտի շրջան՝ ծանօթանալու շրջանի բնակավայրերէն ներս իրականացուող եւ իրականացուելիք ծրագիրներուն. Ակնաբերդ գիւղին մէջ նախատեսուած է կառուցել ջրատար, որու համար անհրաժեշտ գումարի մէկ մասը յատկացուցած է Գերմանիոյ հայ համայնքը, արժանթինահայ խումբ մը բարերարներ միջոցներ կը յատկացնեն Հաթերք գիւղի բնակելի տուներու վերականգնման համար, արժանթինահայ նոյն խումբի միջոցով անցած տարի Հիմնադրամը վերականգնած էր Վաղուհաս գիւղը, իսկ ներկայիս անհատ բարերար Յովսէփ Թախթայի միջոցներով կը կառուցուի նոյն գիւղի դպրոցը:

Դեկտեմբեր 27-ին Հիմնադրամի գործադիր վարչութեան տնօրէն Վահան Տէր-Ղեւոնդեան ԼՂՀ զանգուածային լրատուութեան միջոցներու ներկայացուցիչներուն ներկայացուցած է ԼՂՀ-ի մէջ իրականացուող եւ նախատեսուող ծրագիրները:

ԱՐՄԷՆՓՐԵՍԻ սեփական թղթակցի այն հարցին, թէ Ամանորէն առաջ ինչ՞ կը խոստանայ Հիմնադրամը, Վահան Տէր-Ղեւոնդեան պատասխանեց. «Հիմնադրամը խոստումներ չի տալիս, հիմնադրամը գործ է անում»:

## ՀՀ Քաղաքացիական Օրէնսգիրքը Ուժի Մէջ մտաւ

### Փոխադարձ Քննադատութիւններն Ու Խոցումները Կը Շարունակուին

*Յունուարի 1-ից ուժի մէջ մտաւ ՀՀ քաղաքացիական նոր օրէնսգիրքը: Նախկինի ծաւալը 4 անգամ գերազանցող, 12 բաժին, 81 գլուխ եւ ընդհանուր առմամբ, 1293 յօդուած պարունակող օրէնսգիրքը Հայաստանի անմենահաստատիտոր ու ծաւալուն օրէնքն է: Բայց կարեւորը ոչ թէ ծաւալն է, այլ նշանակութիւնը: Օրէնսգրքի հեղինակի՝ ԱԺ իրաւաբանական ծառայութեան ղեկավար Վլադիմիր Նազարեանի ասելով, դա մեր երկրի տնտեսական սահմանադրութիւնն է: Այս օրերին նա գտնւում է ԱՄՆ-ում: Մեկնելուց առաջ, ԱՐՄԵՆՓՐԵՍԻ թղթակցի հետ զրոյցում Վ. Նազարեանը յայտնել էր, որ գնում է մասնակցելու ՀՀ քաղաքացիական օրէնսգրքի շնորհանդէսին: Իսկ մեզ մօտ ոչ միայն շնորհանդէս չանցկացուեց, այլեւ նոր օրէնսգիրքն արժանացաւ Երեւանի Պետական Համալսարանի քաղաքացիական իրաւունքի ամպիոնի դասախօսների սուր քննադատութեանը:*

*Նախկին Գերագոյն դատարանի նախագահ, այժմ ԵՊՀ-ի դասախօս Տարիէլ Բարսեղեանի զեկուցման հիման վրայ, իրաւաբանական ֆակուլտէտի խորհուրդը որոշում է ընդունել դիմել ՀՀ նախագահին, Ազգային Ժողովին եւ կառավարութեանը, որ կասեցուի օրէնսգրքի կիրառութիւնը:*

*Տ. Բարսեղեանի գնահատմամբ, օրէնսգիրքը կազմել են առեւտրային իրավունքից գաղափար չունեցող մարդիկ, չհասկանալով, որ նոր*

➪ 4

ՖՐԱՆՍԱ

## ՎԱՐՈՒԺԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ ԽՆԴԻՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ Է,- ՀԱՒԱՍՏՈՒՄ Է ՀՀ ԱՐՏԳՈՐԾՆԱԽԱՐԱՐԸ

*1983 թ. Օռլիի օդանաւակայանում «Թուրքական աւիաուղիներ» ընկերութեան գրասենեակը պայթեցնելու համար Ֆրանսիայում ցմահ բանտարկութեան դատապարտուած Վարուժան Կարապետեանի խնդիրը Հայաստանի ուշադրութեան կենտրոնում է: Այս մասին լրագրողների հետ Յունուարի 13-ի հանդիպման ժամանակ յայտնեց ՀՀ արտգործնախարար Վարդան Օսկանեանը: Նա տեղեկացրեց, որ Հայաստանը պատրաստակամութիւն է յայտնել քաղբանտարկեալին ՀՀ քաղաքացիութիւն շնորհել դատապարտումից ազատուելուն պէս, ինչը ֆրանսիական կողմն ընդունել է ի գիտութիւն:*

ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԳՐԱՆՑՈՒԱԾ ԵՆ 148,779 ԱՇԽԱՏԱՆՔ ՓՆՏՌՈՂ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐ

*1999թ.-ի Յունուարի 1-ի դրութեամբ հանրապետութիւնում գրանցուած են 148,779 աշխատանք փնտռող քաղաքացիներ, որոնցից 133,779 -ը գործազուրկներ են: Ըստ աշխատանքի եւ զբաղուածութեան հանրապետական ծառայութեան լրատուական բաժնի, դա 23%-ով պակաս է նախորդ տարուայ նոյն ժամանակամիջոցի համեմատութեամբ եւ 1,5%-ով աւել անցեալ ամսուայ ցուցանիշից: Գործազուրկի կարգավիճակ ունեցող քաղաքացիներից 20,599-ը նպաստառու են, իսկ 13,594-ը ստանում են դրամական օգնութիւն:*



## Տնօրհնէքը՝ Տարին Բոլոր

*Արարատեան Հայրապետական թեմի նախաձեռնութեամբ այս տարուանից վերապրեցւում է Տնօրհնէքի հնաւանդ կարգը: Սուրբ Ծննդեան տօնից յետոյ, թեմի հոգեւորականաց դասը այցելում է տներ, տալիս Փրկչի Ծննդեան Աւետիսը եւ կատարում Տնօրհնէքի կարգ: Արդէն թեմի եկեղեցիներ են այցելում կամ զանգահարում հաւատացեալները, պայմանաւորւում կարգի վերաբերեալ:*

*Արարատեան Հայրապետական թեմի քահանայից ժողովում Ամենայն Հայոց կաթողիկոսական ընդհանուր փոխանորդ Գարեգին Արք. Ներսիսեանը յայտարարեց, որ Տնօրհնէքը չի սահմանափակւում ժամանակով այն կարելի է կատարել տարին բոլոր, մինչդեռ մամուլում յուր է սպրդել, թէ այդ կարգը պիտի կատարուի մինչեւ Յունուարի 31-ը: Ս.Ծննդեան Տնօրհնէքին յաջորդում է Ս. Յարութեան Տնօրհնէքը: Թեմը պատրաստ է այցելելու իւրաքանչիւր տուն:*

## ՅՈՒՆԱԿԱՆ ՃԷԴ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ ԿԸ ԽՈՍՏԱՆԱՅ 64 ՄԻԼԻՈՆ ՏՈԼԱՐԻ ՅԱՒԵԼԵԱԼ ՆԵՐԴՐՈՒՄ ԿԱՏԱՐԵԼ «ԱՐՄԷՆԹԷԼ»Ի ՄԷՋ

Տնտեսական եւ Կառուցուածքային Բարեփոխումներու նախարար Վահրամ Աւանէսեան անցեալ շաբաթավերջին յայտարարեց, որ յունական ՃԷԴ ընկերութիւնը (որ «Արմէնթէլ»ի 90 առ հարիւրի տէրն է) որոշած է նոր ծրագրով մը 264 միլիոն տոլար ներդնել «Արմէնթէլ»ի մէջ, յառաջիկայ 5 տարիներու ընթացքին: Այս գումարը 64 միլիոն տոլարով աւելի է, քան ինչ որ



## ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ՀԱՅՏԱՐ ԱԼԻԵՒ ԴԱՐՄԱՆՈՒՄԻ ՆՊԱՏԱԿԱՒ ԱՆԳԱՐԱՅԻ ՄԷՋ

Ատրպէյճանի նախագահ Հայտար Ալիյեւ, որ անցեալ Ուրբաթ ծանրապէս անհանգստացած էր ցնցղատապի եւ շնչառութեան ճամբաներու լուրջ բորբոքումի հետեւանքով, Տէմիրէլի հրաւէրով, առողջական քննութենէ մը անցնելու նպատակով, երէկ Անգարա եկաւ: Ալիյեւ փոխադրուեցաւ Անգարայի Կիւլհանէ զինուորական հիւանդանոցը: Ալիյեւ, Անգարայի օդակայանին մէջ դիմաւորուեցաւ Տէմիրէլի կողմէ, ուր երկու Նախագահները մամլոյ ասուլիս մը սարքեցին:

ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Աղեքսանդրիոյ Պատկ. Թեմական Ժողովի 1998 տարուան Բ. նիստը տեղի ունեցաւ Շաբաթ 26 Դեկտեմբեր 1998-ին կ.ե. ժամը 4-ին, նախագահութեամբ Թեմիս Բարեխնամ Առաջնորդ Գերաշնորհ Տէր Զաւէն Սրբազան Արք. Չինչինեանի եւ ներկայութեամբ 14 երեսփոխաններու:*

*Նիստը սկսաւ Գերաշնորհ Սրբազան Հօր Տէրունական աղօթքով, ապա կարդացուեցաւ եւ վաւերացուեցաւ նախորդ նիստի ատենագրութիւնը:*

*Բ. Ատենական գործողութիւններն էին, ուր ստացուած էր մէկ նամակ մը Պատ. Քաղաքական ժողովէն:*

*Գ. Ընտրութիւն 1999-ի տարեշրջանի Պատ. Թեմական Ժողովի դիւանի անդամներուն:*

*Միաձայնութեամբ վերընտրուեցաւ նախորդ տարեշրջանի դիւանի կազմը՝*

*Ատենապետ- Պր. Լեւոն Գաղթացեան*

*Փոխ-Ատենապետ- Պր. Անդրանիկ Միքճեան*

*Ատենադպիր- Պր. Մանուկ Գայփաքճեան*

*Դ. Վերատեսութեան ենթարկուեցան կարգ մը կենսաթոշակներ:*

*Ե. Որոշուեցաւ որ 1999 տարեշրջանի ընթացքին՝ Պր. Հայկազ Տէտէեան դարձեալ ստանձնէ ընդհանուր հաշուեքննիչի աշխատանքը:*

*Զ. Որոշուեցաւ կազմել յանձնախումբ մը վերատեսութեան ենթարկելու Պօղոսեան Ազգային վարժարանի երկրորդական բաժինը:*

*Է. Պատ. Քաղաքական ժողովի կողմէ զեկոյց տրուեցաւ Առաջնորդարանի շէնքի նորոգութիւններուն մասին եւ ի լոյս տրուած տեղեկութիւններուն, որոշուեցաւ ծախսերու պիւտճէի բարձրացում մը կատարել:*

*Ը. Պատ. Քաղաքական ժողովի կողմէ ներկայացուեցաւ ընդհանուր սակերու փոփոխութեան առաջարկ մը: Համաձայնուեցաւ եւ որոշուեցաւ զայն կը ներկայացնել Թեմական Համագումար ժողովին: Որոշուեցաւ Թեմական Համագումար նիստ թուական առաջարկել 26 Փետրուար 1999:*

*Թ. 1997 տարուան բարոյական եւ նիւթական գործունէութեան յանձնախումբի տեղեկագիրը կարդաց Պր. Մկրտիչ Խանճեան, որուն իբրեւ արդիւնք ժողովը սպրտողերձ համարեց 1997 տարուան Պատ. Քաղաքական ժողովը:*

*Ժ. Քիփէյեան կալուածի ծախելու հարց: Որոշուեցաւ այս հարցը Թեմական Համագումարի օրակարգի հարց դարձնել:*

*Օրակարգի հարցերը վերջացած ըլլալով, ժամը 6.30-ին Սրբազան Հօր աղօթքով ժողովը փակուեցաւ:*

ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ՊԱՀԱՆՋՈՒՄ ԵՆ ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻ ՀՐԱԺԱՐԱԿԱՆԸ

ԵՐԵՒԱՆ, 13 ՅՈՒՆՈՒԱՐԻ, ՆՈՅԵԱՆ ՏԱՊԱՆ: «Հայաստանի նախագահը պիղծ է եւ անօրինական: Խորհրդարանը ցանկացած պահի պատրաստ է փոխել իր գոյնը: Մենք ոչ մէկին չենք վստահում»,- Յունուարի 13-ին ՀՀ կառավարութեան շէնքի մօտ անցկացուած ցոյցերի ժամանակ այսպիսի յայտարարութիւններով հանդէս եկաւ ՀԿԿ Երեւանի քաղաքային կոմիտէի առաջին քարտուղար Եուրի Մանուկեանը: Ըստ նրա, «այնպիսի ֆաշիզմ եւ վանդալիզմ, ինչպիսին ներկայիս իշխանութիւնների օրոք է, հայ ժողովուրդը չի տեսել անգամ Օսմանեան կայսրութեան ժամանակ: Կոմունիստական կուսակցութիւնը ցանկանում է վերականգնել իր իշխանութիւնը, եւ դա կարելի է անել ժողովրդի օգնութեամբ»:

ՀԿԿ Երեւանի քաղկոմի կազմակերպած ցոյցերի մասնակիցների թւում էին կուսակցութեան շրջկոմների քարտուղարներ, ՀԿԿ խորհրդարանական խմբակցութեան ներկայացուցիչներ, Հայաստանի վեթերանների խորհրդի ներկայացուցիչներ: Ցոյցերի մասնակիցների հիմնական պահանջներն էին՝ նուազեցնել էլեկտրաէներգիայի սակագները, ետ վերցնել իրաւասութիւնը «Արմենթելից», երկրի նախագահի, վարչապետի եւ կառավարութեան հրաժարականները: «Նոյեան Տապանի» թղթակցի հետ հարցազրոյցում ՀԿԿ մամլոյ քարտուղար Ռոպերթ Աիարոնեանը յայտարարեց, որ Հայաստանի կոմունիստները վճռականօրէն են տրամադրուած եւ «իրենց պահանջներում մինչեւ վերջ կանգնած կը մնան»:

Ի պատասխան կառավարութեան շէնքի մօտ հաւաքուածների ելոյթների, ՀՀ վարչապետի առաջին խորհրդականը ցանկութիւն յայտնեց հանդիպել ցոյցերի մի խումբ մասնակիցների հետ, որին հետեւեց մերժում՝ վարչապետի հետ հանդիպման պահանջով, ընդ որում՝ կառավարութեան շէնքի մօտ: Միեւնոյն ժամանակ Յ. Մանուկեանը յայտարարեց, որ վարչապետի անվտանգութիւնը չի կարող երաշխաւորուած լինել: Նա ցոյցի մասնակիցներին կոչ արեց ամէն օր հաւաքուել կառավարութեան շէնքի մօտ միեւնոյն պահանջներով:

## ՆԱԽԻՋԵՒԱՆԸ «ՊԵՏՈՒԹԻՒՆ Է ՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ»

*Ատրպէյճանի խորհրդարանը նախորդ տարուայ վերջին օրերին վաւերացրել է Նախիջեւանի սահմանադրութիւնը, որտեղ չեշտւում է, թէ մարզը «ինքնավար պետութիւն է» Ատրպէյճանի սահմաններում, իսկ նրա գլխաւոր ղեկավարը Նախիջեւանի խորհրդարանն է: Որոշումը պէտք է նաեւ ստորագրուի նախագահ Հէյտար Ալիեւի կողմից: Որոշ ատրպէյճանցի պատգամաւորներ դէմ էին «պետութիւն պետութեան մէջ» ձեւակերպմանը, որովհետեւ այն կարող է անախորժ նախադէպ ստեղծել, սակայն Ալիեւի համակիրների ազդեցութեան տակ գտնուող խորհրդարանի մեծամասնութիւնը կողմ է քուէարկել այդ որոշմանը:*

## ՊԱՔՈՒ Է ԺԱՄԱՆԵԼ ԱՄՆ ՆԱԽԿԻՆ ՊԵՏՔԱՐՏՈՒՂԱՐ ՀԵՆՐԻ ՔԻՍԻՆՃԸՐԸ

*Ատրպէյճանի նախագահի հրաւէրով Պաքու է ժամանել ԱՄՆ նախկին պետքարտուղար եւ ազգային անվտանգութեան հարցերի գծով նախագահի օգնական, ակնառու քաղաքական գործիչ Հենրի Քիսինճըրը:*

*Օդանաւակայանում կարճ հարցազրոյցի ժամանակ նա յայտարարել է, որ բաւականաչափ իրազեկ է ղարաբաղեան հակամարտութեանը, սակայն դեռ չի կարող համապարփակ գնահատական տալ: Նա կարծում է, որ բոլոր երկրների շահերից է բխում այն արագօրէն լուծելը: Այն հարցին, թէ երբ կարելի է սպասել 907-րդ ուղղման վերացման, Հ. Քիսինճըրը նշել է, որ միայն ուրախ կը լինի, եթէ դա կատարուի այս տարի:*

*Դիւանագէտն ասել է, որ իր այցը ուղղուած է ԱՄՆ եւ Ատրպէյճանի միջեւ երկկողմ կապերի ամրապնդմանը: Ըստ նրա, ԱՄՆ մեծ նշանակութիւն է տալիս նախկին ԽՍՀՄ պետութիւնների տնտեսական բարգաւաճմանը եւ մտադիր է այսուհետ յարաբերութիւններ զարգացնել Ատրպէյճանի՝ որպէս ռազմավարական գործընկերոջ հետ:*

# ԳՈՀԱՐ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ «ՄԻՍՍ ԱՊՀ 1999»

Խորհրդային Միութեան փլուզումէն ետք առաջին անգամ ըլլալով, Մոսկուայի մէջ կազմակերպուեցաւ «Միսս ԱՊՀ 1999» մրցումը, որուն ընթացքին գեղուհի հռչակուեցաւ Հայաստանցի Գոհար Յարութիւնեան:

Երեւանի Սենեկային Երաժշտութեան թատրոնի ղեկավար, քաղաքապետարանի մշակոյթի վարչութեան պետ՝ Արա Երնջակեան, Գոհար Յարութիւնեան, եւ 1996-ի «Հայաստանի Գեղուհի» Կարինէ Խաչատրեան Երեւանի մէջ մամլոյ ասուլիս մը սարքեցին: Ա. Երնջակեան լրագրողներուն յայտնեց հետեւեալը. «Երեք տարի առաջ, երբ Սենեկային թատրոնը Հայաստանի մէջ առաջին անգամ ըլլալով որոշեց կազմակերպել գեղուհիներու մրցում մը, շատեր քամահրանքով դիմաւորեցին այդ գաղափարը, իսկ այսօր արդիւնքը ակնյայտ է՝ Մոսկուայի մէջ սարքուած «Միսս ԱՊՀ 1999» մրցումին գեղուհի հռչակուեցաւ Գոհար Յարութիւնեան»: Ան աւելցուց նաեւ որ եթէ մրցումը խիստ քաղաքականացուած բնոյթ չունենար, Հայաստանը ներկայացնող երեք գեղուհիներն ալ պիտի մասնակցէին եզրափակիչ փուլին: Երնջակեան նշեց որ Գոհար Յարութիւնեան 19 տարեկան է եւ կ'ուսանի Երեւանի Պետական Մանկավարժական Ենթիթիւի կերպարուեստի ճիւղին մէջ, որպէս երրորդ դասարանի աշակերտուհի:

Գոհար Յարութիւնեան

Յայտնենք, որ «Միսս ԱՊՀ 1999» հռչակուած Գոհար Յարութիւնեանին յանձնուած է 25 հազար տոլար դրամական պարգեւ: Ան իրաւունք ստացած է նաեւ իր ուսումը շարունակելու աշխարհի որեւէ մէկ քաղաքի մէջ: Հայաստանցի գեղուհին ըսաւ որ ինք որոշած է իրեն յանձնուած դրամական պարգեւին մէկ մասը տրամադրել որբանոցներու, սակայն չէ որոշած տակաւին թէ ո՛ւր պիտի շարունակէ իր ուսումը: Հայաստանցի գեղուհին պիտի մասնակցի նաեւ Պէյրութի մէջ կայանալիք «Միսս Եւրոպա 1999» մրցումին:

**ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՀԻՒՊԱՏՈՍԱՐԱՆԻ ԶՕՐԱԿՑԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿ

*Ուրբաթ, 22 Յունուար 1999, երեկոյեան ժամը 8.00-էն սկսեալ, տեղի ունեցաւ համակրական-զօրակցական ձեռնարկ-ճաշկերոյթ մը, նախաձեռնութեամբ հայկական աւանդական երեք կուսակցութեանց՝ Ս.Դ.Հ.Կ.-ի, Հ.Յ.Դ.-ի, եւ Ռ.Ա.Կ.-ի Արեւմտեան Ամերիկայի ղեկավար մարմիններու, ի նպաստ Հայաստանի Հանրապետութեան Լոս Անճելըսի Հիւպատոսութեան:*

*Ձեռնարկը տեղի ունեցաւ Կլէնտէյլի «TriLussa» ճաշարանին մէջ, ի ներկայութեան Աւագ Հիւպատոս Տէր եւ Տիկ. Արմէն Մելքոնեանի, Հիւպատոս Էդուարդ Թառանեանի, Հիւպատոսարանի անձնակազմի, ինչպէս նաեւ երեք կուսակցութեանց պատասխանատուներուն եւ անոնց հիւրերուն:*

*Երեկոն անցաւ խիստ հաճելի եւ տաք մթնոլորտի մէջ: Այն տպաւորութիւնը ստացուեցաւ որ հայ ազգային երեք կուսակցութիւնները բաւական ճամբայ կտրած էին իրարու հետ, եթէ ոչ սկզբունքային, քաղաքական հարցերու շուրջ, գոնէ ընկերական եւ բարեկամական հանդիպումներու ընթացքին, եւ այս երեւոյթը նպաստաւոր ակնկալութիւններ կը ստեղծէր ապագայ գործակցութեան համար:*

*Օրուայ հանդիսավարն էր Ընկ. Տոքթ. Յարութիւն Սաղրեան, որ տուաւ նաեւ Ս.Դ.Հ.Կ. Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմնի խօսքը սոյն նախաձեռնութեան առիթով: Հ.Յ.Դաշնակցութեան կողմէ ելոյթ ունեցաւ իրաւաբան Արսէն Դանիէլեան, եւ Ռ.Ա.Կուսակցութեան կողմէ, Փայլակ Ահարոնեան:*

*Ելոյթ ունեցողները իրենց գոհունակութիւնը յայտնեցին գաղութէն ներս ստեղծուած միջկուսակցական համատեղ գործակցութեան եւ անոր բերելիք օգուտներուն մեր քաղաքական կեանքէն ներս: Գոհունակութեամբ յիշուեցաւ նաեւ որ սոյն գործակցութիւնը տեղի կ'ունենար Հայաստանի Հանրապետութեան Հիւպատոսարանի հովանաւորութեամբ:*

*Խօսք առաւ նաեւ Աւագ Հիւպատոս Արմէն Մելքոնեան, եւ որոշ մանրամասնութիւններով տեղեկութիւններ տուաւ 1999 թուականին տեղի ունենալիք գաղութային ձեռնարկներու մասին, որոնք միջկուսակցական գործակցութիւն պիտի վայելեն:*

*Իր ելոյթի աւարտին, Պր. Մելքոնեան երեք կուսակցութիւններու ատենապետերուն յանձնեց յուշատախտակներ՝ Հայաստանի Հանրապետութեան գինանշանով:*

*Հայաստանի Հանրապետութեան Հիւպատոսարանի ի նպաստ զօրակցական այս հանդիպումը, իբրեւ առաջինը իր տեսակին մէջ, յաջողութիւն մը նկատուեցաւ ներկայ ղեկավար շրջանակին կողմէ, եւ յոյս յայտնուեցաւ՝ որ ապագային եւս տեղի կ'ունենան նման նախաձեռնութիւններ, ի նպաստ Հայրենիքի, Արցախի եւ Հայաստանի Հանրապետութեան Հիւպատոսարանի:*

## ԱՄԵՐԻԿԱՑԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾԻՉՆԵՐ ԿԸ ՓՈՐՁԵՆ ԱՋԱԿՑԵԼ ԵԱՀԿ ՄԻՆՍԿԻ ԽՄԲԻ ԳՈՐԾԸՆԹԱՑԻՆ

*Ղարաբաղեան հակամարտութեան երկու կողմերն էլ չատ լրջօրէն են տրամադրուած խնդրին խաղաղ լուծում գտնելու ուղղութեամբ եւ միակարծիք են, որ խնդրի լուծման միակ ուղին դիւանագիտութիւնն ու բանակցութիւններն են: Այսպիսին էր, ՀՀ ԱԳՆ մամլոյ խօսնակ Արա Պապեանի գնահատմամբ, ազդեցիկ ամերիկացի հասարակական-քաղաքական գործիչներ եւ իրազեկ քաղաքագէտներ Էդուարդ Ճէրճեանի եւ Փիթըր Ռոզընբլատի տպաւորութիւնը Հայաստան եւ Ատրպէյճան կատարած մասնաւոր այցի արդիւնքում:*

*Ինչպէս Յունուարի 25-ին լրագրողներին տեղեկացրեց պրն. Ճէրճեանը ՀՀ ԱԳ նախարար Վարդան Օսկանեանի հետ հանդիպման աւարտին, իրենք միայն մէկ նպատակ են հետապնդում՝ փորձել ոչ փորմալ ուղիներով աջակցել ԵԱՀԿ Մինսկի խմբի առաքելութեանը, մասնաւորապէս, կարգաւորմանն ուղղուած բանակցութիւնների վերսկսման եւ հակամարտութեան կարգաւորմանը լուծում գտնելու գործում:*

*Պարոնայք Ճէրճեանը եւ Ռոզընբլատը Ատրպէյճանում հանդիպումներ են ունեցել Ատրպէյճանի արտգործնախարար Թոֆիկ Զուլֆուգարովի, Ատրպէյճանի նախագահի խորհրդական Վաֆա Գուլուզադէի եւ տեղեկատուութեան նախարարի հետ. Հայաստանում նախատեսւում են նրանց հանդիպումները ՀՀ նախագահի, ԱԺ նախագահի,* 3

# ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ԱՆՑԵԱԼ ՏԱՐԻ ԱՄՆ ՄԵԿՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԴԵՍՊԱՆԱՏՈՒՆ Է ԴԻՄԵԼ 14,000 ՔԱՂԱՔԱՑԻ, ԱՅՍ ՏԱՐԻ ՆՐԱՆՑ ԹԻՒԸ ԿԸ ՀԱՍՆԻ 20,000-Ի

*Վերջին ամիսների ընթացքում ԱՄՆ մեկնել ցանկացողների թիւը կրկնապատկուել է, ցաւօք դեսպանատան հիւպատոսական բաժինը ստեղծուել է աւելի քիչ թիւով մարդկանց սպասարկելու համար: Յունուարի 14-ին ՀՀ-ում ԱՄՆ դեսպանատանը կայացած մամլոյ ասուլիսում այս մասին ասաց Հայաստանում ԱՄՆ արտակարգ եւ լիազօր դեսպան Մայքլ Լեմոնն, աւելացնելով, որ ՀՀ քաղաքացիները հարցազրոյցն անցնելու համար ստիպուած են լինում ութ շաբաթ սպասել:*

*Նախորդ տարուայ ընթացքում ԱՄՆ մեկնելու համար հիւպատոսական ծառայութիւն է դիմել 14,000 քաղաքացի: Ամենամեծ աճը նկատուել է տարուայ վերջին երեք ամիսներին: Նրանց 50 տոկոսը դիմում է զբօսաշրջիկութեան վիզայի համար, իսկ տարիքային յարաբերութիւնը տարբեր է՝ նորածնից մինչեւ մեծահասակը: Այս մասին, նոյն ասուլիսի ընթացքում, ասաց հիւպատոսական բաժնի ղեկավար Տակլաս Բերրին: Նրա խօսքերով, վերջերս իրենց էր դիմել եւ ելքի վիզա ստացել 101 տարեկան քաղաքացի: 1999-ին դիմողների թիւը կը հասնի 20,000-ի եւ ՀՀ քաղաքացիներին օգնելու նպատակով իրենք որոշակի փոփոխութիւններ են նախատեսել, չեն փոխուի սակայն չափանիշները:*

*-Հիւպատոսական բաժնում, իհարկէ կան չլուկներ կոռուպցիայի՝ մեծ գումարներով ելքի վիզա տրամադրելու մասին, սակայն պատասխանատուն ես եմ եւ երաշխաւորում եմ, որ նման բան թոյլ չի տրուելու,- պատասխանելով լրագրողներից մէկի հարցին ասաց Տ. Բերրին:*

## ՍԴՀԿ-Ն ՈՒ «ՕՐԻՆԱՑ ԵՐԿԻՐԸ» ՄԻԱՒՈՐՈՒՄ ԿԱԶՄԵԼՈՒ ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԸ ԱՐԻՆ

«Օրինաց Երկիր» կուսակցութեան գրասենեակում Յունուարի 14-ին տեղի ունեցաւ այդ եւ ՍԴ Հնչակեան կուսակցութիւնների ներկայացուցիչների հանդիպումը: Ինչպէս նշեց «Օրինաց Երկիր»-ի ղեկավար Արթուր Բաղդասարեանը, հանդիպման պայմանաւորուածութիւնը ՍԴՀԿ ատենապետ Եռնեստ Սողոմոնեանի հետ վաղուց է ձեռք բերուել, առաւել եւս, որ Դեկտեմբերին կայացած «Օրինաց Երկիր»-ի համագումարում որոշուել է քաղաքական խորհրդատւութիւններ սկսել տարբեր կուսակցութիւնների հետ, որոնց ընթացքում, մասնաւորապէս, պէտք է քննարկուեն նախընտրական դաշինքներ կազմելու հարցեր:

Երկու կուսակցութիւնների ներկայացուցիչները հանդիպման ժամանակ առաջ քաշեցին հնարաւոր համագործակցութեան ուղղութիւնները, ինչպէս սոցիալական, գիտութեան զարգացման ոլորտներում, այնպէս էլ ազատ խորհրդարանական ընտրութիւններ անցկացնելու եւ այլ հարցերում: Առաջարկուեց նաեւ համատեղ յայտարարութեամբ հանդէս գալ Արմէնթելի թանկացումների խնդրով:

Համաձայնութիւն ձեռք բերուեց միջկուսակցական համագործակցութեան խումբ ստեղծելու մասին, որն առաջիկայ օրերին կը 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՋՈՒՐԸ ԿՐՆԱՅ ԴԱՌՆԱԼ ՌԱԶՄԱՎԱՐԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆ ՈՒՆԵՑՈՂ ԳՈՐԾՕՆ

Արաբական աշխարհի երկրներին հայկական ջուր մատակարարելու եւ այն հում նաֆթի հետ փոխանակելու ծրագիրն արժանացել է ՀՀ նախագահին կից Քաղաքական խորհրդի հաւանութեանը, որն այն ներկայացրել է ՀՀ նախագահին: Յայտնելով այս մասին «ՀՀ արտաքին տնտեսական քաղաքականութեան նոր ռազմավարութեան դոկտրինայի հայեցակարգի» համահեղինակ Հայաստանի Ռամկավար Ազատական Կուսակցութեան վարչութեան անդամ Յարութիւն Առաքելեանը նշեց, որ Հանրապետութեան ղեկավարը նոյնպէս հետաքրքրութիւն է ցուցաբերել ծրագրի նկատմամբ եւ այն ներկայացուել է կառավարութեան ուշադրութեանը: Մօտ օրերս կը սկսուեն քննարկումները Հայեցակարգի համահեղինակների եւ արտադրական ենթակառուցուածքների նախարար Գագիկ Մարտիրոսեանի միջեւ:

Հեղինակները գտնում են, որ տարածաշրջանի ջրապաշարներով հարուստ երկրների համար ջուրը լրջագոյն քաղաքական ու ռազմավարական խաղաքարտ եւ տնտեսական շահի աղբիւր է հանդիսանում: Միջին Արեւելքի արաբական աշխարհի երկրները տառապում են ջրի սակաւութիւնից, իսկ այն ունեցող հարեւանները օգտւում են այդ հանգամանքից: Մասնաւորապէս Թուրքիան ամբարտակներ է կառուցում Եփրատի եւ դէպի յիշեալ երկրները հոսող այլ գետերի վրայ, իսկ Իրանը եւ Քաթարը վաճառում են ջուրը, ընդ որում բաւականին շահաբեր յարաբերակցութեամբ. 1 լիթր ջուրը՝ 1 լիթր հում նաֆթի դիմաց: Ծրագրի հեղինակների կարծիքով, քանի որ Հայաստանը տնօրինում է խմելու մաքուր եւ ուլդրամաքուր ջրերի խոշոր պաշարների, կարող է դառնալ Իրան-Հայաստան-Ռուսաստան եռեակի նախաձեռնողը:

Հեղինակները կարեւորում են այդ ալեանսի կայացումը ոչ միայն տնտեսական շահով, քանզի, ըստ հաշուարկների, 6 մլրդ. տոլարի ներդրումը ոչ միայն արագօրէն կը փոխհատուցուի եւ կը դառնայ մշտական շահոյթի աղբիւր, այլեւ քաղաքական լուրջ դիվիդենտներով: Յ.Առաքելեանի հաւաստմամբ ԱՄՆ-Թուրքիա-Իսրայէլ-Ատրպէյճան ալեանսը, որը միաւորուած է նաֆթային կոնսորցիումների հեռանկարներով եւ դրանց զուգահեռ խորացնում են նաեւ ռազմական համագործակցութիւնը, ջանում է ՏՐԱՍԵԿԱ ծրագրում նուազեցնել Հայաստանի դերը, իսկ Իրանին ու Ռուսաստանին դուրս բողնել ծրագրից:

## ՃԱՆԱՉԵՆՔ ՀԱՅՐԵՆԻՔԸ

*ՀՀ դեսպանատան մէջ կայացած հանդիպումներու չարք մըն է, նուիրուած հայ մշակոյթին եւ պատմութեան, եգիպտահայ համայնքի դպրոցական տարիքի երեխաներուն համար:*

*Մանկավարժներու կողմէ ծրագրուած եւ պատրաստուած այս ձեռնարկը, կը ձգտի զանազան միջոցներով, մասնակցող երեխաներուն գիտելիքներ հրամցնել, հաւաքական աշխատանքի վարժեցնել եւ հայրենանպաստ գործունէութեան մղել:*

*Ըստ տարիքի եւ հասունութեան երեխաները բաժնուած պիտի ըլլան խումբերու եւ մասնաւոր ուշադրութիւն պիտի դարձուի հայերէն խօսելու եւ գրելու դժուարութիւն ունեցողներուն:*

*Ձեռնարկը կազմուած է գլխաւոր նիւթերու չուրջ հաւաքուած ծրարներէ որոնք չաբաթական հանդիպումներուն ընթացքին պիտի բացուին եւ քննարկուին:*

*Օրինակի համար ՏՈՒՆ գաղափարին տակ հաւաքուած են Հայաստան, դեսպանատուն, գրատուն, գերդաստան, աղօթատուն եւ այլն ծրարները:*

*Ուրբաթ առաւօտները յարմարագոյն ժամանակը նկատելով որոշած ենք ժամը 11-էն սկսեալ, դեսպանատան կից փողոցին վրայ գտնուող մուտքէն ընդունիլ երեխաները: Հանդիպման տեւողութիւնը՝ երկու ժամ է:*

### ՄՕՏԵՑՈՒՄԸ

### ԿԱՐԴԱԼՈՎ

*Մասնակցողներուն կարողութիւնն ու հետաքրքրութիւնը նկատի առնելով կարդալ եւ կարդացնել տալ արձակ հատուածներ, (կամ բանաստեղծութիւններ) եւ օգտագործել նաեւ օտար լեզուով հայութեան մասին գրութիւններ:*

### ԳՐԵԼՈՎ

*Փափաքողներուն գրաճանաչման եւ գրավարժութեան վարժութիւններ: Նաեւ գրական փորձեր:*

### ՎԵՐԼՈՒԾԵԼՈՎ

*Գիտելիքներն ու տեղեկութիւնները, քննել եւ առաջնորդուած վիճաբանութիւններ ստեղծել, նաեւ՝ հարցերուն լուծումներ առաջարկել:*

### ԱՅՑԵԼԵԼՈՎ

*Գիտելիքները տեսական ծիրէն դուրս բերելու նպատակով եւ հայրենիքի հետ շփման մէջ մտնելու համար, ամրան արձակուրդին դէպի Հայաստան ճամբորդութիւն կազմակերպել:*

### ԹԱՏՐՈՆՈՎ ԵՒ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԵԼՈՎ

*Բեմական աշխատանքով զարգացնել ձիրքերն ու ձեռային աշխատանքի յծել, մշակել խմբային հասկացողութիւնն ու համագործակցութիւնը:*

### 14-17 ՏԱՐԵԿԱՆ ՄԱՍՆԱԿՑՈՂՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ ՅԱՏՈՒԿ ԾՐԱԳԻՐ ՆԱԽԱՏԵՍՈՒԱԾ Է

*Իւրաքանչիւր նիւթ պիտի ունենայ ամփոփուած իր պրակը եւ նախքան նոր նիւթի անցնիլը, մասնակցողները պիտի հրատարակեն իրենց աշխատանքի արդիւնքը:*

*Ձեռնարկը անվճար է եւ բաց՝ բոլոր ցանկացողներուն անխտի'ր:*

### ՅԱՒԵԼԵԱԼ ԵՒ ԼՐԱՑՈՒՑԻՉ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ

*- Զանգել ՀՀ դեսպանութիւնը 3424157 Հինգշաբթի օրերը ժամը 11-էն 14:*
*- Կապի մէջ մտնել Պրն. Թովմաս Զաքարեանին հետ*
*E-mail : tomzakar@intouch.com*

### ՆԱԽԱՏԵՍՈՒԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

*Ա. մաս «ՏՈՒՆ» գաղափարը*
*1-Հայաստանի դեսպանատուն, 29 Յունուար, 5 եւ 12 Փետրուար*
*2- Գրադարան, գրատուն 19 եւ 26 Փետրուար, 5 եւ 12 Մարտ*
*3- Ընտանիք, գերդաստան 19 եւ 26 Մարտ, 2 Ապրիլ*
*4- Տուն կառոյցը 9, 16 եւ 23 Ապրիլ*
*5- Փոխաբերական իմաստով 30 Ապրիլ եւ 7 Մայիս*

ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

# ՊԵՏՐՈՍ ԱԴԱՄԵԱՆ

**(1849 – 1891)**

**Մեծ Դերասանին Ծննդեան 150-ամեակին Առթիւ**

*Բանախօսութիւնը կատարուած է թերթիս աշխատակից՝ Դր. Դաւիթ Յ. Էվերեկլեանի կողմէ, Մոնթրէալի Պոլսահայ Միութեան «Հինդլեան» Գրադարանին մէջ, 2 Դեկտ. 1998-ին:*

*ԽՄԲ.*

Պետրոս Ադամեան ծնած է 1849-ին, Պոլսոյ Ղալաթիա թաղամասը, Պոսֆորի գեղածիծաղ ափերուն:

Հայրը՝ Հերոնիմոս Ադամեան ղալաթիացի ունեւորներէն էր: Պետրոս չատ փոքր էր երբ կորսնցուց մայրը՝ Փեփրոնէ Վասիլեանը եւ Հօր կողմէ յանձնուեցաւ Հօրաքրոջ խնամքին որ բարի կին մըն էր: Տարիներ յետոյ Ադամեան միշտ երախտագիտութեամբ յիշեց իր Հօրաքոյրը որ Հարազատ մօր նման գուրգուրած, խնամած, դաստիարակած էր Պետրոսը, որ յաճախեց Մխիթարեան վրժ. իբրեւ ուսուցիչ ունենալով նշանաւոր Հայր Վարդան Մելիքսեթեանը:

Պետրոս մէկն էր ամենարնդունակ աշակերտներէն, սակայն անհանգիստ բնաւորութեան տէր եւ անկարգապահ էր, բայց իր ուշիմութեան եւ ընդունակութեան պատճառաւ կը ներէին իրեն:

Ամէն երեկոյ, Պետրոս Իրենիններուն եւ Հարեւաններուն ներկայութեան կ'արտասանէր օրուան սորված դասերը. կը կրկնէր սրամիտ խօսքերով եւ շարժուձեւերով: Ան այդ տարիքին արդէն կը յայտնաբերէր դերասանական ընդունակութիւն:

Պետրոսի Հայրը Հերոնիմոս, փափաքելով որդին արհեստի մէջ վարժեցնել, զինք ուղարկեց ժամագործի մօտ: Բայց անուշադրութեան եւ ցրուածութեան պատճառաւ վարպետը վռնտեց զինք: Ոսկերչութիւնը եւս չհրապուրեց զինքը եւ Պետրոս չուտով լքեց այդ գործը: Հայրը զինք դրաւ վաճառականի մը մօտ: Ան Հաշուետետրակներու մէջ տեսաւ դիմագիծեր, գծագրուած նկարներ, փոխանակ Թուանշաններու:

Հայրը ճարահատ Համոզուեցաւ որ անօգուտ էր ստիպելը եւ օր մը բսաւ. «քարը գլխուդ. ես, այ մեղաւոր չեմ. ուզածդ րրէ'»: Որմէ յետոյ Ադամեան իր ամբողջ էութեամբ նուիրուեցաւ բեմին:

Այժմ նախքան բեմական կեանքին մանրամասնութեանց տեղեկանալու, յիշենք թէ Պետրոս Ադամեան եղած էր թէ բանաստեղծ եւ թէ նկարիչ:

– Անդրադառնալով Ադամեանի նկարչութեան, իր կենսագրական էջերուն մէջ կը կարդանք հետեւեալը. «Շատ կանուխ իր տղայութենէն, բոլոր հոգւով անձնատուր եղած էր նկարչութեան: Այս ասպարէզը իրեն համար երկրորդական եւ հաճելի արուեստ մըն էր: Ան՝ իր հիւանդութեան տարիներուն կարծես աւելի ժամանակ կը գտնէր նկարելու: Ինք անձամբ այսպէս կ'արտայայտուի.- Կարօտ էի. «Օֆելիա» մը գծեցի: Տարի վաճառեցի որ հաց կարենամ գնել...»

Այսու հանդերձ կրնամ պարծենալ որ քիչ աշխատութեամբ. մեծապէս զարգացուցած էր իր այդ արուեստը: Կը պատմուի թէ, Թէոդոսիոյ մէջ իր «Օթելլօ»ն ներկայացուցած օրերուն, մօտէն ճանչցած էր Այվազովսքին եւ գծած անոր դիմանկարը: Եւ այդ առթիւ նշանաւոր նկարիչը հաւնած եւ գրկած, համբուրած էր Ադամեանը:

Ադամեան Այվազովսքիին հանդիպած է նաեւ Մոսկուայի մէջ, 1883-ին: Այդ առթիւ խանդավառուած իր տաղանդաւոր հայրենակցին տաղանդով՝ Այվազովսքի ճեպանկար մը գծած եւ ընծայագրած է Ադամեանին: Իբրեւ պատասխան այդ սիրալիր վերաբերումին՝ Ադամեան արտասանած է բանաստեղծութիւն մը: Իր նամակներէն մէկուն մէջ, խօսելով այդ մասին, Ադամեան ներքին ցաւով կը նշէ.- «Իմս անցաւ, նրանը մնաց»:

1956-ին Ադամեանի մահուան 65-ամեակին առիթով Հայաստանի Գիտութիւններու Ակադեմիան հրատարակած է անոր «Երկերը», Թարգմանութիւններն ու յօդուածները: Թանգարանին մէջ կը պահուին Ադամեանի տասնեակ գունանկարները, կրաֆիքական աշխատանքները, գրչանկարներն ու ճեպանկարները: Ուշագրաւ են՝ Ադամեանի Համլէթր – Օֆելիան – Քօրրատօն – Արքայ Լիրր – Դիմանկարները եւ այլ գործեր: Վիեննայի Մխիթարեան հայրերու Թանգարանին մէջ կը գտնուի նաեւ Աստուածածնի պատկեր մը՝ կիսատ մնացած:

– Ադամեանի բանաստեղծական գործերուն մասին կենսագիրները բսած են.- «Իր ոճը մի նոր երեւոյթ է մեր գրականութեան մէջ: Ու հասարակ սուր է իր գրիչը եւ բուռն իր թափն ընդդէմ անիրաւաց եւ անողորմից ատտատապեալս ուր այնչափ հեզ եւ ներողամիտ էր առ ինքն, եղած գրկանաց դէմ»:

Այժմ վերադառնանք Ադամեանի բեմական գործունէութեան: 1863 – 1864-ի օրերուն Պոլսոյ մէջ գոյութիւն ունէր Սրապիոն Հեքիմեանի Թատերախումբը: Ադամեան հազիւ 14-15 տարեկան մտաւ այդ խումբին մէջ մարզուելու համար: Տեղի կ'ունենային շաբաթը 2-3 անգամ ներկայացումներ. ականաւոր դերասաններն էին... Յ. Վարդովեան, Ֆասուլեաճեան, Աճէմեան, Պենլեան, Թրեան, Արուսեակ:

1870-ին Ֆասուլեաճեան շրջապտոյտի ելլելու համար կը կազմէ խումբ մը, կը հրաւիրէ օրուան յայտնի դերասաններուն հետ նաեւ Պետրոս Ադամեանը: Կը մեկնին Նոր – Նախիջեւան, ուր տեղի կ'ունենան չաբաթը երկու ներկայացումներ բայց տխուր վախճան մը կ'ունենան եւ խումբը կը ցրուի: Ֆասուլեաճեան Աճէմեանի հետ կը հեռանան: Մնացեալները կը մնան անօթի: Ադամեան երկու ընկերներով կը սկսի ներկարարութեամբ զբաղուիլ, Պոլիս վերադառնալու դրամ վաստկելու համար:

1879-ին Թիֆլիսի «Թատերական Կոմիտէ»ն Պոլիս ուղարկեց «Պէպոյ»ի անզուգական դերակատար՝ Գէորգ Չմշկեանը, կարող դերասաններ հրաւիրելու համար Թիֆլիս: Ադամեանը առաջին թեկնածուն հանդիսացաւ: Եւ Թիֆլիսէն սկսաւ Ադամեանի վերելքը: Հայ եւ ռուս թերթերը խանդավառ գնահատական տողեր նուիրեցին:

Ադամեան սկսաւ Շէյքսփիրի անմահ գործերը ներկայացնել եւ 1879-ին Կովկասի զանազան քաղաքներուն մէջ կատարած իր նոր շրջապտոյտները մեծապէս սատարեցին իր համբաւին տարածման, եւ Ադամեան հրաւէր ստացաւ Մոսկուայէն, Քիեվէն, Օտեսայէն, Փեթերսպուրկէն, ուր ներկայացուց աշխարհի մեծանուն Թատերագիրներու դժուարագոյն գործերը, ինչպէս «Դերասան Քին»ը, «Ուրիէլ Ակոստա», «Մասկարաթ», «Լիոնի Սուրհանդակը» եւլն.:

Արուեստի դժուարահաճ քննադատներ՝ մեծապէս գովեցին սոյն գործերը: Օտեսայի Գիտնականներու եւ գրագէտներու ընկերութիւնը, ինչպէս նաեւ Գեղարուեստի ռուսական ընկերութիւնը՝ Պետրոս Ադամեանը ընտրեցին Պատուոյ Անդամ:

➪ 3

# ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ԿԱՍԵՑՈՒԵԼ Է ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԱՏՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ԼՐՏԵՍՈՒԹԵԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ՓՈՐՁԸ

ՀՀ ներքին գործոց եւ Ազգային Անվտանգութեան հասարակայնութեան ու մամուլի հետ կապերի ծառայութիւնը գործակալութեանն է տրամադրել հետեւեալ յայտարարութիւնը.

«Դեռեւս 1997 թուականի Ապրիլի 7-ին «Թուրան» գործակալութիւնը տարածել էր Ատրպէյճանի նախագահ Հ. Ալիեւի այն յայտարարութիւնը, թէ «Ատրպէյճանը հարեւան պետութիւնների նկատմամբ հետախուզական գործունէութիւն չի իրականացնում»:

Ատրպէյճանի նախագահի յայտարարութեան ֆոնի վրայ բերում ենք Հայաստանի տարածքում Ատրպէյճանի յատուկ ծառայութիւնների կողմից լրտեսական գործունէութիւն իրականացնելու հերթական փորձի կասեցման փաստ:

1998թ. իր նախաձեռնութեամբ Ատրպէյճանում էր յայտնուել ՀՀ պաշտպանութեան նախարարութեան նախկին զինծառայող Անդրէյ Բալաբեկի Երեմեանը, որի «խնամակալութիւնը» պատրաստակամութեամբ ստանձնել էին Ատրպէյճանի Հանրապետութեան յատուկ ծառայութիւնները:

Հենց նոյն թուականին, Ատրպէյճանի յատուկ ծառայութիւնների կոնկրետ հետախուզական առաջադրանքով գտնուելով Երեւանում, Ա.Բ.Երեմեանը ժամանակին կալանուել է եւ նրա նկատմամբ քրէական գործ է յարուցուել:

Քրէական գործի դատավարութեան ընթացքում հաստատուել է Ատրպէյճանի յատուկ ծառայութիւնների հետ Ա.Բ.Երեմեանի համագործակցութեան փաստը:

Դրա հետ մէկտեղ նա, հոգեկան հիւանդութեան պատճառով, դատարանի որոշմամբ ազատուել է քրէական պատասխանատուութիւնից եւ հարկադիր բուժման ուղարկուել հոգեբուժարան:

Թէ Ատրպէյճանի յատուկ ծառայութիւնները ինչ կարող էին ➪ 3

## ԱՐԱ ԱՅՎԱԶԵԱՆԸ ՆՇԱՆԱԿՈՒԵԼ Է ԱՐԺԱՆԹԻՆՈՒՄ ՀՀ-Ի ԴԵՍՊԱՆ

ՀՀ Նախագահ Ռոբերդ Քոչարեանի Փետրուարի 4-ի հրամանագրով Արա Այվազեանը նշանակուել է Արժանթինի Հանրապետութիւնում Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան: Այս մասին յայտնում են ՀՀ նախագահի մամլոյ գրասենեակից:

Արա Այվազեանը ծնուել է 1969 թուականին, Երեւանում: Աւարտել է Երեւանի Պետական համալսարանի արեւելագիտութեան ֆակուլտետի արաբական բաժինը, ապա՝ Պէյրութի Հայկազեան համալսարանական գոլէճի քաղաքագիտութեան ինտենսիւ դասընթացը: Ծառայել է խորհրդային բանակում: 1994 թուականից աշխատել է արտաքին գործերի նախարարութեան Եւրոպայի երկրների վարչութեան կցորդ, ապա՝ նոյն վարչութեան երրորդ քարտուղար: 1996-1997 թթ. եղել է Արժանթինում Հայաստանի դեսպանութեան երկրորդ քարտուղար: 1997 թ. աշխատել է արտաքին գործերի նախարարութեան Ամերիկայի վարչութեան կենտրոնական եւ Հարաւային Ամերիկայի երկրների բաժնի վարիչ, իսկ 1998 թուականից առ այսօր ԱԳՆ քարտուղարութեան պետն էր.

Արա Այվազեանը տիրապետում է հայերէն, ռուսերէն, անգլերէն, իսպաներէն եւ արաբերէն լեզուներին: Ամուսնացած է:

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾՈՑ ՆԱԽԱՐԱՐ ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԵԳԻՊՏՈՍ

1 ➪

### ՏԵՍԱԿՑՈՒԹԻՒՆ ՖԱԹՀԻ ՍՈՒՐՈՒՐԻ ՀԵՏ

Նախարար Վ. Օսկանեան նոյն օրը տեսակցութիւն մը ունեցաւ Եգիպտոսի Ժողովրդական Խորհուրդի նախագահ Ֆաթհի Սուրուրի հետ: Երկու կողմերը նշեցին, որ հա-եգիպտական յարաբերութիւնները վերընթաց զարգացում մը կ'ապրի, ընդգրկելով նորանոր բնագաւառներ:

### ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ

Նոյն օրը երեկոյեան ժամը 7-ին նախարար Վարդան Օսկանեան եւ իրեն ընկերացող պատուիրակութիւնը այցելեցին Գահիրէի Ազգ. Առաջնորդարան, ուր դիմաւորուեցան եգիպտահայոց առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արքեպսկ.ի եւ Գահիրէի ու Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեանց անդամներու կողմէ:

Նախ անոնք մուտք գործեցին Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճար, ուր Սրբազան Հայրը լայն տեղեկութիւններ տուաւ անոր խրաքանչիւր բաժանմունքներուն մասին: Յարգելի նախարարը իր հիացումը յայտնեց Տաճարի հայկական ոճին եւ կառուցուածքին վերաբերմամբ:

Ապա Ազգ. Առաջնորդարանի դահլիճին մէջ տեղի ունեցաւ հիւրասիրութիւն, պատրաստուած Տիկնանց Խնամակալութեան կողմէ, ի ներկայութեան որոշ թիւով հայրենասէր ազգայիններու: Ի դիմաց եգիպտահայ համայնքին՝ «Բարի գալուստ»ի խօսք արտասանեց առաջնորդ Սրբազան Հայրը: Ան իր չահեկան խօսքին մէջ հակիրճ ծանօթութիւններ տուաւ եգիպտահայ գաղութին մասին: Սրբազան Հայրը իր մտահոգութիւնը յայտնեց Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա. Հայրապետի առողջութեան՝ որ քանի մը ամիսներէ ի վեր կը դարմանուի Միաց. Նահանգներուն մէջ. հետեւաբար ապաքինում մաղթեց ան, որ չուտով վերադառնայ Ս. Էջմիածին: Սրբազան Հայրը կարեւորելով արաբական աշխարհն ու յատկապէս Եգիպտոսը, Հայաստանի հետ յարաբերութիւնները ամրապնդելու տեսակէտէն, դրուատեց դեսպան Դր. Է. Նալպանտեանի քանի մը տարիներէ ի վեր տարած մեծ աշխատանքը, որ կարողացած է տարբեր բնագաւառներու մէջ զարգացնել եւ սերտացնել երկու երկիրներու միջեւ համագործակցութիւնը:

Գահիրէի Ազգ. Իշխանութեան կողմէ, Դր. Անդրանիկ Մեսրոպեան յիշատակի նուէր մը յանձնեց նախարար Վարդան Օսկանեանին եւ Սրբազան Հայրը Լիբանանի մօտ ՀՀ դեսպան Ա. Նաւասարդեանին նուիրեց Դր. Վարուժան Գազանճեանի արաբերէն լեզուով գրած «Ծաղկաքաղ Հայ բանաստեղծութեան դարերու ընդմէջէն» գրական երկը, իսկ Սուրիոյ մօտ ՀՀ դեսպան Լ. Սարգսեանին՝ Ֆուատ Հաֆէզի արաբերէն լեզուով «Հայոց պատմութիւն, սկիզբէն մինչեւ մեր օրերը» գիրքը:

Հուսկ ուրեմն խօսք առնելու հրաւիրուեցաւ Նորին Գերազանցութիւն Վ. Օսկանեան: Հայրենաշունչ իր ճառին մէջ, ան նախ իր շնորհակալութիւնը յայտնեց, ապա վեր առաւ եգիպտահայ համայնքը, որակելով, «Եգիպտահայ գաղութը տարբեր է». նաեւ յայտնեց թէ Հայաստանի Հանրապետութեան շուրջ 30 դեսպանատուներէն ամենագեղեցիկն է եւ ամենաներկայանալին Գահիրէի մէջ ՀՀ դեսպանատունը: Յարգելի նախարարը եւս իր բարձր գնահատանքը յայտնեց ՀՀ դեսպան Է. Նալպանտեանի տարած հսկայ ջանքերը. յարելով թէ ան չուտով Եգիպտոսէն կը մեկնի. սակայն իր տեղը նշանակուած է չատ կարող դիւանագէտ մը, արտաքին գործոց փոխ – նախարար Դր. Սերկէյ Մանասարեանը, որ մօտ ատենէն պիտի ժամանէ Գահիրէ:

Պարոն Օսկանեան անդրադառնալով Եգիպտոս – Հայաստան կատարած երկխօսութեանց, Եգիպտոս նկատեց «արաբական աշխարհի կարեւորագոյն եւ հզօր երկրներից մին»: Ան չեշտը դրաւ, «որ հայր ուրտեղ էլ գտնուել է նախ եղել է այդ երկրի հաւատարիմ քաղաքացի, նաեւ եղել է լաւ հայ. սատարել է հայ յարաբերութիւններին, արաբ եղբայրների հետ»: Ապա ընդգծեց սփիւռքահայութեան անհրաժեշտութիւնը Հայաստանի համար: «Սփիւռք – Հայաստան մի շղթայի երկու օղակներ են եւ միայն իրար միանալով կը կարողանանք այդ շղթան ամբողջացնել» բսաւ ան:

Յարգելի նախարարը նշեց թէ այս տարուան Սեպտեմբերին նախատեսուած է Հայաստան – Սփիւռք համաժողով մը կայացնել Երեւանի մէջ, որուն համար արդէն իսկ նախնական աշխատանքները սկսած են եւ օրակարգ կը մշակուի համատեղ գործակցութեամբ:

Արտայայտուելով Հայաստանի տնտեսական ներկայ վիճակին, Պարոն Օսկանեան յայտնեց թէ տնտեսական վիճակը դեռ բաւական ծանր է, սակայն այսօր, համեմատաբար անցնող տարիներուն, աւելի բարենպաստ պայմաններ գոյութիւն ունեցած են: Ինչ կը վերաբերի Արցախի տագնապի կարգաւորման, Վարդան Օսկանեան համոզում յայտնեց ըսելով. «Այսօր Արցախը անկախ հանրապետական միաւոր է եւ Հայաստանի մի մասն է, եւ կը կարծեմ որ այսպէս ալ կը մնայ. կարեւորը կարողանանք աւելի բարենպաստ պայմաններ ստեղծել թէ՛ Հայաստանի եւ թէ՛ Արցախի ժողովուրդի կեանքին համար»: Ան իր խօսքը եզրափակեց պարզելով թէ՝ «ՀՀ դեսպանատունը ձեր բոլորիդ տունն է. նա այն օղակն է Հայաստանի եւ Եգիպտոսի միջեւ, որոնց յարաբերութիւնները պէտք է զարգացնել պետական մակարդակով, լաւագոյն արդիւնքներ քաղելու համար»:

Ներկաներէն ոմանք հարցումներ ուղղեցին յարգելի նախարարին եւ ան գոհացում տուաւ բոլորին:

Սրբազան Հօր ողջոյնի խօսքերով, վերջ գտաւ պատուասիրութիւնը:

### ԸՆԹՐԻՔ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄԷՋ

Նոյն գիշերը, Զամալէքին ՀՀ դեսպանատան մէջ, ի պատիւ նախարար Վարդան Օսկանեանի եւ իր չքախումբի անդամներուն, ընթրիք սարքուեցաւ, ի ներկայութեան առաջնորդ Սրբազան Հօր, համայնքիս ներկայացուցչական դէմքերու եւ դեսպանատան բարեկամներու խորհուրդի անդամներու:

Ընթրիքի ընթացքին խօսք առաւ լիազօր դեսպան Դր. Է. Նալպանտեան, ուր ի միջի այլոց, ան շնորհակալութիւն յայտնեց եգիպտահայ համայնքի անդամներուն եւ բոլոր անոնց որոնք իր պաշտօնավարութեան շրջանին նեցուկ կանգնեցան ՀՀ դեսպանութեան:

### ՄԵԿՆՈՒՄ

Յաջորդ օրը՝ Կիրակի յետմիջօրէի ժամը 4-ին, նախարար Վարդան Օսկանեանին եւ իր չքախումբի անդամներուն ողջերթ մաղթելու համար ներկայ կը գտնուէին Եգիպտոսի արտաքին գործոց նախարարութեան բարձրաստիճան անձնաւորութիւններ, առաջնորդ Սրբազան Հայրն ու Թեմական եւ Քաղաքական ժողովներու ատենապետները:

Պատուիրակութիւնը մեկնեցաւ դէպի Արաբական Ծոցի երկիրները:

«Զ.»

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1397 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 4 ՄԱՐՏ 1999 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. عدد رقم ١٣٩٧ — الخميس ٤ مارس ١٩٩٩


ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՈՂՋԵՐԹԻ ԸՆԹՐԻՔ

### Ի Պատիւ

## ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ ԴՈԿՏ. ԷՏՈՒԱՐՏ ՆԱԼՊԱՆՏԵԱՆԻ

*Հայաստանի Հանրապետութեան բարձրագոյն իշխանութիւնները Եգիպտոսի մօտ հաւատարմագրուած արտակարգ եւ լիազօր դեսպան, Դոկտ. Էտուարտ Նալպանտեանը, Ֆրանսայի մօտ լիազօր եւ արտակարգ դեսպան նշանակած ըլլալով, անոր Եգիպտոսէ մեկնումին նախօրեակին, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգային իշխանութիւնները ողջերթի ընթրիք կազմակերպած էին Ուրբաթ 26 Փետր. 1999-ի գիշերը ժամը 9:30-ին, Զամալէքի «Մարիոթ» պանդոկի «Ռուայալ» անունով շքեղ ճաշարանին մէջ:*

*Ժամը 8:30-էն սկսեալ, հիւրերը հետզհետէ հաւաքուեցան նոյն հիւրանոցի պալատի բաժնին այլ մէկ շքեղ սրահին մէջ քօքթէյլ - աբերիթիֆներ առնելու համար: Իսկ ժամը 9:30-ին ճաշասրահին մէջ սկսաւ ընթրիքը սպասարկուիլ: Ճաշի աւարտին, Գահիրէի Թեմական Ժողովի ատենադպիր Տօքթ. Սուրէն Պայրամեան հրաւիրուեցաւ ի դիմաց զոյգ Ազգային իշխանութիւններուն, ողջերթի խօսք արտասանել:*

*Այս առիթով Տօքթ. Սուրէն սրտագրաւ եւ հիանալի ճառ մը խօսեցաւ, վեր հանելով դեսպան Դոկտ. Էտուարտ Նալպանտեանի բարեմասնութիւնները, ժրաջանութիւնն ու յօգուտ Հայաստանի անկախացեալ Հանրապետութեան, Եգիպտոսի պետական շրջանակներու մօտ կատարած տնտեսական, մշակութային, ընկերային սերտ յարաբերութիւնները, ի գործ դրուած ղոհողութիւնները: Յայտնեց թէ իր շնորհալի Տիկնոջ հետ համակրելի, օգտակար եւ ամբողջ գաղութէն սիրուած զոյգ մըն են: Պատմեց Գահիրէի մէջ Հայկական դեսպանատան, անցնող եօթնամեակի ընթացքին ունեցած յաջողութիւնները եւ օգտակարութիւնը, ապա բարի ճանապարհ մաղթեց եւ նորանոր յաջողութիւններ, միշտ յօգուտ մեր Հայրենիքին:*

*Ապա խօսք առաւ Եգիպտահայոց Թեմին Հոգեւոր Առաջնորդ, Գերաշնորհ Տ. Զաւէն Արքեպսկ. ըսելով թէ ասպարէզով տփլոմաթ, Դոկտ. Էտուարտ եւ իր Տիկինը բուրգերու քաղաքէն կը փոխադրուին լոյսի քաղաք, Փարիզ: Եգիպտահայոց կորուստը շահ մըն է Ֆրանսահայոց համար: Յանկուցիչ եւ սրտագրաւ երեւոյթ մըն էր տարիներ առաջ, ի ներկայութեան անկախ ՀՀ արտաքին գործոց նախարարին եւ Եգիպտոսի պետական ներկայացուցիչներուն ու Եգիպտահայ գաղութի անդամներուն ի Տօքքի, երբ Հայկական դեսպանութեան առջեւ բարձրացուեցաւ մեր դրօշը, գնուեցաւ զինանշանը եւ նուագուեցաւ պետական քայլերգը:*

*Յետոյ նուիրագուեցաւ ի Զամալէք դեսպանատան այժմու փառաւոր շէնքը եւ կահաւորուեցաւ ու սկսաւ իր աշխոյժ գործունէութիւնը: Եգիպտոսի եւ Հայաստանի միջեւ ստորագրուեցան բազմաթիւ պայմանագրութիւններ եւ բարեկամութեան ու գործակցութեան դաշինքներ եւ շահուեցաւ Դոկտ. Էտ. Նալպանտեանի անխոնջ ճիգերով, արաբականութեան բաբախող սիրտը նկատուող Եգիպտոսի պետութեան եւ ժողովուրդի համակրանքը, Հայաստանի Հանրապետութեան վերաբերմամբ:*

*Տասնեակներով ուսանողներ եկան Հայաստանէն որոնք Եգիպտոսի պետութեան հաշւոյն ուսանեցան արաբերէն լեզու, գրականութիւն, մշակոյթ, տիփլոմասի, ոստիկանական կաճառի եւ այլ բնագաւառներու ուսանողներ, եկան ու գացին իրենց ներդրումը կատարելու մեր Հայրենիքին: Հայաստանէն նախարարներ, պետական ներկայացուցիչներ հրաւիրուեցան, եգիպտական արտադրութիւններու առեւտրական ցուցահանդէս կազմակերպուեցաւ Երեւանի մէջ, Եգիպտոսի պետական յանձնախումբեր մեկնեցան Հայաստան եւ կապերը երկու երկիրներուն միջեւ սերտացան:*

*Անշուշտ նման արդիւնաշատ աշխատանքէ ետք մեր հարազատ պետութիւնը նկատի առնելով նաեւ Եւրոպական Միութեան կարեւորութիւնը, ասպարէզով տիփլոմաթ, Դոկտ. Էտ. Նալպանտեանը նշանակած է Ֆրանսայի մօտ լիազօր ու արտակարգ դեսպան:*

*Այս առիթով կը մաղթենք իրեն նորանոր յաջողութիւններ, յօգուտ մեր Հայրենիքին որուն կը ցանկանք խաղաղութիւն եւ ժողովուրդին ալ բարգաւաճութիւն:*

*Յարգելի դեսպանին մաղթեց բարի ճանապարհ ու հրաւիրեց Գահիրէի Թեմական Ժողովի Ատենապետ Տիար Անդրանիկ Մեսրոպեանը որպէսզի յանուն Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Թեմական Ժողովներուն, Դոկտ. Էտ. Նալպանտեանին յիշատակի նուէրներ յանձնէ:*

*Ամենէն ետք Առաջնորդ Սրբազան Հօր պահպանելով ողջերթի սոյն ընթրիքը փակուեցաւ կէս գիշերին:*

ԴԻՒԱՆ
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Հայաստանի Հանրապետության արտակարգ եւ լիազօր դեսպան Ն.Գ. Պրն. Էդուարդ Նալպանդեանի Եգիպտոսից մեկնելու կապակցութեամբ ս/թ Մարտի 9-ի երեկոյեան Հայաստանի Հանրապետության դեսպանութեան պարտէզում կայանալու է հրաժեշտի ընդունելութիւն:*

*Եգիպտոսում բնակուող ՀՀ քաղաքացիները եւ եգիպտահայ համայնքի անդամները, ովքեր ցանկանում են ներկայ գտնուել ընդունելութեանը եւ հրաժեշտ տալ դեսպանին, հրաւիրատոմսեր ստանալու համար կարող են մինչեւ Մարտի 8-ը դիմել ՀՀ դեսպանութիւն՝ 3424157 եւ 3424159 հեռախօսահամարներով:*

ԵԳԻՊՏՈՍՈՒՄ
ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ ԳԱՀԻՐԷԻ 32-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԻՆ

*Գահիրէի 32-րդ միջազգային ցուցահանդէսին Հայաստանի Հանրապետութեան մասնակցութեան կապակցութեամբ «Արմէնփրէս»ի թղթակիցին ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Դր. Է. Նալպանտեանի մեկնաբանութիւնները:-*

*Եգիպտոսի առեւտրի եւ մատակարարման նախարար Ահմէտ Կուէյլիի հրաւէրով ս/թ Մարտի 8-ին Գահիրէ է ժամանում Հայաստանի Հանրապետութեան արդիւնաբերութեան եւ առեւտրի նախարար Հայկ Գէորգեանի գլխաւորած պատուիրակութիւնը, որը ՀՀ չորրորդ արդիւնաբերութեան նախարարի այցելութիւնն է Գահիրէ:*

*Նախատեսուած են ՀՀ արդիւնաբերութեան եւ առեւտրի նախարարի հանդիպումները Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան առեւտրի եւ մատակարարման, արդիւնաբերութեան, սեփականաշնորհման եւ միջազգային համագործակցութեան նախարարների եւ այլ բարձրաստիճան պաշտօնեաների հետ:*

*Նոյն օրերին Եգիպտոս են ժամանելու Հայաստանից մեծ թուով ձեռնարկութիւնների տնօրէններ եւ գործարարներ Մարտի 9-ին Գահիրէում բացուող միջազգային առեւտրա-արդիւնաբերութեան 32-րդ ցուցահանդէսին մասնակցելու համար:*

*Այս ցուցահանդէսը ամենախոշորն է Մերձաւոր Արեւելքում: Այն կազմակերպւում է ամէն տարի, եւ իւրաքանչիւր տարի ցուցահանդէսին մասնակցում են տասնեակ երկրներ (այդ թւում ԱՄՆ-ը, Գերմանիան, Անգլիան, Ճապոնիան, Չինաստանը եւ այլն.) եւ հարիւրաւոր մասնաւոր ընկերութիւններ: Այս տարի Հայաստանը 4-րդ անգամ է մասնակցելու այդ ցուցահանդէսին, 20-ից աւելի հայկական ձեռնարկութիւններ ներկայացնելու են Հայաստանը, այդ թւում Մեղրու պահածոների, Արմավիրի հաստոցաշինական, Գիւմրիի դարբնոցամամլիչային սարքաւորումների գործարաններ, «Գեղամա» (ելեկտրական գայլեր, «Անոյշ-7» (գիւղատնտեսական մթերք), «Ջերմուկ», «Ավտոգենմաշ», «Հրազդանմաշ», «Հայգորգ», «Երեւանի հաստոցաշինական արտադրական միաւորում», «Հայկ» եւ այլ ընկերութիւններ, ինչպէս նաեւ ձեռքի աշխատանքների «Հայ ոսկեձեռիկներ» միութիւնը:*

*Գահրիէի ցուցահանդէսը հայ գործարարներին առիթ կ'ընձեռնի ոչ միայն ներկայացնել իրենց ձեռքբերումները, այլեւ ծանօթանալ աշխարհի տարբեր երկրների առաջատար ընկերութիւնների արտադրանքի, միջազգային շուկայի արդի պահանջարկի եւ թելադրած չափանիշների հետ:*

⇨ 4

## ՂԱՐԱԲԱՂԻ ՆԱԽԱԳԱՀԻ ԿՈՂՄԷ ԳԼԽԱՒՈՐՈՒԱԾ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ԱՆԴԱՄՆԵՐՈՒ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԴԷՊԻ ԱՄԵՐԻԿԱ՝ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻ

Այս օրերուն կը շարունակուի Ղարաբաղի նախագահ Արկադի Ղուկասեանի կողմէ գլխաւորուած պաշտօնական պատուիրակութեան այցելութիւնը՝ դէպի Ամերիկա։

1 Մարտին նախագահ Արկադի Ղուկասեան եւ պատուիրակութեան անդամները այցելեցին Լոս Անճէլըսի Մանուկեան-Տէմիրճեան եւ Աղաճանեան վարժարանները։ Հանդիպումներուն մասնակցեցան այս ուսումնական հաստատութիւններու աշակերտները, հոգաբարձուներու խորհուրդներու անդամները եւ ուրիշներ։ Հանդիպումներու աւարտին, հիւրերը ներկայ գտնուեցան իրենց ի պատիւ սարքուած ընդունելութեան։

Նոյն օրը նախագահ Ղուկասեանի տեսակցութիւններ ունեցաւ Ամերիկայի Հայ Կաթողիկէ եկեղեցւոյ պետ՝ Հայր Ռաֆայէլի եւ Հնչակեան կուսակցութեան կեդրոնական կոմիտէի անդամներուն հետ։

2 Մարտին Ղարաբաղի պատուիրակութեան անդամները հանդիպում մը ունեցան հայ համայնքի ղեկավարներուն հետ։ Արկադի Ղուկասեան ներկաներուն ծանօթացուց Ղարաբաղի ընկերա-տնտեսական վիճակը եւ պատասխանեց անոնց բազմաթիւ հարցումներուն։

Այնուհետեւ, նախագահ Ղուկասեան եւ իր ընկերակիցները զրոյց մը ունեցան նշանաւոր գործարար՝ Գըրգ Գրիգորեանի հետ։ Նախագահը տեղեկութիւններ փոխանցեց Ղարաբաղի քաղաքական ներքին եւ տնտեսական իրավիճակին եւ հակամարտութեան բանակցութիւններու վերջին զարգացումներուն եւ հեռանկարներուն մասին։

## 1999 Թ. ՅՈՒՆՈՒԱՐԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԳՐԱՆՑՈՒԵԼ Է ԱՐԴԻՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ ԱՄԵՆԱՄԵԾ ԱՃԸ ԱՊՀ ԵՐԿՐՆԵՐԻ ԹԻՒՈՒՄ

*ԱՊՀ երկրներում 1998 թուականի Յունուարի համեմատութեամբ այս տարի Յունուարին արդիւնաբերական արտադրութեան ամենաբարձր ցուցանիշը՝ 5,1% գրանցուել է Հայաստանում: Գործերը բարւոքուել են նաեւ Ուզպեքիստանում, Տաջիկստանում, Ատրպէյճանում (2,3 %) եւ Պելոռուսիայում: ԱՊՀ միջպետական վիճակագրական կոմիտէի տուեալներով, Համագործակցութեան 6 երկրներում գրանցուել է արտադրութեան անկում, որը Մոլտովայում կազմել է 18 %, Վրաստանում 14%, Ռուսաստանում 4,9 %:*

*Ամսական սղաճի ամենաբարձր մակարդակը 1999 թուականի Յունուարին 1998 թուականի Դեկտեմբերի համեմատութեամբ գրանցուել է Պելոռուսիայում (16,6%) եւ ՌԴ-ում (8,5%): Վրաստանում 1999 թ. Յունուարին սղաճը կազմել է 2,6%, Հայաստանում 2%:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹԵԱՆ ԱՐԲԱՆԵԱԿԱՅԻՆ ՀԱՂՈՐԴՈՒՄՆԵՐԸ ՍԿՍԱՆ

*Ճարտարագէտ Պրն. Հայկ Նագաշեանէն կը տեղեկանանք, թէ Երեքշաբթի 23 Փետրուար 1999-էն սկսեալ, Հայաստանի Ազգային Հեռատեսիլի (ՀԱՀ) յայտագիրները եւրոպական արբանեակային հաղորդումներ կուտայ:*

*Հետեւաբար, կարելի է Եգիպտոսի մէջ, հետեւիլ անոնց Hot Bird արբանեակէն՝ թիւ 1 ալիք, 12111 MHZ վրայ, Digital ուղղահայեաց 27500 /2/3 միջոցով:*

*Ըստ Հայաստանի Կապի եւ Հաղորդակցութեան Նախարար Արտակ Վարդանեանի, յետագային ՀԱՀի յայտագիրները կարելի պիտի ըլլայ հեռարձակել նաեւ Ամերիկեան երկիրներու համար:*

## ՆՈՐ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ԷՅԾ-Ի ԴԷՄ ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐՈՒ ԳՏԱԾ ԴԵՂԻՆ ՄԱՍԻՆ

### Տակաւին Գաղտնի Կը Պահուին Որոշ Մանրամասնութիւններ

Հայաստանցի գիտնականները որոնք գտած են ԷՅԾ հիւանդութիւնը դարմանելու բուժամիջոցը տակաւին գաղտնի կը պահեն նոր դեղամիջոցի մասին տեղեկատուութիւնները: Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի անդամ եւ դեղերու հայկական գործակալութեան տնօրէն՝ Էմիլ Գաբրիէլեան յայտարարեց. «Թէեւ դեղամիջոցը պաշտօնապէս գրանցուած չէ տակաւին, բայց արդէն՝

⇨ 4

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

*Կիրակի 21 Փետրուար 1999-ի յետմիջօրէին, հաճոյքն ունեցանք ընդունելու այցելութիւնը Գալիֆորնիոյ Նահանգի՝ Կլէնտէյլի շրջանի մէջ, անգլերէն լեզուով հրատարակուող Armenian International Magazine «AIM» ամսաթերթի գլխաւոր խմբագիր՝ Պր. Հրաչ Չիլինկիրեանի, ընկերակցութեամբ համայնքիս ազգայիններէն՝ Պր. Թովմաս Զաքարեանի:*

*Աւելի քան երկու ժամ հետաքրքիր զրոյց ունեցանք յարգելի խմբագրին հետ, որուն ընթացքին խօսեցանք ընդհանրապէս սփիւռքահայ եւ մասնաւորապէս եգիպտահայ համայնքները հետաքրքրող հարցերու շուրջ:*

*Ջերմ մթնոլորտի մէջ, ան կարգ մը տեղեկութիւններ տուաւ ամերիկահայ գաղութի մասին: Ապա նիւթին առանցքը առաւ Հայրենիքն ու Արցախը եւ անոնց շուրջ յուզող ներկայ իրադարձութիւնները:*

*Մտերմիկ զրոյցի ընթացքին յարգելի հիւրը հետաքրքրուելէ ետք թերթիս տարած խմբագրական դժուար աշխատանքով, իր գնահատանքը յայտնեց, ապա անդրադարձաւ «AIM»ի տարած ազգօգուտ գործունէութեան, որմէ տեղեկացանք թէ ամսաթերթը լոյս կը տեսնէ 1990 տարիէն ի վեր,*

⇨ 2

**ԳԱՀԻՐԷ**

# Վարդանանց Հերոսամարտի Հանդիսութիւն

*«Վարդանանց պատերազմը խանդավառած է ամէն Հայու սիրտ, Եղիշէէն մինչեւ Ղեւոնդ Ալիշան եւ դեռ պիտի խանդավառէ դարերով» կ'ըսէ Երուանդ Օտեան:*

*Սակայն ինչո՞ւ այսպէս կառչած կը մնանք պարտութեան մը. եւ կամ ինչ է գաղտնիքը որ այդ պարտութիւնը յաղթանակ կը համարէ Հայ ժողովուրդը: Պատասխանը շատ պարզ է.*

*Որովհետեւ Վարդան իր փոքրաթիւ բանակով Սասանեանց ահեղ զօրութեան դէմ ելլելով, ընդվզումի այնքան վսեմ եւ ժեստ մը ըրաւ, որ կրցաւ դարերով ազդել Հայ ժողովուրդին բարոյական ու հոգեկան նկարագրին վրայ: Արդարեւ ցեղին ինքնապահպանութեան բնազդը կ'անձնաւորէ Վարդան Մամիկոնեան եւ ասոր համար արժանի է այն պաշտամունքին, զոր Հայ ազգը իրեն կ'ընծայէ 15 դարերէ ի վեր: Ահա այս է պատճառը որ Վարդանանց պատերազմը նուիրական է մեզի համար. եւ այդ պարտութիւնը մեր ամենէն անարատ փառքը կը կազմէ ու անոր յիշատակը անկորուստ կը մնայ ամէն Հայու հոգիէ ներս:*

*Հետեւաբար Վարդանանց հերոսամարտի յիշատակը յարգելու գիտակցութեամբ, Շաբաթ 13 Փետրուարի գիշերը, Հայ Գեղ. Միութեան մէջ համախմբուած էին հայրենասէր ընտրանի հասարակութիւն մը, ոգեկոչելու համար Վարդանանց տօնը, հովանաւորութեամբ եգիպտահայոց բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի եւ կազմակերպութեամբ Հ.Գ.Մ.-ի, Կոկանեան Սրահի եւ Հայկական Ընթերցասրահի վարչութեանց: Ներկայ էին նաեւ Թեմական եւ Քաղաքական ժողովներու յարգելի ատենապետները յանձինն՝ ՊՊ. Անդրանիկ Մեսրոպեանի եւ Նուպար Սիմոնեանի, մշակութային միութեանց նախագահներ, ատենապետներ, վարչականներ, հայագիտական նիւթերու պատասխանատուներ, ուսուցիչներ, մամուլի ներկայացուցիչներ եւ աշակերտներ:*

*Աւանդական քէշքէկի սպասարկութենէն ետք, հանդիսութիւնը սկսաւ Հ.Գ.Մ.-ի ատենապետ Պր. Գրիգոր Մարգարեանի բացման խօսքով:*

*Օրուան պատշաճ գեղարուեստական յայտագիրը սկսաւ ծանօթ արուեստագէտ Գրիգոր Փարթամեանի պատրաստած Վարդանանց խորհուրդը նշող «պատկեր»ով մը: Բեմին ետեւէն, ան ներշնչումով կ'արտասանէ խոր տպաւորութիւն թողելով ներկաներուն վրայ, Վահան Թէքէեանի «Խորհուրդ Վարդանանց»ը՝*

Գիշեր մը երբեք այսպէս լուռ ու լուրջ,
Չէ դիզուած հսկած բանակի մը շուրջ...

*Ապա յաջորդաբար իրենց մասնակցութիւնը բերին Վաչէ եւ Թալին Արթինեաններ՝ ընթերցումով Դ. Դեմիրճեանի «Վարդանանք» վէպէն հատուածներ, Գեղամ Ճղալեան՝ դաշնակի նուագածութեամբ, Նաթալի Ասլանեան՝ կարդալով Եղիշէի «Վարդանանց պատմութիւն»էն հատուածներ եւ Անի Պօղոսեան՝ ընթերցելով՝ Կ. Զարեանի «Գալիք սերունդներ» քերթուածը, որոնք բոլորն ալ ըմբռնումով կատարեցին իրենց ելոյթները:*

*Օրուան պատգամը տալու հրաւիրուած էր Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգ. վրժ.ի հայագիտական նիւթերու ուսուցիչ, սուրիահայ՝ Պր. Կորիւն Քէհեաեան: Խնամուած իր խօսքին մէջ, յարգելի բանախօսը ներկայացուց Վարդանանց դիւցազնամարտը, պատմական դէպքերու համադրութեամբ: Ան վեր առաւ Վարդանանց շարժումի գաղափարականն ու ոգին: Արտայայտուեցաւ Հայ ժողովուրդի քաջութեան, անհրաժեշտ համարելով հետեւիլ անոնց լուսաւոր շաւիղին:*

*Սոյն շահեկան բանախօսութեան յաջորդեց Առաջնորդ Սրբազան Հօր աւուր պատշաճի խօսքը: Սրբազան Հայրը շեշտը դրաւ Հայ ժողովուրդի հաւատքի ու յոյսի հաստատումը, ապա անդրադառնալով ներկայ Հայաստանի իրավիճակին, կարեւորեց Հայ ժողովուրդի խորունկ հայրենասիրութիւնը: Ան եզրափակեց իր խօսքը ընդգծելով. «Վարդանանք կերտեցին մեր ազգային նկարագիրը եւ ասոր համար ամէն տարի կ'ոգեկոչենք անոնց անմեռ յիշատակը», եւ հուսկ պահպանիչով փակեց հանդիսութիւնը:*

*Ներկաները մեկնեցան լաւ տպաւորութիւններ տանելով իրենց հետ:*

**Մ.**

**ՀԱՅԱՍՏԱՆ**

# ՀՐԱՏԱՐԱԿՈՒԵՑԱՒ ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆԻ «ՀԱՅ ՏԻԱՍԲՈՐԱՆ» ՎԷՊԸ

Երեւանի Եղիշէ Չարենցի անուան գրականութեան եւ արուեստի թանգարանը, արեւմտահայ ծանօթ գրող, երգիծաբան Երուանդ Օտեանի ծննդեան 130ամեակին առիթով, հրատարակեց անոր «Հայ Տիասբորան» վէպը՝ ամերիկահայ գրասէր՝ Յարութիւն Սիմոնեանի աջակցութեամբ:

Վէպին մէջ հեղինակը անդրադարձած է Համաշխարհային Ա. պատերազմի շրջանի իրադարձութիւններուն եւ հայ ժողովուրդի ճակատագրին: Սարիբէկ Մանուկեան գիրքի յառաջաբանին մէջ գրած է հետեւեալը. «նիւթի առումով, ասիկա առաջին վէպն էր Տիասբորայի՝ Սփիւռքի հայութեան կեանքի, թափառումներու, հայրենի բնօրրանի կարօտի, ազգի ներկայի ու ապագայի մասին»:

1924ին Գահիրէի «Արեւ» օրաթերթի մէջ հրատարակուած վէպին առաջին բնօրինակը կը պահպանուի Գրականութեան եւ Արուեստի թանգարանին մէջ, իսկ վէպին ձեռագրին ճակատագիրը անյայտ է: Գիրքի մէջ ընգրկուած են նաեւ հանրայայտ ծաղրանկարիչ՝ Ալեքսանդր Սարուխանի կարգ մը ծաղրանկարները:

Թանգարանի հրատարակչատունը մօտիկ ապագային լոյս պիտի ընծայէ Երուանդ Օտեանի «Նոր Հարուստներ» վէպը եւ գրողի նամականին:








# ՀԱՅՈՑ ԱՐՔԱՆԵՐԸ ԵՒ ԴՇԽՈՆԵՐԸ

**ՏԻԳՐԱՆ ԳԷՈՐԳԵԱՆ**

Ներկայացուող *ժամանակագրութիւնը* եւ *լոհմագրութիւնը* պատրաստուած է նկատի ունենալով Հայկ Խաչատրեանի՝ 1998 թ., Երեւան, «Ամարաս» Տպարանէն լոյս տեսած զոյգ հատորիկները՝ «Արքայապատում. Հայոց 141 թագաւորները», 176 էջ, եւ «Հայոց թագուհիները», 144 էջ:

Դշխոյին անունէն ետք՝ (պ) գիրը, *պայմանական* է. հեղինակը գործածած է նաեւ՝ *ենթադրաբար* եւ *հաւանաբար* բառերն ալ, իսկ փակագիծի մէջ արաբական թուանշանները՝ թագուհիներուն յաջորդականութիւնն է ...:

| Տիրակալութեան տարիներ | Արքաներ | Դշխոներ | Գահանիստ / Քաղաքամայր Բերդաքաղաք |
|---|---|---|---|
| **ՎԱՆԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ** | | | |
| *Մեզմէ հազարաւոր տարիներ առաջ Ք.ա.* | *Արամ* | *Վոսեմ (պ)* | |
| *860-845 թթ.* | *Արամէ* | *(1) Եպիգէ (2) Արքանա* | *Արճէշ* |
| **ՍԱՐԴՈՒՐԵԱՆ ԳԱՀԱՏՈՀՄ** | | | |
| *845-825 թթ.* | *Սարդուրի Ա.* | *Արարանսա* | *Տուշպա(Վան)* |
| *825-810 թթ.* | *Իշպուինի* | *Նախրա* | |
| *810-788 թթ.* | *Մինուա* | *Թարիրիա* | *Մենուախինիլի* |
| *788-786 թթ.* | *Ինուշպուա* | *Թիլամա* | |
| *786-764 թթ.* | *Արգիշտի Ա.* | *Բագենա* | *Էրեբունի / Երեւան* |
| *764-735 թթ.* | *Սարդուրի Բ.* | *Սուսարատու* | *Արգիշտիխինիլի* |
| *735-713 թթ.* | *Ռուսա Ա.* | *Ռուսաինա* | *Ռուսախինիլի* |
| *713-685 թթ.* | *Արգիշտի Բ.* | *Հասիս* | |
| *685-645 թթ.* | *Ռուսա Բ.* | *Կոթոն* | *Թէյշեբաինի* |
| *645-635 թթ.* | *Սարդուրի Գ.* | *Օրաշ* | |
| *635-625 թթ.* | *Սարդուրի Դ.* | *Ուրանիա* | |
| *625-620 թթ.* | *Արգիշտի Գ.* | *Պատար* | |
| *620-610 թթ.* | *Էրիմենա* | *Ծիրանէ* | |
| *610-600 թթ.* | *Ռուսա Գ.* | *Հուծան* | |
| *600-590 թթ.* | *Ռուսա Դ.* | *Կապուտան* | |
| **ԱՍՔԱՆԱԶԵԱՆ ԳԱՀԱՏՈՀՄ** | | | |
| *673-630 թթ.* | *Պարոյր Սկայորդի* | *Ասարհադոնիա* | |
| *629-600 թթ.* | *Հրաչեայ* | *Ծամծամ* | |
| **ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻՆԵՐՈՒ ԳԱՀԱՏՈՀՄ** | | | |
| *570-560 թթ.* | *Երուանդ Ա. Սակաւակեաց* | *Վանուի (պ)* | *Վան* |
| *560-535 թթ.* | *Տիգրան Երուանդեան* | *Զարուհի* | |
| | *Հիւդարնէս Ա. Երուանդունի* | *Տիգրանուհի* | *Երուանդական Տուշպա (Վան)* |
| *5-րդ դ. սկիզբ* | *Հիւդարնէս Բ. Երուանդունի* | *Միհրան* | |
| *5-րդ դ. կէս* | *Հիւդարնէս Գ.Երուանդունի* | *Սիփանէ* | |
| *5-րդ դ. - 2-րդ կէս* | *Արտաշիր Երուանդունի* | *Ասատերա* | |
| *404-360 թթ.* | *Երուանդ Բ. Երուանդունի* | *Հոռոգոնունէ* | |
| *4-րդ դ.- 2-րդ կէս* | *Վահէ Երուանդունի* | *Ծովինար* | |
| *330-300 թթ.* | *Երուանդ Գ. Երուանդունի* | *Նանէ* | |
| *299-270 թթ.* | *Վանանէս Երուանդունի(պ)* | *Արեգ (պ)* | |
| *270-200 թթ.* | *Երուանդ Դ. Երուանդունի* | *Երուանդուհի* | *Երուանդաշատ* |
| **ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻՆԵՐՈՒ ԳԱՀԱՏՈՀՄ ԾՈՓՔ - ԿՈՄՄԱԳԵՆԷԻ** | | | |
| *3-րդ դ. կէս* | *Սամոս Երուանդունի* | *Սամոսիա* | *Սամոսատ* |
| *240-220 թթ.* | *Արշամ Երուանդունի* | *Հիերաքսիա* | *Արշամաշատ* |
| *3-րդ դ. վերջ* | *Քսերքսէս Երուանդունի* | *Անտիոքիա* | |
| *190-175 թթ.* | *Զարեհ Երուանդունի* | *Աստղիկ* | |
| *2-րդ դ.* | *Արկաթիաս Երուանդունի* | *Լուսատիկին* | *Արկաթիակերտ* |
| *2-րդ դ.* | *Մեհրուժան Երուանդունի* | *Հուտոմիա* | |
| *2-րդ դ. վերջ -94 թթ.* | *Արտանէս Երուանդունի* | *Մորճ* | |
| **ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻՆԵՐՈՒ ԳԱՀԱՏՈՀՄ ԿՈՄՄԱԳԵՆԷԻ** | | | |
| *3-րդ դ. վերջ- 2-րդ դ. սկիզբ* | *Պտղոմէոս Երուանդունի* | *Ասպանոյշ* | |
| *2-րդ դ.* | *Սամոս Բ. Երուանդունի* | *Արտասա* | |
| *2-րդ դ.* | *Միհրդատ Կալինիկոս* | *Արշանոյշ* | |
| *69-34 թթ.* | *Անտիոքոս Ա. Երուանդունի* | *Ոսկեմայր* | |
| *Առաջին դ.* | *ԱնտիոքոսԴ. Երուանդունի* | *Հայամա* | |
| **ԱՐՏԱՇԷՍԵԱՆ ԳԱՀԱՏՈՀՄ Վերընձիւղած՝ Երուանդունիներէն** | | | |
| *189-160 թթ.* | *Արտաշէս Ա. Բարի* | *Սաթենիկ* | *Արտաշատ* |
| *160-115 թթ.* | *Արտաւազդ Ա. Արտաշէսեան* | *Դշխոյ* | |
| *115-95 թթ.* | *Տիգրան Ա.* | *Անահիտ (պ)* | |
| *95-55 թթ.* | *Տիգրան Բ. Մեծ* | *(1)Հուտոմիա (պ) (2)Կղէոպատրա(պ) (3)Համասփիւռ(պ) (4)Սոսեմ/Զոսիմա* | *Տիգրանակերտ Արտաշատ Անտիոք* |
| *69-66 թթ.* | *Տիգրան Կրտսեր* | *Ջահանիրա* | |
| *55-34 թթ.* | *Արտաւազդ Բ.* | *Արաքսա (պ)* | |
| *30-20 թթ.* | *Արտաշէս Բ.* | *(1)Սասա (պ) (2)Զանամա (պ)* | |
| *20-8 թթ.* | *Տիգրան Գ.* | *Օկտաւա (պ)* | |
| *8-5 թթ.* | *Տիգրան Դ.* | *Էրատոյ* | |
| *5-2 թթ.* | *Արտաւազդ Գ.* | *Հարմոնիա (պ)* | |
| *Ք.ա.2Ք.ե.2թթ. Ք.ե. 6-11թթ.* | | *Էրատոյ* | |
| *2-րդ դ.* | *Վաղարշակ* | *Արշակադուխտ(պ)* | *Մծբին* |








☞ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՀԱՅՈՑ ԱՐՔԱՆԵՐԸ ԵՒ ԴՇԽՈՆԵՐԸ

3

| | | | |
|---|---|---|---|
| **ՕՏԱՐ ԹԱԳԱՒՈՐՆԵՐ** | | | |
| 4-5 թթ. | Արտաւազդ Դ. | Անոյշ | |
| 6 թ. | Տիգրան Ե. | Էլեկտրա (պ) | |
| 18-34 թթ. | Զենոն Արտաշէս | Բագրատուհի | |
| 34-35 թթ. | Արշակ Ա. | Շահասպդուխտ | |
| 35-37 թթ. | Միհրդատ Իբերացի | Զենոբիա | |
| 47-51 թթ. | | | |
| 37-43 թթ. | Կոտիս | Մայա | |
| 51-53 թթ. | Հռադամիզդ | Զենոբիա | |
| **ԱՐՇԱԿՈՒՆԻՆԵՐՈՒ ԳԱՀԱՏՈՀՄ** | | | |
| 60-61 թթ.. | Տիգրան Զ. | Կապիտոլա(պ) | |
| 65-75 թթ. | Տրդատ Ա. Արշակունի | (1) Բակուրադուխտ | |
| | | (2) Ճերմակուհի | |
| 75-110 թթ. | Սանատրուկ | Սանդուխտ | Մծուրն |
| 110-113 թթ. | Աշխադար | Սիրունիկ | |
| 113-114 թթ. | Պարթամասիր | Նազենիկ | |
| 116-144 թթ. | Վաղարշ Ա. | Վաղարշուհի | Վաղարշապատ |
| 144-161 թթ. | Սոհեմոս | Սիլվա | |
| 164-184 թթ. | | | |
| 161-163 թթ. | Բակուր | Մագետա | |
| 186-198 թթ. | Վաղարշ Բ. | Արշամուհի | |
| 211-259 թթ. | Խոսրով Ա. Մեծ | Խոսրովանոյշ(պ) | |
| 252-273 թթ. | Արտաւազդ Ե. | Նուշիկ | |
| 261-273 թթ. | Որմիզդ-Արտաշիր | Սասանդուխտ | |
| 273-287 թթ. | Ներսեհ Սասանեան | Ներսեհանոյշ | |
| 287-330 թթ. | Տրդատ Գ. Մեծ | Աշխէն | |
| 330-338 թթ. | Խոսրով Բ. Կոտակ | Ճախրուհի | Դուին |
| 338-350 թթ. | Տիրան | Բամբիշ (պ) | |
| 350-368 թթ. | Արշակ Բ. Արշակունի | (1) Փառանձեմ | Արշակաւան |
| | | (2) Օլիմբիա | |
| 368-369 թթ. | | Փառանձեմ | |
| 370-374 թթ. | Պապ | Զարմանդուխտ | |
| 374-378 թթ. | Վարազդատ | Ռոմելա | |
| 378-390 թթ. | Արշակ Գ. | Վարդանդուխտ | |
| | Վաղարշակ Արշակունի | Սմբատուհի(պ) | |
| 385-388 թթ. | Խոսրով Գ. | Զրուանդուխտ | |
| 415 թթ. | | | |
| 389-414 թթ. | Վռամշապուհ | Գեղանոյշ | |
| 416-419 թթ. | Շապուհ պարսիկ | Շապուհդուխտ | |
| 422-428 թթ. | Արտաշէս Գ. | Քնքուշ | |

(Շարունակութիւնը յաջորդ թիւով)

## ՀԱՅԱՍՏԱՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ ԳԱՀԻՐԷԻ 32-ՐԴ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԻՆ

1

*Ցուցահանդէսի շրջանակներում կայանալու է հայ եւ եգիպտական գործարարների հանդիպում-սեմինար:*

*Ինչպէս ցոյց է տալիս նախկինում ձեռք բերուած փորձը, նման հանդիպումների ընթացքում կողմերը ծանօթանալով միմիանց հնարաւորութիւններին, համագործակցութեան եզրեր են գտնում եւ գործարքներ կնքում:*

*Վերջին տարիների ընթացքում Հայաստանից Եգիպտոս եւ Եգիպտոսից Հայաստան են այցելել առեւտրա-տնտեսական եւ արդիւնաբերական տասնեակ պատուիրակութիւններ եւ 200-ից աւելի գործարարներ, ինչը խօսում է երկու երկրների միջեւ գործնական համագործակցութեան հաստատման եւ զարգացման մեծ հեռանկարների մասին:*

*Կողմերի միջեւ մի շարք պայմաննագրեր են ստորագրուած, որոնք լուրջ հիմքեր են դրել երկկողմ բազմաբնոյթ յարաբերութիւնների զարգացման համար:*

*Այս տարի գարնանը Երեւանում կայանալու է հայ-եգիպտական միջկառավարական համատեղ տնտեսական յանձնաժողովի 3-րդ հերթական նիստը: Նիստի ընթացքում, բացի տարբեր ոլորտներից առնչուող համագործակցութեան խնդիրների քննարկումից, նախատեսուած է նաեւ Հայաստանի եւ Եգիպտոսի միջեւ ստորագրել համագործակցութեան եւս 3 համաձայնագիր՝ առեւտրի, կրկնակի հարկումից խուսափելու եւ քաղաքացիական աւիացիայի ոլորտներում, ինչը կը համադրի երկու երկիրների միջեւ առեւտրա-տնտեսական համագործակցութեան համար անհրաժեշտ իրաւապայմանագրային դաշտը:*

*Հայաստանի եւ Եգիպտոսի միջեւ, Եգիպտոսի վարչապետ Գամալ Էլ Կանզուրիի բնորոշմամբ՝ փոխշահաւէտ տնտեսական յարաբարութիւնների զարգացման եւ խորացման համար անհրաժեշտ եւ յուսալի հիմքեր են ստեղծուած:*



## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Իր սիրելի ազգականին՝ Ողբ. Յովսէփ Մովսէսեանի յանկարծակաև մահուան եւ քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին Տիկին Անահիտ Սարգիս կը նուիրէ 30*

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

*Ողբ. Հայկազ Գալուստեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան, Պր. Աւետիս Մովսէսեան կը նուիրէ 20*

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

*Իրենց սիրելի, եղբօր Ողբ. Յովսէփ Մովսէսեանի յանկարծակաև մահուան եւ քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին, ՊՊ. Պետրոս եւ Աւետիս Մովսէսեան եղբարք կը նուիրեն.*

| | |
|---|---|
| *Եկեղեցւոյ Պայծառութեան* | *100* |
| *«Ջահակիր»ին* | *50* |
| *Հայկական Ընթերցասրահին* | *25* |
| *«Արեւ»ին* | *25* |
| *«Յուսաբեր»ին* | *25* |

*Նոյն տխուր առթիւ, Տէր եւ Տիկ. Արսէն եւ Մարի Էմիրզեան կը նուիրեն.*

| | |
|---|---|
| *Եկեղեցւոյ Պայծառութեան* | *50* |
| *Գալուստեան Ազգ. Վրժ.ի Ճաշի Սեղանին* | *50* |
| *Նուպարեան Ազգ. Վրժ.ի Ճաշի Սեղանին* | *50* |
| *«Ջահակիր»ին* | *50* |

*(Ստացանք Գահիրէի Ազգ. Առաջնորդարանէն)*

### ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Շնորհակալութեամբ ստացանք Պր. Սեդի Գօչունեանէ (Սիտնի) 1998 եւ 1999 տարիներու բաժանորդագինը՝ 60 աւստրալիական տոլար:*

### ՍՏԱՑԱՆՔ

*Շնորհակալութեամբ ստացանք Փրոֆ. Գէորգ Բարդիշեանի՝ «ՎԱՐԴԱՆԱՆՔ ԵՒ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ ԵՒ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ՏՕՆԻ ԱՌԻԹՈՎ» հայրենասիրական շունչով հեղինակուած գիրքը: 27 էջնոց սոյն գրքոյկը հրատարակչութիւնն է «Պոլ Քիլիտճեան Ֆոնտ»ի: Տպարան «Նուպար»՝ Գահիրէ, 1999:*

## «ԿԱՅԾ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱԽ-Ի...

2

*«Կայծ» եւ ՀԱԽ պիտի մասնակցին նաեւ այս այցելութեան առթիւ տեղի ունենալիք համահայկական մի քանի այլ միջոցառումներու որոնց մասին հանրութիւնը տեղեակ պիտի պահուի յետագային:*

*Հայտար Ալիեւի Լոս Անճելըս այցելութիւնը նախատեսուած է Ապրիլ 27 եւ 28-ին, մասնակցելու համար Միացեալ Նահանգներ-Ատրպէյճան առեւտուրի պալատներու խորհրդաժողովին:*

## ՆՈՐ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ԷՅԾ-Ի ԴԷՄ ...

1

հիմա կարելի է ըսել, որ փորձարկումներու արդիւնքները չափազանց յուսադրիչ են եւ չեն կրնար բաղդատուիլ ծանօթ որեւէ այլ դեղամիջոցի հետ»: Ակադեմիկոս Գաբրիէլեանի համաձայն, բոլոր 13 հիւանդները, որոնք դարմանուած են խնդրոյ առարկայ դեղով, երկու ամիս ետք սկսած են բարելաւումի նշաններ ցոյց տալ: Բոլոր հետազօտութիւնները կատարուած են մասնաւոր ձեռնարկատէրներու նիւթական աջակցութեամբ՝ հիւանդութեան կանխարգիլման եւ վերահսկողութեան հանրապետական կեդրոնի անձնակազմի անմիջական մասնակցութեամբ:

Գաբրիէլեան աւելցուց, որ Հայաստանի մէջ բոլոր պայմանները կան դեղը արտադրելու համար, որուն անուան մէջ կայ «Արմենիքում» բառը: Դեղին լրիւ անունը պիտի հրապարակուի պաշտօնական գրանցումէն եւ համապատասխան յայտարարութենէն ետք, մօտ օրէն:

## ՀԱՅԿԱԶ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ՈՋ ԵՒՍ Է

Խոր ցաւով տեղեկացանք որ իր մահկանացուն կնքած է անցեալ 27 Փետրուար 1999-ին, Հելիոպոլսոյ «Այծեմնիկ» Հանգստեան Տան մէջ, եգիպտահայ բեմի գործիչ, վաստակաւոր արուեստագէտ՝ **ՀԱՅԿԱԶ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ**:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցաւ յաջորդ օրը՝ Կիրակի կէսօրին, Հելիոպոլսոյ Ազգային Գերեզմանատան, Ամենայն Սրբոց մատրան մէջ: Դամբանական խօսեցաւ Թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, ուր դրուատեց հանգուցեալին արժանիքները: Երախտագիտական խօսք արտասանեցին նաեւ իր կուսակցական ընկերներէն՝ Տք. Սուրէն Պայրամեան, Պր. Պերճ Հալաճեան եւ Տք. Արմէն Մազլումեան: Ապա հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ տեղւոյն Հ.Յ.Դ. պանթէոնին մէջ:

*Այս տխուր առթիւ «Ջահակիր» եւ իր շրջանակը իրենց զգացուած վշտակցութիւնները կը յայտնեն ողբացեալին հարազատներուն, գաղափարակից ընկերներուն եւ սգակիր բոլոր պարագաներուն:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին Անի Մովսէսեան եւ զաւակ Ալեքս, Տէր եւ Տիկին Արսէն եւ Մարի Էմիրզեան, Պր. Պետրոս Մովսէսեան, Պր. Աւետիս Մովսէսեան, ներկայիւս կու գան իրենց խորին շնորհակալութիւնները յայտնելու Թեմիս բարեխնամ Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի, Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեանի, Գահիրէի Ազգ. Իշխանութեան, Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.-ի վարչութեան, «Ջահակիր» շաբաթաթերթի խմբագրութեան, ինչպէս նաեւ բոլոր անոնց որոնք անձամբ, ծաղկեպսակ ղրկելով, նամակով, հեռաձայնային կապով եւ զանազան հաստատութեանց նուիրատուութիւններ կատարելով, ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, եղբօր Ողբ.՝*

### ՅՈՎՍԷՓ ՄՈՎՍԷՍ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ

*կեանքէն անդարձ մեկնումի եւ քառասունքին առթիւ:*

## ՃՇԴՈՒՄ

Անցեալ թիւով Ողբ. ԷԹԻԼ ԿԱՐԻՊԵԱՆի տխրունիի մէջ սխալմամբ գրուած “Տէր եւ Տիկին Օննիկ եւ Տիկին Շաքէ Կարիպեան”, կարդալ “Տէր եւ Տիկին Օննիկ եւ Շողիկ Կարիպեան”:

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - Գահիրէ

### ՏԱՐԵԿԱՆ ԱՆԴԱՄԱԿԱՆ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Վարչութիւնը սիրով կը հրաւիրէ Միութեան բոլոր անդամները, Տարեկան Ընդհանուր Ժողովին, որ տեղի պիտի ունենայ Չորեքշաբթի 24 Մարտ 1999 երեկոյեան ժամը 7-ին, Հելիոպոլսոյ Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ մարզարանին մէջ:

**ՕՐԱԿԱՐԳ**

1.-Ընթերցում եւ վաւերացում նախորդ տարեկան Ընդհանուր Ժողովի ատենագրութեան:
2.-Ընթերցում վարչութեան միամեայ գործունէութեան բարոյական տեղեկագրին:
3.-Ընթերցում վարչութեան միամեայ գործունէութեան նիւթական հաշուետուութեան:
4.-Ընթերցում հաշուեքննիչի տեղեկագրին:
5.-Վաւերացում 1999 տարեշրջանի նախահաշիւ պիւտճէի:
6.-Ընտրութիւն հաշուեքննիչի եւ պատուագինի որոշում:
7.-Ընտրութիւն Վարչական նոր անդամներու:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՀԱՅ ԲԱՐԵՍԻՐԱՑ ՄԱՐՄԻՆ - Աղեքս.

### ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ

Հայ Բարեսիրաց Մարմնի անդամական տարեկան ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ Ուրբաթ, 26 Մարտ 1999, երեկոյեան ժամը 4.00-ին, Առաջնորդարանի դահլիճին մէջ, ստորեւ նշանակուած օրակարգով.
1.-Ընթերցում եւ վաւերացում 1998-ի տարեշրջանի նիւթական եւ բարոյական գործունէութեան տեղեկագրին:
2.-Ընթերցում պաշտօնական հաշուեքննիչի տեղեկագրին:
3.-Ընթերցում Ընդհանուր ժողովէն ընտրուած հաշուեքննիչներու տեղեկագրին:
4.-Ընթերցում եւ վաւերացում 1998-ի տարեշրջանի հաշուեկշիռին:
5.-Ընտրութիւն վարչութենէն վիճակով դադրած երեք անդամներու փոխարէն երեք նոր անդամներու:

Անդամական ժողովը օրինական կը նկատուի երբ ժողովին մասնակցելու իրաւունք ունեցողներու կէսէն մէկ աւելի ներկայ է:

Մեծամասնութիւն չգոյանալու պարագային, ժողովը կը յետաձգուի մէկ ժամով, եւ ապա օրինական կը նկատուի:

**ՀԱՅ ԲԱՐԵՍԻՐԱՑ ՄԱՐՄՆԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԻՐԱԿԻ, 4 ԱՊՐԻԼ 1999

**ՏՕՆԱԿԱՆ ՕՐ**

ԿԻՐԱԿԻ, 5 ՄԱՅԻՍ 1999

Կը խնդրուի նկատի ունենալ ու չխաչաձեւել

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير

جريدة أسبوعية

ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR

Armenian Weekly

P.O.Box 2111 (Calro),

Tel: 3914908, Fax:(202)4530327

E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1398 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 18 ՄԱՐՏ 1999 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. عدد رقم ١٣٩٨ — الخميس ١٨ مارس ١٩٩٩


## ՈՂՋԵՐԹԻ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԻՒՆՆԵՐ ՀՀ ԴԵՍՊԱՆ ԴՐ. ԷՏՈՒԱՐՏ ՆԱԼՊԱՆՏԵԱՆԻ

### Ա. ՃԱՇԿԵՐՈՅԹ «SEMIRAMIS» ՊԱՆԴՈԿԻՆ ՄԷՋ

Վերջին ամիսներուն համայն եգիպտահայութիւնը, կարծէք ընկուած վիճակ մը ունեցաւ, երբ իմացաւ որ Եգիպտոսի մէջ ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Դր. Էտուարտ Նալպանտեան թողելով Գահիրէն պիտի մեկնի Փարիզ, հոն ստանձնելու դեսպանի պաշտօնը, անշուշտ ՀՀ Իշխանութեան որոշումին ընդառաջելով:



*ՀՀ դեսպան Դր. Էտ. Նալպանտեանի յուշանուէր մը կը յանձնուի, ձեռամբ ընկեր Վրէժ Սէֆէրեանի*

Ան եօթը տարի պաշտօնավարելէ ետք Եգիպտոսի մէջ Սովետական իշխանութեան շրջանին, 1992 տարիէն՝ ստանձնած էր նորանկախ Հայաստանի Հանրապետութեան դեսպանի պաշտօնը: Այս եօթնամեայ շրջանին, Պարոն Նալպանտեան ձեռնհասօրէն կատարեց իր պարտականութիւնները եւ իրագործեց արդիւնաշատ գործունէութիւն, սերտ յարաբերութիւններ ստեղծելով Հայաստանի եւ Եգիպտոսի միջեւ կանայական մարզերէ ներս, իր ձեռք բերած քաղաքական հասունութեամբ եւ խոհեմ դիւանագիտական «տակտիկա»ով:

Հետեւաբար, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ «Ջահակիր»ի շրջանակը՝ Հայկական Ընթերցասրահի վարչական կազմը, Տիկնանց «Մարօ» Յանձնախումբի, Հ.Մ.Մ.-ի եւ Ն.Ս.Մ.Մ.-ի գործօն անդամները Շաբաթ 6 Մարտ 1999-ի կէսօրին, ճաշկերոյթ մը սարքած էին «Intercontinental Semiramis» պանդոկի «Ambassador» սրահին մէջ, ի պատիւ Դր. Էտ. Նալպանտեանին, երկրէս մեկնելուն առիթով:

Ճոխ սեղաններու շուրջ, ջերմ մթնոլորտի մէջ, կարգ մը պատասխանատուներ անդրադարձան յարգելի դեսպանին բարեմասնութիւններուն. անոր համեստ եւ շրջահայեաց բնաւորութեան, դիւանագիտական իմաստութեամբ օժտուածութեան, ապա եօթը տարիներու ընթացքին անխոնջ ջանքերով կատարած իրագործութիւններուն:

Խօսք առնելու հրաւիրուեցաւ Դր. Նալպանտեան: Ան շնորհակալութիւն յայտնելէ ետք, վեր առաւ համայնքէս ներս՝ հայապահպանման գծով տարուած նուիրական գործը: Պարոն դեսպանը կոչ ուղղեց որ համայնքի անդամները շարունակեն յօրավիգ կանգնիլ դեսպանատան աշխատանքներուն: Շարունակելով իր խօսքը, ան յարեց թէ ամէն եգիպտահայ պէտք է հպարտ զգայ որ հնարաւոր եղած է ունենալ Հայաստանի Հանրապետութեան արտասահմանի 30 դեսպանատուներէն լաւագոյնը Գահիրէի մէջ:

Դր. Նալպանտեան յայտնեց թէ Եգիպտոսի եւ Հայաստանի միջեւ նոր պայմանագրութիւններ պիտի ստորագրուին մօտ ատենէն: Ապա շեշտը դնելով Հայաստանի մասնակցութեան Գահիրէի Միջազգային Տօնավաճառին, նշեց թէ ՀՀ առեւտուրի եւ արդիւնաբերութեան նախարար Հայկ Գէորգեան Գահիրէ պիտի ժամանէ այս օրերս եւ տեսակցութիւններ պիտի ունենայ եգիպտացի անձնաւորութիւններու հետ ու պայմանագիր մը ստորագրէ առեւտրական գծով:

Ինչ կը վերաբերի Ֆրանսա իր պաշտօնավարութեան, յարգելի դեսպանը անհրաժեշտ նկատեց Ֆրանսայի յարաբերութիւնները Հայաստանի հետ, տրուած ըլլալով որ Ֆրանսան կարեւորագոյն երկիրն է Եւրոպայի մէջ: Դր. Նալպանտեան դժուար համարեց բաժանումը եգիպտահայութենէն, տրուած ըլլալով որ ան 14 տարի ապրած է Եգիպտոս ու խմած Նեղոսի ջուրէն...: 2

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սիրելի հայրենակիցներ,

Այսօր մեկնելով Գահիրէից, իմ խորին երախտագիտութիւնն եմ յայտնում Եգիպտոսի հայ համայնքի ազգային իշխանութիւններին, եգիպտահայ միութիւններին, կազմակերպութիւններին եւ այն բոլոր անհատներին, ովքեր անցած տարիների ընթացքում եղան դեսպանութեան կողքին դժուարութիւնների յաղթահարման եւ յաջողութիւնների ձեռքբերման ճանապարհին, օգնեցին հայրենանպաստ ծրագրերի իր իրականացմանը:

Միշտ ջերմութեամբ եմ յիշելու եգիպտահայ իմ բարեկամներին, ամբողջ համայնքին:

Շնորհակալութիւն բոլորին, ամենայն յաջողութիւն եւ մնաք բարով:

**Գահիրէ, 14 Մարտի, 1999թ.**

**ԷՏՈՒԱՐՏ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ**

ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան

## Տնտեսական Համագործակցութեան Պայմանագրի Ստորագրումէն ետք ՀԱՅ - ԵԳԻՊՏԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԹԵՒԱԿՈԽԵՑԻՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼ

*Իսկապէս, վերջերս տեղի ունեցած Հայ-եգիպտական հանդիպումներն ու շփումները, Գահիրէի Միջազգային տօնավաճառի օրերուն, շրջադարձային էին ինչպէս առեւտրական տնտեսական՝ այնպէս ալ քաղաքական իմաստով: Այդ բոլորը կարելի է «զգալ» ու տեսնել եգիպտական մամուլի գլխաւոր օրկաններուն ու զանգուածային լրատուութեան միջոցներուն մէջ՝ որոնք լայնօրէն անդրադարձան Հայաստանի առեւտուրի - արդիւնաբերութեան նախարար Պր. Հայկ Գէորգեանին եւ անոր ընկերակցող հայ գործարարներու պատուիրակութեան գործունէութեանը, Եգիպտոսի մօտ Հայաստանի դեսպան Դր. Էտուարտ Նալպանտեանի աջակցութեամբ ու հովանաւորութեամբ: Իսկ եգիպտահայ գաղթօճախին արժանաւոր զաւակները, որոնք տարիներէ ի վեր կ'աշխատէին ամուր հիմքերու վրայ դնել Հայաստան - Եգիպտոսի կապերը, արդէն իսկ ուրախութեամբ նկատեցին արաբական աշխարհի ու Աֆրիկէի հզօրագոյն պետութեան հետաքրքրութիւնն ու ջանքերը, նոր կամուրջներ հաստատելու Հայաստանին հետ:*

*Պէտք է արժանի յարգանքը մատուցանենք նաեւ Հայաստանի մօտ Եգիպտոսի դեսպան Պր. Սախտ Իմամին՝ որ հետեւողականօրէն միջոց չխնայեց յաջողութեամբ պսակելու այս հանդիպումները: Այս բոլորը համընկնեցան Հայաստանի դեսպան Դր. Է. Նալպանտեանի առաքելութեան աւարտմամբ Եգիպտոսի մէջ՝ ուր 14 տարիներ անցուցած է Բուրգերու եւ Սֆինքսի երկրին մէջ:*

*Մարտի 8-ին Գահիրէի օդանաւակայանը ժամանած Հայաստանի պատուիրակութիւնը, «Մարիօթ» հիւրանոցին մէջ տեղաւորուելէ ետք, անմիջապէս անցաւ ծրագրաւորուած հանդիպումներուն եւ աշխատանքներուն:*

*Մարտի 9-ի առաւօտեան անոնք այցելեցին միջազգային տօնավաճառը, ուր տեղի ունեցաւ բացման հանդիսութիւնը, ներկայութեամբ Եգիպտոսի նախագահ Մոհամմէտ Հոսնի Մուպարաքի: Տօնավաճառին մասնակցող 53 երկիրներու 1800 ընկերութիւններուն կողքին՝ մեր հայրենիքը ներկայացուած էր ծանր ու թեթեւ արդիւնաբերութեան նմուշներով ու Երեւանի, Կիւմրիի, Հրազդանի, Մեղրիի գործարաններու արտադրութիւններով:*

*Նոյն օրը յետմիջօրէին, նախարար Հայկ Գէորգեան, ընկերակցութեամբ Հայաստանի պատուիրակութեան եւ դեսպաններ Ս. Իմամի ու Է. Նալպանտեանի հանդիպում մը ունեցաւ Եգիպտոսի փլանաւորման ու միջազգային համագործակցութեան նախարար Զաֆէր էլ Պէշրիին հետ:*

*Չորեքշաբթի 10 Մարտը յատկանշուած էր կարեւոր հանդիպմամբ մը, Եգիպտոսի արդիւնաբերութեան նախարար Սոլէյման Ռէտայիի հետ՝ որուն ընթացքին քննարկուեցան համագործակցութեան միջոցները արդիւնաբերութեան զանազան բնագաւառներու մէջ: Ապա Հայաստանի պատուիրակութիւնը այցելեց «10 Ռամատան» քաղաքի գործարանները: Այնտեղ պատուիրակութեան անդամները ընծրեցին քաղաքի գործարարներուն հետ:*

*Ամենէն յատկանշական եւ անմոռնալին էր Հինգշաբթի 11 Մարտը: Գահիրէի տօնավաճառին նախարարական գրասենեակին մէջ, կարեւոր հանդիպում մը տեղի ունեցաւ նախարարներ Հայկ Գէորգեանի եւ Եգիպտոսի առեւտուրի ու մատակարարման նախարար Ահմէտ Կուէյլիի միջեւ: Ապա, նախարարները երկու բարեկամ երկիրներու դեսպանութիւններուն հետ ուղղուեցան համագումարներու դահլիճը՝ ուր տեղի ունեցաւ սեմինար-«փորում» եգիպտացի, եգիպտահայ ու հայրենի գործարարներու մասնակցութեամբ:*

*Քննարկուեցան առեւտուրի եւ արդիւնաբերական ոլորտները աւելի եւս զարգացնելու, դրամագլխային ներդրումները աշխուժացնելու, Գահիրէ-Երեւան ուղղիղ թռիչք հաստատելու ծրագիրները: Ապա ստորագրուեցաւ Հայ - եգիպտական առեւտուրի եւ արդիւնաբերութեան բնագաւառներու մէջ համագործակցութեան պայմանագիր մը՝ որ անհրաժեշտ քայլ մըն է երկու երկիրներու միջեւ տնտեսական յարաբերութիւններու առաւել եւս զարգացման ճանապարհին: Այս սեմինարն ու ստորագրման արարողութիւնը, ամբողջապէս նկարահանուեցաւ եգիպտական հեռատեսիլին կողմէ որուն ներկայ էին եգիպտական, եգիպտահայ եւ հայրենի մամլոյ թղթակիցներ:* 3

**ՆԻՒ ԵՈՐՔ**

## ԼՂՀ-Ի ՆԱԽԱԳԱՀՆ ՈՒ ԻՐ ԸՆԿԵՐԱԿԻՑՆԵՐԸ ԱՅՑԵԼԵՑԻՆ ՀԱՅՈՑ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ

### Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի Առաջին Պաշտօնական Հանդիպումը՝ Վիրահատութենէն Յետոյ

Այս օրերուն պաշտօնական այցելութեամբ Ամերիկայի մէջ կը գտնուի Լեռնային Ղարաբաղի պաշտօնական պատուիրակութիւն մը, գլխաւորութեամբ՝ նախագահ Արքատի Ղուկասեանի:

Հիւսիսային Ամերիկայի Արեւելեան թեմի Առաջնորդարանէն կը տեղեկանանք որ 12 Մարտին, նախագահ Ա. Ղուկասեան, ընկերակցութեամբ՝ Արտաքին Նախարար՝ Նաիրա Մելքումեանի, ՄԱԿի մօտ Հայաստանի մնայուն եւ լիազօր դեսպան՝ Մովսէս Աբէլեանի, Ուաշինկթընի մօտ Ղարաբաղի ներկայացուցիչ՝ Թեւան Պօղոսեանի եւ այլ պաշտօնատար անձերու, այցելեց Նիւ Եորքի Հայոց Առաջնորդարան:

Նախագահն ու իր ընկերակիցները Ս. Վարդան եկեղեցւոյ Մայր տաճարի մուտքին դիմաւորուեցան եկեղեցւոյ լուսարարապետ՝ Հոգշ. Տ. Մարտիրոս Քհնյ. Չեւեանի կողմէ:

Յետոյ, Առաջնորդարանի դահլիճին մէջ Ղարաբաղի նախագահը դիմաւորեցին Գարեգին Ա. Ամենայն Կաթողիկոսը եւ Արեւելեան թեմի Առաջնորդ՝ Գերշ. Տ. Խաժակ Արք. Պարսամեան:

Վեհափառ Հայրապետը, որ վերջին վիրահատութենէն ետք խօսելու դժուարութիւն ունէր, փոքր գրատախտակի վրայ արձանագրեց իր ողջոյնի խօսքը, յաջողութեան բարեմաղթութիւններն ու որոշ հարցեր, զորս կարդաց Խաժակ Սրբազան: Ասիկա Գարեգին Ա. Վեհափառի առաջին 4

**ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍ**

## ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԼՂՀ ՆԱԽԱԳԱՀ ՂՈՒԿԱՍԵԱՆԻ ՀԵՏ

*Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան Նախագահ Արկադի Ղուկասեան Լոս Անճելըս կատարած իր այցելութեան ընթացքին «Եունիվըրսըլ Հիլթըն» հիւրանոցի իր նախագահական յարկաբաժինէն ներս ընդունեց Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան պատուիրակութիւնը: Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմինի անունով Ընկ. Գրիգոր Խոտանեան բարի գալուստ մաղթելով, ողջունեց ԼՂՀ ղեկավարի անդրանիկ այցելութիւնը այս գաղութէն ներս ու յայտնեց Կուսակցութեան զօրակցութիւնը Արցախի մարտնչող մեր ժողովուրդին: «Արցախի հանդէպ մեր կեցուածքը կը մնայ սկզբունքային ու անփոփոխ եւ ենթակայ չէ ազդուելու՝ Հայաստանի իշխանութիւններուն հանդէպ մեր վերաբերմունքէն: Արցախը կը մնայ վեր՝ քաղաքական եւ կամ կուսակցական տարակարծութիւններէ», շեշտեց ընկեր Խոտանեան: Նախագահ Արկադի Ղուկասեան գնահատելէ ետք այս կեցուածքը, անդրադարձաւ Լեռնային Ղարաբաղի դիմագրաւած դժուարութիւններուն, յատկապէս տնտեսական մարզէն ներս, ուր* 4

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ Է ԼԻԲԱՆԱՆԻ ՔԱՐԻՒՂԻ ՆԱԽԿԻՆ ՆԱԽԱՐԱՐ՝ ՇԱՀԷ ՊԱՐՍՈՒՄԵԱՆ

### «Ի՞ՆՉ ԿՐՆԱՅ ՊԱՏԱՀԻԼ ԵԹԷ ԱՆ ԽՕՍԻ»

*Մարտ 3-ին Լիբանանի պետական դատախազի որոշումով ձերբակալուած է Քարիւղի նախկին նախարար Շահէ Պարսումեան, որ մեղադրուած է պետական գանձէն խըրացումներ կատարելու մէջ:*

*Պարսումեան եւ նախարարութեան ընդհանուր տնօրէնը, Լիբանան ներածուած քարիւղը զտարաններու մէջ մաքրելէ ետք, աւելցած քիմիական նիւթերը ամերիկեան ընկերութեան մը վաճառած են ու միլիոնաւոր տոլարի գումարներ դրած են իրենց անձնական հաշիւներուն մէջ:*

*Պետութեան հասած վնասը կը գնահատուի 800 միլիոն տոլար:*

*Դատախազի ամբաստանագիրին մէջ Շահէ Պարսումեանի դէմ կը պահանջուի 5 տարուայ բանտարկութիւն եւ խըրացուած գումարներու վերադարձ: Լիբանանի քաղաքական շրջանակները ողջունած են* 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԱԾ Է ԼԻԲԱՆԱՆԻ ՔԱՐԻՒՂԻ ՆԱԽԿԻՆ ՆԱԽԱՐԱՐ՝ ՇԱՀԷ ՊԱՐՍՈՒՄԵԱՆ...

1

*դատախազութեան յանդուգն այս քայլը, նկատի ունենալով, որ նախկին նախարար մը պատասխանատուութեան ենթարկելու եւ բանտարկելու երեւոյթը, նախընթաց չունի Լիբանանի պատմութեան մէջ:*

*Նախկին նախարար Շահէ Պարսումեանի դէմ եղած ամբաստանութիւններուն լիբանանեան մամուլը լայն տեղ կը յատկացնէ, այս առթիւ նաեւ քննարկելով ներհայկական եւ ներկուսակցական հարցեր:*

*«Տէյլի Սթար» անգլիատառ թերթի Մարտ 6-ի թիւին մէջ լոյս տեսած հետեւեալ գրութիւնը կու տանք թարգմանաբար:*

*Շահէ Պարսումեանի ձերբակալութիւնը տարբեր մեկնաբանութիւններու առիթ տուաւ հայ համայնքէն ներս, որպէս իր ամենէն յայտնի քաղաքական դէմքերէն մին, Դաշնակցական Կուսակցութեան ղեկավարներէն, որ կրնայ բանտարկութեան ենթարկուիլ պաշտօնի չարաշահումի մեղադրանքով: Խորհրդարանի անդամներու եւ երեք կուսակցութիւններու հակազդեցութիւնը միանշանակ է.- պնդելով որ «արդարութիւնը պէտք է ստանայ իր ընթացքը»: Անցեալ Հինգշաբթի օր, երբ հարց տրուեցաւ Պէյրութի երեսփոխան Աբրահամ Տէտէեանին, թէ հայ երեսփոխանները որեւէ քայլերու պիտի դիմե՞ն՝ զօրակցելու համար Պրն. Պարսումեանին, ան պատասխանեց.- «Ոչ մէկը որեւէ քայլ պէտք չէ առնէ այս հարցով. արդարութիւնը պէտք է առնէ իր բնական ընթացքը»: Պէյրութի երեսփոխան Եղիա Ճէրէճեան, որ Հնչակեան Կուսակցութեան պատասխանատուներէն է, արձագանգեց.- «Ես ամբողջական վստահութիւն ունիմ, որ դատարանները պիտի յանգին որոշումի մը, որ ըլլայ արդար ու ազնիւ»:*

*Դաշնակցութեան պաշտօնական միակ յայտարարութիւնը ամբողջական թիկունք կանգնելու պատրաստակամութիւն յայտնեց դատական ընթացքին, յոյս յայտնելով որ «ամբողջ իրականութիւնը ի յայտ կու գայ՝ կապուած այս հարցին հետ»: Յայտարարութիւնը միաժամանակ չեչտելով, որ նախկին նախարարը «անցեալին լաւ ձեւով ներկայացուց իր կուսակցութիւնը կառավարութիւններէն ներս»:*

*Հրապարակային յայտարարութիւնները կ'ընդգծեն եւ Պրն. Պարսումեանի զօրաւոր կերպով, պաշտպանութիւնը կը խուսափին, իր անժողովրդականութիւնը համայնքէն ներս, ուր ան կը դիտուի որպէս Դաշնակցական Կուսակցութեան գլխաւոր ֆինանսաւորողը, նոյնիսկ նախ քան իր նախարարի պաշտօնը ստանձնելը:*

*Պատերազմի աւարտին Մէթնի շրջանի երեսփոխանի աթոռին իր նշանակումէն ետք, Պրն. Պարսումեան չահեցաւ ընտրութիւնը 1992-ին: Ան չմասնակցեցաւ 1996-ի ընտրութիւններուն, սակայն մնաց դահլիճի անդամ, որպէս քարիւղի նախարար, նախկին վարչապետ Ռաֆիք Հարիրիի կազմած երրորդ կառավարութենէն ներս. «Որոշ չափով, Պարսումեան բեռ մըն էր: Եղան ճնշումներ պարտադրելու համար զինք, որպէս թեկնածու 1996-ի ընտրութիւններուն, սակայն Դաշնակցութիւնը մերժեց այդ»- բսաւ Հնչակեան աղբիւր մը: «Ոչ ոք կը պաշտպանէ զինք, ինչ որ յատկանշական է: Համայնքէն ներս, ժողովուրդը ընդհանրապէս կը հաւատայ որ սխալ գործուած է:*

*Անձնական խօսակցութիւններու ընթացքին հայ քաղաքական մարդիկ նոյն կարծիքը արտայայտեցին. «Քարիւղի բաժինէն ներս, յստակ է որ Պարսումեան չէր կրնար առանձինը միջամուխ ըլլալ: Այս հարցին մէջ կան այլ անձինք որոնք կապուած են իր հետ: Դաշնակցական կուսակցութիւնը բաժնուած է: Պարսումեան, ունի թշնամիներ եւ պաշտպաններ: Ոմանք մտահոգուած են թէ, ի՞նչ պիտի պատահի երբ ան կը սկսի խօսիլ» բսաւ ան:*

*Ռամկավար կուսակցութեան պատասխանատու մը յայտարարեց.- «Համայնքը անհանգիստ է, որ կաշառակերութեամբ ամբաստանուող առաջին քաղաքական անձը հայ մըն է, սակայն պէտք է տեսնել, որ վերջ ի վերջոյ ան լիբանանցի է: Այն որ մասնակից եղաւ, որ երկիրը այսքան պարտքերու մէջ մխրճուի, պէտք է պատասխանատուութեան կանչուի: Այդ քայլը լաւ է երկրին տնտեսութեան համար»: Աւելցնելով նոյն պատասխանատուն բսաւ.- «Անդադար ինծի հարց կու տան, թէ ի՞նչ կը մտածեն հայերը եւ թէ ի՞նչ կը նշանակէ այս Դաշնակցութեան համար: Այս լիբանանեան քաղաքականութիւն է, երբ դուն կը բարձրանաս, ամէն մարդ քու բարեկամդ է, իսկ երբ իյնաս, առանձին ես» դիտել տուաւ ան:*

## ԼՂՀ-Ի ՆԱԽԱԳԱՀՆ ՈՒ ԻՐ ԸՆԿԵՐԱԿԻՑՆԵՐԸ ԱՑՑԵԼԵՑԻՆ ՀԱՑՈՑ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ

1

պաշտօնական հանդիպումն էր վիրահատութենէն ետք:

Ի պատասխան Նորին Սրբութեան ողջոյնին, նախագահ Ա. Ղուկասեան բսաւ. «Վեհափառ Տէր, Հայաստանի եւ Ղարաբաղի ղեկավարները ու ժողովուրդը կարօտցեր են Ձեզ»: Ան, խօսելով դէպի Ամերիկա կատարած իր այցելութեան նպատակներու մասին, գոհունակութիւն յայտնեց այցելութեան արդիւնքներու առընչութեամբ: Նշեց որ Ամերիկա եւ Եւրոպական կարգ մը երկիրներ սկսած են այլ տեսանկիւնէն դիտել Ղարաբաղը: Նախագահ Ղուկասեան յայտնեց նաեւ որ կարգ մը ամերիկեան քարիւղի ընկերութիւններ դադրած են հետաքրքրուիլ Ատրպէյճանի քարիւղով, քանի որ քարիւղի պաշարներու մասին նախապէս հրապարակուած յայտարարութիւնները չեն համապատասխաներ իրականութեան:



## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Պր. Գէորգ Մազլըմեանի ընդ Օր. Մարօ Մազլումեանի ամուսնութեան ուրախ առթիւ, վասն շնորհաւորութեան, Տիկին Ալիս Մազլումեան կը նուիրէ 50

Ողբ. Յովսէփ Մովսէսեանի յանկարծական մահուան եւ քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տէր եւ Տիկին Ալպէռ Քրէտեան | 50 |
| Տիկին Արաքսի Ճանիկեան | 20 |

Ողբ. Հայկազ Գալուստեանի մահուան տխուր առթիւ, Տէր եւ Տիկին Ալպէռ Քրէտեան կը նուիրեն 50

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ողբ. Էթիլ Կարիպեանի (Մօնաքօ) մահուան եւ քառասունքին առիթներով, Տէր եւ Տիկին Օննիկ Կարիպեաններ կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 100 |
| Գահիրէի Աղքատախնամին | 100 |
| Գալուստեան Ազգ. Վարժարանի ճաշի սեղանին | 100 |
| Հայ Գեղ. Միութեան | 100 |
| Կոկանեան Սրահին | 100 |
| Հ.Մ.Ը.Մ.- Նուպարին (Գահիրէ) | 100 |
| «Արեւ»ին | 100 |
| «Արեւ»ի արաբերէն յաւելուած ամսաթերթին | 100 |
| «Յուսաբեր»ին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

Իր չատ սիրեցեալ ծնողաց Ողբք. Պօղոս եւ Սիրանոյշ Սագայեաններու եւ մեծմօր, Ողբ. Բոյանթի Պալթայեանի քաղցր եւ անմոռանալի յիշատակին, Օր. Մարօ Սագայեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Հայ Գեղ. Միութեան | 50 |
| Կոկանեան Սրահին | 50 |
| «Արեւ»ին | 50 |
| «Ջահակիր»ին | 50 |

## «Հնատիպի» Նպատակն է Հայերեն Հնատիպ Գրքերի Յայտնաբերումն ու Պահպանութիւնը

2

*երկու օրինակ, կամ էլ բոլորովին չի պահպանուել: Մինչդեռ դրանք տպագրուել են 300-3000 տպաքանակով: Ի դէպ, հայերէն յայտնի գրքերի կէսը գտնւում է այլ երկրներում, այնտեղ, որտեղ իրականացուել է դրանց տպագրութիւնը:*

*Նորաստեղծ կազմակերպութիւնը իր առջեւ խնդիր է դնում միաւորել, թէ Հայաստանի եւ թէ արտերկրի անհատ գրքատէրերին, նաեւ փնտռել-գտնել հայ մատենագիտութեանը ցայսօր անյայտ օրինակները:*

*Ենթադրւում է, որ կարող է հայերէն գրքեր տպագրուած լինեն նաեւ ինկունաբուլա (օրօրոցային) շրջանում՝ Կուտնպէրկեան առաջին գրքի տպագրութիւնից՝ 1448թ. մինչեւ 1500 թուականը: Այս շրջանում Եւրոպայում տպագրուել է 40 հազար անուն գիրք (մօտ 12 միլիոն տպաքանակով), եւ դժուար է հաւատալ, որ տեղի հայկական մեծ համայնքները անմասն մնային այդ գործից: Չէ որ պետականութիւնը կորցրած, աշխարհով մէկ սփռուած հայերին լեզուի ու մշակոյթի հետ հայ է պահել նաեւ գիրքը:*

## ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԼՂՀ ՆԱԽԱԳԱՀ ՂՈՒԿԱՍԵԱՆԻ ՀԵՏ

1

*մեծ կարիք կայ սփիւռքահայութեան օժանդակութեան ու տնտեսական ներդրումներուն: Պր. Ղուկասեան անդրադարձաւ նաեւ Ղարաբաղեան հարցի խաղաղ միջոցներով լուծման բանակցութիւններուն ու յայտնեց, որ միջազգային շրջանակներու մօտ վերաբերմունքը սկսած է փոխուիլ՝ ի նպաստ Ղարաբաղի: ԼՂՀ նախագահը ապա պատասխանեց պատուիրակութեան անդամներու չարք մը հարցերուն:*

*Շուրջ մէկ ժամ տեւող սոյն հանդիպումին ներկայ էին նաեւ ԼՂՀ արտաքին գործոց նախարար՝ Նայիրա Մելքումեան եւ Ուաշինկթընի մօտ Հայաստանի Հանրապետութեան դեսպան Ռուբէն Շուքարեան:*

## ԸՆԿԵՐՈՒՀԻ ԱԶՆԻՒ ԿԻՏՈՒՐԵԱՆ ՈՉ ԵՒՍ Է

Խոր ցաւով տեղեկացանք, որ իր մահկանացուն կնքած է Լիբանանի «Արարատ» օրաթերթի «Հայ Կնոջ էջ»ի երկարամեայ խմբագրուհի եւ շրջանի կանանց կազմակերպութիւններու ժրաջան անդամուհիներէն՝ ԸՆԿԵՐՈՒՀԻ ԱԶՆԻՒ ԿԻՏՈՒՐԵԱՆ Ուրբաթ 12 Փետրուար 1999-ին, յետ երկարատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութեան արարողութիւնը տեղի ունեցած է յաջորդ օրը՝ Շաբաթ 13 Փետրուար կ.ե. ժամը 2.-ին, Լիբանանի Ս. Յարութիւն եկեղեցւոյ մէջ, ուրկէ հանգուցեալին մարմինը փոխադրուած է «Ֆըրն էլ Շպպէք»ի ազգային գերեզմանատունը եւ ամփոփուած ընտանեկան դամբանին մէջ:

Այս տխուր առթիւ «Ջահակիր»ի խմբագրութիւնը իր խորազգաց ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին ամուսնոյն, զաւակներուն, Կիտուրեան եւ Ճէրէճեան ընտանիքներուն ինչպէս նաեւ սգակիր բոլոր պարագաներուն:

## ՈՉ ԵՒՍ Է ԵՐԳԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՊԵՐՊԵՐԵԱՆ

Ցաւով կը տեղեկանանք թէ Շաբաթ 13 Մարտին, Պոսթընի մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան, իր մահկանացուն կնքած է անուանի յօրինող, խմբավար, Կոմիտասի վերջին սան ու աշակերտ Համբարձում Պերպերեան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Նուպարեան Ազգային Վարժարանի Տնօրէնութիւնը, Հոգաբարձութիւնը եւ Ծնողք - Ուսուցիչ Միութիւնը այսու իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն Գահիրէի Ազգային Իշխանութեան որ «Իսուզու» մակնիշով նոր ինքնաշարժով մը օժտեց մեր վարժարանը:

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այսու կու գանք մեր խորին շնորհակալութիւնները յայտնելու Եգիպտոսի բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի, Հայ Կաթողիկէ համայնքի Վիճակաւոր Գերպ. Տ. Պետրոս Եպս. Թարմունիի, Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեանի, Գահիրէի Ազգային Իշխանութեան, Եգիպտոսի մօտ ՀՀ Դեսպանութեան, Կոկանեան Սրահի վարչութեան, «Նուպար Տպարան»ի, «Յուսաբեր», «Արեւ» օրաթերթերուն եւ «Ջահակիր» շաբաթաթերթի, ինչպէս նաեւ բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագրով, նամակով, նուէրով կամ ծաղկեփունջ ուղարկելով եւ զանազան հաստատութեանց նուիրատուութիւններ ընելով, իրենց խնդակցութիւնը յայտնեցին, շնորհաւորելով մեր Ս. Պսակի Խորհուրդը:

Յաջողութեան մաղթանքներով՝

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՍԻՄՈՆ ԵՒ ՎԻՎԵԱՆ ՋԱՄՔԷՐԹԷՆԵԱՆ**

ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ԹԵՄԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ ԺՈՂՈՎ ...

2

*ժողովը իր ատենագրութեան մէջ արձանագրել փափաքեցաւ այն մասին թէ, ըստ Եգիպտոսի պետական օրէնսդրութեան եւ սահմանադրութեան, կիները ընտրելու եւ ընտրուելու իրաւունք ունենալնուն համար, իր ատենին Ազգային Առաջնորդարանս եւ Գործադիր ժողովը տեղեկացուցած են Ներքին Գործոց Նախարարութեան այս մասին:*

- Աղեքսանդրիոյ Քիփէլեան ազգապատկան կալուածի վաճառման արտօնութեան հարց.

*Խնդրոյ առարկայ կալուածին մասին բերանացի զեկոյց մը տուաւ երեսփոխան Տոքթ. Էտուար Մանուկեան, բացատրութիւնները փոխանցելով ժողովականներուն ներկայացուցած հարցադրումներուն:*

*Թեմական համագումար ժողովը միաձայնութեամբ համաձայնութիւն յայտնեց կալուածին վաճառման համար, Աղեքսանդրիոյ պատ. Քաղաքական Ժողովի տնօրինումին յանձնելով յարմարագոյն եւ օրինական առուծախի կարգադրութիւնները:*

- Մեր եկեղեցւոյ մէն մի անդամէն գանձելի տարեկան ազգային տուրքի սակագինի վերատեսութեան հարց.

*Ազգային տարեկան տուրքի սակագինի առընչութեամբ, երեսփոխանները արտայայտուեցան այս ուղղութեամբ ազգային պարտականութիւն մը կատարելու անտարբեր կեցուածքներու մասին, որոնք կը դրսեւորուին ազգայիններու կողմէ: Կարծիքներու փոխանակումի աւարտին, Թեմական համագումար ժողովը միաձայնութեամբ որոշեց ազգային տուրքի տարեկան սակագինը 5 ոսկիէն բարձրացնել 10 Ե. Ոսկիի: Որոշուեցաւ նաեւ, Եգիպտահայ մամուլի միջոցով ազգայիններուն մօտ տարեկան ազգային տուրքը վճարելու պարտականութեամբ գիտակցութիւնը խթանել:*

*Թեմական համագումար ժողովը քննարկեց նաեւ զանազան վկայագրերու, Նշան-Պսակի, Նշանախօսութեան, Մկրտութեան, Յուղարկաւորութեան եւ Հոգեհանգիստի այժմու սակագինները վերատեսութեան ենթարկելու եւ յաւելումներ կատարելու առաջարկ - հարցը: Կարծիքներու փոխանակման աւարտին, միաձայնութեամբ որոշուեցաւ փոփոխութիւններ կատարել խորհրդակատարութեանց եւ վկայականներու կարգ մը սակագիններուն հետեւեալ ձեւով.-*

*- Վկայականներ՝ 10-էն 20 Ե. Ոսկի.*

*- Նշան-Պսակ՝ Եկեղեցւոյ սակը Ա. կարգ 200 Բ. կարգ 100 Ե.Ո. մանրամասնութիւնները Քաղաքական Ժողովի որոշմամբ.*

*- Նշանախօսութիւն՝ 30 - 50 ոսկի*
*- Մկրտութիւն՝ 80 - 120 ոսկի*
*- Հոգեհանգիստ՝ 20 - 25 ոսկի*
*- Յուղարկաւորութիւն՝ 125 ոսկի*

*Եգիպտահայ Թեմական համագումար ժողովի օրակարգային հարցերու քննարկումը իր աւարտին հասած ըլլալով, նիստը փակուեցաւ ժամը 7-ին, Առաջնորդ Սրբազան Հօր Պահպանիչով:*

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1399 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՄԱՐՏ 1999 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. | ١٩٩٩ مارس ٢٥ الخميس — ١٣٩٩ عدد رقم


## Սերկէյ Մանասարեան Եգիպտոսի Մօտ Հայաստանի Արտակարգ Եւ Լիազօր Դեսպան Նշանակուած Է Եւ Գահիրէ Կը Հասնի Այսօր

ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեան Մարտ 18-ին, հրամանագիր մը ստորագրած է Սերկէյ Մանասարեանը ՀՀ արտաքին գործերու տեղակալի պաշտօնէն ազատելու մասին: ՀՀ նախագահի մամլոյ գրասենեակի հաղորդման համաձայն, Ռ. Քոչարեան նոյն օրուայ մէկ այլ հրամանագրով Ս. Մանասարեանը նշանակած է Եգիպտոսի մօտ Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան:

Դր. Ս. Մանասարեան Գահիրէ կը հասնի այսօր, ստանձնելու համար իր նոր պաշտօնը:

Սերկէյ Մանասարեանը ծնած է 1959-ին Երեւանի մէջ: Գերազանցութեամբ աւարտած է Հայկական գիւղատնտեսական ինստիտուտը. այնուհետեւ՝ «Հայգիւղմեքենայացում» գիտա-արտադրական միաւորման ասպիրանտուրան: Աշխատած է Ջրային փրոպլէմներու գիտա-հետազօտական ինստիտուտը՝ «Հայգիւղմեքենայացում» ԳԱՅ միաւորումի եւ տնտեսական նախարարութեան մէջ: 1992-93 տարիներուն ընտրուած է ՀՀ փոխ-վարչապետի օգնական. 1993-95 տարիներուն ՀՀ վարչապետի աշխատակազմի ղեկավար, ՀՀ կառավարութեան գործերու կառավարիչ: 1995 Յուլիսէն 1996-ի Նոյեմբերը Ս. Մանասարեան աշխատած է ՀՀ կառավարութեան քարտուղար-նախարար: 1996-ի Նոյեմբերէն ՀՀ արտգործնախարարի տեղակալ է: 1997 Յուլիսէն իրեն շնորհուած է արտակարգ եւ լիազօր դեսպանի դիւանագիտական աստիճան: Ան տնտեսական գիտութիւններու թեկնածու է:

Ամուսնացած է եւ ունի երկու երախայ:

**ՖՐԱՆՍԱ**

## ԴԵՍՊԱՆ ԷՏՈՒԱՐՏ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ Իր Հաւատարմագրերը Յանձնեց Ֆրանսայի Նախագահին

Ֆրանսայի մօտ ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Դր. Էտուարտ Նալպանտեան Մարտ 16-ին, «Էլիզեան» պալատին մէջ իր հաւատարմագրերը յանձնեց Ֆրանսայի Հանրապետութեան նախագահ Ժագ Շիրագին:

Ինչպէս յայտնեցին, ՀՀ ԱԳՆ հասարակայնութեան հետ յարաբերութիւններու վարչութենէն, Ֆրանսայի նախագահի հետ ունեցած առանձնազրոյցի ընթացքին դեսպան Նալպանտեան, հաղորդելով ՀՀ նախագահ Ռ. Քոչարեանի բարեմաղթանքները, ընդգծեց, որ Հայաստանը մեծ կարեւորութիւն կուտայ Ֆրանսայի հետ յարաբերութիւններու զարգացմանն եւ ընդլայնմանը, հնարաւոր բոլոր բնագաւառներու մէջ:

Դեսպանը ներկայացուց Հայաստանի ներկայիս իրավիճակը եւ Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան կարգաւորման գործընթացը: Նախագահ Շիրագը նշեց, որ Փարիզը շահագրգռուած է Երեւանի հետ յարաբերութիւններու ընդլայնմամբ եւ պատրաստ է շարունակել աջակցիլ ժողովրդավարութեան եւ շուկայական յարաբերութիւններու ամրապնդման, ներդրումներու խրախուսման ու տնտեսական զարգացման Հայաստանի մէջ: Ան յատկապէս կարեւորեց խաղաղութեան եւ կայունութեան հաստատումը տարածաշրջանին մէջ եւ Լեռնային Ղարաբաղի հարցի կարգաւորումը:

## ՇԻՐԱԳԸ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ Է ՏՈՒԵԼ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՃԱՆԱՉՄԱՆ ՀԱՐՑԸ ՍԵՆԱՏԻ ՕՐԱԿԱՐԳ ՉՄՏՑՆԵԼՈՒՆ

Մարտի 17-ին կայացած Ֆրանսիայի Սենատի նիստում արտգործնախարար Եուբեր Վեդրինը տեղեկացրել է, որ կառավարութիւնը՝ նախագահ Շիրագի համաձայնութեամբ, մտադիր չէ գրանցել Հայոց ցեղասպանութեան հարցը Սենատի օրակարգում:

Արտգործնախարարը պատճառաբանել է, որ այդ մասին օրէնքի ընդունումը կարող է հրահրել ազգայնական հակամարտութիւնները Ղարաբաղի հարցով տարածաշրջանում հակադրուած պետութիւնների միջեւ եւ առաջ բերել նոր ողբերգութիւններ:

**ԼՈՆՏՈՆ**

## ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԸ ԵՒ ՌՈՊԻՆ ՔՈՒՔԸ ՔՆՆԱՐԿԵՑԻՆ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԻՄՆԱՀԱՐՑԻ ԼՈՒԾՄԱՆ ԽՈՉԸՆԴՈՏՆԵՐԻ ՅԱՂԹԱՀԱՐՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Պաշտօնական այցով Մեծ Բրիտանիայի եւ Հիւսիսային Իռլանտիայի Միացեալ Թագաւորութիւնում գտնուող ՀՀ արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանը Մարտի 17-ին հանդիպեց Միացեալ Թագաւորութեան արտաքին գործերի եւ համագործակցութեան պետական քարտուղար Ռոպին Քուքի հետ:

ՀՀ ԱԳՆ հասարակայնութեան հետ յարաբերութիւնների վարչութեան հաղորդման համաձայն, հանդիպմանը քննարկուեցին վերջին զարգացումներն Անդրկովկասում եւ Լեռնային Ղարաբաղի հիմնահարցի լուծման խոչընդոտների յաղթահարման ուղիները: Ընդգծուել է, որ ԼՂ հակամարտութեան կարգաւորումը կարող է լինել միայն չպարտադրված,

3

**ԵՐԵՒԱՆ**

## Ի Տարբերութիւն Քոսովոյի, Ղարաբաղում Մնում Է Լուծել Կարգավիճակի Հարցը

Քոսովոյի հակամարտութեան կարգաւորման հարցում Հայաստանը կողմ է խաղաղ բանակցութիւնների միջոցով լուծումներ գտնելուն: «Ոչ միայն Ղարաբաղի, այլեւ առհասարակ բոլոր հակամարտութիւնների հարցում մենք դէմ ենք ռազմական ուժի օգտագործման նախադէպ հաստատելուն եւ ռազմական միջոցով որեւէ մէկին ինչ-որ լուծում պարտադրելուն», -Մարտի 22-ի ասուլիսում ասաց ՀՀ ԱԳ նախարար Վարդան Օսկանեանը:

Զուգահեռներ անցկացնելով ղարաբաղեան եւ Քոսովոյի հակամարտութիւնների միջեւ, նա նշեց, որ դրանցում իրավիճակները խստօրէն տարբերւում են:

Քոսովոյի դէպքում խօսքը գնում է ժամանակաւոր լուծման՝ արիւնահեղութիւնը դադարեցնելու մասին, իսկ կարգավիճակի խնդիրը յետաձգւում է երեք տարով: Այսօր սեղանի վրայ եղած պայմանագրում նշւում է, որ երեք տարի յետոյ, երբ բանակցութիւնները վերսկսուեն Քոսովոյի կարգավիճակի մասին, պէտք է անպայմանօրէն հաշուի առնուի Քոսովոյի ժողովրդի կամքը: «Ես կարծում եմ, որ սա մեզ համար դրական երեւոյթ է. փաստօրէն, միջազգային հանրութիւնը համաձայնում է ժողովրդի կամքը հաշուի առնելու սկզբունքի հետ. դա ինքնորոշման լաւագոյն դրսեւորումն է«, -ասաց ԱԳ նախարարը:

Վ. Օսկանեանը նշեց, որ Ղարաբաղի դէպքում միջանկեալ որոշումներ որոնելու կարիք չկայ, քանի որ այստեղ գինադադար է, եւ իրողութիւն է, որ Ղարաբաղի ժողովուրդն արդէն ինքնորոշուել է: «Մնում է, որ միանգամից անցնենք կարգավիճակի քննարկմանը», -ասաց Վ. Օսկանեանը:

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԴԵՍՊԱՆԸ ԱՅՑԵԼԵՑ ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ

ԵՐԵՒԱՆ, 15 ՄԱՐՏ. ԱՐՄԵՆՓՐԵՍ: Մարտի15-ին Հայաստանի Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան կենտրոնական գրասենեակը այցելեց Հայաստանի մօտ Ռուսաստանի Դաշնութեան արտակարգ եւ լիազօր դեսպան Անատոլի Դրեուկով, հանդիպում ունենալով ՍԴՀԿ-ի ատենապետ Էռնեստ Սողոմոնեանի եւ կուսակցութեան վարիչ մարմնի անդամներու հետ:

Հանդիպման ժամանակ քննարկուեցան ռուս-հայկական համագործակցութեան, բարեկամական յարաբերութիւններու զարգացման, ինչպէս նաեւ ներքաղաքական իրավիճակին ու Ազգային Ժողովի ընտրութիւններու վերաբերող հարցեր:

Է. Սողոմոնեան ներկայացուց Մայր կուսակցութեան գաղափարախօսութիւնը եւ գործունէութիւնը վերջին տարիներուն: Ա. Դրեուկով համոզմունք յայտնեց, որ Կուսակցութիւնը յաջողութեամբ կը յաղթահարէ հայրենի հողին վրայ վերահաստատուելու բարդ փուլը եւ կը պահպանէ իր արժանի տեղը քաղաքական դաշտի վրայ:

Կողմերը պայմանաւորուեցան գիտական եւ մշակութային ոլորտներու մէջ համագործակցութեան շուրջ:

Հանդիպմանը ներկայ էին ՌԴ դեսպանութեան խորհրդական Վ. Մուզիչենկոն, Հայաստանի ՍԴՀԿ փոխ-ատենապետ Նորայր Սիմոնեան եւ Համազգային Գիտա-խորհուրդի նախագահ, Վարիչ Մարմնի անդամ, գիտութիւններու դոկտոր, պրոֆեսոր Սիներիկ Հայրապետեան:

**ԱՒՍՏՐԱԼԻԱ**

## ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՅՈՒՇԱՏԱԽՏԱԿԻ ԲԱՑՈՒՄ ԱՒՍՏՐԱԼԻՈՅ ՄԷՋ

Աւստրալիոյ շրջանի Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան լրատուական աղբիւրները կը տեղեկացնեն, որ Նոր Հարաւային Ուէյլզ (N.S.W.) նահանգի խորհրդարանի շէնքէն ներս վերջերս տեղի ունեցած է 1915 թուականի Հայոց եղեռնին նուիրուած յուշատախտակի բացման արարողութիւնը:

Պղինձէ յուշատախտակը, որու վրայ փորագրուած է Նոր Հարաւային Ուէյլզի խորհրդարանի կողմէ Հայոց ցեղասպանութեան ճանաչման մասին բանաձեւի լրիւ թեքստը, բացած է նահանգի վարչապետ Պոպ Քարր:

Յուշատախտակի բացումը կարելի դարձած էր Հայոց եղեռնի ճանաչման յանձնախմբի եւ Սիտնիի հայ համայնքի ջանքերուն շնորհիւ:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ԿԱՅԱՑԱՒ ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻ ԵՒ ԱՄՆ-ԻՑ ՎԵՐԱԴԱՐՁԱԾ ԼՂՀ ՆԱԽԱԳԱՀԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ

ԵՐԵՒԱՆ, 19 ՄԱՐՏԻ, ՆՈՅԵԱՆ ՏԱՊԱՆ: Մարտի 19-ին ՀՀ նախագահ Ռոբերտ Քոչարեանը հանդիպում ունեցաւ Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան նախագահ Արկադի Ղուկասեանի հետ, որը նախօրէին է վերադարձել Միացեալ Նահանգներից:

ՀՀ նախագահի մամլոյ գրասենեակից ստացուած հաղորդագրութեան համաձայն, պ-ն Ղուկասեանը մանրամասն տեղեկութիւններ հաղորդեց այցի ընթացքում ունեցած հանդիպումների եւ բանակցութիւնների վերաբերեալ:

Երկու երկրների ղեկավարներն անդրադարձան նաեւ ղարաբաղեան հակամարտութեան կարգաւորման գործընթացի վերջին զարգացումներին:

## ՀՀ Նախագահ Ռ. Քոչարեան Հռոմ Կ'այցելէ Այսօր «ՀԱՅԱՍՏԱՆ-ՀՌՈՄ» ԽՈՐԱԳՐԵԱԼ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ ՎԱՏԻԿԱՆԻ ՄԷՋ

Հայաստանի նախագահ՝ Ռոպերթ Քոչարեանի գլխաւորութեամբ պատուիրակութիւն մը երկօրեայ պաշտօնական այցելութեամբ Հռոմ, Վատիկան պիտի մեկնի այսօր, մասնակցելու «Հայաստան-Հռոմ» խորագրեալ ցուցահանդէսի բացման հանդիսաւոր արարողութեան: Բացի ցուցահանդէսէն, նախագահ Քոչարեան հանդիպումներ պիտի ունենայ նաեւ Հռոմի Պապի եւ Իտալիոյ նախագահի հետ: Նոյն ցուցահանդէսին նախատեսուած է որ մասնակցին նաեւ Գարեգին Ա. Վեհափառ Հայրապետը, Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոս Արամ Ա. ու Երուսաղէմի Պատրիարքը:

«Հայաստան-Հռոմ» ցուցահանդէսը պիտի բացուի Քրիստոնէութեան 1700ամեակի միջոցառումներու շրջագծով: Ցուցահանդէսը կազմակերպելու պարտականութիւնը ստանձնած են Ֆրանսահայ նշանաւոր մտաւորական Գլոտ Արմէն Մութաֆեան, Հայաստանի Մշակոյթի նախարարութիւնը, Հայ Առաքելական Եկեղեցին, ինչպէս նաեւ արտասահմանեան կազմակերպութիւններ:

Ցուցահանդէսին իրենց նմոյշներով պիտի մասնակցին Մայր Աթոռ Ս. Էջմիածնի թանգարանը, Հայաստանի Պատմութեան թանգարանը, Պետական Պատկերասրահը, Չարենցի Գրականութեան եւ Արուեստի թանգարանը, Մատենադարանը, ինչպէս նաեւ բազմաթիւ թանգարաններ՝ արտասահմանէն, օրինակ՝ Իտալիայի մօտաւորապէս 30 զանազան քաղաքներէն եւ այլն: Ցուցահանդէսը պիտի սարքուի Վատիկանի գրադարանի Սիքսթինեան սրահին մէջ եւ բաց պիտի ըլլայ 25 Մարտէն մինչեւ 16 Յուլիս:

Ցուցանմոյշները Հայաստանէն դէպի Վատիկան յատուկ օդանաւով ուղարկուած էին 16 Մարտին:

**ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## ՕԼՊՐԱՅԹ ԴԱՐՁԵԱԼ ԿԸ ՊԱՀԱՆՋԷ ՎԵՐՑՆԵԼ ԹԻՒ 907 ՀԱՏՈՒԱԾԸ

Միացեալ Նահանգներու Պետական Քարտուղար Մատլըն Օլպրայթ դարձեալ պահանջեց վերցնել թիւ 907 հատուածը, որ կ'արգիլէ ամերիկեան կառավարութեան կողմէ ուղղակի օժանդակութիւն տալ Ատրպէյճեանին:

Ամերիկեան Ծերակոյտին ուղղուած գրաւոր վկայութիւն մը տալով Օլպրայթ յայտնեց, որ նախագահ Գլինթընի վարչակարգը այս տարի պիտի վերանորոգէ իր դիմումը, որպէսզի թիւ 907 հատուածը դուրս հանուի արտաքին օժանդակութեան օրինագիծէն:

Անցեալ տարի, Ներկայացուցիչներու Տունը 231-ի դէմ 182 ձայնով որոշած էր պահել Ատրպէյճանի դէմ արգելքը, հակառակ վարչակարգին եւ քարիւղի ընկերութիւններուն կողմէ բանեցուած ճնշումներուն:

ԵՐՈՒՍԱՂԷՄ

## ԱՋԱԿՑՈՒԹԻՒՆ՝ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԵԲՐԱՅԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱԺՆԻՆ

Նիւ Եորքաբնակ Սուրէն Ֆէնճեան 10.000 տոլար նուիրատուութիւն կատարած է Երուսաղէմի Եբրայական Համալսարանի հայկական ուսումնասիրութիւններու բաժնին՝ այդ բաժնի ուսանողներուն կրթաթոշակ յատկացնելու նպատակաւ: Ս. Ֆէնճեան ծանօթ դէմք մըն է՝ Ամերիկահայ գաղութէ ներս: Ան զգալի նպաստ բերած է Երուսաղէմի Պատրիարքարանին եւ հայկական մշակոյթի զանազան ձեռնարկներուն:

Յայտնենք որ Երուսաղէմի Եբրայական Համալսարանի հայկական ամպիոնի այս տարուան ուսումնական ծրագիրներուն մէջ ընդգրկուած են գրաբարի նախաքայլեր, խօսակցական արեւմտահայերէն, հայ արուեստի պատմութիւն, արաբական տիրապետութեան շրջանի Հայաստանի պատմութիւն դասերը:

ՖՐԱՆՍԱ

## ՏՔԹ. ԱՆԱՀԻՏ ՏՕՆԱՊԵՏԵԱՆ ԵԻՍ ՖՐԱՆՍԱՅԻ ՎԱՐՉԱՊԵՏԻՆ ԴԻՄԵՑ ՈՐՊԷՍԶԻ ԱՐԵՒՄՏԱՀԱՅԵՐԷՆԸ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԻ ԵՒՐՈՊԱՅԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԼԵԶՈՒՆԵՐՈՒ ՈՒԽՏԻՆ ՄԷՋ

Ֆրանսայի Ռոն շրջանի երեսփոխան եւ Վիլէօրպան քաղաքի փոխ քաղաքապետ Ժան Փոլ Պրէտ գրաւոր դիմում մը կատարած էր վարչապետին եւ պահանջած էր որ արեւմտահայերէնը արձանագրուի շրջանային ու փոքրամասնութեանց լեզուներու Եւրոպական Ուխտին մէջ: Այս Ուխտը կ'օգնէ որ ճանաչում գտնեն այն լեզուները, որոնք երկիր կամ Սփիւռք չունին: Անոնցմէ մէկն է արեւմտահայերէնը, լեզու մը որ ատենօք կը գործածուէր Օսմանեան հողատարածքի հայերուն կողմէ: Այս լեզուն 1915-ի դէպքերէն վերջ դարձաւ միայն Սփիւռքի, մասնաւորաբար Ֆրանսայի մէջ հայկական ծագում ունեցող ընտանիքներու լեզուն:

Ֆրանսացի երեսփոխանը դիտել տուաւ որ Հայաստանի մէջ գործածուած լեզուն շատ տարբեր է արեւմտահայերէնէն, այս պարագան մեզի իրաւունք կուտայ որպէսզի արեւմտահայերէնը արձանագրենք հողատարածք չունեցող լեզուներու ցանկին մէջ:

Այս նիւթի շուրջ Փարիզի մեր պաշտօնակից «Յառաջ» կը տեղեկացնէ թէ «Հայկական Ուսումներու Ընկերակցութեան նախագահուհի Գիտութիւններու Տոքթոր՝ Անահիտ Տօնապետեան եւս նոյն նիւթին շուրջ նամակ մը ղրկած է վարչապետին եւ այժմ կը պահանջուի որ Ֆրանսահայ բոլոր կազմակերպութիւնները, եկեղեցի, դպրոց, մամուլ, մշակոյթի տուն, բարեսիրական կազմակերպութիւններ, ֆաքսով, նամակով զօրակցին Տոքթ. Անահիտ Տօնապետեանի նամակին: Թերթը նշել կուտար որ այս գործը պարտականութիւն մըն է որ պէտք է կատարուի:

Տքթ. Տօնապետեան վարչապետին ուղղեալ իր նամակին մէջ իր կարգին տեղեկութիւններ կուտայ Օսմանեան շրջանի հայերու կողմէ գործածուած արեւմտահայերէնին մասին եւ կը պահանջէ որ Ֆրանսա շարժման անցնի այս լեզուն ալ արձանագրել տալու համար Ուխտին մէջ: Տիկ. Տօնապետեան կը գրէ որ գիտէ թէ Ֆրանսա ի վիճակի չէ իր հողատարածքին վրայ խօսուած բոլոր անհայրենիք լեզուները այս ցանկին մէջ ներմուծելու, մանաւանդ որ այս ցանկին մէջ պիտի չներմուծուի գաղթականներու լեզուն: Բայց Ֆրանսա կրնայ օգտուիլ այն յօդուածէն, ըստ որու Ուխտը պիտի արձանագրէ «անհայրենիք» լեզուները: Այս յօդուածին լոյսին տակ արդէն բազմաթիւ երկիրներ ընդունած են ռոմաներէնը, եիտիշերէնը:

Տքթ. Տօնապետեան իր նամակին մէջ բացատրութիւններ տուած է արեւելահայերէնի ու արեւմտահայերէնի միջեւ գտնուող տարբերութիւններուն մասին: Ան դիտել տուած է որ այսօր հայերը, որոնք շատ հաւատարիմ են իրենց լեզուին ու մշակոյթին, կատարելապէս նոյնացած են նաեւ Ֆրանսայի հետ ուր կ'ապրին, եւ իրենց հաւատարմութիւնը քանիցս փաստած են Ա. Աշխարհամարտէն ասդին Ֆրանսայի պատմութեան մէջ: Կարեւոր է յիշել նաեւ որ 1985-ին այդ շրջանի վարչապետին կողմէ ստեղծուած Շրջանային Լեզուներու Եւ Մշակոյթներու Ազգային խորհուրդը իր ցանկին մէջ ընդունած էր նաեւ հայերէն լեզուն:

Այսօր Ֆրանսայի մէջ 400 հազար հայեր կ'ապրին եւ այս հայերը պիտի չկարենան հասկնալ թէ ինչո՞ւ Ֆրանսա պիտի չօգնէ որպէսզի անոնց գործածած արեւմտահայերէնը արձանագրուի անհայրենիք լեզուներու ցանկին մէջ:

«ՄԱՐՄԱՐԱ»

ԵՐԵՒԱՆ

## Երեւանում Նշուեց Սփիւռքահայ Գրող-Հրապարակախօս Սիմոն Սիմոնեանի Ծննդեան 85-ամեակը

Հայաստանի եւ սփիւռքի ճանաչուած մտաւորականների մասնակցութեամբ Մարտի 22-ին Երեւանի գամերային երաժշտութեան տանը նշուեց սփիւռքահայ նշանաւոր հրապարակախօս, գրող եւ հասարակական գործիչ Սիմոն Սիմոնեանի (1914 թ. Մարտի 24, Այնթապ-1986 թ. Մարտի 24, Պէյրութ) ծննդեան 85-ամեակը: Հաւաքը նախաձեռնել էին ՀՀ մշակոյթի, երիտասարդութեան հարցերի եւ սպորտի նախարարութիւնը, Հայաստանի գրողների միութիւնը եւ Մեծ Եղեռնի եւ Հայոց Ազատամարտի «Ուխտատուն» թանգարան-ինստիտուտը:

Գրողի մասին խօսք ասացին Սասուն Գրիգորեանը, Սիլվա Կապուտիկեանը, ՀՀ մշակոյթի, երիտասարդութեան հարցերի եւ սպորտի նախարար Ռոլանտ Շառոյեանը, անուանի գրականագէտներ, պատմաբաններ, հիւրեր Պէյրութից:

«Պէյրութից յատկապէս եկել եմ հօրս 85-ամեակին նուիրուած այս հանդիսութիւններին մասնակցելու համար» ԱՐՄԵՆՓՐԵՍԻ թղթակցին ասաց գրողի որդին՝ Սասուն Սիմոնեանը: «Ուրախ եմ, որ առաջին անգամ լինելով նման ձեռնարկ է կազմակերպուել մայր Հայրենիքում: Թէեւ ուշացումով, բայց, մեծ գոհունակութեամբ եմ նշում, պատիւ եմ համարում Սիմոն Սիմոնեանի այս ձեւով վերադարձը Հայաստան: Նաեւ գոհ եմ, որ Հայաստանի հասարակայնութիւնը հնարաւորութիւն ունեցաւ ծանօթանալու Սիմոն Սիմոնեանի կեանքին ու գործին»:

Ականաւոր գրող-հրապարակախօսի յոբելեանի առթիւ այս օրերին Հայաստանի գրողների միութեան «Նոր դար» հրատարակչութիւնը լոյս է ընծայել նրա »Անժամանդրոս« վէպը, իսկ «Ուխտատուն» թանգարան-ինստիտուտի հրատարակչութիւնը ընթերցողին է յանձնել Սասուն Գրիգորեանի «Բազմատաղանդ երախտաւորը» ուսումնասիրութիւնը: Վերջինս իր աշխատութիւնում նշում է, որ Սիմոն Սիմոնեանը ծանօթ չէ հայ ընթերցողին, քանի որ նա Հայաստանում արգելուած գրող էր: Պատճառն այն էր, որ նա 1958 թուականին իր իսկ հիմնադրած «Սփիւռք» շաբաթաթերթում պահանջել է Ղարաբաղն ու Նախիջեւանը վերադարձնել Հայաստանին, իսկ 1959, 1960, 1966 թուականներին այդ իսկ պահանջով նամակ-դիմումներ հղել ԽՍՀՄ եւ Ատրպէյճանի ղեկավարներին:

## ԱԶԳԱՅԻՆ ԲԱՐԵՐԱՐ ՍԱՐԳԻՍ ՍՈՂԱՆԱԼԵԱՆ ՅՈՐԴԱՆԱՆԻ ՄԷՋ

*Կը տեղեկանանք թէ Ազգային բարերար Պր. Սարգիս Սողանալեան, անձնական աշխատանքներու կապակցութեամբ կեցութիւն հաստատած է Յորդանանի մէջ, Փարիզի իր գրասենեակը պահելով հանդերձ:*

*Պր. Սողանալեան պալատական շրջանակներու հետ իր ունեցած սերտ կապերով մեծապէս օգտակար կը հանդիսանայ նաեւ մեր ազգային գործերու եւ հայութիւնը էապէս հետաքրքրող հարցերուն:*

*Յաջողութիւններ կը մաղթենք մեր ազգային բարերարին ինչպէս նաեւ իր որդւոյն Պր. Կարօ Սողանալեանին:*

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

### «Mercedes Benz» ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՄԻ ՇԱՐՔ ԾՐԱԳՐԵՐ Կ'ԻՐԱԿԱՆԱՑՆԻ

*«Մերսետէս Պէնզ» ֆիրման մտադիր է Հայաստանում մի շարք ներդրումային ծրագրեր իրականացնել, մասնաւորապէս, նախատեսւում է սեփական արտադրութեան հիմնել եւ ֆիրմայի մակնիշը կրող տաքսի աւտոմեքենաներ ներկրել: Օրերս կայացած ՀՀ ֆինանսների եւ էկոնոմիկայի նախարար Է.Սանդոյեանի եւ «Մերսետէս Պէնզ» ֆիրմայի ներկայացուցիչների հանդիպմանը, հիւրերը նշեցին իրենց այցի հիմնական նպատակը՝ ուսումնասիրել մօտիկից ծանօթանալու հանրապետութեան ֆինանսատնտեսական կացութեանը, գործող հարկային դաշտին եւ օտարերկրեայ ներդրումներ կատարելու դէպքում ՀՀ հարկային օրէնսդրութեամբ սահմանուած արտօնութիւններին:*

*Պրն. Սանդոյեանը նշեց, որ Հայաստանում ներդրումային ծրագրերի իրականացման համար առկայ են փոխշահաւէտ պայմաններ: Կարեւորելով այն հանգամանքը, որ ՀՀ-ում օտարերկրեայ ներդրումների մասին օրէնքի համաձայն, համատեղ ձեռնարկութիւնների գործունէութեան համար նախատեսուած ներկրուող բոլոր միջոցները, գոյքը ազատւում են մաքսատուրքերից, նախարարը նշեց, որ ՀՀ կառավարութիւնն ամէն կերպ կ'օժանդակի «Մերսետէս Պէնզ»-ի ծրագրերի իրականացմանը:*

4

### Ամերիկեան Ընկերութիւններ Մարտի Վերջին Կ'այցելեն Հայաստան Թռչնաբուծական Համատեղ Ձեռնարկութիւն Ստեղծելու Նպատակով

*Ինչպէս յայտնի է, ՀՀ գիւղատնտեսութեան նախարար Վլադիմիր Մովսիսեանը օրերս այցելել է Միացեալ Նահանգներ՝ ԱՄՆ գիւղդեպարտամենտի հրաւէրով:*

*Այցելութեան ընթացքում, Պր. Մովսիսեանը եղել է Տեխասի AM եւ Ծորճիայի համալսարաններում, հանդիպումների եւ քննարկումների արդիւնքում այդ հաստատութիւնների հետ ստորագրել է փոխըմբռնման յուշագիր, որի համաձայն համագործակցութիւն կը հաստատուի կրթութեան եւ գիտութեան բնագաւառներում: Ծորճիայի համալսարանում հանգամանօրէն ներկայացուել են ծրագրերի մանրամասներն ու նպատակները:*

*ՀՀ գիւղնախարարը եղել է նաեւ Աթլանթայի Arbor Acres Inc. Թռչնաբուծական ֆիրմայում: Ամերիկեան կողմը պատրաստակամութիւն է յայտնել մինչեւ Մարտի վերջը այցելել Հայաստան՝ գիւղնախարարութեան հետ թռչնաբուծութեան բնագաւառում յետագայ համագործակցութեան հնարաւորութիւններն ուսումնասիրելու եւ համատեղ ձեռնարկութիւն ստեղծելու նպատակով:*

ԼՈՆՏՈՆ

## «ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՁԱՅՆ» ԱՄՍԱԹԵՐԹԻ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԵՐԵԿՈՅ

Լոնտոնի Նոր-Սերունդ Մշակութային Միութեան հրատարակութիւնը հանդիսացող «Նոր Սերունդի Ձայն» ամսաթերթը, Յունուար 1999-ին բոլորեց հրատարակութեան առաջին տարին: Նշելու համար թերթին հետ առնչուող այս կարեւոր իրադարձութիւնը, պատասխանատուները 14 Փետրուար 1999-ի երեկոյեան, կազմակերպեցին ընկերա - համակրական շրջանակի խրախճանք Լոնտոնի «Acropolis» ճաշարանին մէջ: Հաւաքուած էին շուրջ հարիւր ընկերներ, համակիրներ, լոնտոնահայեր եւ օտարազգի բարեկամներ:

Օրուայ խորհուրդին մասին խօսք առնելով թերթին խմբագիր՝ ընկ. Մանուէլ Աղամեան ի մէջ այլոց ըսաւ. «Յարգելի ընկերներ, թերթ հրատարակելու գործը առնչուած է նիւթական եւ բարոյական զոհողութիւններու հետ, սակայն մենք մեր գործը պիտի շարունակենք առաւել խանդավառութեամբ, ամէն ամիս թերթը հասցնելու համար ձեզի, որպէսզի տեղեակ դառնաք հայրենական լուրերու, կարդաք քաղաքական վերլուծութիւններ, Հայաստանի ու հայութեան հետ առնչուող միջազգային իրադարձութիւններու մասին տեղեկութիւններ: Մեր անգլերէնի բաժինը հիմնականին մէջ նախատեսուած է երիտասարդութեան համար: «Նոր Սերունդի Ձայն» ամսաթերթը հայ ընտանիքին անշահախնդիր բարեկամն է»:

Խօսքի բաժինին աւարտէն ետք հայկական, յունական, անգլիական ու արաբական երգի-երաժշտութեան ջերմ մթնոլորտին մէջ խրախճանքը շարունակուեցաւ մինչեւ առաւօտեան ժամերը:

ԼՈՍ ԱՆՃԸԼԸՍ

## «ՄԱՍԻՍ» ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ 19-ԱՄԵԱԿԻ ՃԱՇԿԵՐՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Շաբաթ, 27, Փետրուար 1999.-ի երեկոյեան, «Verdugo Hills Country Club»ի շքեղ սրահներուն մէջ տեղի ունեցաւ Ս.Դ.Հ.Կ.-ի Արեւմտեան Ամերիկայի Շրջանի կուսակցական օրկան, «Մասիս»ի հիմնադրութեան 19-րդ տարեդարձի ճաշկերոյթ - պարահանդէսը, նախագահութեամբ Լուիզիանայի մեր ընկերներէն Տէր եւ Տիկին Վազգէն Գալթաքճեանի, ի ներկայութեան Հայց. Առաքելական Եկեղեցւոյ Արեւմտեան Թեմի Առաջնորդ Վաչէ Արք. Յովսէփեանի, կուսակցութեան ղեկավար ընկերներու, եւ աւելի քան 350 խանդավառ հանդիսականներու:

Պաշտօնական բաժինով, ելոյթ ունեցաւ Կազմակերպիչ Յանձնախումբի անունով, իրաւաբան Ընկ. Ռուբէն Աւշարեան:

Սեղանները օրհնելու եւ իր ողջոյնի խօսքը ըսելու հրաւիրեցաւ Առաջնորդ Սրբազանը, որ իրեն յատուկ անկեղծութեամբ գնահատեց «Մասիս»ի տարած աշխատանքը գաղութէն ներս անցնող 19 տարիներուն:

Ապա, խօսք առաւ «Մասիս»ի խմբագիր Ընկ. Տոքթ. Յարութիւն Սաղըրեան, եւ ներկայացուց «Մասիս»ի «Հաւատոյ հանգանակ»ը ազգային, հասարակական տարբեր հարցերու շուրջ:

Կարճ ելոյթ մը ունեցաւ օրուայ նախագահ Ընկ. Վազգէն Գալթաքճեան, Լուիզիանա նահանգէն: Առ ի գնահատանք իր «Մասիս»ի նկատմամբ վերաբերմունքին, խմբագրութեան կողմէ ընկերոջ կուրծքի լամբակին դրուեցաւ «Մասիս»ի շքանշանը, պատրաստուած Ընկ. Ժիրայր Կիրակոսեանի կողմէ:

Ապա բեմ հրաւիրուեցաւ այս ճաշկերոյթի համար Պէյրութէն հրաւիրուած համակրելի երգիչ Պերճ Նազգաշեան, որ իր ճոխ երգացանկով, եւ Արմէն Տիրանի նուագախումբի ընկերակցութեամբ, խանդավառեց ներկաները մինչեւ առաւօտեան յառաջացած ժամերը:

Յայտագիրի երկրորդ մասը վարեց Ընկ. Տոքթ. Համբարձում Սարաֆեան: Ստեղծուած խանդավառ մթնոլորի մէջ, ան յայտարարեց նիւթական կարեւոր նուիրատուութիւններ, «Մասիս»ի ֆոնտին:

«Մասիս»ի 19-րդ տարեդարձի ճաշկերոյթը եկաւ անգամ մը եւս փաստելու անոր ներկայութեան կարեւորութիւնը, իր շրջանակէն եւ գաղութէն ներս:

ԹՂԹԱԿԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՀՌԱԿ-Ը ՎԵՐԱՄԻԱՒՈՐՈՒԵՑ

### Մարտի 14-ից ՀՌԱԿ Հանրապետական Վարչութեան Աշխատանքները Ղեկավարելու Են Երկու Ատենապետներ

*Մարտի 14-ին Թէքէեան կենտրոնում տեղի է ունեցել ՀՌԱԿ հանրապետական 9-րդ (արտահերթ) պատգամաւորական ժողովի երկրորդ փուլը, որի ընթացքում ՀՌԱԿ երկու թեւերը (Ռ.Միրզախանեան, Հ.Կարապետեան) միաւորուել են: ՀՌԱԿ մամլոյ դիւանից տեղեկացնում են, որ պատգամաւորական ժողովը վերախմբագրել է կուսակցութեան կանոնադրութեան թիւ 60 յօդուածը, համալրել է ՀՌԱԿ հանրապետական վարչութեան (ՀՎ) եւ դիւանի կազմը: ՀՎ անդամների թիւը հասցուել է 13-ի, իսկ նրա աշխատանքները ղեկավարելու են ՀՌԱԿ ՀՎ ատենապետներ Յարութիւն Կարապետեանը եւ Ռուբէն Միրզախանեանը:*

*Պատասխանելով ԱՐՄԷՆՓՐԵՍԻ թղթակցի հարցին, թէ ի՞նչ հողի վրայ կայացաւ ՀՌԱԿ երկու թեւերի համաձայնութիւնը, երկու ատենապետները նշեցին, թէ ՀՌԱԿ-ի ներսում եղած անհամաձայնութիւնները երբեւէ գաղափարական բնոյթ չեն կրել: Ռ. Միրզախանեանը, եւ Հ. Կարապետեանը նշեցին, որ ներկուսակցական խնդիրների գոյութիւնը բնական է կայացած կուսակցութիւնների համար, իսկ դրանք կարող են պառակտիչ հետեւանքներ ունենալ, եթէ կայ արտաքին, յատկապէս իշխանութիւններից եկող միջամտութիւն: Այս առումով, կուսակցութիւնը պառակտումից ետ պահելու հարցում, նրանք նշեցին հանրապետութիւնում առկայ քաղաքական մթնոլորտի ազդեցութիւնը՝ այդ հարցում կարեւորելով իշխանութիւնների դիրքորոշումը:*

*Ինչ վերաբերում է ՀՎ-ի համանախագահութեանը, երկու ատենապետերը նշեցին, որ իրենք համատեղ աշխատանքի յուրջ փորձ ունեն, մասնաւորապէս 1995 թուականից: Մասնաւորապէս, Հ.Կարապետեանն անդրադառնալով կուսակցութիւնում երկու ատենապետների առկայութեանը, ասաց, թէ «բարատոքսալ իրավիճակ կը ստեղծուէր, եթէ խօսքը գնար մարդ-կուսակցութիւն հասկացողութեան մասին» նշելով, որ ՀՌԱԿ-ը կառոյցներ ունեցող կուսակցութիւն է:*

ՄԵՐ ԱՆԿԻՒՆԷՆ

## ՔՈՍՈՎՈՅ ԵՒ ՂԱՐԱԲԱՂ

ՅԱՐՈՒԹԻՒՆ ՍԱՂՐԵԱՆ

*Զարմանալի տրամաբանութիւն ունի միջազգային ընկերութիւնը, եւ անոր մէջ գտնուող մեծ տէրութիւնները յատկապէս: Այս խորհրդածութիւնը կ'ունենանք երբ կը հետեւինք միջազգային կացութեան հոլովոյթին, եւ անոր ունեցած անդրադարձին՝ մեր ազգային հարցերու մէջ:*

*Ակնարկուած միջազգային կացութիւնը կը վերաբերի Քոսովոյի, Եուկոսլաւիոյ այն նահանգին, ուր կ'ապրին մուսուլման ցեղային ալպանացիներ, եւ որոնց դէմ այդ երկրի տեղացի սերպերը, իրենց «կարծր» նախագահի Սլոպոտան Միլոսեւիչի ղեկավարութեամբ պայքար կը մղեն: Պայքարը զոր ալպանացիները կը մղեն ինքնակառավարման, եւ անկախութեան համար պայքար մըն է, որուն դէմ հակադրուած է Եուկոսլաւիան: Այս պայքարի նկատմամբ, Ամերիկեան եւ ՆԱԹՕ-ի իր գործակիցները բռնած են ժխտական դիրքորոշում, այնքան որ տրամադիր են զէնքի դիմելու Միլոսեւիչի դէմ: Այլ խօսքով, ալպանացիները զոհեր են, եւ եուկոսլաւները՝ յարձակողներ, եւ արժանի պատիժի:*

*Այս է կացութիւնը Եւրոպայի սրտին վրայ, եւ յստակ ալ չէ թէ ե՞րբ կրնայ աւարտիլ: Երկար կռիւներէ եւ մասսայական սպանութիւններէ եւ տեղահանութիւններէ ետք, կողմերը ի վերջոյ իրարու հետ կը բանակցին, ընդունելի լուծում մը գտնելու համար, լուծում որ ալպանացիները կ'ընդունին եւ եուկոսլաւները՝ ոչ:*

*Լուծումն ալ այն է որ միջազգային ոյժեր, որոնց մէջ ամերիկեան բանակի միաւորումներ, դիրք պիտի ճշդեն ալպանացիներու եւ եուկոսլաւներու միջեւ: Միլոսեւիչ այս ոյժերը կը նկատէ «Գրաւման», եւ ոչ թէ «խաղաղութեան ուժեր: Մինչ այս տողերը կը գրուին, կրկին խօսք կայ Եուկոսլաւիան ռմբակոծելու: Ուրեմն այսպէս, միջազգային ընկերութիւնը, յատկապէս Ամերիկան եւ Նաթօն, սերպերու դէմ են, եւ ալպանացիներու կողքին:*

*Առնենք միւս պատկերը Ղարաբաղը: Պատկերը գրեթէ նոյնն է, եւ սակայն մէկ հիմնական տարբերութեամբ: Նոյն Ամերիկան եւ ԵԱՀԿ-ի իր գործակիցները մինչեւ վերջերս Ատրպէյճանի հետ էին ղարաբաղցիներու դէմ, որոնք ցեղային փոքրամասնութիւն մըն են ալպանացիներու նման, որոնք ինքնիշխանութեան եւ անկախութեան կը ձգտին:*

*Ինչո՞ւ Ամերիկան եւ իր գործակիցները ալպանացիներու հետ են եւ ղարաբաղցիներու դէմ: Այս է «որ անհասկնալի» կը թուի, թէեւ քաղաքական կեանքի մէջ ամէն ինչ իր բնական կամ անբնական տրամաբանութիւնը ունի:*

*Ինչո՞ւ ալպանացիները անմեղ զոհեր են, ազատամարտիկներ, անկախութեան ձգտող փոքրամասնութիւն մը Եուկոսլաւիոյ սահմաններէն ներս, եւ Ղարաբաղի հայերը յարձակողներ են, ըմբոստներ, հողային ամբողջութիւնը խանգարողներ, եւ ոչ արժանի միջազգային ուշադրութեան եւ իր ազգային գոյութիւնը հետապնդող փոքրամասնութեան մը իրաւունքներուն:*

*Դիւանագիտութիւնը անբարոյական գրաղում մըն է: Նայած թէ ո՞ր հարցի մէջ շահերը ինչպէս կը դասաւորուին, եւ ըստ այնմ դիրքերը կը ճշդուին:*

*Նոյն ձեւի երկու հարցերը, մէկը Քոսովոյի, միւսը Ղարաբաղի, երկու տարբեր արժեւորման եւ դիրքորոշման կ'արժանանան:*

*Ալպանացիները հիմա զէնք բարձրացուցած են Եուկոսլաւիոյ դէմ:*

*Ղարաբաղի մէջ կը տիրէ «Ոչ պատերազմ, ոչ խաղաղութիւն» վիճակը: Եթէ պէտք ըլլայ սակայն, Ամերիկան եւ իր գործակիցները պէտք է գիտնան որ ղարաբաղցիներն ալ ի վիճակի են, պարտադրաբար, զէնքի դիմելու իրենց իրաւունքներու պաշտպանութեան համար:*

*«ՄԱՍԻՍ»*

ԳԱՀԻՐԷ

## ՊՐ. ԳՐԻԳՈՐ ԱԲԻԿԵԱՆ ԿԸ ԳՐԱՒԷ ԵՐԿՐՈՐԴ ՏԵՂԸ ՆՇԱՆԱՌՈՒԹԵԱՆ ՄԷՋ



*Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ համայնքիս ծանօթ երիտասարդներէն՝ Պր. Գրիգոր Աբիկեան, Եգիպտական Նշանառութեան Միութեան կազմակերպած 1998-1999 տարեշրջանի մրցաշարքին, գրաւած է երկրորդ տեղը, արժանանալով բաժակի:*

*Սոյն մրցաշարքը որ տեղի ունեցած է Տոքքիի՝ «Նատի Սէտ»ի մէջ, մասնակցած են 98 մարզիկներ:*

*Ջերմօրէն կը շնորհաւորենք եւ նորանոր յաջողութիւններ կը մաղթենք Պր. Գ. Աբիկեանին:*

1 ➪

### ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԸ ԵՒ ՌՈՊԻՆ ՔՈՒՔԸ ՔՆՆԱՐԿԵՑԻՆ ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԻՄՆԱՀԱՐՑԻ ...

համապարփակ եւ բոլոր կողմերի համար ընդունելի: Նախարար Օսկանեանը հաւաստել է հայկական կողմի կառուցողական դիրքորոշումը՝ վերսկսել բանակցային գործընթացը Մինսկի խմբի համանախագահների վերջին առաջարկի հիման վրայ: Հանդիպման մասնակիցները կարեւորել են նաեւ Հայաստանի առաջիկայ խորհրդարանային ընտրութիւնները՝ ժողովրդավարութեան անշրջելիութեան եւ կայացման տեսանկիւնից:

Վարդան Օսկանեանը նաեւ ելոյթ ունեցաւ Լորտերի պալատում: Աւելի քան մէկ ժամ տեւած ելոյթի եւ դրան յաջորդած հարցերին պատասխանելու ընթացքում ՀՀ արտգործնախարարը հանգամանալից ներկայացրեց Հայաստանի քաղաքական եւ տնտեսական զարգացման հեռանկարները: Այնուհետեւ ծաւալուեցին քննարկումներ Լեռնային Ղարաբաղի հիմնահարցի շուրջ: Ելոյթ ունեցան բրիտանա-հայկական համակուսակցական խորհրդարանական խմբի ղեկավար-ատենապետ դուքս Շեննոր, փոխատենապետ պարոնուհի Քոկսը, Լորտերի պալատի ութ այլ ազդեցիկ անդամներ:

Երեկոյեան նախարար Օսկանեանի գլխաւորած պատուիրակութիւնը Նաւասարդեան կենտրոնում հանդիպում ունեցաւ բրիտանահայ համայնքի ներկայացուցիչների հետ:

Մարտի 18-ին, ամփոփիչ ասուլիսից յետոյ, Հայաստանի արտգործնախարարը վերադարձաւ Երեւան:

## ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԵԶՐԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

Երաժշտական եզրաբանութիւնը հայկական ժամանակակից երաժշտագիտութեան յուզող հարցերէն մէկն է:

Սոյն յօդուածին նպատակը մասնագիտական հետազօտութիւն մը կատարել եւ վերջնական լուծումներ առաջադրել չէ, այլ՝ վեր հանել որոշ երեւոյթներ, մատնանշել լուծումի կարօտ հարցեր եւ դուռ բանալ յետագայ վիճաբանութիւններու:

ԺԹ. դարուն, հայկական մասնագիտացուած երաժշտութեան զարթօնքին զուգահեռ, սկսաւ կազմաւորուիլ երաժշտական նոր եզրաբանութիւն մը: Մէկ կողմէ պոլսահայ, միւս կողմէ թիֆլիսահայ մամուլն ու երաժշտագէտները սկսան մտածել, ստեղծել, հաստատագրել բազմաթիւ՝ ոչ միշտ միանման, եզրեր, որոնք աստիճանաբար մշակուելով՝ կատարեալ բիւրեղացումի կը հասնին Կոմիտաս վարդապետի երաժշտագիտական աշխատութիւններուն եւ ստեղծագործութիւններուն մէջ [1]:

Կոմիտաս վարդապետէն ետք, անկախ վերջինէն, Խորհրդային Հայաստանի մէջ, կայունացան եւ տարածուեցան միահամուռ երաժշտական եզրեր՝ որոնց մեծամասնութիւնը, փաստօրէն, ռուսերէն բառերու հայերէն տառադարձութիւններ էին: Անոնք շուտով կը դառնան աւանդոյթ եւ կը շարունակուին մինչեւ այսօր: Յետկոմիտասեան սփիւռքահայութեան, սակայն, խորթ մնացին անոնք: Արեւմտահայերէնը ունի ի՛ր հնչիւնաբանութեան ու բառակազմութեան օրէնքները՝ որով չէր կրնար իւրացնել այդ օտարամուտ եզրերը: Հետեւաբար, արեւմտահայը դիմեց դէս ու դէն, յաճախ ցուցաբերելով ենթակայական կամ պատահական մօտեցումներ: Ասոր նպաստեց նաեւ յետ կոմիտասեան արեւմտահայ երաժշտական միտքի բացակայութիւնը: Կայուն եզրաբանութիւն մը հաստատելու համար բաւարար չէ ունենալ միայն անկախաբար գործող քանի մը մասնագէտ: Անհրաժեշտ է երաժշտագիտական դպրոցի մը գոյութիւնը:

Ստորեւ, փորձենք ներկայացնել արեւելահայ եւ արեւմտահայ զանգուածներուն երաժշտական եզրաբանութեան ընդհանուր երեւոյթները:

Խորհրդահայ բազմավաստակ երաժշտագէտ մը՝ անդրադառնալով հայ երաժշտութեան մաքրագրութեան նախանձախնդիր Կոմիտաս վարդապետի երգեցողական ունակութիւններուն մասին, կը գրէ. «Ունենալով ձայնական լաւ տուեալներ (բարձր եւ *դիապազոնով* խիստ լայն *բարիտոն*՝ փափուկ *տեմբրի*), Կոմիտասը մշակել էր անցումների ու *ռեգիստրների* մէջ հաւասարակերպ, անկաշկանդ ու գունագեղ երգեցողութեան ճկուն *տեխնիկա*: Նրա կատարման եղանակի մէջ *օրգանապէս* միաւորուած են *պրոֆեսիոնալ* գերազանց *շկոլան* եւ իսկական ժողովրդական, գեղջկական երգեցողութեան ոճը, որն ունի բազմազան *տրադիցիաներ* ու *պրիոմներ*,որոնք ըստ երգի *ժանրի* ու բովանդակութեան փոփոխւում են. ժողովրդական երգիչը գոյների մէկ *գամմայով* է երգում *էպիկական* երգը, եւ բոլորովին այլ կերպ է հնչում նրա ձայնը քնարերգական - սիրային եւ կամ անտուն պանդուխտի երգում.» [2]: Տասներեք օտարամուտ բառ (տե՛ս մեր ընդգծածները)՝ որոնց բոլորին հայերէն համարժէքները գոյութիւն ունին:

Հմուտ լեզուաբան Լեւոն Հախվերդեան պիտի պատասխանէր մեզի գրելով՝ թէ այս նախադասութիւնը միանգամայն հայերէն է, թէեւ օգտագործուած են օտարամուտ բառեր. «միայն հայերէն իմացող մարդը կը հասկանայ դրա իմաստը:

«Ուրեմն, կարեւոր են ոչ այնքան բառերը (թէեւ, իհարկէ, հայերէն համարժէքներ ունենալու դէպքում պէտք չէ օտար բառեր գործածել), որքան կառուցուածքը, այն շարահիւսութիւնը, որ հարազատ է մայրենի լեզուամտածողութեանը, կարեւոր է լեզուի ոգին, իսկ դա արտայայտւում է քերականութեան մէջ ու նրա միջոցով» [3]:

Թող բանիմաց ընթերցողը դատէ:

Այս օտարամուտ բառերը բնական արդիւնքն էին խորհրդային շրջանի ընդհանուր գաղափարախօսութեան՝ ուր միջազգայնացում (ինտերնացիոնալիզմ), ժողովուրդներու բարեկամութիւն, ազգերու մերձեցում եւ այլ դրոյթներ առաջատար ու գերակշիռ նշանակութիւն ունէին: Անկասկած, գեղեցիկ ու համամարդկային գաղափարներ էին՝ որոնց կը ձգտէր մարքսիզմը:

Այս գաղափարախօսութիւնը բնականաբար պիտի անդրադառնար նաեւ լեզուին եւ օգտագործուած բառերուն վրայ: Սակայն կը կարծենք, որ մեր շօշափած հարցին առնչութեամբ, ան խստօրէն չարաշահուեցաւ: Ռուսական լեզուին միջոցով իրականացուող «միջազգայնացում»-ին իբր հետեւանք, խորհրդահայ երաժշտագիտութիւնը՝ հրաժարելով հայրերէն եզրերէն, մեքենայաբար իւրացուց անոնց ռուսերէն տարբերակները: Արեւելահայ լեզուէն ներս մուտք գործեցին ակորդ *(դաշնեակ)*, ապլիկատուրա *(մատնաշար)*, գամմա *(սանդղակ)*, դիատոնիկ *(բնուղիղ)*, դիրիժոր *(նուագավար)*, իմիտացիա *(նմանակում)*, ինտերվալ *(ջայնամիջոց)*, լադ *(համաջայնոյթ)*, խրոմատիկ *(բաղադրեալ)*, կոմպոզիտոր *(երաժշտահան)*, կուլմինացիա *(բարձրակէտ)*, կվարտա *(քառեակ)*, կվարտետ *(քառանուագ)*, հարմոնիա *(դաշնակութիւն)*, մետր *(ամանակ)* մոդուլացիա *(զարտուղութիւն)*, մոնոտիկ *(միաձայն)*, նոտա *(ձայնանիշ)*, պաուզա *(ձայնահատ)*, ռիթմ *(կշռոյթ)*, սիմփոնիա *(նուագաշար)*, սինկոպա *(անցանիշ)*, վարիացիա *(փոփոխակ)*, վոկալ *(երգչային)*, տոնայնութիւն *(ձայնակայք)*, ցիկլ *(շար)*, ֆորշլագ *(նախահարուկ)* եւ անթիւ այլ բառեր [4], որոնք բոլորը անհաղորդ մնացին արեւմտահայ լեզուին:

Եթէ ընդունինք փոխառութիւններու սկզբունքը՝ ո՞ր լեզուին պիտի դիմէ արեւմտահայը: Արեւմտահայութիւնն այսօր կը ներկայացնէ բազմատարր իրականութիւն մը: Կայ ֆրանսախօսը, իտալախօսը, անգլիախօսը, գերմանախօսը, արաբախօսը եւայլն: Ֆրանսախօսը պիտի նախընտրէ գրել տօ, ռէ, մի (do, re mi ), անգլիախօսը՝ էյ, պի, սի (A,B,C), գերմանախօսը՝ ա, աշ, ցէ (a,h,c): Նոյնպէս՝ *կաւ* (ֆր.), *կամմա* (իտ.), *սքէյլ* (անգ.), *թոնլէյթըր* (գեր). *մաժէօր* (ֆր.), *մաճորէ* (իտ.), *մէյճըր* (անգ.) *դուր* (գեր.). *քոմփոզիթէօր* (ֆր.), *քոմփոզիթորէ* (իտ.), *քոմփոզըր* (անգ.), *քոմփոնիսթ* (գեր.) եւայլն: Այսինքն, իւրաքանչիւր գաղութ պիտի մշակէ ինքնուրոյն եզրաբանութիւն մը:

Արդ, լեզուական այս տարաձայնութիւնները լուծելու եւ համընդհանուր, ողջ հայութեան հասկնալի երաժշտական եզրաբանութիւն մը արմատաւորելու միակ ուղին դիմելն է հայերէն բառերուն, ի հարկին՝ ինչպէս որեւէ կենդանի լեզու, ստեղծելով նոր եզրեր:

Զգուշանալու է նաեւ վերաիմաստաւորելու նախապէս ընդունուած եզրերը: Խորհրդային շրջանէն մեզի յայտնի է երկու դէպք՝ երբ դասական բառերուն նորովի իմաստ տալով, անտեղի շփոթութիւն առաջացած է: Խօսքը երկեակ (նաեւ՝ եռեակ, քառեակ եւայլն)-զուգանուագ (նաեւ՝ եռանուագ, քառանուագ եւայլն) եւ գուսան - աշուղ բառերուն մասին է:

Մէկ, երկու, երեք, չորս եւ այլ քանակի նուագարաններու համար նախատեսուած ստեղծագործութիւնները եւ կատարողական կազմերը դասական հայերէնին մէջ կը կոչուին մենանուագ, զուգանուագ, եռանուագ, քառանուագ, հնգանուագ եւայլն, իսկ եթէ երգչային կազմի համար են՝ մեներգ, զուգերգ, եռերգ, քառերգ, հնգերգ եւայլն: Մինչդեռ ձայնամիջոցներուն անուանումներն են՝ երկեակ, երրեակ, քառեակ, հնգեակ եւայլն:

Խորհրդային Հայաստանի մէջ որդեգրուեցաւ բոլորովին նոր մօտեցում մը: «Կոմիտասի անուան քառեակը նուագեց Միրզոյեանի *կվարտետը*» եւ նմանօրինակ նախադասութիւններ դարձան բնական: Այստեղ, «քառեակ»-ը փոխարինած է ընդունուած «քառանուագ»-ին եւ այս իմաստով նորաստեղծ է: Սակայն ան օգտագործուած է լոկ կատարողական կազմի իմաստով, մինչ միեւնոյն կազմին համար յօրինուած ստեղծագործութեան համար կիրառուած է նոյն բառին ռուսական ձեւը՝ «կվարտետ»: Այսինքն, դուրս մղուեցաւ «քառանուագ»-ը եւ յանձինս «քառեակ»-ին եւ «*կվարտետ*»-ին ստեղծուեցաւ միեւնոյն իմաստին նրբերանգային տարբերակումները, բան մը՝ որ գոյութիւն չունի եւրոպական լեզուներու եզրերուն մէջ: Այլեւ վերաիմաստաւորուեցաւ դասական «քառեակ» եզրը: Ճիշդ է, արեւելահայերը միշտ չէ՝ որ հետեւողականօրէն գործադրեցին այս սկզբունքը: Քառեակն ու կվարտետը երբեմն փոխարինեցին իրարու: Նոյնն է նաեւ երրեակ - եռանուագը, հնգեակ - հնգանուագը եւ միւսները: Միայն «մենանուագ»-ը, «մեներգ»-ը եւ «զուգերգ»-ն են, որոնք՝ երբ գործածուեցան հայերէն տարբերակներով, մնացին անփոփոխ: «Զուգանուագ»-ը եւս դարձաւ *«դուէտ»*: Իսկ ձայնամիջոցներուն համար ամբողջութեամբ ներմուծուեցան ռուսական ձեւերը՝ *սեկունդա*, *տերցիա*, *կվարտա* եւայլն:

Արեւմտահայ ոչ մասնագիտական մամուլը, առանց մտածելու, ընդօրինակեց երրեակ, քառեակ ձեւերը՝ իրենց նոր իմաստով: Միաժամանակ, որոշ արեւմտահայ մասնագէտներ արդարացիօրէն շարունակեցին գործածել քառեակ-քառանուագի դասական իմաստը: Մէկ խօսքով, ստեղծուեցաւ անբաղձալի քաոս մը:

Դարձեալ խորհրդահայ իրականութեան մէջ, «գուսան» բառը փոխարինեց «աշուղ»-ին: Սայեաթ-Նովա, Գուսան Աշոտ, Գուսան Հաւասի, Գուսան Շահէն, բոլորն ալ աշուղներ են եւ ոչ թէ գուսաններ: Աշուղն ու գուսանը լրիւ տարբեր սեռի երաժշտութեան ներկայացուցիչներ են: Աշուղական արուեստը ԺԸ. դարու ծնունդ է՝ որուն հիմնադիրն է Սայաթ - Նովա, իսկ գուսանական արուեստը անյայտ ժամանակներէ ի վեր գոյութիւն ունեցող ժողովրդա - մասնագիտացուած երաժշտութիւն է: Նոր եզրաբանութեան մէջ «աշուղ»-ը իր դիրքերը զիջելով «գուսան»-ին, այնուամենայնիւ, վերջինին փոխարինող բառը չստեղծուեցաւ: Նոյնացան աշուղն ու գուսանը:

Եգիպտահայութիւնը եւս անպակաս մնացած է այս խառնաշփոթութեան: Օրինակ, շուրջ երեք տասնամեակ է՝ որ գրող մը, թէ եգիպտահայ մամուլին եւ թէ առանձին հրատարակութիւններուն մէջ, անընդհատ կը գործածէ «կոմպոզիտոր» բառը: Վերջինը, եթէ արեւելահայերը ընդունած են իրենց բարբառին մէջ եւ պատշաճեցուցած արեւելահայ լեզուի հնչիւնաբանութեան, արեւմտահայերը՝ վերոյիշեալ ուղղագրութեամբ, բոլորովին այլ՝ անհասկնալի ձեւով պիտի արտասանեն:

Ուրիշ օրինակ մը: Եգիպտահայ մամուլին մէջ գուսանական երաժշտութեան նուիրուած դասախօսութիւններու յայտարարութիւններ են հրատարակուած, որոնք՝ ինչպէս կարելի է եզրակացնել լոյս տեսած յետագայ քննախօսականներու բովանդակութիւններէն, յատկացուած էին աշուղական արուեստին:

Դեռ անցեալ տարի, եգիպտահայ մամուլին մէջ լոյս տեսաւ երգահանդէսի մը յայտարարութիւնը, ուր իբրեւ խորագիր նշուած էր՝ *«վօքալ-* երգչախմբային երաժշտութեան երեկոյ»: Նախ, տառադարձութեան նախնական օրէնք մը: Լատինական «o»տառը հայերէն կը տառադարձուի «ո», իսկ «au»-ն՝ «օ»: Ուրեմն, գրել՝ վոքալ եւ ոչ թէ վօքալ: Յետոյ, ինչո՞ւ «վօ» երբ հայերէնն

➪ 4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ՇԱԽՄԱՏ

## ԱՇԽԱՐՀԻ ՊԱՏԱՆԻՆԵՐՈՒ ԱԽՈՅԵԱՆ ԼԵՒՈՆ ԱՐՈՆԵԱՆԻՆ ՀԵՏ

Քաղաքամայր Երեւանի Նորքի 7-րդ զանգուածին պատկանող շէնքերէն մէկուն 4-րդ յարկաբաժինը *մշտական* բնակարանն է այս բազմատաղանդ պատանիին: Լեւոն Արոնեան արդէն իսկ բազմիցս աշխարհի ու Եւրոպայի շահմատի ախոյեան է, որուն խաղը՝ ժամանակաւոր նահանջէ ետք՝ այժմ դարձեալ կը փայլի իր ամբողջ ստեղծագործական տաղանդով:


Լեւոն Արոնեան

Միշտ ուրախ ու ժպտադէմ, չափազանց աշխատասէր, միշտ յաղթանակներու տենչացող «Լեւոնիկը» իր վերջին յաղթանակներէն ետք՝ մանաւանդ Իսթանպուլի մէջ տեղի ունեցած պատանիներու համաշխարհային ողիմպիականին ընթացքին, ուր թրքական կազմակերպիչ կողմը մերժեց հայկական օրհներգը նուագել....

Լ. Արոնեանի նոր մարզիչը, միջազգային կարգի մեծ վարպետ (Grandmaster) Արշակ Պետրոսեան՝ իր լայն փորձն ու սառնասրտութիւնը կը փոխանցէ հայկական շահմատի դպրոցի ամենէն պայծառ յոյսերէն մէկուն՝ որը կը նկատուի 21-րդ դարու աշխարհի հաւանական ախոյեաններէն մէկը:

Լեւոն Արոնեանի հայրը, լազերային գիտնական է, իրեական ծագումով, որն ամուսնացած է հայ գիտնականուհի Տիկին Սեդային հետ: Այս նուիրեալ կինը, իր կեանքին գլխաւոր նպատակը դարձուցած է իր որդին տեսնել շահմատի համաշխարհային գահին վրայ՝ Տիգրան Պետրոսեանէն ու Կարի Գասպարովէն ետք դառնալու աշխարհի երրորդ հայ շահմատի արքան եւ... առաջինը 21-րդ դարու մէջ: Քոյրը, Լիլիթը՝ լրագրողուհի է, իսկ ընտանիքին սիրուած անդամը՝ սիամական փիսիկը՝ Չուչունտրան, նաեւ աշխարհի ու Եւրոպայի պատանիներու ախոյեանին խաղընկերն է հանգիստի պահերուն: Իսկ հիւրերը, յաճախ աշխարհի բոլոր ծագերէն Լեւոնին տեսութեան եկած շահմատիստներն ու հիացողները՝ ջերմօրէն կ'ընդունուին այս հիւրասէր տան մէջ:

ՀՀ երբեմնի նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան իր հովանաւորութեան տակ առած էր «կրտսեր» Լեւոնը: Բարեբախտաբար, որոշ տատանումներէ ետք, այժմու ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեան յատուկ հոգատարութիւն կը ցուցաբերէ Լեւոն Արոնեանին հանդէպ՝ որուն խաղային ու ստեղծագործական մակարդակը, փայլուն յաղթանակները, մեծ հեղինակութիւն կը վայելեն շահմատի միջազգային շրջանակներուն մօտ: Ամենայն դէպս, հայ շահմատիստները, ինչպէս Վլատիմիր Յակոբեան, Ռաֆայէլ Վահանեան, Սմբատ Լպուտեան, Կարէն Ասրեան յաջող ելոյթներով կը հաստատեն թէ հայկական շահմատի դպրոցը միշտ ալ հզօր եղած է եւ միշտ ալ հայ մարզիչները, հակառակ բոլոր դժուարութիւններուն, կարող են նորանոր յաղթանակներ կերտել:

Չէ՞ որ շահմատը նաեւ «հայկական» մարզաձեւ ու խաղ է...:

Գահիրէ — Հ. ՄՈՍԿՈՖԵԱՆ

## ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԵԶՐԱԲԱՆՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

3

ունի «ո» տառը: Կարեւորը, սակայն, այն է՝ որ այս բառը նորութիւն մըն էր եգիպտահայութեան համար: Կարելի էր դիւրութեամբ անոր հայերէն եզրը՝ «երգչային», գործածել: Բաց աստի, երգչախումբ մը, մեր կարծիքով, միայն «վօքալ» կրնայ ըլլալ: Կա՞յ արդեօք ոչ «վօքալ», այսինքն՝ գործիքային երգչախումբ: Գոնէ մեզի ծանօթ չէ: Ուրեմն, ընդհանրապէս աւելորդ է այս բառը: Եթէ *«վօքալ»*-ը մեներգի իմաստով է նախատեսուած, պէտք է գրուէր՝ «մեներգային»:

Նոյն յայտարարութեան մէջ գրուած է՝ «դաշնակի ընկերակցութիւն» այսինչեանին: Ահաւասիկ արեւմտահայութեան աւանդական սխալ մը: «Ընկերակցութիւն»-ը բառացի թարգմանութիւնն է accompagnement-ին: Ինչո՞ւ «ընկերակցութիւն»՝ երբ հայերէնն ունի գեղեցկահնչիւն «նուագակցութիւն» բառը:

Օրինակներ դեռ երկար կարելի է յիշատակել: Սակայն այսքանն ալ բաւարար է ցոյց տալու երաժշտական հայկական եզրերու ներկայ իրավիճակը:

Արդ, յանուն հայերէն համընդհանուր եզրաբանութեան գործադրութեան, յանուն հայերէն լեզուի երկու բարբառներուն (արեւմտահայ եւ արեւելահայ) փոխըմբռնումին, յանուն արեւմտահայ տարբեր գաղութներու լեզուամտածողութեան մերձեցումին, անհրաժեշտ է՝ որքան կարելի է, արմատաւորել ու տարածել իսկական հայերէն՝ ոչ հայացուած օտարալեզու, երաժշտական եզրաբանութիւն մը: Միայն այսպէս կարելի է միատարր հաղորդակցութիւն ապահովել աշխարհի չորս ծագերը սփռուած հայութեան միջեւ:

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

(1)- Կոմիտաս վարդապետի օգտագործած եզրերը արժանի են յատուկ ուսումնասիրութեան: Կոմիտասագիտութեան կարեւոր խնդիրներէն է՝ հիմնուելով գլխաւորաբար անմահ երաժիշտի ձեռագիրներուն վրայ, հաւաքել ու դասակարգել զանոնք եւ գիտական հրատարակութեամբ հանրամատչելի դարձնել երաժշտասէրներուն:

(2)- Ալեքսանդր Շահվերդեան, Հայ երաժշտութեան պատմութեան ակնարկներ, Երեւան, 1959, էջ 369: Այս մէջբերումը կատարելով նկատի չունինք ոչ մէկ կերպով վարկաբեկելու մեծ երաժշտագէտին ուսումնասիրութիւնը: Ա. Շահվերդեանի յիշեալ աշխատութիւնը՝ իր խորունկ ու համակողմանի բովանդակութեամբ, անգերազանցելի ներդրում մըն է հայ երաժըշտագիտութեան գանձարանին մէջ:

(3)- Լեւոն Հախվերդեան, Զրոյցներ լեզուի մասին, Երեւան, 1986, էջ 20:

(4)- Խորհրդահայ միակ երաժշտագէտը՝ որ հետեւողականօրէն մշակեց հայկական եզրաբանութիւն, Նիկողոս Թահմիզեանն էր, որուն գրոյթները, դժբախտաբար, չընդհանրացան:

### ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Պերճ եւ Յասմիկ Սուլթանեաններ, Երկուշաբթի 15 Մարտ 1999-ին բախտաւորուած են երրորդ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Հայկ:

Այս բարեբաստիկ առթիւ, մեր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնենք նորածինին ծնողքին եւ մեծ ծնողներուն՝ Տոքթ. եւ Տիկ. Նուպար Սուլթանեաններն ու Տիկին Շուշան Հալաճեանը, մաղթելով արեւշատ եւ երջանիկ կեանք նորածին մանկան:

### ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

*Կը տեղեկանանք որ վաստակաւոր մանկավարժ, գրող ու հասարակական - քաղաքական գործիչ ընկ. Պէպօ Սիմոնեան, վերջերս Պէյրութի մէջ ենթարկուած է սրտի վիրահատութեան մը (open heart surgery) որ անցած է յաջողութեամբ:*

*Կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր յարգելի ընկերոջ:*

* * *

*Տեղեկացանք թէ մեր բարեկամներէն՝ Պր. Վիգէն Վարժապետեան անցեալ Շաբաթ 20 Մարտին, «Շայան Մետիքըլ Սենթըր»ին մէջ աղեթափութեան (էրնիի) գործողութեան մը ենթարկուած է, որ անցած է յաջող: Ան այժմ տուն վերադառնալով կազդուրման շրջան մը կը բոլորէ:*

*Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամին:*

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Իր ապաքինման առթիւ, Տիկին Անահիտ Սարգիս կը նուիրէ.*

| | |
|---|---|
| *Եկեղեցւոյ Պայծառութեան* | 50 |
| *«Արեւ»ին* | 50 |
| *«Յուսաբեր»ին* | 50 |
| *«Ջահակիր»ին* | 50 |

(Ստանալ «Արեւ»էն)

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

**ՀԻՆԳՇԱԲԹԻ, 1 ԱՊՐԻԼ 1999, ՅԻՇԱՏԱԿ ԸՆԹՐԵԱՑ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ**

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.30-ին
Ս. Պատարագ " " 10.00-ին
Կարգ Ոտնլուայի կէսօրէ վերջ " 5.00-ին
Կարգ Խաւարման " " " 7.00-ին

**ՈՒՐԲԱԹ, 2 ԱՊՐԻԼ 1999, ՅԻՇԱՏԱԿ ՉԱՐՉԱՐԱՑ, ԽԱՉԵԼՈՒԹԵԱՆ ԵՒ ԹԱՂՄԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ**

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 9.00-ին
Կարգ Թաղման կէսօրէ վերջ " 5.00-ին

**ՇԱԲԱԹ, 3 ԱՊՐԻԼ 1999, ՃՐԱԳԱԼՈՅՑ Ս. ԶԱՏԻԿ**

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.30-ին
Ճրագալոյց կէսօրէ վերջ " 4.00-ին
Ս. Պատարագ " " " 5.00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

### ՏՕՆ ՀՐԱՇԱՓԱՌ ՅԱՐՈՒԹԵԱՆ

Մեծ Պահոց Քառասնօրեայ շրջանին հոգեւոր պատրաստութենէն ետք, մեր գաղութի բարեպաշտ ժողովուրդը յառաջիկայ Կիրակի, 4 Ապրիլ 1999-ին, պիտի տօնախմբէ **ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՀՐԱՇԱՓԱՌ ՅԱՐՈՒԹԻՒՆԸ:**

Զատկական Ս. Պատարագը տեղի պիտի ունենայ Ս. Գրիգոր Լուսաւորիչ տաճարին մէջ, առաւօտեան ժամերգութենէն ետք:

Այս առիթով Ս. Պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**
**ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ**

Ս. Պատարագը պիտի երգուի քառաձայն եկեղեցւոյս «Զուարթնոց» Երգչախումբին կողմէ:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.00-ին
Ս. Պատարագ " " 10.00-ին

**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Տիկին Շաքէ Կարիպեան եւ ընտանիք, Տէր եւ Տիկին Օննիկ եւ Շողիկ Կարիպեան եւ ընտանիք, Տէր եւ Տիկին Րաֆֆի եւ Անի Կարիպեան եւ ընտանիք, Տոքթ. եւ Տիկին Պերճ եւ Մաննօ Արթինեան եւ ընտանիք, Տիկ. Արմինէ Կարիպեան եւ համայն սգակիր պարագաները, ներկայիս կու գան իրենց խորին շնորհակալութիւնները յայտնելու բոլոր անոնց, որոնք զանազան միութիւններու նուիրատուութիւն կատարելով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրեցեալ մօր, կեսրոջ, մեծմօր, ներոջ, հօրաքրոջ, քենկինին, եւ ազգականին Ողբ.՝*

**ԷԹԻԼ ԿԱՐԻՊԵԱՆԻ**
**(ԾՆԵԱԼ ԳՐՈՒՇԵԱՆ)**

*մահուան եւ քառասունքին առիթներով:*

### ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ**
ՇԱԲԱԹ, 17 ԱՊՐԻԼ 1999
**ՏՕՆԱԿԱՆ ՕՐ**
ԿԻՐԱԿԻ, 5 ՄԱՅԻՍ 1999

Կը խնդրուի նկատի ունենալ ու չխաչաձեւել

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

### ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր անցեալ թիւով հրատարակած էինք թերթիս յարգելի աշխատակից՝ Պր. Տիգրան Գէորգեանի «ՀԱՅՈՑ ԱՐՔԱՆԵՐԸ ԵՒ ԴՇԽՈՆԵՐԸ» ժամանակագրական յօդուածի երկրորդ մասը: Սակայն տպագրական թերնիք պատճառով, որոշ համարներու մէջ՛ նշեալ յօդուածի «ԲԱԳՐԱՏՈՒՆԻՆԵՐՈՒ ԳԱՀԱՏՈՀՄԻ» բաժնի՝ վերջին երեք անունները տպագրուած չեն յստակօրէն:

Ուստի մեր ընթերցողներու ուշադրութեան կը յանձնենք եւ խնդրենք որ կարդան հետեւեալ ձեւով.-

ԽՄԲ.

| Տիրակալութեան տարիներ | Արքաներ | Դշխոններ | Գահանիստ / Քաղաքամայր Բերդաքաղաք |
|---|---|---|---|
| ԲԱԳՐԱՏՈՒՆԻՆԵՐՈՒ ԳԱՀԱՏՈՀՄ | | | |
| *885-890 թթ.* | *Աշոտ Ա. Մեծ Բագրատունի* | *Կատրանիդէ* | *Բագարան* |
| *890-914 թթ.* | *Սմբատ Ա. Բագրատունի* | *Աշոտդուխտ* | *Շիրակաւան* |
| *914-929 թթ.* | *Աշոտ Բ. Երկաթ Բագրատունի* | *Սահականույշ* | |
| *929-953 թթ.* | *Աբաս Բագրատունի* | *Մարիամ (պ)* | *Կարս* |
| *953-977 թթ.* | *Աշոտ Գ. Ողորմած* | *Խոսրովանույշ* | *Անի* |
| *977-989 թթ.* | *Սմբատ Բ. Տիեզերակալ* | *Կատրանիդէ* | |
| *989-1020 թթ.* | *Գագիկ Ա. Բագրատունի* | *Կատրանիդէ* | |
| *1020-1041թթ.* | *Յովհաննէս Սմբատ Բագրատունի* | *(1)Շուշան (2)Ֆյորա (պ)* | |
| *1020-1041 թթ.* | *Աշոտ Դ. Բագրատունի* | *Թագուհի (պ)* | |
| *1042-1045 թթ.* | *Գագիկ Բ. Բագրատունի* | *?* | |

### «Mercedes Benz» ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՄԻ ՇԱՐՔ ԾՐԱԳՐԵՐ Կ'ԻՐԱԿԱՆԱՑՆԻ

2

*Հետաքրքրուելով հանրապետութեան ապահովագրական դաշտի առկայ կացութեամբ, հիւրերը արձանագրեցին, որ մտադիր են Հայաստանում ստեղծել ապահովագրական ընկերութիւն:*

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**



دار شركة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax: (202) 4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1400 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 8 ԱՊՐԻԼ 1999 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. — عدد رقم ١٤٠٠ — الخميس ٨ أبريل ١٩٩٩


## ԱԺԱՆ ԵՒ ԹԱՆԿ ԱՐԻՒՆՆԵՐ

*Ի հարկէ, բժշկագիտութեան համար, տարօրինակ պիտի թուի արիւններու աժան կամ թանկ ըլլալու հանգամանքները. արեան տեսակները յստակ են, կան ընդհանրացած տեսակները եւ կան հազուագիւտները. մարդիկ ունին այս կամ այն տեսակի արիւնները, որոնք տարրալուծարանին համար վերջ ի վերջոյ արիւններ են՝ բոսոր եւ արժէքաւոր:*

*Անտարակոյս, մարդկայնական սիրտերու եւ հոգիներու համար, բոլոր մարդկային արիւնները վսեմ են, համահաւասար, այնքան ատեն որ մարդկանց կու տան կեանք եւ կենդանութիւն: Մարդկութեան ծառայող մեծահոգի եւ գթառատ գործիչներու դիտանկիւնէն մարդը ինչպիսի գոյն եւ սեռի տէր ըլլայ, որ կրօնքն ու դաւանանքը դաւանի, աշխարհի որ անկիւնն ալ բնակի մարդը կը մնայ մարդ, որուն ազատագրութեան եւ բարեկեցիկ կեանքին համար կ'արժէ պայքարիլ, զոհուիլ եւ հաստատել երջանկութիւն մարդկութեան համար: Հետեւաբար՝ մարդու արիւնը թանկարժէք է եւ անփոխարինելի, պաշտամունքի եւ պաշտպանութեան արժանի:*

*Քաղաքականութեան մօտ սակայն, վերոնշեալ օրինաչափութիւններն ու տրամաբանական բանաձեւերը կը գտնեն այլ ու հակասական լուծում. քաղաքագէտներու եւ աշխարհի քաղաքական ընթացքը որոշողներու համար կան արեան երկու տարատեսակներ՝ աժան եւ թանկ: Մեծ տէրութեանց քաղաքագէտներուն համար իրենց քաղաքացիներուն եւ ազգակիցներուն արիւնները աւելի սուղ են եւ թանկարժէք, քան փոքր երկիրներու եւ ժողովուրդներու մարդկանց արիւնները: Աստուծոյ զաւակները, որոնք անխտիր Անոր որդիներն են, այս չարանենգ աշխարհին վրայ կը դառնան տարբեր ու զատորոշուած, կան՝ ընտրեալներ եւ կան երրորդական դասակարգի պատկանող զաւակներ: Ոմանց արիւնը երբ թափի, ողջ աշխարհը կը ցնցուի, իսկ ոմանք արեան հեղեղներ կը հոսեցնեն, ոչ ոքի հոգն անգամ չ'ըլլար: Կարծէք ոմանք յատուկ մարդիկ են, իսկ ուրիշներ՝ հասարակ, անարժէք եւ կոտորուելու դատապարտուած: Եւ այս անարդար դրուածքը երբ հասկնալի էր անցեալին՝ նախնադարեան շրջանին, թէ միջնադարուն, երբ կը տիրէր ստրուկի եւ ստրկատէրի հոգեբանութիւն, երբ կար տիրոջ ու ծառայի զատորոշում, ապա՝ մարդու մտածողութեան յառաջդիմութեամբ, մարդասիրութեան ու արդարութեան տարածմամբ, կը սպասուէր, որ արիւնները դառնային միատեսակ՝ բոլորն ալ թանկ, մարդուն ու մարդկայինին եւ ոչ... անասունի կամ գազանի:*

*Բայց, ափսո՜ս, որ դեռ եւս կան թանկ եւ աժան արիւններ: Արիւններ՝ որոնք կը հեղուն ջուրի կամ քարիւղի պատճառով, կը հոսին ատելութեանց եւ ոճիրներու հետեւանքով, մարդիկ կը մորթոտուին նախիրի նման:*

*Երբ հպանցիկ անկարկ նետենք աշխարհի տարբեր տաք - կէտերու վրայ, կը տեսնենք պատերազմներու շարաններ եւ դիակներ կողք - կողքի, կարծէք մարդիկ կան ծնած սպաննուելու համար՝ որպէս արդիւնք ուրիշներու կռիւին, առեւտուրին եւ դիւային սակարկութեանց: Այն տպաւորութիւնը կ'ունենանք, որ արիւններ կը հոսին աժանօրէն եւ առատաբար քաղաքական ինչ - ինչ հաշիւներու համար: Թանկ արեան տէր մարդիկ անհամար դաւեր ու սադրանքներ կը հիւսեն աժան արեան տէր մարդկանց հաշւոյն. աժանը պիտի հոսի, որ թանկը փառաբանուի, յղփանայ եւ գերիշխէ ամէնուր:*

*Ահա կը տեսնենք Իրաքի ժողովուրդը, որուն աժան արիւնը կը հեղու ամերիկեան - բրիտանական օդարշաւներու անզուսպ ռմբակոծումներուն պատճառով: Ամերիկացի կամ բրիտանացի քաղաքական գործիչ մը պիտի ընդունէ՞ր, որ իր երկրին զաւակները նոյնքան արիւն վատնէին: Թանկ արեան տէր մարդիկ, երկինքէն հրթիռներ կը տեղացնեն աժան արեան տէր մարդկանց վրայ եւ ոչ մէկ հաշիւ կամ խիղճ մը շարժող: Սա, թերեւս նակատագիր է անարդար:*

*Ափրիկեան արիւնը, անտարակոյս, աժան է, որ կը հոսի տարբեր պատերազմներու պատճառով, նիւթուած եւրոպական թէ ամերիկեան մայրաքաղաքներու մէջ: Խեղճ ու աղքատ, Երրորդ Աշխարհի եւ թշուառ երկիրներու քաղաքացիներ դատապարտուած են տէր ըլլալու աժան արեան, ինչ տեսակի ալ ըլլան անոնք: Մինչ, երանելի՜ են անոնք, որոնք ունին ամերիկեան թէ եւրոպական անձնագիրներ, որովհետեւ՝ տէր են թանկ արեան. զգո՜յշ չդպնաք անոնց, որովհետեւ՝ կրնաք պիտակաւորուիլ «ահաբեկիչ», «խափանարար», «ոճրագործ»:*

*Իսրայէլի եւ Թուրքիոյ համար, հրեայի կամ թուրքի արիւնը թանկ է, իսկ արաբին, քիւրտին, հայուն արիւնը աժան: Իսրայէլ լիբանանցիներու եւ պաղեստինցիներու արիւններ կը հոսեցնէ, առանց որեւէ խիղճի կամ զգացումի, իսկ վա՜յ եթէ մէկ հրեայ դաշունահարուի կամ հրեաներ վիրաւորուին լիբանանեան «քաթիուշա»ներու պատճառով: Իսրայէլ իր մէկ անձի արեան դիմաց, արաբ հարիւրաւորներու արիւն կ'ուզէ բաւարարուելու համար:*

*Թուրքիա քիւրտ յեղափոխական Ա. Օճալանը կ'ամբաստանէ 30 հազար զոհերու պատասխանատու, իսկ Թուրքիոյ պատճառած արիւնահեղութեանց պատիւը կամ վրէժը ո՞վ պիտի պահանջէ. եւ եթէ պահանջէ, ի՞նչ պիտի կոչուի, «տեռորի՞ստ» արդեօք:*

*Անգարա միշտ կը կրկնէ, որ Ա. Օճալան 30 հազար անձերու արեան պատասխանատուն է եւ հետեւաբար մահուան դատապարտումի արժանի, իսկ մէկ ու կէս միլիոն հայոց արեան գինը ո՞վ պիտի վճարէ եւ ինչպէ՞ս:*

*Հայոց արիւնը աժաններո՞ւն մէջ պիտի դասուի, իսկ թրքականը՝ թանկ:*

*Բայց, մեր արիւնը մեզի համար թանկ է ու թանկագոյն, ասոր պիտի պատասխանեն հայ նորահաս սերունդները:*

*«ԱՐԱՐԱՏ»* — ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԵՒ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ԱԼԻԵՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՈՒՆԵՑԱՆ ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄԷՋ

Անկախ Պետութիւններու Համագործակցութեան (ԱՊՀ) ղեկավարներու համաժողովին մասնակցելու նպատակաւ, Մոսկուա մեկնած էր Հայաստանի պաշտօնական պատուիրակութիւն մը՝ նախագահ Ռոպերթ Քոչարեանի գլխաւորութեամբ:

1 Ապրիլին, Ռուսաստանի Արտաքին նախարարութեան Ընդունելութեան տան մէջ Ռ. Քոչարեան, ինչպէս կ'ակնկալուէր, հանդիպում մը ունեցաւ Ատրպէյճանի նախագահ՝ Հ. Ալիեւի հետ: Աւելի վերջ երկու նախագահներու առանձնազրոյցին միացաւ նաեւ Ռուսաստանի արտաքին նախարար՝ Ի. Իվանով:

Զրոյցէն ետք, նախագահ Քոչարեան հայ լրագրողներուն յայտնեց որ ինք եւ Հ. Ալիեւ քննարկեցին ղարաբաղեան հակամարտութեան այժմու վիճակը եւ հարցը անելէ դուրս բերելու հաւանական ճամբաները:

Քոչարեան ըսաւ որ որեւէ յստակ համաձայնութիւն չէ գոյացած: Հակառակ ատոր Հայաստանի նախագահը օգտակար նկատեց հանդիպումը, նշելով որ լուսարձակի տակ առնուեցան վստահութեան

⇨ 2

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԳԱՐԵԳԻՆ Ա. ՎԵՐԱԴԱՐՁԱՒ ՀԱՅՐԵՆԻՔ

*ԵՐԵՒԱՆ, 29 ՄԱՐՏ: Այսօր, աւելի քան վեցամսեայ բացակայութիւնից յետոյ, յատուկ չուերթով Լոնտոնից Հայաստան վերադարձաւ Ամենայն Հայոց Գարեգին Ա. կաթողիկոսը. Վեհափառը անցեալ տարուայ Սեպտեմբերի 22-ին մեկնել էր Միացեալ Նահանգներ բուժուելու, որտեղ ենթարկուել է երկու վիրահատութեան:*

*Ինչպէս հաղորդուել է, Մարտի 24-ին Գարեգին Ա. կաթողիկոսը Վատիկանում մասնակցել է «Հայաստան-Հռոմ» ցուցահանդէսի հանդիսաւոր բացմանը, այնտեղից ուղեւորուել Լոնտոն: Լոնտոնից Վեհափառը Հայաստան վերադարձաւ յայտնի բարերար Վաչէ Մանուկեանի սեփական ինքնաթիռով:*

*«Զուարթնոց» օդանաւակայանում Գարեգին Ա-ին դիմաւորեցին Հանրապետութեան վարչապետ Արմէն Դարբինեանը, կաթողիկոսական ընդհանուր փոխանորդ Գարեգին Արք. Ներսիսեանը, բարձրաստիճան հոգեւորականներ, կառավարութեան անդամներ:*

*Գարեգին Ա-ն նշեց, որ Մայր Աթոռ է վերադարձել ոչ լրիւ ապաքինուած, սակայն Ս. Զատկի առթիւ իր հայրապետական խօսքն է ուղղելու ժողովրդին, որը հեռարձակուելու է հեռուստատեսութեամբ եւ ռատիոյով: Վեհափառ շնորհակալութիւն յայտնեց բոլորին, ովքեր մտահոգուել եւ աղօթել են իր առողջութեան համար:*

**ՓԱՐԻԶ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀ՝ ԽՕՍՐՈՎ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ ՄԱՄԼՈՅ ԱՍՈՒԼԻՍԸ

Հայաստանի Խորհրդարանի նախագահ Խոսրով Յարութիւնեանի գլխաւորութեամբ պաշտօնական պատուիրակութիւն մը Փարիզ կը գտնուէր վերջերս:

Անցեալ Հինգշաբթի երեկոյեան, Խ. Յարութիւնեան, իր շփումներու արդիւնքները լուսաբանելու նպատակով, մամլոյ ասուլիս մը սարքեց՝ Ֆրանսայի մօտ Հայաստանի դեսպանատան մէջ: Հանդիպումի բացման խօսքը արտասանեց Հայաստանի դեսպան՝ Եդուարդ Նալպանտեան: Ան յայտնեց որ Խ. Յարութիւնեան շփումներ ունեցած է Ֆրանսայի Խորհրդարանի եւ Ծերակոյտի նախագահներուն հետ եւ դասախօսութիւն մը կարդացած է Ֆրանսայի «Միջազգային Յարաբերութիւններ» կեդրոնին մէջ:

Այնուհետեւ բացատրութիւններ տուաւ Խ. Յարութիւնեան: Ան անդրադառնալով իր այցելութեան մանրամասնութիւններուն, յայտնեց որ իր այցելութիւնը տրամաբանական շարունակութիւնն է այն այցելութեան, որ 1997ին կատարած էր այն շրջանին վարչապետ՝ Ռ. Քոչարեան: Ըսաւ որ այցելութեան հիմնական նպատակն է՝ ամրապնդել եւ զարգացնել Հայաստան-Ֆրանսա տնտեսական յարաբերութիւնները:

Հայաստանի Խորհրդարանի խօսնակը յայտնեց նաեւ որ Ֆրանսայի Ծերակոյտի նախագահ՝ Պր. Փոնսըլէի նախաձեռնութեամբ յառաջիկային Փարիզի մէջ պիտի կազմակերպուի Կովկասեան երեք պետութիւններու՝ Հայաստանի, Վրաստանի եւ Ատրպէյճանի Խորհրդարաններու նախագահներու հանդիպում՝ Պր. Փոնսըլէի նախագահութեամբ: Խ. Յարութիւնեան աւելցուց նաեւ որ վերջին պահուն Փոնսըլէ տեղեկացուցած է որ եռակողմանի տեսակցութիւնը պիտի հովանաւորուի Ֆրանսայի նախագահ՝ Ժագ Շիրաքի կողմէ:

Խ. Յարութիւնեան, նշեց որ ամենուրեք իր օրակարգին վրայ դրուած էին նախ՝ Արցախի հարցը, ապա՝ Ֆրանսայի Ծերակոյտի կողմէ «Հայկական Ցեղասպանութեան» ճանաչման հարցը: Անդրադառնալով առաջին հարցին, Խ. Յարութիւնեան ըսաւ, որ ինք ամենուրեք ներկայացուցած է Հայաստանի դիրքորոշումը եւ աւելցուց որ Մինսքեան Խմբակի համանախագահներու գործունէութիւնը ի վերջոյ պիտի ծառայէ իր նպատակին: «Այլընտրանք չկայ: Կոսովայի հարցը օրինակ մըն է թէ ուժի գործադրութիւնը հեռանկար չի կրնար ունենալ», ըսաւ Յարութիւնեան:

Գալով երկրորդ հարցին, Հայաստանի Խորհրդարանի խօսնակը դիտել տուաւ որ իր ֆրանսացի պաշտօնակիցներ ընդհանրապէս, բայց մանաւանդ Պր. Փոնսըլէ կը հաւատայ որ «Ցեղասպանութեան» ճանաչումը անհրաժեշտ է Եւրոմիութեան անվտանգութեան հեռանկարը ապահովելու

⇨ 2

## ՀՀ ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ ՍԵՐԿԷՅ ՄԱՆԱՍԱՐԵԱՆԸ ԵԳԻՊՏՈՍԻ ԱՐՏԳՈՐԾՆԱԽԱՐԱՐ ԱՄՐ ՄՈՒՍԱՅԻՆ ՅԱՆՁՆԵՑ ԻՐ ՀԱՒԱՏԱՐՄԱԳՐԵՐԻ ՊԱՏՃԷՆԸ

*Մարտի 31-ին Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեանը Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան արտաքին գործերի նախարար Ամր Մուսային յանձնեց իր հաւատարմագրերի պատճէնը:*

*Առանձնազրոյցի ընթացքում կողմերն անդրադարձան Հայ-եգիպտական յարաբերութիւնների ներկայ իրավիճակին: Երկուստեք գոհունակութիւն յայտնուեց, որ մեծ աշխատանք է կատարուած եւ յուսալի հիմքեր են դրուած ամենատարբեր ոլորտներում համագործակցութեան զարգացման համար:*

*Եգիպտոսի արտգործնախարարը մասնաւորապէս կարեւորեց երկու երկրների միջեւ տնտեսական յարաբերութիւնների զարգացման անհրաժեշտութիւնը՝ յայտնելով այդ նպատակի համար բոլոր ջանքեր գործադրելու եգիպտական կողմի պատրաստակամութիւնը:*

## Եուկոսլաւիայէն Մոսկուա Փոխադրուած են 20 ՀՀ Քաղաքացի

*Եուկոսլաւիայի իրավիճակի պատճառով Ռուսաստանի Դաշնութեան արտակարգ իրավիճակների նախարարութեան ինքնաթիռներով Եուկոսլաւիայից Մոսկուա փոխադրուող անձանց մէջ կան նաեւ ՀՀ քաղաքացիներ:*

*Ինչպէս ԱՐՄԵՆՓՐԵՍԻՆ յայտնեցին ԱԳՆ հասարակայնութեան հետ յարաբերութիւնների վարչութիւնից, Մարտի 30-ից Ապրիլի 1-ը Եուկոսլաւիայից փոխադրուած են 20 ՀՀ քաղաքացի:*

*Անհրաժեշտութեան դէպքում նրանք տեղաւորւում են ՀՀ դեսպանութեան հիւրանոցում: Ժամանածների մի մասը տեղաւորուել է Մոսկուացի բարեկամների մօտ:*

*Փախստականների հոսքը շարունակւում է:*

## ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԸ ՍՏՈՐԱԳՐԵՑԻՆ ՀՕՊ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՀՐԱՀԱՆԳ

**Ռուսաստանի եւ Հայաստանի պաշտպանութեան նախարարներ Իգոր Սերգեեւ եւ Վազգէն Սարգսեանը ստորագրեցին «Հրահանգ ՌԴ եւ ՀՀ հակաօդային պաշտպանութեան գծով հերթապահ ուժերի եւ միջոցների համատեղ գործողութիւնների վերաբերեալ»: Ըստ այդ տեղեկատուութեան համաձայն, փաստաթուղթը սահմանում է մարտական հերթապահութեան կազմակերպումը եւ օդային իրադրութեան մասին տեղեկատուութեան փոխանակման կարգը:**

**Հրահանգը նաեւ կանոնակարգում է Ռուսաստանի եւ Հայաստանի ՀՕՊ հերթապահ ուժերի եւ միջոցների համատեղ գործողութիւնները ԱՊՀ մասնակից պետութիւնների ՀՕՊ միացեալ համակարգի կազմում:**

ՀԱՅԱՍՏԱՆ

## 21 ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ՈՒ ԴԱՇԻՆՔՆԵՐ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ
## ԿԱՐԷՆ ԴԵՄԻՐՃԵԱՆ ԵՒ ՎԱԶԳԷՆ ՍԱՐԳՍԵԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՊԻՏԻ ՄԱՍՆԱԿՑԻՆ ՄԻԱՑԵԱԼ ՑԱՆԿՈՎ

*Երեքշաբթի, Մարտ 30-ին արձանագրուեցաւ Հայաստանի յառաջիկայ խորհրդարանական ընտրութիւններու նախընտրական շրջանի մեծագոյն անակնկալը, երբ յայտարարուեցաւ թէ, Կարէն Դեմիրճեանի գլխաւորած Ժողովրդական Կուսակցութեան եւ Պաշտպանութեան նախարար Վազգէն Սարգսեանի առաջնորդած «Երկրապահ» Կամաւորներու Միութեան ու Հանրապետական Կուսակցութեան միջեւ գոյացած է ընտրական դաշինք՝ միացեալ ցուցակներով մասնակցելու համար Մայիս 30-ին կայանալիք Ազգային Ժողովի ընտրութիւններուն:*

*«Միասնութիւն» անուան տակ հրապարակ եկած դաշինքի ընտրական համամասնական ցուցակը կը գլխաւորէ Կարէն Դեմիրճեան, որուն կը հետեւին Վազգէն Սարգսեանի, Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի նախագահ Ֆադէյ Սարգսեանի, Հանրապետական Կուսակցութեան նախագահ Անդրանիկ Մարգարեանի, Ազգային Ժողովի փոխ խօսնակ Ալբերթ Բազէեանի եւ այլոց անունները:*

*Քաղաքական դիտորդներու կարծիքով, ընտրութիւններէն ետք խորհրդարանական մեծամասնութիւն դառնալով, այս դաշինքը հաւանաբար պիտի ուզէ նաեւ կազմել նոր կառավարութիւնը՝ Կարէն Դեմիրճեանի գլխաւորութեամբ, ինչ որ անխուսափելի պիտի դարձնէ բախումը նախագահ Ռոպերթ Քոչարեանի հետ, որու համար, մինչեւ վերջերս Հանրապետական Կուսակցութիւնը եւ «Երկրապահներ»ը կը նկատուէին քաղաքական գլխաւոր յենարան:*

*«Միասնութիւն» դաշինքի ստեղծումը յայտարարուեցաւ Հայաստանի Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի փոքր դահլիճէն ներս Հայաստանի Ժողովրդական կուսակցութեան վարչութեան քաղաքական խորհուրդի եւ Հայաստանի Հանրապետական կուսակցութեան խորհուրդի միատեղ նիստի ընթացքին:*

*Այս առթիւ հրապարակուած յայտարարութիւնը կը յայտնէ, թէ դաշինքը ստեղծուած է «հիմք ունենալով երկրի ներկայի եւ ապագայի նկատմամբ ունեցած երկուստեք մտահոգութիւնները, ծանր սոցիալ-տնտեսական վիճակի յաղթահարման գլխաւոր նախապայման համարելով ազգային միասնութիւնն ու քաղաքական ուժերի համագործակցութիւնը, ելնելով երկու կուսակցութիւնների ծրագրերում առկայ ընդհանուր մօտեցումներից»: ՀԺԿ-ՀՀԿ ընտրական դաշինքը նկատուեցաւ նաեւ սկիզբ՝ հետագայ տեւական համագործակցութեան համար:*

*Հայաստանի Հանրապետական Կուսակցութեան նախագահ, ԱԺ պատգամաւոր Անդրանիկ Մարգարեան յայտարարեց՝ «անպայման 50 տոկոսից աւելի ձայներ կ'ունենանք ապագայ խորհրդարանում՝ մեծամասնութիւն կը կազմենք»:*

*Ընտրութիւններէն ետք դաշինքի անդամներուն գործադիր պաշտօններու վրայ նշանակման հաւանականութեան մասին Պր. Մարգարեան ըսաւ, որ այդ հարցի շուրջ բանակցութիւններ տեղի չեն ունեցած եւ այդ հարցը ձգուած է ընտրութիւններէն ետք: Սակայն, ան աւելցուց, որ կառավարութիւնը պէտք է արտացոլացնէ ապագայ Ազգային Ժողովէն ներս ձեւաւորուելիք քաղաքական հորիզոնը, որու մասին դաշինքը կը մտածէ ընտրութիւններէն ետք:*

*Մարտ 30-ին աւարտեցաւ նաեւ համամասնական կարգով ընտրութիւններու մասնակցելու պայմանաժամը եւ 21 կուսակցութիւններ ու կուսակցական դաշինքներ իրենց ընտրական ցուցակները ներկայացուցին Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովին:*

## ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ ՄԱՅՐՈՒԹԵԱՆ ԵՒ ԳԵՂԵՑԿՈՒԹԵԱՆ ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ

Հայաստանի մէջ 7 Ապրիլը կը նշուի որպէս Մայրութեան եւ Գեղեցկութեան տօն: Այդ օր, Հայաստանցի ծանօթ նկարչուհիներ՝ Սեդա Պէքարեանի եւ Նունէ Աղպալեանի կտաւներու ցուցահանդէսը բացուեցաւ Հայաստանի Մշակոյթի եւ Մարզանքի նախարարութեան բարեգործական հիմնադրամի նորաստեղծ ցուցասրահին մէջ:

Ներկայացուած աշխատանքներու մէջ առաւել ուշագրաւ էին այն ստեղծագործութիւնները, որոնց մէջ կին հեղինակները պատկերած էին իրենց խորհրդածութիւնները յաւիտենական կեանքի, մահուան, զարթօնքի եւ յարատեւութեան մասին:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀ՝ ԽՕՍՐՈՎ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ ՄԱՄԼՈՅ ԱՍՈՒԼԻՍԸ

1 տեսանկիւնէ: Ատիկա կը կանխէ նոր անհանգիստ դէպքերու իրականացումը: Իսկ ինք՝ Պր. Յարութիւնեան այն կարծիքը յայտնեց որ ատիկա կը նպաստէ նաեւ որ թուրք ժողովուրդը լուսաբանուի եւ ճամբայ բացուի երկու ժողովուրդներու միջեւ աւելի լաւ յարաբերութիւններու հաստատման:

Այնուհանդերձ, ֆրանսացի քաղաքագէտները առայժմ, Գոստվայի հրաժարմութեանց պատճառաւ, կողմնակից չեն Ծերակոյտէն ներս այս օրինագիծը օրակարգի նիւթ դարձնելու եւ այդ պատճառաւ զայն կը յետաձգեն որոշ ժամանակի մը համար:

Իր խօսքի աւարտին, Խ. Յարութիւնեան պատասխանեց ներկաներու հարցումներուն:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԵՒ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ԱԼԻԵՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՈՒՆԵՑԱՆ ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄԷՋ

1 փոխադարձ մթնոլորտ հաստատելու հնարաւոր ուղիները: «Խօսքը տնտեսական ոլորտէ ներս հնարաւոր ուղիներու մասին է», ըսաւ նախագահ Քոչարեան:

Անդրադառնալով Ղարաբաղեան հակամարտութեան լուծման մասին կողմերու դիրքորոշումներուն, Քոչարեան նշեց որ երկու պետութիւններու դիրքորոշումները հիմնովին տարբեր են իրարմէ: Նախագահը յայտնեց որ Ալիեւ դարձեալ անընդունելի նկատած է վերջերս Մինսքեան Խմբակի կողմէ ներկայացուած առաջարկները, պատճառաբանելով որ եթէ Ատրպէյճան ընդունի զանոնք, գործնականապէս անկախութիւն շնորհած պիտի ըլլայ Ղարաբաղի: «Ես յստակ կերպով ներկայացուցի Հայաստանի կառավարութեան դիրքորոշումը, եւ կը կարծեմ որ որեւէ զիջողութիւն չենք կրնար ընել», ըսաւ Քոչարեան:

# ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՀԱՐԻՒՐԱՒՈՐ ՀԻՒԱՆԴՆԵՐ ՊԱՏՐԱՍՏ ԵՆ ԻՐԵՆՑ ՎՐԱՅ ՓՈՐՁԵԼՈՒ «ԱՐՄԵՆԻԿՈՒՄԸ»

Քիեւ, Խարքով, Դնեպրոպետրովսկ, Կալինինգրադ, Բառնաուլ, Էլիստա, Ռիկա, Վիլնիւս, Տալլին...: Ահա այն քաղաքների ոչ լրիւ ցանկը, որտեղից վերջին օրերին դիմել են ՀՀ առողջապահութեան նախարարութիւն եւ ԴԱԻ-ի կանխարգելման հանրապետական կենտրոն՝ բուժման նպատակով Երեւան ժամանելու, հնարաւորութիւն տրամադրելու խնդրանքով: Արդէն Երեւանում յայտնուել են հիւանդներ, որոնք այստեղ են ժամանել սեփական նախաձեռնութեամբ:

ԱՐՄԷՆՓՐԵՍԻ թղթակցին հաղորդելով իրարանցման այս փաստի մասին, ԴԱԻ-ի կանխարգելման հանրապետական կենտրոնի ղեկավար, բժշկական գիտութիւնների թեկնածու Լեւոն Զոհրապեանն ասաց, որ կարիք չկայ հապճեպօրէն, յախուռն կերպով գալ Երեւան՝ առանց համապատասխան ատեանների հետ վաղօրօք պայմանաւորուելու: Ցաւօք, հիւանդներն առայժմ բուժւում են մէկ գլինիգայում, որը ի վիճակի չէ ընդունելու բոլոր ցանկացողներին:

## Կատարուեց Երեւան-Լառնագա-Երեւան Առաջին Թռիչքը

«Արարատ Ավիա» ՊՓԲԸ-ը «Երեբունի» օդանաւակայանից 34-տեղանոց Եակ-40 ինքնաթիռով Մարտի 30-ին իրականացրեց Երեւան-Լառնագա-Երեւան առաջին կանոնաւոր թռիչքը՝ տեղափոխելով առաջին 20 ուղեւորներին եւ ՀՀ քաղաքացիական աւիացիայի գլխաւոր վարչութեան պատուիրակութեանը: Դա հնարաւոր դարձաւ շնորհիւ Հայաստանի Հանրապետութեան եւ Կիպրոսի Հանրապետութեան կառավարութիւնների միջեւ 1998թ. ստորագրուած «Օդային հաղորդակցութեան մասին» համաձայնագրի:

Կիպրոսի մայրաքաղաքում տեղի ունեցաւ թռիչքի բացման շնորհանդէսը: Հիւրընկալողները շնորհակալութիւն յայտնեցին դէպի իրենց կղզի նոր թռիչքի բացման համար, յոյս յայտնելով, որ ուղիղ օդային հաղորդակցութիւնը կ'ամրապնդի եւ կը զարգացնի երկու երկրների միջեւ գոյութիւն ունեցող առեւտրա-տնտեսական, մշակութային, քաղաքական կապերը:

ՀՀ ՔԱԳՎ միջազգային իրաւական բաժնի պետ Վլադիմիր Քոչարեանը կիպրոսեան կողմին փոխանցեց հայկական աւիաց- 4

## «ՄԻՏԼԵՆՏ ԱՐՄԵՆԻԱ ՊԱՆՔ» ՎԵՐԱՆՈՒԱՆՈՒԵԼ Է «HSBC ՊԱՆՔ ԱՐՄԵՆԻԱ»

«Midland Bank» վերանուանուել է «HSBC Պանք Հայաստան» : Դա տեղի է ունեցել պանքի կանոնադրութեան նոր խմբագրութիւնը ՀՀ ԿԲ նախագահի հրամանով հաստատուելուց յետոյ:

Ինչպէս հաղորդում է ՀՀ ԿԲ Տեղեկատուական կենտրոնը, պանքի վերանուանումն իրականացուել է HSBC համաշխարհային ֆինանսական խմբի ներքոյ միասնական ֆիրմային անուանումների հաստատման վերաբերեալ HSBC Holding plc Լոնտոնեան գլխամասային գրասենեակի որոշման համաձայն: «HSBC Bank Armenia»-ն առաջինն է HSBC խմբի՝ եւրոպական մայրցամաքում հիմնադրուած անդամներից, որն իրականացրել է յիշեալ անուանափոխութիւնը:

ԷՋՄԻԱԾԻՆ

## ԳԵՐԱԳՈՅՆ ԽՈՐՀՈՒՐԴԻ ՆԻՍՏ ԳԱՐԵԳԻՆ Ա. ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ
## Հռոմի Յովհաննէս Պօղոս Բ. Պապը Յուլիսի Սկիզբը Պիտի Այցելէ Հայաստան

Մարտ 31-ին, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի մէջ գումարուեցաւ Գերագոյն Հոգեւոր Խորհուրդի եւ Հայաստանի թեմակալ Առաջնորդներու համատեղ նիստ՝ Գարեգին Ա. Վեհափառ Հայրապետի նախագահութեամբ:

Տէրունական աղօթքէն ետք, Կաթողիկոսական Ընդհանուր Փոխանորդ՝ Գարեգին Արք. Ներսիսեան, յանուն Մայր Աթոռի Միաբանութեան եւ Գերագոյն Հոգեւոր Խորհուրդի անդամներուն, ողջունեց Վեհափառ Հայրապետի վերադարձը՝ Մայր Աթոռ:

Գերագոյն Հոգեւոր Խորհուրդի անդամները Գարեգին Ա. Կաթողիկոսին ներկայացուցին Նորին Սրբութեան բացակայութեան տարուած աշխատանքները: Վեհափառ Հայրապետը ժողովի մասնակիցներուն տեղեկութիւններ տուաւ Իր առողջական վիճակի մասին, գնահատեց Իր բացակայութեան շրջանին կատարուած աշխատանքները: Յետոյ Վեհափառ Հայրապետը յայտնեց որ Հռոմի Յովհաննէս Պօղոս Բ. Պապը, ընդառաջելով Իր եւ Հայաստանի Նախագահ՝ Ռոպերթ Քոչարեանի հրաւէրին, որպէս Մայր Աթոռի հիւր Յուլիսի սկիզբը պիտի այցելէ Հայաստան:

Նիստի աւարտին Գարեգին Ա. Կաթողիկոսը տուաւ իր թելադրութիւնները ու օրհնութիւնները:

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՌՈԲԵՐԴ ՔՈՉԱՐԵԱՆ Կ'ԸՆԴՈՒՆԻ ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍԱՀԱՅ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐՈՒ ՈՒՍԱՆՈՂՆԵՐԸ

ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանը Մարտի 30-ին ընդունեց Հայ Բարեգործական Ընդհանուր Միութեան Մանուկեան-Տեմիրճեան, ինչպէս նաեւ Լոս Անճելըսի Սրբոց Նահատակաց Ազգային Նախակրթական եւ Ֆերահեան երկրորդական վարժարանների շրջանաւարտներին ու նրանց ուսուցիչներին, որոնց այցը Հայրենիք, իրենց իսկ խօսքերով, ունի ճանաչողական եւ դաստիարակչական նպատակ:

Ինչպէս նշեցին ուսուցիչները, անսալով հանրապետութեան նախագահի կոչերին՝ գալ Հայաստան, հաղորդակից լինել Հայրենիքի հետ, իրենք մտադիր են նման այցելութիւնները դարձնել աւելի յաճախակի: Համառօտակի ներկայացնելով կրթօջախների գործունէութիւնը, նրանք նշեցին, որ իրենց գլխաւոր խնդիրն են համարում մատաղ սերնդի հայեցի դաստիարակութիւնը:

ՀՀ նախագահի մամլոյ գրասենեակի հաղորդման համաձայն, Ռոպերթ Քոչարեանը շեշտեց, որ ազգային միասնութեան գաղափարն այն հիմնասիւնն է, որով բազմաթիւ տասնամեակներ առաջնորդուել է հայ ժողովուրդը: Նա ընդգծեց, որ նման այցելութիւնները դառնում են բարի աւանդոյթ եւ բացառիկ դեր ունեն լեզուի, մշակոյթի պահպանման գործում:

Նախագահը բարձր գնահատեց ուսուցիչների նուիրուածութիւնը, ազգանուէր գործունէութիւնը եւ Սփիւռքի դժուարին պայմաններում հայ երեխաներին հայեցի կրթելու առաքելութիւնը: Նա նաեւ կարեւորեց սփիւռքահայ երիտասարդների շփումները, մշտական կապերի հաստատումը Հայաստանի իրենց հասակակիցների հետ: Հանրապետութեան նախագահը նշեց, որ իւրաքանչիւր սփիւռքահայ իր պարտքը պէտք է համարի տարին գոնէ մէկ անգամ այցելել Հայրենիք:

## «Credit Yerevan» Դրամատունը Մասնակից Կը Դառնայ Հայաստանի Ֆութպոլի Ֆետերասիոնին Ու Ազգային Հաւաքականին Հզօրացման Աշխատանքներուն

Ֆութպոլը այսօր մեր երկրագունդին բնակչութեան կեանքին անբաժան մասն է: Աշխարհի ամենէն ժողովրդական խաղը վերածուած է իսկական ճարտարարուեստի, որուն մէջ գործի լծուած են միլիոնաւոր անձինք, միլիոնաւոր տոլարներու հասնող դրամագլուխներով: Ֆութպոլի ազգային հաւաքականները դուրս եկած են իրենց մարզական յաղթանակներ իրագործելու առաքելութենէն ու դարձած են իրենց երկիրներուն երիտասարդութեան պատիւն ու դրօշը պաշտպանող խումբեր՝ միջազգային ու համաշխարհային մրցասպարէզներու վրայ:

Հայաստանի անկախ ֆութպոլի ֆետերասիոնը ու նորաստեղծ ֆութպոլի ազգային հաւաքականը դժուարին ճանապարհ անցան հասնելու այսօրուան բարձր խաղային մակարդակին ու յարգանքին՝ մասնակցելով աշխարհի ու Եւրոպայի բաժակներու զտման մրցաշարերուն, ունենալով նաեւ բազմաթիւ բարեկամական հանդիպումներ: Այս բոլոր կարեւոր իրադարձութիւններուն մէջ, «Credit-Երեւան» դրամատունը միշտ ալ գտնուեցաւ իր արժանի բարձրութեան վրայ, արժանանալով Հայաստանի ֆութպոլի ֆեդերասիոնին ու ազգային հաւաքականին վստահութեան՝ որոնք ամէն ճիգ ու ջանք գործադրեցին բարձր պահելու հայկական ֆութպոլի եւ Հայաստանի պատիւը աշխարհի բոլոր ցամաքամասերուն վրայ: «Credit - Երեւան» դրամատունը ամենայն յաջողութեամբ սպասարկեց, իրագործեց, Հայաստանի ֆութպոլի ֆետերասիոնին բոլոր գործառնութիւններուն, ծրագիրներուն, կապերուն ու կառոյցներուն մէջ: Ինչպէս մայր հայրենիքի, այնպէս ալ ՈՒԵՖԱ-ի ու ՖԻՖԱ-ի բոլոր շրջանակներուն հետ՝ որոնք կապուած են հայկական ֆութպոլի վերականգնման շնորհակալ աշխատանքներուն՝ «Creditr-Երեւան» դրամատունը ունեցաւ իր լայն մասնակցութիւնը: Այդ կ'ընդգրկէ նաեւ Երեւանի պատմական հանրապետական մարզադաշտին վերակառուցման աշխատանքները, որտեղ տեղի պիտի ունենայ 1999 թ.-ի Սեպտեմբերին Հայաստան - Ֆրանսա մրցումը, Եւրոպայի ազգերու բաժակի զտման մրցաշարին ծրագրով: Ֆրանսահայ մարզասէրներու պատուիրակութիւն մը, գլխաւորութեամբ Ֆրանսայի ազգային խումբի «աստղ», Եուրի Ժորքայէֆի ու հօր՝ Ժան Ժորքայէֆի, պիտի մասնակցին ճարտարապետական եզակի այդ կառոյցին բացման հանդիսութեան: Մինչ այդ, «Credit-Երեւան»-ի յաճախորդները կարող պիտի ըլլան աւելի եւս մասնակից դառնալու ինչպէս հայկական ֆութպոլի, այնպէս ալ Հայաստանի տնտեսութեան զարգացման, օգտագործելով «EuroCard-MasterCard»-երը, հայկական խորհրդանշաններով՝ աշխարհի որեւէ անկիւնէն կապուելով «Credit - Երեւան» դրամատան հետ:

*Երեւան, Հայաստան* — *Հ. ՄՈՍԿՈՖԵԱՆ*

## ԳԵՐՄԱՆԻԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻՆ ՅԱՆՁՆԵՑ ԻՍԹԱՆՊՈՒԼԻ ԻՐ ԴԵՍՊԱՆՈՒԹԵԱՆ 1889-1920 ԹԹ. ԱՐԽԻՒԱՅԻՆ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՊԱՏՃԷՆՆԵՐԸ

*Մարտի 23-ին ՀՀ-ում Գերմանիայի արտակարգ եւ լիազօր դեսպան Տիկ. Կարոլա Միւլլէր Հոլդքեմպերը ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանին յանձնեց Գերմանիայի արտաքին գերատեսչութեան արխիւում պահպանուած 1889–1920 թթ. արխիւային փաստաթղթերի եւ վաւերագրերի մանրապատճէններ՝ 56 հատորին համարժէք տարողութեամբ: Այս քայլը, ինչպէս լրագրողների հետ զրուցելիս նշեց ՀՀ արտգործնախարար Վ.Օսկանեանը, Գերմանիայի պէտք է՝ ի պատասխան ամիսներ առաջ ՀՀ-ից այդ երկրին բազմաթիւ արխիւային փաստաթղթերի յանձնման:*

*Մանրապատճէնները, ինչպէս իր խօսքում նշեց Գերմանիայի դեսպանը, պատկանել են նշուած տարիներին Իսթանպուլում Գերմանիայի դեսպանութեանը: Նա համոզմունք յայտնեց, որ «անցեալի նկատմամբ հրապարակայնութեան եւ թափանցիկութեան դրսեւորումը փոխադարձ վստահութեան եւ բարեկամութեան կարեւորագոյն նախապայմաններ» կը լինեն Գերմանիայի եւ Հայաստանի չարունակ զարգացող յարաբերութիւններում: Նշուեց նաեւ, որ որպէս երախտագիտութիւն, Համպուրկի համալսարանում տեղադրուել է առանձին ընթերցասրահ՝ Հայաստանից Գերմանիային տրամադրուած ձեռագրերն ուսումնասիրելու նպատակով:*

*Շնորհակալութիւն յայտնելով Գերմանիայի կառավարութեանը վաւերագրերի յանձնման համար, ՀՀ նախագահն իր խօսքում նշեց, որ այս քայլը դիտում է որպէս Հայոց ցեղասպանութեան ճանաչման խնդրում Գերմանիայի անկողմնակալութեան դրսեւորում: Իսկ նիւթերը նոր լոյս կարող է սփռել մեր ժողովրդի պատմութեան այդ ժամանակահատուածի վրայ:*

*Արարողութեանը ՀՀ նախագահից եւ արտգործնախարարից բացի ներկայ էին նախարարներ, ԱԺ պատգամաւորներ, գրողների միութեան, ԳԱԱ եւ Մատենադարանի ղեկավարներ:*

*Նշենք, որ այդ վաւերագրերի հիման վրայ հայ պատմաբան, Փրոֆ. Միքայէլեանը արդէն իսկ գրել է աշխատութիւն, եւ, ինչպէս իր խօսքում նշեց ԳԱԱ նախագահ Ֆադէյ Սարգսեանը, ուսումնասիրութիւնները կը շարունակուեն:*

## ԿՐԷԿ ԱՐԱՊԵԱՆ.-
## «Հասած Է Նաեւ Հայերուն Ժամանակը»

Անդրադառնալով Գերմանիայի եւ արեւելաեւրոպական կառավարութիւններից ու շուեյցարական պանքերից հրեաների փոխհատուցում ստանալու փաստին՝ «Ամերեկայի Ձայն» ռատիոկայանին տուած հարցազրոյցում ամերիկահայ անուանի իրաւաբան Կրէկ Արապեանը նշել է, որ հայերի դատը նոյնն է, եւ ցանկութեան դէպքում նրանք եւս կարող են առաջադրել նման պահանջք: Շեշտելով, որ դա իր անձնական կարծիքն է, Արապեանը նշում է, որ միջազգային օրէնքը, որով հիմնականում կարելի է առաջնորդուել, ՄԱԿ-ի ընդունած իրաւունքների կանոնադրութիւնն է: «Փոխհատուցման խնդիրը նաեւ միջազգային քաղաքականութեան հարց է: Թուրքիան վաղուց ջանում է միանալ Եւրոմիութեանը, որը Թուրքիային քննադատում է իր տարածքում մարդու իրաւունքների ոտնահարման համար:

Թուրքիան վերջերս համաձայնել է բացել Օսմանեան կայսրութեան արխիւներն ու պաշտօնական փաստաթղթերը: Բայց յայտնի չէ, թէ Թուրքիան ցանկանում է արդեօք հրապարակել կալուածքների նախկին տէրերի ցուցակը. մի խնդիր, որը անհրաժեշտ է հետապնդել:

Ըստ Արապեանի ԱՄՆ-ում ապրող բազմաթիւ հայեր, որոնց ծնողները կամ պապերն ու տատերը Թուրքիայում ունեցել են հողամասեր եւ ունեն այդ կալուածքների պատկանելիութիւնը հաստատող իրական փաստաթղթեր. որպէս այդ անձանց օրինական ժառանգներ՝ իրաւունք ունեն պահանջելու այդ կալուածքները: «Նման անձինք ոչ միայն կարող են ձեռք բերել այդ կալուածները, այլեւ իրականում գնալ Թուրքիա, տիրել դրանց եւ օգտագործել»,- գտնում է իրաւաբանը:

Ամերիկահայ իրաւաբանի կարծիքով, փոխհատուցման պահանջ պէտք է ներկայացուի ոչ միայն Թուրքիային, այլեւ Գերմանիային, քանի որ առաջին աշխարհամարտում, երբ հիմնականում տեղի ունեցաւ հայկական ջարդը, Գերմանիան ու Թուրքիան առանցքային երկրներ են եղել եւ պարտուել են: «Ես ոչ մի պատճառ չեմ տեսնում, թէ Գերմանիան եւ Թուրքիան ինչու չպէտք է հարկադրուեն հայերին փոխհատուցում վճարելու: Ներկայիս Գերմանիան կայսերական կառավարութեան անմիջական ժառանգորդն է, ինչպէս այսօրուայ Թուրքիան անմիջական ժառանգորդն է Օսմանեան կայսրութեան: Հետեւաբար հայերի խնդիրն ու իրաւունքը այս հարցում, եթէ նոյնիսկ ամբողջովին նոյնը չէ, ապա միանգամայն նման է հրեաների խնդրին: Հասել է նաեւ հայերի փոխհատուցում ստանալու ժամանակը»:

## ԼԻՆՍԻ ՀԻՄՆԱԴՐԱՄԸ ԼՐԱՑՈՒՑԻՉ 15 ՄԻԼԻՈՆ ՏՈԼԱՐ ՏՐԱՄԱԴՐԵԼ Է ԱՄԵՐԻԿԵԱՆ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ԱՂԷՏԻ ԳՕՏՈՒՄ ԻՐԱԿԱՆԱՑՈՒՈՂ ՇԻՆԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԸՆԴԼԱՅՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

ՀՀ աղէտի գօտում Ամերիկեան Կարմիր Խաչի (ԱԿԽ) կողմից իրականացուող «Լինս 1» 5 միլիոն տոլարի շինարարական ծրագրին գումարուելու է 15 միլիոն տոլարի «Լինս 2» ծրագիրը, հաղորդել է ԱԿԽ Հայաստանեան ներկայացուցչութիւնը:

Լինսի հիմնադրամի կողմից ԱԿԽ-ին նուիրաբերուած գումարով ծրագրի ընդլայնումը Ապրիլի 3-ին ստացել է ՀՀ կառավարութեան հաւանութիւնը:

Նշենք, որ «Լինս 1» ծրագրով Գիւմրիում կառուցւում է 128 բնակարաններով 8 շէնք, իսկ Վանաձորում՝ 110 բնակարաններով 7 շէնք:

15 միլիոն տոլարից 9 միլիոնը տրամադրուելու է Շիրակի, մնացածը՝ Լոռվա մարզին:

Նախատեսւում է ծրագիրն իրականացնել 3 փուլով: Առաջին փուլում կը շարունակուեն ներկայումս իրականացուող շինաշխատանքները՝ Գիւմրիում կառուցելով 232 բնակարաններով 14 շէնք եւ 44 բնակարաններով 2 շէնք Վանաձորում: Երկրորդ փուլի շինարարութիւնը նախատեսւում է իրականացնել Սպիտակում: Երրորդ փուլի ուղղուածութիւնը եւ ծաւալները ճշտուելու են ԱԿԽ եւ ՀՀ կառավարութեան միջեւ:

«Լինս 1» շինարարական ծրագիրը, ըստ ԱԿԽ Հայաստանեան ներկայացչութեան ղեկավար Գեյլ Հովարդի, կ'աւարտուի 1999թ. աշնանը, իսկ «Լինս 2» ծրագրի 1-ին եւ 2-րդ փուլերը՝ 2000թ. ուշ աշնանը:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԳԻՏԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ ԳՈՐԾԵԼՈՒ Է ԱԶԳԱՅԻՆ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀԵՏ ՍԵՐՏ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՄԲ

*ՀՀ արդարադատութեան նախարարութեան կողմից որպէս հասարակական կազմակերպութիւն գրանցուած Համահայկական Գիտական Խորհուրդը միայն ու միայն գործելու է Հայաստանի Գիտութիւնների Ակադեմիայի հետ սերտ համագործակցութեամբ: Եթէ չլինի ակադեմիայի աջակցութիւնը, եթէ չլինի նրա անդամների աջակցութիւնը, մենք շօշափելի արդիւնքների չենք հասնի, յայտարարեց Համահայկական գիտական խորհրդի նախագահ, Փրոֆեսոր Սիներիկ Հայրապետեանը, հանդէս գալով խորհրդի կազմկոմիտէի ընդլայնուած նիստում, որը տեղի ունեցաւ Մարտի 19-ին, ՀՀ ԳԱԱ նախագահութեան նիստերի դահլիճում:*

*Նիստում ելոյթ ունեցողները խօսեցին այն մասին, որ հանրապետութիւնում խարխլուած է գիտական կառոյցը, որը պիտի համակարգէր ազգային գիտա-տեխնիկական ներուժը եւ այն ծառայեցնէր երկրի եւ ազգի շահերին: Երկրագնդի վրայ չկայ մի պետութիւն, որի գիտական պոտենցիալը չծառայի նրա շահերին: Սակայն պիտի հաշուի առնել, որ Հայաստանում այսօր Ազգային ժողովը դեռ չի ընդունել գիտութեան մասին օրէնք, վերջին մօտ մէկ տասնամեակում սոցիալ-տնտեսական պայմանները արգելակել են նաեւ գիտութեան զարգացումը:*

*Համահայկական գիտական խորհուրդի ստեղծումը ողջունեցին ՍԴ Հնչակեան կուսակցութեան ատենապետ Էռնեստ Սողոմոնեանը եւ ԱԺՄ կուսակցութեան ներկայացուցիչ, Փրոֆեսոր Մարութ Նաւասարդեանը:*

## ԿԱԹԻ ԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ ՈԼՈՐՏԷ ՆԵՐՄ ՀՈԼԱՆՏԱ ԱՋԱԿՑՈՒԹԻՒՆ ՑՈՅՑ ԿՈՒ ՏԱՅ ՀԱՅԱՍՏԱՆԻ

Հոլանտական «Ակրիմէնթ Ինթէրնէյշըլ ՊԷ ՎԼ» ընկերութիւնը, որ աշխատանքի լծուած է Հոլանտայի կառավարութեան նախաձեռնութեամբ պատրաստուած օգնութեան ծրագիրը կեանքի կոչելու ուղղութեամբ, հետազօտութիւններ կը կատարէ Հայաստանէ ներս:

Այս ընկերութիւնը մտադիր է կաթնամթերքի արտադրութիւնը զարգացնել Հայաստանի հիւսիսարեւելեան շրջաններուն մէջ:

Գիւղատնտեսութեան Նախարարութեան արտաքին կապերու վարչութեան պետ՝ Անդրանիկ Պետրոսեան յայտնեց որ ծրագիրը իրականացնելու համար Հոլանտայի կառավարութիւնը 150 հազար հոլանտական կուլտէրի ներդրում կատարած է (1.9 կուլտէրը համարժէք է 1 տոլարի): Ան ըսաւ նաեւ որ Հայաստանի Գիւղատնտեսութեան Նախարարութիւնը հոլանտական այդ ընկերութեան մանրամասն տեղեկութիւններ փոխանցած է կաթի արտադրութեան ոլորտի վիճակի, առկայ փորձառութեան, աւանդութիւններու, ինչպէս նաեւ կաթնամթերքներու արտադրութեան եւ զանոնք արտածելու կարելիութիւններու մասին:



**ՓԱՍԱՏԻՆԱ**

**ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ**

## ԱԼԵՔՍԱՆՏՐ ՍԱՐՈՒԽԱՆԻ ԾՆՆԴԵԱՆ 100-ԱՄԵԱԿԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆ

Փասատինայի «Նոր Սերունդ Մշակ. Միութիւնը, Հինգշաբթի 4 Փետր. 1999-ի երեկոյեան, «Կարօ Սողանալեան» սրահէն ներս կազմակերպած հանդիսութիւնը նուիրուած էր Ալ. Սարուխանի ծննդեան հարիւր ամեակին: Սրահին պատերը զարդարուած էին Սարուխանի երգիծանկարներու մեծադիր վերարտադրութիւններով:

Հանդիսութեան բացումը կատարեց ՆՍՄՄ-ի վարչականներէն Յարութ Տէր Դաւիթեան, որ շեշտեց կարեւորութիւնը Սարուխանի արժէքը եւ յիշատակը պահելու: Ապա ան ամփոփ գիծերով ներկայացուց օրուան դասախօս, ճարտարապետ Դր. Սարգիս Պալմանուկեանը, որ ճարտարապետութեան կողքին մեծ վաստակ ունի նաեւ նկարչական արուեստի մէջ:

Դր. Պալմանուկեան, յաջորդող 70 վայրկեաններու ընթացքին, Սարուխան մարդը եւ գործը՝ ծանօթացուց ներկայ հանդիսականներուն: Երգիծանկարչութեան արուեստի ամփոփ պատմականէ մը ետք, ան ցոլապատկերներու միջոցաւ պաստառի վրայ ցուցադրեց Սարուխանի գործերէն աւելի քան 70 նմոյշներ, ընդհանրապէս նուիրուած մեր հայկական կեանքի զանազան երեսներուն:

Այս շահեկան դասախօսութեան աւարտին, ներկաներուն առիթը տրուեցաւ հարցումներ ուղղելու դասախօսին, որ ամբողջական պատասխաններով լուսաբանեց բոլորը:

Հիւրասիրութեամբ փակելէ առաջ երեկոյթը, ՆՍՄՄ-ի վարչութիւնը հայկական ճարտարապետութեան նուիրուած գիրքով մը պատուեց Դր. Պալմանուկեանը:

ԹՂԹԱԿԻՑ



*ՈՒՇ ՄՆԱՑԱԾ ՀԱՆԴԻՍԱԿԱՆՆԵՐԸ՝*
*-Այս ի՞նչ խայտառակութիւն է: Ե՞րբ եւ ո՞ւր տեսնուեր է, որ հանդէս մը ժամը ժամին սկսի...*

**ՄԱՍՆԱՒՈՐ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ**

## «ՀԱՅԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ 2000-ԻՆ»

Եւրոպայի մէջ մարդկային ու հասարակական գիտութիւններու ծաղկումի շրջաններէն սկսեալ եւ անոր զուգընթաց, հայագիտութիւնն ալ՝ իր այլեւայլ բնագաւառներով արձանագրած է հսկայ նուաճումներ, ըլլա՛յ արեւմուտքցիներու, ըլլա՛յ հայերու կողմէ, ի խնդիր հետազօտելու՝ հայութեան անցեալի հարուստ աւանդը ու ժամանակակից նուաճումները: Ահա թէ ինչո՛ւ հազարամեակի շրջադարձը պատեհ առիթը կ'ընծայէ՝ կատարելու հաշուեյարդար մը ցարդ տարուած աշխատանքին, ուրուագրելու հետազօտութեան եւ որակեալ ժողովրդականացման նոր հեռանկարներ, եւ հուսկ առաջարկելու աշխատանքային ընդհանուր ծրագիր մը՝ առաւել հարկադրիչ այն կարքերուն նկատմամբ, որոնք՝ հայագիտութեան համար՝ մերձակայ դարու վաղ տասնամեակներուն գլխաւոր մարտահրաւէրները պիտի արձակեն:

Այս բոլորի նկատառութեամբ՝ Հայկական Ուսմանց Միջազգային Ընկերակցութիւնը (ՀՈՄԸ - AIEA) խորհած է նախաձեռնել եւ համակարգել հայագէտներու միջեւ համընդհանուր գործակցութիւն մը, կազմակերպելով մինչեւ 2004 թուականը - Գրոց Գիւտի ԺԶ. դարադարձը նշող տարին - մասնագիտահաւաքներ, ականաւոր մասնագէտներու մասնակցութեամբ, բայց բաց մնալով միշտ՝ հետաքրքրուող լայն հասարակութեան մը: Այդ մասնագիտահաւաքները պիտի շօշափեն հետեւեալ բնագաւառները. **լեզուաբանութիւն** (1999), **բանասիրութիւն** (2000), **գրականութիւն** (2001), **պատմութիւն եւ աշխարհագրութիւն** (2002), **արուեստ եւ հնագիտութիւն** (2003), **կրօնք եւ գաղափարներու պատմութիւն** (2004):

Պարզ է որ նման գիտահաւաքներու կազմակերպութիւնը տնտեսական ծանր յանձնառութիւններ կը պահանջէ: ՀՈՄ Ընկերակցութիւնը լիայոյս է որ հայ ժողովուրդի եւ հայկական հաստատութիւններու վեհանձնութիւնը եւ մանաւանդ առհաւական փարումը հայ մշակոյթին, պիտի ընձեռեն բաւարար օժանդակութիւնը՝ որպէսզի կարենայ ան իր դերը լաւագոյնս կատարել ի սպաս հայ մշակոյթի խորագոյնս ուսումնասիրութեան եւ առաւելագոյն չափերով ծանօթացման: Մշակոյթ՝ որ կը պատկանի անկասկած, ինչպէս կը հաստատէր հայ արուեստի մասին Անատոլի Եակոբսոնի մեծութեամբ գիտնական մը, համաշխարհային քաղաքակրթութեան ամենափայլուն դրուագներու շարքին:

ՀԱՄԱԿԱՐԳԱԴՐԻՉ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

**ԹՈՒՐՔԻԱ**

## Նոր Պարբերական՝ «Դալարգիւղ»

Վերջերս, Կ. Պոլսոյ պատրիարքութեան կրօնական ժողովի նորընտիր ատենապետ՝ Հոգշ. Արամ Վրդ. Աթէշեանի նախաձեռնութեամբ սկսած է լոյս տեսնել «Դալարգիւղ» պարբերականը: Ան նշանակուելէ ետք Եշիլգիւղ թաղի հոգեւոր տեսուչ, հայահոծ այդ շրջանը սկսած է ապրիլ մշակութային եռուզեռ մը: Պարբերաթերթը ամսական պիւլեթէն մըն է Սբ. Ստեփանոս Եկեղեցւոյ պատկանող: Ան կը բաղկանայ 8 էջերէ: Կը հրատարակուի երկլեզու՝ հայերէն եւ թրքերէն: Թերթը կու տայ կրօնական գիտելիքներ եւ համայնքային լուրեր:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

# ՄԱՐԶԱԿԱՆ

## ՍԻՏՆԻԻ ՈՂԻՄՊԻԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ

Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Աւստրալիոյ Վարիչ Մարմինը կը տեղեկացնէ թէ Սիտնիի 2000 թուականի Ողիմպիական Խաղերու կապակցութեամբ առաջացած է յանձնախումբ մը «Հայաստանի Ազգային Ողիմպիական Կոմիտէի Սիտնի Մասնաճիւղ» անունով (Armenian NOC Sydney Association Inc.): Սոյն մարմինը ստեղծուած ու վաւերացուած է Հայաստանի ողիմպիական մարմնի առաջարկով, իսկ Պատուոյ Նախագահ նշանակուած՝ Պրն. Ստեփան Գրքեաշարեան:

Ս.Դ.Հ.Կ.-ի մարզական թեւին՝ Հայ Մարմնամարզական Միութեան (Հ.Մ.Մ.) երեք ներկայացուցիչներ մաս կը կազէր այս կազմակերպութեան, որոնցմէ մէկը կը վարէ քարտուղարի պաշտօնը: Մարմինը կ՚ընդգրկէ նաեւ Հ.Բ.Ը.Մ.-ի, Հ.Մ.Ը.Մ.-ի եւ Armenian Chamber of Commerce-ի ներկայացուցիչները ինչպէս նաեւ երկու անհատականներ:

---

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՖՈՒԹՊՈԼԻ ՀԱՒԱՔԱԿԱՆԸ 2-0 ՊԱՐՏՈՒԵՑԱՒ ՖՐԱՆՍԱԿԱՆԻՆ ԴԻՄԱՑ

Հայաստանի Ֆութպոլի Ազգային խումբը երէկ Փարիզի նշանաւոր Սթատ Տը Ֆրանս մարզադաշտին վրայ, 80 հազար մարզասէրներու ներկայութեան հանդիպում մը ունեցաւ Ֆրանսայի ազգային խումբին հետ, որ այս տարի աշխարհի ախոյեան հռչակուած էր: Խաղը մեծ հետաքրքրութիւն ստեղծած էր ոչ միայն հայկական, այլ նաեւ Ֆրանսական մարզական շրջանակներէ ներս, որովհետեւ ֆրանսացիները այս խաղը շահելու էին ամէն գնով: Հետաքրքրական էր որ մարզադաշտը ամբողջովին լեցուած էր, տոմսերը կանուխէն սպառած էին եւ տոմսերը սեւ սակարանի մէջ բարձրացած էին մինչեւ 500 ֆրանք: Մրցումին ներկայ գտնուեցաւ նաեւ ԱԺ-ի Նախագահ Խոսրով Յարութիւնեանի նախագահութեամբ Հայաստանի պետական պատուիրակութիւնը, որ Ֆրանսա կը գտնուէր:

Ինչ մեղք որ Հայաստանի հաւաքականը, ընդհանրապէս լաւ խաղարկութիւն մը ցուցաբերելով հանդերձ, միշտ կորսնցուց գնդակի անյաջող փոխանցումներու պատճառով եւ չկրցաւ օգտուիլ նպաստաւոր առիթներէ: Ատոր փոխարէն տակաւին երկրորդ վայրկեանին կոլ մը տեսաւ իր դարպասին մէջ իր իսկ ֆութպոլիսթին սխալով: Երկրորդ անբախտութիւնն ալ այն եղաւ որ Հայաստանի հաւաքականը երկրորդ կոլ մը ստացաւ առաջին կիսախաղի ճիշդ վերջին երկվայրկեանին: Երկրորդ կիսախաղի ընթացքին Հայաստանի հաւաքականը չկրցաւ արդիւնքը փոխել եւ պարտուեցաւ 2-0: Այս արդիւնքն ալ այնքան աղիտալի չնկատուեցաւ աշխարհի ախոյեանին դիմաց:

Հետաքրքրական էր որ ֆրանսական հաւաքականին մէջ կը խաղային այդ հաւաքականի երկու կարեւոր հայ մարզիկները, Եուրի Ժորգայէֆ ու Ալէն Պօղոսեան: Այս պարագան պատճառ դարձած էր որ ֆրանսացի լրագրողներ հմաստալից հարցումներ ուղղէին մանաւանդ Ժորգայէֆին, որ միշտ հայանպաստ կեցուածք ցուցաբերած է: Երբ լրագրողներ հարցուցին թէ ի՞նչ կը զգայ երբ կը խաղայ իր հայրենակիցներուն դէմ, Ժորգայէֆ ըսաւ. «Շատ պիտի փափաքէի սա վայրկեանին մաս կազմել Հայաստանի հաւաքականին: Բայց հիմա հոս եմ: Խաղէն առաջ եւ խաղէն վերջ սիրտս հայրենակիցներուս խումբին հետ է, բայց խաղի ընթացքին սիրտս իմ խումբիս հետ պիտի ըլլայ»:

Այդպէս ալ եղաւ, Ժորգայէֆ գերազանց խաղ մը ցուցադրեց, հիանալի փոխանցումներ ըրաւ, քանի մը անգամ ալ դէմ առ դէմ եկաւ Հայաստանի հաւաքականին բերդապահին հետ: Նոյն փայլուն խաղարկութիւնը ցուցաբերեց Ալէն Պօղոսեան:

Հայաստանի հեռատեսիլը մրցումէն առաջ ցոյց տուաւ Շարլ Ազնաւուրի վերջին համերգէն մասեր:

# ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ





# «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Յովսէփ Մովսէսեանի մահուան եւ քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տոքթ. եւ Տիկին Էտի Գասապեան | 20 |
| Տէր եւ Տիկին Խաչիկ Գասապեան | 20 |
| Տէր եւ Տիկին Մարտօ Գասապեան (Թորոնթօ) | 20 |

# ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Ողբ. Վազգէն Փարթամեանի մահուան տխուր առթիւ, Օր. Տիանա Գոգորեան եւ Պր. Պետրոս Գոգորեան կը նուիրեն 30

# ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ողբ. Միհրան Ս. Գոլանճեանի մահուան տխուր առթիւ, այրի Տիկ. Էլիզ Գոլանճեան կ՚ընէ հետեւեալ նուիրատուութիւնները.-

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 150 |
| Գահիրէի Աղքատախնամին | 50 |
| Կարապետ Աղա Աբիկեան Հանգստեան Տան | 50 |
| «Արեւ»ին | 30 |
| «Յուսաբեր»ին | 30 |
| «Ջահակիր»ին | 30 |

(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

Ողբ. Վազգէն Փարթամեանի մահուան տխուր առթիւ, Ընկեր Վրէժ Սէֆէրեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| «Արեւ»ին | 25 |
| «Ջահակիր»ին | 25 |

(Ստանալ «Ջահակիր»էն)

Ողբ. Յովսէփ Մովսէսեանի մահուան եւ քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին, Տէր եւ Տիկ. Անդրօ Վարժապետեան եւ Տէր եւ Տիկ. Վիգէն Վարժապետեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հայկական Ընթերցասրահին | 25 |
| «Ջահակիր»ին | 25 |

(Ստանալ «Ջահակիր»էն)







**Կատարուեց Երեւան-Լառնագա-Երեւան Առաջին Թռիչքը**

2

իայի ղեկավարութեան ուղերձը, համոզմունք յայտնելով, որ հայ եւ յոյն ժողովուրդների դարերի ընթացքում թրծուած բարեկամութիւնը «նոր՝ օդային կամուրջով կը շարունակուի»:

Երեւան-Լառնագա-Երեւան չուերթը մինչեւ Ապրիլի կէսերը տեղի կ՚ունենայ երկշաբաթեայ յաճախականութեամբ, այնուհետեւ կը կատարուի շաբաթը մէկ:

# ՄԱՀԱԶԴ

Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը խոր կսկիծով կը գուժէ իր անդամներէն հայաստանաբնակ, Հայաստանի Ազգային Ակադեմիայի Արեւելագիտութեան Բաժնի պատասխանատու դասախօս՝

## ԴՈԿՏ. ԱԼԵՔՍԱՆՏՐ ԽԱՉԱՏՐԵԱՆԻ

մահը, որ պատահեցաւ Երկուշաբթի, 22 Փետրուար 1999-ին, սրտի տագնապի հետեւանքով:

Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Չորեքշաբթի 24 Փետրուարին, Երեւանի մէջ:

*«Ջահակիր» եւ իր շրջանակը, իրենց խորզգած վշտակցութիւնները կը յայտնեն հանգուցեալ հաւատարիմ ընկերոջ սգակիր բոլոր պարագաներուն:*

# ՏԽՐՈՒՆԻ

Տիկ. Անահիտ Շահպազեան, Տէր եւ Տիկ. Նուպար Շահպազեան եւ զաւակունք՝ Դրօ եւ Նորա, Տէր եւ Տիկ. Ժորժ Եաֆալեան եւ զաւակունք՝ Թալին եւ Ռոպի, Տիկ. Մաննիկ Համամճեան (Ֆրանսա), Տէր եւ Տիկ. Հայկազ Սարգիսեան, Տէր եւ Տիկ. Էտուար Համամճեան եւ զաւակունք, (Ֆրանսա), Տէր եւ Տիկ. Փաթրիք եւ Շաքէ Կիտալիա (Ֆրանսա), Տիկ. Օնրիէթ Շահպազեան եւ զաւակունք (Ֆրանսա), Օր. Ալիս Շահպազեան (Ֆրանսա), Տոքթ. Թաթուլ Նահապետեան եւ զաւակունք (Ֆրանսա), Տէր եւ Տիկ. Նակիպ եւ Ովսաննա Իսքանտար եւ զաւակունք, Տէր եւ Տիկ. Նուպար եւ Քնարիկ Մանուկեան եւ զաւակունք (ԱՄՆ), Տիկ. Զարմինէ Յովսէփեան, Գոգօ եւ Ֆիլոմէն Յովսէփեան (Աւստրալիա) ինչպէս նաեւ Սահակեան, Գալոմիրիս ընտանիքները եւ համայն սգակիր պարագաները խոր ցաւով կը գուժեն մահը իրենց ամուսնոյն, հօր, մեծհօր, եղբօր, մօրեղբօր, տալոջ, քենիին եւ ազգականին, Ողբացեալ՝

## ԽԱՉԻԿ ՇԱՀՊԱԶԵԱՆԻ

որ տեղի ունեցաւ Չորեքշաբթի, 24 Մարտ 1999-ի առաւօտեան, Սմուհա-ի «Մարքազ Էլ Թէպպի» հիւանդանոցին մէջ, յետ երկարատեւ հիւանդութեան:

*Այս տխուր առթիւ խմբագրութիւնս իր խորզգաց ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին սգակիր բոլոր պարագաներուն:*

# ՏԽՐՈՒՆԻ

Այրի Տիկին Էլիզ Գոլանճեան (Խարթում), Տէր եւ Տիկին Սարգիս Գոլանճեան եւ զաւակները (Լոնտոն), Գոլանճեան, Զինչինեան, Պօզաճեան, Ենովքեան, Վեսթըրտըլ, Գրոնգուլի, Նազարեան, Տէր Պետրոսեան ընտանիքները եւ իրենց համայն սգակիր ազգականները, ցաւ ի սիրտ կը գուժեն յանկարծական մահը իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին Ողբ.՝

## ՄԻՀՐԱՆ ՍԱՐԳԻՍ ԳՈԼԱՆՃԵԱՆԻ

**(1929-1999)**

որ տեղի ունեցաւ 10 Մարտ 1999-ին, իր բնակարանին մէջ ի Խարթում, սրտի կաթուածով:

Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Հինգշաբթի 11 Մարտ 1999-ին, Խարթումի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, ձեռամբ Արժ. Տ. Յովսէփ Քհնյ. Ալեքսանեանի: Ողբացեալին անկենդան մարմինը թաղուեցաւ Գերեզմանատան Հայկական մասի ընտանեկան դամբարանին մէջ:

*«Ջահակիր» եւ իր շրջանակը իրենց զգացուած ցաւակցութիւնները կը յայտնեն հանգուցեալի այրիին՝ Տիկ. Էլիզ Գոլանճեանի, զաւկին եւ սգակիր բոլոր ազգականներուն, յատկապէս Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի:*

# ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Շաբաթ 17 Ապրիլ 1999, կ.ե. ժամը 8-ին
**«ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՄՐԱՀ»ԻՆ ՄԷՋ**

**ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ**

Յակոբ Պարոնեանի
**«ՇՈՂՈՔՈՐԹԸ»**
(Կատակերգութիւն երեք արարով)

Բեմադրութիւն՝
**ԲԱՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ ԴՈԿՏ. ԳԷՈՐԳ ԲԱՂԴԻՇԵԱՆԻ**

Հովանաւորութեամբ՝
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Թատերական Ներկայացումէն անմիջապէս ետք նախատեսուած է
**ԱՍՈՒԼԻՍ**

Սիրալիր հրաւէր բոլորին

*Խնամիաբար կը խնդրուի՝ թատերասրահ չբերուին մանկահասակ անկառավարելի փոքրիկներ:*

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax: (202) 4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1401 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 22 ԱՊՐԻԼ 1999    ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 եգ. ղրկ.    عدد رقم ١٤٠١ — الخميس ٢٢ ابريل ١٩٩٩


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ**

## ՄԻԱԲԱՆ ՇԱՐՔԵՐՈՎ ԳՈՐԾԻ ԼԾՈՒԻՆՔ

*Ասկէ 84 տարիներ առաջ, թուրք ցեղասպաններու կողմէ ծրագրուած 20-րդ դարու առաջին ցեղասպանութիւնը կը գործադրուէր հրէշային և անմարդկային արարքով: Եթէ այս հայ ժողովուրդին պատմութեան մէջ կ'արձանագրուէր որպէս ողբերգական էջ, ապա մարդկային պատմութեան մէջ՝ որպէս ամօթի էջ՝ որովհետեւ ցեղասպանը կը մնար անպատիժ և նախընթաց մը նոր ցեղասպանութիւններու: Արդարեւ 20-րդ դարը հայոց պատմութեան մէջ կը սկսէր դաժան ու մռայլ էջով: Հայ ժողովուրդին համար դարաշրջանը կը սկսէր արեան ու ողբի տարեգրութեամբ:*

*Պարզապէս ամբողջ հայ աշխարհ մը, մշակուած ու փարթամ, յանկարծ կ'ամայանար և համատարած գերեզմանի կը փոխուէր. արիւն, արցունք ու ջարդ... ապա աւեր: Մարդակեր գազանը կը ջանար գործադրել իր ծրագիրը, միայն մէկ հայ թողելով թանգարանային...: Դարու մեծագոյն ոճիրը կը գործէր թշնամին, առիթէն օգտուելով Ա. համաշխարհային պատերազմը, և հետեւաբար հայ ժողովուրդն ու Հայաստանը դառնալով թիրախ թուրք-թուրքական ծաւալողապաշտ ծրագրին, կը դատարկուէր Արեւմտեան Հայաստանը իր բնիկ իրաւատէր ժողովուրդէն, ապա Մեծ Եղեռնէն մազապուրծ փրկուած հայութիւնը, կը դառնար աշխարհացրիւ: Իւրաքանչիւր հայորդի իր կեանքով և արեամբ կը վճարէր գինը իր ազգային պատկանելիութեան, իր հայրենասիրութեան ու դաւանանքին: Իր մեղքը այն էր, որ կը պատկանէր Հայկի շառաւիղներուն. իր էութեան մէջ կը պահպանէր Մաշտոցի և Վարդանի ոգին և իր տեսլականը դարձուցած էր ազատ ու անկախ Հայաստանը:*

*Արդ, 20-րդ դարը պիտի հասնի իր աւարտին և մենք տակաւին մեր անժամանցելի դատին լուծման սկիզբն է որ կը գտնուինք: Մեր իրաւունքներուն և ազգային անկորնչելի տենչերուն կենսագործման ճանապարհին մեծ զոհողութիւններ կը սպասուին համայն հայութենէն: Հայ ժողովուրդը պէտք է վճռէ հասնիլ իր նուիրական նպատակներուն՝ թէկուզ ան ըլլայ երկարաշունչ պայքարով, սակայն չզիջիլ իր իրաւունքներէն թիզ մը անգամ:*

*Հայկական պահանջատիրութեան պայքարը հիմնուած է իրաւունքի և արդարութեան վրայ: Այս ուղղութեամբ քաղաքակիրթ տէրութիւններն ու Միջազգային հանրութիւնը անտարբերութիւն ցուցաբերելով, ցարդ չեն տուած իրենց պատասխանը և չեն դատապարտած ցեղասպանը: Իսկ Թուրքիան աչալուրջ կը հետեւի մեր շարժումներուն և իր բոլոր միջոցներով կը շարունակէ հակահայ քարոզչութիւնը, յամառելով հայկական ցեղասպանութիւնը ուրանալու իր կեցուածքին վրայ: Մինչ Ատրպէյճանի կառավարութիւնը հաւատարիմ շարունակողն է Օսմանեան և Երիտ. Թուրքերու իշխանութիւններու կողմէ հայ ժողովուրդին նկատմամբ ի գործ դրուած ցեղասպանական վարքագծին:*

*Առ այդ կ'ողջունենք բոլոր այն ազգերը որոնք կ'ընդունին Հայ Դատն ու Ցեղասպանութիւնը: Կան ազգեր որոնք դատապարտումներ յայտարարեցին, ինչպէս Արժանթինը, Ուրուկուէյը, Ռուսիան, Պելճիքան, Լիբանանը և շարք մը այլ պետութիւններ: Անցեալ տարի, Մայիս ամսուայ վերջ Ֆրանսայի Ազգային Ժողովը ճանչցաւ Հայկական Ցեղասպանութիւնը, սակայն վերջերս խորհրդարանի Վերին Պալատի Ծերակոյտը յետաձգեց քննարկել հարցը ինչ-ինչ պատրուակներով: Իսկ այս ամսոյս 10 Ապրիլին, Մեծն Բրիտանիոյ Լորտերու Պալատը մերժեց Հայկական Ցեղասպանութիւնը ճանչնալու առաջարկ մը:*

*Որպէսզի մեր պահանջատիրական պայքարը կարենայ յառաջընթաց արձանագրել, անհրաժեշտութիւնը կայ հաւաքական աշխատանքի, դերերու բաժանումով՝ Հայաստանի-Սփիւռքի-Արցախի միջեւ, միակ ու գերագոյն ղեկավարութեան մը ներքեւ, որ բնականաբար ան պիտի ըլլայ Հայաստանի պետութիւնը, քանի որ իրաւատէրն է հայկական դատին: Լուծւինք քարոզչական և դիւանագիտական արդի ու ներդաշնակ գործունէութեան: Պէտք է գործնական և հաստատ քայլեր առնուին այս ուղղութեամբ, դուրս գալով նեղ անհատական շահերէ և ձերբազատուելով հատուածամոլ նկատումներէ: Հայ Դատը ներկայացնենք օտար շրջանակներուն տարբեր լեզուներով և օգտագործելով համակարգչային ցանցը, հետուողական ձեւով: Առիթէն օգտուինք ու միջազգային համագումար մը կազմակերպենք, սեղանի վրայ դնելով 20-րդ դարու բոլոր ցեղասպանութիւնները, վստահաբար և՝ օրերս Քոսովոյի ժողովուրդին դէմ պատահած ջարդն ու ահաւոր խոշտանգումները: Ուրեմն, նախ և առաջ պէտք է միացեալ ջանքերով ստեղծել Հայ Դատի ուսումնասիրութեան և մեր արդար իրաւունքներու հետապնդման մարմին մը:*

*Եթէ կ'ուզենք «Մէկ հայրենիք, մէկ ժողովուրդ» լոզունքը պահել, պէտք է բոլոր կողմերով, միաբան շարքերով, միաբռունցք պահանջել մեր իրաւունքները եւ պատասխան տալ ջարդարարներուն, ըսելու համար որ ձախողած են մեզ չքացնել փորձող դաւերը, հայաջինջ ծրագիրները, որովհետեւ կայ ու կը մնա՛յ հայ ժողովուրդը և կայ ու կը մնա՛յ մեր ազգային անփոխարինելի տեսլականը՝ Ամբողջական Հայաստանը:*

*Մեր պայքարը նաեւ գոյութեան և յարատեւման համար, է, որուն բարեյաջող ելքին համար պարտինք առաւել կառչիլ մեր ազգային աւանդներուն, հայ մշակոյթին ու հայ եկեղեցւոյ. պարտինք ամուր պահել սփիւռքահայ մեր կառոյցները, ըլլան անոնք եկեղեցի, դպրոց, ակումբ թէ միութիւն: Անոնք ամուր պատնէշներ են հայ տարրին գոյատեւման:*

*21-րդ դարը դիմաւորենք պայծառ միտքերով, ուսումնասիրուած աշխատանքով եւ հաստատ հաւատքով, միշտ մեր աչքերը սեւեռած դէպի Մայր հայրենիք և գործենք միասին թէ՛ հայրենիքի մէջ և թէ՛ ի սփիւռս աշխարհի:*

*Թող հանգիստ ննջեն անշիրիմ հայ նահատակները, որովհետեւ յաղթանակը մերն է:*

## ԱՄԵՐԻԿԱՅԻ ՆԱԽԱԳԱՀ ՊԻԼ ՔԼԻՆԹԸՆԻ ԱՌԱՋԱՐԿՈՎ ՈՒՂՂԱԿԻ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ ՔՈՉԱՐԵԱՆԻ ԵՒ ԱԼԻԵՒԻ ՄԻՋԵՒ

Ամերիկայի նախագահ Պիլ Քլինթընի առաջարկով, 23-25 Ապրիլին Ուաշինկթընի մէջ ուղղակի բանակցութիւններ տեղի պիտի ունենան Հայաստանի եւ Ատրպէյճանի Նախագահներուն միջեւ՝ ղարաբաղեան հիմնահարցի լուծման շուրջ:

Լրատուական աղբիւրները կը հաղորդեն թէ՝ Քոչարեան եւ Ալիյեւ ընդունած են այդ առաջարկը:

↳ 2

**ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՈՒԱՇԻՆԿԹԸՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՊԻՏԻ ՈՒՆԵՆԱՅ ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԽՈՐՀՐԴԱԿՑԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Հայաստանի Հանրապետութեան Ուաշինկթընի Դեսպանատունը բաց հրաւէր յղած է Միացեալ Նահանգներու եւ Գանատայի Հայկական հասարակական, քաղաքական, եկեղեցական, կրթական, մշակութային, գիտական, բարեգործական եւ գործարար կազմակերպութիւններուն, մասնակցելու համար խորհրդակցական ժողովի մը, որ տեղի պիտի ունենայ Ապրիլ 26-ին, դեսպանատունէն ներս:*

↳ 4

## ԱՄՆ-Ի ՆԱԽԱԳԱՀԸ ՀԱՆԴԷՍ Է ԵԿԵԼ 1915 ԹՈՒԱԿԱՆԻ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԼԻՑԻՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՄԲ

Սպիտակ տունը Ապրիլի 19-ին հրապարակել է մի յայտարարութիւն, որ արուել է ԱՄՆ նախագահ Պիլ Քլինթընը 1915 թուականի հայոց ցեղասպանութեան տարելիցի առթիւ: Ստորեւ բերւում է յայտարարութեան տեքստը.

«Այս շաբաթ մենք յիշում ենք այս դարի ամենատխուր գլուխներից մէկը՝ մէկուկէս միլիոն հայերի բռնագաղթն ու կոտորածը Օսմանեան կայսրութեան մայրամուտին: Մենք վշտակցում ենք ամերիկահայերին եւ աշխարհով մէկ տարածուած հայոց սփիւռքին անմեղ սպանուածների համար: Այսօր, այն իրադարձութիւնների հենքին, որ տեղի են ունենում Քոսովոյում, բոլոր ամերիկացիները պէտք է կրկին պարտաւորութիւն յանձն առնեն կառուցելու մի աշխարհ, ուր նման իրադարձութիւնները վերստին

↳ 2

## ԱՄԷՆ ՕՐ 50 ՀԱԶԱՐ ՀՈԳԻ Կ'ԱՅՑԵԼԷ «ՀՌՈՄ-ՀԱՅԱՍՏԱՆ» ԽՈՐԱԳՐԵԱԼ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ

Վենետիկի Սիքստինեան սրահին մէջ 25 Մարտին, հանդիսաւորապէս բացուեցաւ «Հայաստան-Հռոմ 2000 տարուայ յարաբերութիւններ» խորագրեալ ցուցահանդէսը: Ցուցահանդէսի բացման հանդիսաւոր արարողութեան ներկայ գտնուեցան Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսն ու Նախագահ Ռոպէրթ Քոչարեան, բարձրաստիճան հոգեւորականներ ու Հայաստանէն ու արտասահմանէն Վատիկան մեկնած բազմաթիւ հիւրեր:

Ցուցահանդէսը, որ կազմակերպուած է Քրիստոնէութեան 1700-ամեակի առիթով, պիտի շարունակուի մինչեւ 16 Յուլիս: Հայաստանի Մշակոյթի եւ Մարզանքի Նախարարութենէն կը տեղեկանանք որ ըստ իտալական մամուլին, ամէն օր 50 հազար մարդ կ'այցելէ ցու-

↳ 4

**ՓԱՐԻԶ**

## ՓՐՈՖ. ՎԱՀԱԳՆ ՏԱՏՐԵԱՆ ՄԱՍՆԱԿՑԵՑԱՒ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎԻՆ

*Ապրիլ 10-ին, Փարիզի մէջ, ԵՈՒՆԵՍՔՕ-էն ներս տեղի ունեցաւ միօրեայ խորհրդաժողով՝ նուիրուած ցեղասպանութեան կանխարգիլման եւ պատժուելու ՄԱԿ-ի Ուխտին:*

*Խորհրդաժողովին հրաւիրուած գիտնականներու շարքին էր նաեւ Հայկական Ցեղասպանութեան հարցի մասնագէտ՝ Փրոֆ. Վահագն Տատրեան, որ միակ ոչ-ֆրանսացի մասնակիցն էր:*

↳ 2

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

**ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ**

## ՊԱՏԿ. ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ Ա. ՆԻՍՏԸ

Աղեքսանդրիոյ Պատկառելի Թեմական Ժողովի 1999 տարեշրջանի Ա. նիստը տեղի ունեցաւ Ուրբաթ 12 Մարտ 1999-ին երեկոյեան ժամը 5-ին, նախագահութեամբ Եգիպտոսի բարեխնամ Առաջնորդ Գերաշնորհ Տէր Զաւէն Ս. Արքեպսկ. Չինչինեանի եւ ներկայութեամբ 16 երեսփոխաններու:

Ժամը 5-ին Պատկ. Թեմական Ժողովի ատենապետ Դր. Լեւոն Գաղթացեան ժողովը օրինական համարելով խնդրեց Գերշ. Սրբազան Հօրմէն որ Տէրունական աղօթքով ժողովը բանայ: Ապա ժողովը անցաւ օրակարգի հարցերուն:

Ա- Ընթերցում եւ վաւերացում նախորդ նիստի ատենագրութեան:

Բ- Ատենական գործողութիւններ. ստացուած էր նամակ մը Դր. Արամ Պըլըքտանեանէն:

Գ- Ընթերցում 1998 տարեշրջանի Քաղաքական Ժողովի նիւթական եւ բարոյական տեղեկագրի: Տոքթ. Էտուար Մանուկեան կարդաց բարոյական տեղեկագիրը, իսկ Դր. Լեւոն Փափազեան նիւթական տեղեկագիրը:

↳ 2

## Հայ-Եգիպտական Համագործակցութիւնը Առողջապահութեան Ասպարէզում Գործնական Բնոյթ է Ստանում

*ԵՐԵՒԱՆ, 20 ԱՊՐԻԼ.- Մի քանի օր Եգիպտոսում էր ՀՀ առողջապահութեան նախարարութեան պատուիրակութիւնը: Այցը տեղի ունեցաւ երկու երկրների առողջապահութեան նախարարութիւնների կողմից 1997 թուականին կնքուած համագործակցութեան պայմանագրի շրջանակներում: Հիւրերն այցելել են դեղերի եւ բժշկական սարքաւորումների արտադրութեան մի շարք ձեռնարկութիւններ, նրանց ընդունել է Եգիպտոսի առող-*

↳ 2

## ՀՌՈՄԻ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊՕՂՈՍ Բ. ՊԱՊԸ 2-4 ՅՈՒԼԻՍԻՆ ՊԻՏԻ ԱՅՑԵԼԷ ՀԱՅԱՍՏԱՆ

Նախապէս հաղորդած էինք արդէն, որ ընդառաջելով Գարեգին Ա. Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետի եւ նախագահ Ռոպէրթ Քոչարեանի հրաւէրին, Հայաստան պիտի այցելէ Կաթոլիկ եկեղեցւոյ պետ Յովհաննէս-Պօղոս Բ. Պապը: Հռոմի Պապի այցելութեան թուականը ճշդուեցաւ որպէս 2-4 Յուլիս: Այս մասին հաղորդեց Կաթողիկոսական Ընդհանուր Փոխանորդ՝ Գերշ. Տ. Գարեգին Արք. Ներսիսեան, Երեւանի մէջ սարքուած մամլոյ ասուլիսի մը ընթացքին: Հաղորդուեցաւ նաեւ որ Պապը պիտի այցելէ Ս. Էջմիածին, Գառնի եւ Աշոցք, ուր որոշ թիւով կաթոլիկ բնակչութիւն կայ:

Պապին այցելութիւնը նախապատրաստող գրասենեակի պատասխանատու նշանակուած է՝ Գանատայի թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Յովնան Արք. Տէրտէրեան:

**ՎՐԱՍՏԱՆ**

## ՀՀ ԵՒ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐՆԵՐՈՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Ապրիլ 13-ին, Վրաստանի Պաշտպանութեան նախարար՝ Դաւիթ Թեւզաձէի նախաձեռնութեամբ, Արեւելեան Վրաստանի Ցինանտալի քաղաքին մէջ հանդիպում մը ունեցան Հայաստանի եւ Ատրպէյճանի Պաշտպանութեան նախարարները:

Այս մասին, լրագրողներուն յայտնեց Վրաստանի Պաշտպանութեան փոխ-նախարարը: Ան նշեց որ հանդիպումի սկիզբը բանակցութիւններ տեղի ունեցան երեք պետութիւններու Պաշտպանութեան նախարարներու միջեւ, յետոյ Վրաստանի Պաշտպանութեան նախարարը առանձին թողուց հայ եւ ազերի իր պաշտօնակիցները:

Յայտնենք որ Հայաս-

↳ 4

## ԱՆԳԼԻՈՅ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ՄԵՐԺԵՑ ՃԱՆՉՆԱԼ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

Ապրիլ 14-ին, Մեծն Բրիտանիոյ Լորտերու Պալատին մէջ, կառավարութիւնը մերժեց Հայկական Ցեղասպանութեան բանաձեւը ճանչնալու առաջարկ մը, որ օրակարգի բերուած էր Գարոլայն Քոքսի կողմէ:

# ԻՆՉՈ՞Ւ ԿԸ ՅԻՇԱՏԱԿԵՆՔ ՀԱՅ ՆԱՀԱՏԱԿԱՑ ՕՐԸ

Ամէն տարի, Ապրիլ 24-ին, հայ ժողովուրդը ամէնուրեք կը յիշատակէ Հայ Նահատակաց Օրը: Ապրիլ 24-ը տարեդարձն է Ի. Դարու Առաջին Ցեղասպանութեան, կիրարկուած թուրք կառավարութեան կողմէ՝ ընդդէմ Թուրքիոյ մէջ ապրող հայ ժողովուրդին: Ահաւոր եւ քստմնելի այս ոճիրը, մարդ էակին գործադրուած՝ իր նմանը եղող մարդը բնաջնջելու մտադրութեամբ, պատմութեան ամենէն սեւ էջերէն մէկն է: Անցնող տասնամեակները դեռ չեն կրցած մեղմացնել անոր թողուցած սրտաճմլիկ ազդեցութիւնը: Հայ ժողովուրդի զանգուածային բռնագաղթը, համատարած տառապանքը եւ ջարդերու հրէշային բնոյթը՝ կը խնեն կ՚անցնին մարդկային երեւակայութեան սահմանները: Երբ յետադարձ ակնարկ մը նետենք եւ վերյիշենք հայոց պատմութեան այդ ճգնաժամային շրջանը, կ՚ալեկոծին մեր ներաշխարհները եւ կ՚ընդվզինք ի տես այն ահաւոր ողբերգութեան՝ որ կը կոչուի **ՄԵԾ ԵՂԵՌՆ**:

Ինչո՞ւ եւ ի՞նչպէս պատահեցաւ այս տխրահռչակ ցեղասպանութիւնը: Առիկա մտայղացումն էր, քրէական ու սադայելատիպ գործը այսպէս կոչուած Երիտասարդ Թուրքերու: Երբ 1908-ին Օսմանեան Կայսրութեան ղեկը իրենց ձեռքը առին, այդ հսկայ պետութիւնը արդէն վայրէջքի մէջ էր: Հողային մեծ կորուստներէ զատ, տէրութեան վարկը ինկած էր եւ թուրք ժողովուրդը բարոյալքուած: Թալաաթ, Էնվեր եւ Ճեմալ տխրահռչակ երրորդութիւնը, դարմանելու համար այս ախտաւոր կացութիւնը, յղացան համաթուրանական գաղափարաբանութիւնը, այսինքն որոշեցին թրքացնել Օսմանեան կայսրութեան մէջ բնակող բոլոր փոքրամասնութիւնները, ու կերտել նոր իրավիճակ մը, հզօր պետութիւն մը: Սակայն այդ իտէալի ճանապարհին վրայ՝ հայ ժողովուրդը խոչընդոտ մը կը հանդիսանար:

Օգտուելով Առաջին Համաշխարհային պատերազմի պատեհ առիթէն, Երիտասարդ Թուրքերու այս խմբակը հակահայ արշաւի մը սկսաւ, նենգօրէն զրպարտելով մեզ որպէս գործակալները Ցարական Ռուսիոյ ու Եւրապական քրիստոնեայ ազգերու, եւ ներկայացնելով մեզ որպէս դաւաճան Օսմանեան կայսրութեան: Այս ձեւով պատրուակ մը կը գտնուէր հայերը բնաջնջելու, իրենց ծաւալապաշտական ծրագիրներուն առջեւ ցցուող խոչընդոտը վերցնելու, եւ մանաւանդ՝ տասնամեակներ շարունակ զիրենք վրդովող «Հայկական Հարց»ը ընդմիշտ լուծելու: Արդարեւ, ինչ որ պատահեցաւ 1915-էն մինչեւ 1922, ուրիշ բան չէր՝ եթէ ոչ մութի մէջ նիւթուած բայց լոյսի մէջ գործադրուած հայասպանութիւն:

Տասնամեակներ անցած են այդ տխրահռչակ պատմաշրջանէն: Վարչակարգեր փոխուած են Թուրքիոյ մէջ: Օսմանեան կայսրութիւնը տեղի տուած է Հանրապետական Թուրքիոյ: Սուլթաններ եւ բռնակալ ղեկավարներ չկան, այլ ժողովրդավարական սկզբունքներ հռչակող երկիր մը: Ուստի ինչո՞ւ կը կատարենք սգատօն եւ յուշատօն. ինչո՞ւ կը յամառինք յիշել անցեալը, ինչո՞ւ վառ կը պահենք յիշատակը մեր մէկուկէս միլիոն զոհերուն: Մեր նպատակը աշխարհի գութն ու կարեկցութիւնը շարժել չէ: Իրազեկ ենք որ ազգերը իրենց շահերը ունին, մեր ցաւերով չեն հետաքրքրուած, ո՛չ ալ պատրաստակամ են մեզի համար «կրակէն շագանակ հանել»: Մենք կը յիշատակենք Հայ Նահատակներու Օրը, Ապրիլ 24-ը, հետեւեալ պատճառներով.-

**Ա.- ՈՐՊԷՍԶԻ ՎԱՌ ՊԱՀԵՆՔ ՄԵՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒՆ ՅԻՇԱՏԱԿԸ ՆՈՐԱՀԱՍ ՍԵՐՈՒՆԴՆԵՐՈՒ ԿԵԱՆՔԻՆ ՄԷՋ:** Գիտակից ամէն էակ յարգանքի տուրք կ՚ընծայէ իր նախնիքներուն: Մեր ազգը կազմող շղթային այդ օղակը երբեք չենք կրնար անտեսել: Մենք անոնց շառաւիղներն ենք: Իրենց փորձառութիւնը անբաժանելի մասն է մեր պատմութեան: Արցունքի եւ արեան այդ պատմութիւնը, որ իրենց բաժինը եղաւ, մե՛ր ալ պատմութիւնն է: Չյիշել, անտեսել եւ մոռնալ՝ ո՛չ միայն անարդարութիւն, այլ դաւաճանութիւն պիտի ըլլայ: Ամէն հայորդի՝ ե՛ւ առանձնաշնորհումը, ե՛ւ անզանցառելի պարտականութիւնը ունի յիշելու այն զոհաբերումը, որ մեր նահատակ հայրերն ու մայրերը ցոյց տուին՝ ի սէր Աստուծոյ եւ իրենց ազգին:

**Բ.- ՈՐՊԷՍԶԻ ՅԻՇԵՑՆԵՆՔ ՈՂՋ ՄԱՐԴԿՈՒԹԵԱՆ՝ ԹԷ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ Ո՛Չ ՄԻԱՅՆ ԱԶԳԻ, ԱՅԼ ՀԱՄԱՅՆ ՄԱՐԴԿՈՒԹԵԱՆ ԴԷՄ ԳՈՐԾՈՒԱԾ ՈՃԻՐ ՄԸՆ Է:** Եթէ մարդկութիւնը մեծ ընտանիք մըն է, անոր ոեւէ անդամին դէմ գործուած անարդարութիւնը, հալածանքն ու ոճիրը՝ այդ ընտանիքին դէմ եղած է: Հայկական Ցեղասպանութիւնը ամբողջ մարդկութեան դէմ կատարուած քրէական ոճիր մըն է:

Պատմութեան դասերը կրնան շատ շուտով մոռացութեան տրուիլ, եթէ չըլլան անցեալին գործուած անարդարութեանց դէմ իրենց ձայները բարձրացնող մարդիկ: Մեր նահատակ հայրերու յիշատակութիւնը կը ծառայէ որպէս յուշարար, թէ ցեղասպանութիւններ կրնան շատ դիւրաւ պատահիլ, երբ ազգեր իրենց անձնական եւ նիւթական շահերը գերադաս կը նկատեն արդարութենէն ու ժողովուրդներու կեանքէն: Ապացոյցը պերճախօս է: Հայկական Ցեղասպանութեան հանդէպ քաղաքակրթուած ազգերու ցուցաբերած անտարբերութիւնն ու անկարեկցութիւնն էր որ ճամբայ բացաւ եւ պատճառ դարձաւ ուրիշ աղէտի մը, հրէական «ողջակիզում»ին, որ տեղի ունեցաւ Բ. Համաշխարհային Պատերազմին: Այնուհետեւ, քանի՜, քանի՜ ցեղասպանութիւններ տեղի ունեցան տարբեր վայրերու մէջ՝ զանազան ազգութիւններու դէմ, ինչպէս Գամպոճի, Վիեթնամի, Ափրիկէի, Եուկոսլաւիոյ եւ այլ երկիրներու մէջ, «քաղաքակիրթ» կոչուած քսաներորդ դարուն ընթացքին:

**Գ.- ՈՐՊԷՍԶԻ ՀԱՅ ՍԵՐՈՒՆԴՆԵՐ ԻՐԱԶԵԿ ԸԼԼԱՆ ՄԵՐ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, ՆԵՐԱՌԵԱԼ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ:** Տարաբախտօրէն, անցնող ամէն տարուան հետ, ցեղասպանութեան իւրաքանչիւր տարելից կը յիշեցնէ մեզի թէ Մեծ Եղեռնի կենդանի վկաներուն շարքերը հետզհետէ կը նօսրանան, եւ ականատեսները մէկիկ-մէկիկ անդարձ կը հեռանան մեզմէ: Բոլոր անոնք, որ յաջողած են պահել իրենց հայրերէն, մայրերէն, մեծ հայրերէն ու մեծ մայրերէն աւանդուած յիշատակները՝ Ցեղասպանութեան վերաբերեալ, պէտք է իրենց հերթին փոխանցեն զանոնք իրենց զաւակներուն եւ թոռներուն՝ որպէս պատմական անվիճելի իրողութիւն:

**Դ.- ՈՐՊԷՍԶԻ ԱՐԹՈՒՆ ՈՒ ԶԳԱՍՏ ԸԼԼԱՆՔ՝ ԱՆԵՂԾ ԵՒ ԱՆՎԹԱՐ ՊԱՀԵԼՈՒ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ԲՈԼՈՐ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ:** Տարիներ անցած են Մեծ Եղեռնի ժամանակաշրջանէն, բայց մեր արդար դատի հատուցման պարտքը տակաւին անվճար կը մնայ: Թուրքեր իրենց գլխարկները փոխած են, բայց ոչ գլուխները: Անոնք իրենց արաբական նշանագրերը փոխանակած են լատինականներուն հետ, սակայն նկարագիրները նոյնը մնացած են: Անոնք դեռ ոճիրներ կը գործեն հոս ու հոն, բայց ամենէն ընդվզեցուցիչը այն է՝ որ կը շարունակեն Ցեղասպանութեան իրողութիւնը: Անընդհատ կը

☞ 4

# ՀՆՉԱԿԵԱՆ ԸՆՏՐԱՆԻԻՆ ՆԱՀԱՏԱԿՆԵՐԸ ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ԸՆԹԱՑՔԻՆ

*Նախաեղեռնեան ժամանակաշրջանը ուսումնասիրող պատմաբաններուն աչքերէն, չի կրնար վրիպիլ, Հայ քաղաքական կազմակերպութիւններուն որդեգրած դիրքորոշումները եւ անոնց ունեցած կեցուածքները թրքական կառավարութեան եւ մանաւանդ Իթթիհատ կուսակցութեան նկատմամբ: Նախաեղեռնեան ժամանակահատուածին, «մահու եւ կենաց» օրեր դիմագրաւող Հայութեան համար, մեծ կարեւորութիւն ունին Հայ քաղաքական հոսանքներու ունեցած ըմբռնումները, քարոզչութիւնը եւ տեսակէտները Օսմանեան կայսրութեան հանդէպ, օսմանիզմի նկատմամբ եւ Իթթիհատ կուսակցութեան գաղափարախօսական-քաղաքական համոզումներուն եւ սկզբունքներուն հանդէպ, որովհետեւ անոնք առաջնորդողի եւ ժողովուրդը կողմնորոշելու ծանրակշիռ պարտականութիւնը ստանձնած էին: Թէ ով ճիշդ կամ սխալ քաղաքականութիւն որդեգրեց, այն ալ արդէն գրուած է պատմութեան էջերուն մէջ: Պատմութեան ճշմարտութիւնները կարելի չէ թաքցնել կամ փոշիներու տակ թաղուած պահել: Ժամանակը լաւագոյն դատաստանն է, արդար եւ ճշմարտախօս, որ տարիներ ետք անպայմանօրէն յայտ կը բերէ եւ կը բացայայտէ ժողովուրդին առջեւ, պատմութեան մութ ծալքերուն մէջ մնացած այս կամ այն երեւոյթը, իրականութիւնը եւ քաղաքական իրադարձութիւնները:*

*Այսօր, համարձակ կերպով կ՚ըսենք, թէ նախաեղեռնեան ժամանակաշրջանին, որ ճակատագրական եղաւ մեր ժողովուրդին համար, Հնչակեան կուսակցութիւնը ունեցաւ առողջ եւ ճիշդ քաղաքականութիւն: Զտարուեցաւ ան խաբուսիկ յոգունգներէ, չսայթաքեցաւ խաբեպատիր որոգայթներու մէջ: Այլ, պատմական պատասխանատուութիւն ենթադրող պահը գնահատեց առարկայօրէն, կշռադատեց երեւոյթները եւ որդեգրեց յստակատես քաղաքականութիւն, որ անկասկած, պարծանք կը պատճառէ իր ժառանգորդներուն մօտ:*

*Նախաեղեռնեան ժամանակաշրջանին, Հայ քաղաքական միտքի կարկառուն ներկայացուցիչներէն՝ Ստեփան Սապահ-Գիւլեան, լաւապէս ճանչցաւ եւ խորապէս քննելէ ետք, գնահատեց «Երիտասարդ Թուրքերու» (Ժէօն Թուրք) գաղափարախօսութիւնը եւ ըստ այնմ դիրքորոշուեցաւ անոնց դէմ: Վճռական եւ կտրուկ եղաւ անոր տեսակէտները, ինչ որ նաեւ Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան դիրքորոշումներն էին դեռ եւս «Երիտասարդ Թուրքեր»ը իրենց սաղմնաւորման եւ կազմաւորման մէջ էին (1889-1908), Սապահ-Գիւլեան, ուսումնասիրելէ եւ անձամբ շփման մէջ մտնելէ ետք անոնց հետ Փարիզի մէջ, կու տար իր պատմա-քաղաքական գնահատականը եւ կը վճռէր տեսականօրէն, քաղաքագաղափարական գետնի վրայ եւ գործնապէս պայքարիլ Հայ ժողովուրդի ոխերիմ եւ կատաղի թշնամի՝ Իթթիհատի եւ երիտ-թուրքական շարժման դէմ:*

*Հնչակեան բազմաթիւ գործիչներ, շրջեցան Արեւմտեան Հայաստանի, Փոքր Հայքի, Կիլիկիոյ գիւղերն ու քաղաքները, որպէսզի հայ ժողովուրդը արթնցնեն թուլամորթութեան թմբիրէն եւ հրաւիրեն հայութիւնը զէնքի գործածութեան եւ ինքնապաշտպանութեան: Սապահ-Գիւլեան եւս շրջեցաւ Փոքր Հայք (1911-1912) եւ եզրակացուց՝ «Կամ հայ ժողովուրդը Իթթիհատին, Թուրք ազգայնականութեանը գլորէր, սպաննէր, իր տիրապետողի դիրքից վայր բերէր, գահավիժէր եւ կամ Իթթիհատն էր, որ հային պիտի ջախջախէր, սպառէր՝ որպէս ազգ: Միջին ճանապարհ չկար»: Ան իր շրջագայութիւնները յետագային հրատարակեց՝ «Փոքր Հայքի յիշատակներ» (3 մաս) եւ «Պատասխանատուները» հատորներուն մէջ, որոնք կարեւոր սկզբնաղբիւրներն են նախաեղեռնեան ժամանակաշրջանի հայ ժողովուրդի պատմութեան ուսումնասիրութեան համար:*

*Հայրենի արդարախոհ եւ համարձակախօս պատմաբան՝ Ճօն Կիրակոսեան այսպէս կը գնահատէ նախաեղեռնեան ժամանակաշրջանի Հնչակեան դիրքորոշումը. «Նրանք գտնում էին, որ չպէտք է ապակողմնորոշել ժողովուրդին անհիմն յուսադրումներով եւ դրանով հարուած հասցնել ինքնապաշտպանութեան առաջնահերթ խնդրին: Փարամազը եւ նրա համախոհները տասնեակ տարիներ թուրքական դժնի իրականութեան մէջ փորձեցին ազգութիւնների համագործակցութեան եւ ներդաշնակութեան գաղափարն արմատաւորել, բռնութեան դէմ պայքարի հուժկու ճակատ կազմել: Սակայն համոզուելով համամարդկային գաղափարների իրագործման նկատմամբ թուրքական քաղաքական ուժերի բռնած ազգայնական, շովինիստական դիրքի մէջ, կանխազգալով արեւմտահայութեան գլխին կախուած վտանգը, նրանք նորից առաջային համարեցին արեւմտահայութեան ինքնապաշտպանութիւնը: Հնչակեանները պահանջում էին յոյս չդնել Իթթիհատի վրայ, չհաւատալ ու վարկ չտրամադրել նրան»: Ապա կը շարունակէ՝ «Նրանք յեղափոխական ճանապարհը համարում էին անհրաժեշտութիւն»: (Ճօն Կիրակոսեան «Երիտթուրքերը պատմութեան դատաստանի առաջ» Ա. հատոր, էջ 338):*

*Հնչակեան Կուսակցութիւնը տեսական եւ քաղաքական պայքարներէ ետք, որ չղթայազերծած էր Իթթիհատի դէմ, կ՚անցնի գործնական պայքարի: Արդարեւ, 1913ին գումարուած, 7րդ համագումարին, Քէօսթէնճէի մէջ (Ռումանիա) Հնչակեանները կ՚որոշեն, ուրիշ ելք չունենալով, ահաբեկել Իթթիհատի եռագլուխ վիշապը՝ Թալաաթն, Էնվէրը եւ Ճեմալը եւ զինուորական հարուած հասցնել անոր: Սակայն այս ծրագիրը կը ձախողի: Կը ձերբակալուին Հնչակեան քսան ղեկավարներ, որոնք 1915 Յունիս 15ին կը բարձրանան կախաղան, Պոլսոյ Սուլթան Պայազիտ հրապարակին վրայ:*

*Մեծ եղեռնէն վերապրած, ծանօթ մտաւորական՝ Թէոդիկ «Յուշարձան Ապրիլ Քսանչորսի» հատորին մէջ կու տայ հայ երեւելիներու եւ կղերականներու անունները, որոնք նահատակուեցան Մեծ Եղեռնի ընթացքին: Ահա Հնչակեան գործիչները, որոնք զոհ գացին թրքական արնածարաւ եաթաղանին: Ի հարկէ, ցանկը լրիւ չէ, սակայն կարելի է ապագային ամբողջացնել:*

*. Համբարձում Պոյաճեան (Մեծն Մուրատ) - ազգային - յեղափոխական գործիչ, պետական երեսփոխան, որ հակառակեցաւ ոչ-մահմետականներու զինուորագրութեան, մինչ Գրիգոր Զօհրապ, մասոն եւ անհեռատես քաղաքագէտ հայերու զինուորագրութեան ի նպաստ արտայայտուեցաւ, որուն պատճառով ալ տասնեակ հազարաւոր հայ երիտասարդներ նահատակուեցան... «Նորավէպի Իշխան»: Կարճատես «եղբայր»ական...*

*. Սմբատ Բիւրատ - կրթական գործիչ, գրող, խմբագիր:*

*. Յարութիւն Ճանկիւլեան - յեղափոխական, ազգային գործիչ:*

*. Պետրոս Գալֆայեան (Որդոտունի) - գործիչ:*

*. Ներսէս Զաքարեան - գործիչ, խմբագիր:*

*. Յակոբ Արծրունի ազգային-կրթական գործիչ:*

*. Սաքօ (Ս. Աղամիրզեանց - ազգային - յեղափոխական գործիչ:*

*. Գարեգին Հիւսեան - կրթական գործիչ:*

*. Յարութիւն Գալֆայեան - գործիչ:*

*. Հայկ Տէրտէրեան - գործիչ:*

*. Յովհաննէս Գըլըճեան - գործիչ:*

*. Վահան Քէհեայեան - ազգա.-յեղափոխական գործիչ:*

*. Արտաշէս Ֆէրահեան - գործիչ, խմբագիր:*

*. Սարգիս Գալիկեան - գործիչ:*

*. Գէորգ Գոբուչեան - խմբագիր:*

*. Կարապետ Փաթուկեան - գործիչ:*

*. Խորէն Խորէնեան - յեղափոխական:*

*. Արտաշէս Սոլաքեան - կրթական գործիչ, խմբագիր:*

*. Տիգրան Օտեան (Ասօ) - գրող, խմբագիր:*

*. Աբրահամ Բրուտեան - գործիչ:*

*. Կարապետ Ծանթէեան ուսուցիչ:*

*. Հայկակ Երէմիչեան - գործիչ:*

*. Յովսէփ Մալեմէզեան - կրթական գործիչ:*

*. Յարութիւն Սէմէրճեան - յեղափոխական:*

*. Սարգիս Էյճանեան - գործիչ:*

*. Ս. Մուրատ (Տէրտէրեան) - ազգ.-յեղափոխական գործիչ:*

*. Բենիամին Ջղլաթեան - գործիչ:*

*. Մինաս Մինասեան - գործիչ:*

*. Մինաս Պետրոսեան - գործիչ:*

*. Գագիկ Օզանեան - մտաւորական, գրող, խմբագիր, գիրքերու հեղինակ:*

*. Արմենակ Կորկոտեան - գործիչ:*

*. Տիգրան Թէմիրեան - գործիչ:*

*. Աւետիս Խտըրեան - գործիչ:*

*. Մինաս Իբէքճեան - գործիչ:*

*. Գարեգին Կոզիկեան (Եսայէմ) - գրող, խմբագիր, գործիչ, տեսաբան:*

*. Աչուղ Շահնազար - գրող:*

*. Առաքել Ապրոյեան - գործիչ:*

*. Ներսէս Եպս. Դանիէլեան - կղերական:*

*Ցանկը կարելի է երկարել, որովհետեւ անթիւ ու անհամար դէմքեր կոտորուեցան տարագրութեան ճամբուն վրայ:*

*Ինչպէս վերը յիշեցինք, Իթթիհատին մահացու հարուած տալու նպատակով, կը կազմուի ահաբեկչական ցանց մը, Հնչակեան 7րդ պատգամաւորական ժողովին համաձայն: Սակայն անոնք կը ձերբակալուին: 22 հոգիներ օսմանեան պատերազմական ատեանին հրահանգովը մահապատիժի կ՚ենթարկուին: Երկուքը՝ Ս. Սապահ-Գիւլեան, Բ. Վարազդատ (Կեդրոնական վարչութեան անդամներ) որովհետեւ Օսմանեան կայսրութենէն դուրս կը գտնուէին, կ՚ենթարկուին 101 տարուան բանտարկութեան: Իսկ միւս քսան անմահներն են՝ Փարամազ, (Կեդրոնական վարչութեան անդամ), Տօքթ. Պեննէ, Արամ Աչըգպաշեան, Վանիկ, Երուանդ Թոփուզեան, Ռուբէն Կարապետեան, Օննիկ Եղիազարեան, Թովմաս Թովմասեան, Յակոբ Պասմաճեան, Մուրատ Զաքարեան, Մկրտիչ Երէցեան, Գարեգին Պօղոսեան, Արմենակ Համբարձումեան, Երեմիա Մանուկեան, Աբրահամ Մուրատեան, Մինաս Քէչիչեան, Սմբատ Գըլըճեան, Գառնիկ Պոյաճեան, Հրանդ Եկաւեան, Պօղոս Պօօսեան:*

*Մինչ նախաեղեռնեան ժամանակաշրջանի Հնչակեան դիրքորոշումը Հնչակեան պատմութեան մէջ պիտի մնայ փայլուն էջ մը, միւս կողմէ նահատակներուն բոսոր արիւնը մեզի համար գաղափարական կենսաղբիւր է, ազգային թելադրականութիւն է եւ համազգային տենչերու իրագործման ի խնդիր պայքարի անվերջ մարտահրաւէր մըն է...:*

**Աւստրալիա, «ԶԱՆԳ»**

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

**ՊՐ. ՄԱՆՈՒԷԼ ԳՐԻԳՈՐԵԱՆ**

**ԵՒ**

**ՕՐ. ՍԻՒԶԻ ԵԱՍԱ**

Գահիրէ — Կիրակի, 11 Ապրիլ 1999

*Այս ուրախ առթիւ խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ նորապսակ ամոլը, մաղթելով անամպ կեանք: Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն:*

## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ Տէր եւ Տիկին Արամ եւ Արաքսի Էլմասեաններ Կիրակի, 11 Ապրիլ 1999-ին, բախտաւորուած են առջինեկ դստրիկով մը, զոր անուանակոչած են Նորա:

Այս ուրախ առթիւ կը շնորհաւորենք նորածինին ծնողքը եւ մեծ ծնողները՝ Էլմասեան եւ Սրապեան ընտանիքները, մաղթելով առողջ եւ երկար կեանք նորածին մանկան:

## 84-ԱՄԵԱԿ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՂԵՌՆԻ

Ապրիլեան Եղեռնի 84-րդ տարելիցին առիթով, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ Կիրակի 25 Ապրիլ 1999-ին տեղի պիտի ունենայ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ ապա հոգեհանգիստ, ոգեկոչելու համար խնկելի յիշատակը մեր բիւրաւոր նահատակներուն:

Ս. Պատարագը պիտի մատուցանէ եւ քարոզէ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**
**ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ**

Յաւարտ Ս. Պատարագի տեղի պիտի ունենայ մասնաւոր հոգեհանգստեան արարողութիւն եւ ծաղկեպսակներ պիտի զետեղուին մեր բիւրաւոր նահատակներուն ի յուշ կառուցուած մատուռին մէջ: Ապա թափորով պիտի յառաջանանք Ս. Եկեղեցւոյ պարտէզին մէջ կառուցուած եւ հայրենիքէն բերուած Խաչքարին առջեւ ուր ծաղկեպսակի զետեղմամբ եւ Ս. Աւետարանի ընթերցմամբ ՀՈԳԻՈՑ պիտի արտասանուի:

Երգեցողութիւնները պիտի կատարուին Ս. Եկեղեցւոյս «Զուարթնոց» Երգչախումբին կողմէ: Բազմաձայն Պատարագի ղեկավար Մօ. Դոցենտ Դաւիթ Ջալեան: Երգեհոնահար Օր. Արփի Ճանիկեան:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.30-ին

| | | | |
|---|---|---|---|
| Ս. Պատարագ | - | - | 10.00-ին |
| Քարոզ | - | - | 11.00-ին |
| Հոգեհանգիստ | - | - | 11.30-ին |

Հայրենիքի եւ հաւատքի համար մարտիրոսացեալներն ու նահատակները յարգել, անոնց արժանի յաջորդները ըլլալ կը նշանակէ:

Ժողովուրդի փոխադրութեան համար, կարգադրուած է օթօպիւսի մասնաւոր սպասարկութիւնը, Հելիոպոլիսէն Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի:

**Ե. Գ. Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ԱՄԷՆ ՕՐ 50 ՀԱԶԱՐ ՀՈԳԻ Կ'ԱՅՑԵԼԷ «ՀՌՈՄ-ՀԱՅԱՍՏԱՆ» ԽՈՐԱԳՐԵԱԼ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ

1



*Գարեգին Ա. Վեհափառ Հայրապետը, Յովհաննէս Պօղոս Բ. Պապն ու Նախագահ Քոչարեան կը քննեն ցուցահանդէսէն բերուած առաջին երեք նմոյշները:*

ցահանդէս, իսկ Ս. Զատկին տօնին այցելուներու թիւը կրկնապատկուած էր, անցնելով մօտաւորապէս 100 հազարի սահմանը:

Մշակոյթի նախարարութեան պատասխանատուները, վկայակոչելով իտալական մամուլին մէջ հրատարակուած գրութիւն մը, նշեցին որ Յովհաննէս Պօղոս Բ. Պապը, ցուցադրուած 500 նմոյշներէն, որպէս ժամանակի բարձր քաղաքակրթութեան վառ ապացոյց, յատուկ ուշադրութեան արժանի նկատած է երեք նմոյշներ: Առաջինը՝ Մանուկ պահարան «Նոյեան Տապան» ոսկեզօծ-արծաթազօծ խաչն է՝ ընդելուզուած թանկարժէք քարերով (Էջմիածնի թանգարան), երկրորդը՝ Վատիկանի գաղտնի արխիւներու մէջ ի պահ մնացած նամակներն են, որոնք գրուած են Հռոմի Ինոչէնցօ Գ. Պապի եւ Լեւոն Ա. Թագաւորի միջեւ ու կնքուած են ոսկեայ թանկարժէք կնիքով: Երրորդ նմոյշը, որ արժանացած է Պապի գնահատանքին՝ յունական ձեռագիր մըն է (907 թուական), որ կը կրէ Ներսէս Լամբրոնացիի հայերէն ստորագրութիւնը:

## ԻՆՉՈ՞Ւ ԿԸ ՅԻՇԱՏԱԿԵՆՔ ՀԱՅ ՆԱՀԱՏԱԿԱՑ ՕՐԸ

3

խեղաթիւրեն պատմութիւնը:

Պէտք է շարունակենք յիշատակել Հայ Նահատակաց Օրը, քանի դեռ կան մարդիկ՝ որ կը փորձեն ուրանալ ճշմարտութիւնը: Պատմութիւնը եղծանելու իւրաքանչիւր փորձ՝ որ կը կատարուի Թուրք կառավարութեան կողմէ, կամ Թուրքերէ կաշառուած ուսումնականներու, մամուլի, պետութիւններու եւ միջազգային մարմիններու կողմէ, պէտք է ենթարկուի հայ ժողովուրդի արդար ցասումին եւ վճռական ընդդիմութեան: Այնքան ատեն որ մարդիկ եւ ազգեր կը նկրտին մեր ահաւոր «գողգոթա»ն ուրանալ, զայն «կարծեցեալ ցեղասպանութիւն» անուանել եւ մեր նահատակներու յիշատակը անուրդի հանել, չենք կրնար անտարբեր կամ ձեռնածալ նստիլ: Մեր՝ պահանջատիրութեան սկզբնական քայլն է Ցեղասպանութեան պատմական ճշմարտութիւնը անեղծ եւ անվթար պահել:

**Ե.- ՈՐՊԷՍԶԻ ՀԱՅ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴՆԵՐԸ ԴԱՍՏԻԱՐԱԿԵՆՔ ՀԱՅԿԱԿԱՆ ԴԱՍՈՎ:** Երբեք չթերագնահատենք հաւաքական մտածողութեան, ազգային առողջ դաստիարակութեան եւ քաղաքական պատրաստութեան դերն ու կարեւորութիւնը ազգի մը կեանքին մէջ: Բնաւ չժխտենք քաղաքական ոյժը միլիոնաւոր հայերու, վերապրողներուն, անոնց զաւակներուն ու թոռներուն, որոնք այսօր իրենց ձայները կը բարձրացնեն արդարութեան համար: Եւ վերջինը պէտք է յաղթանակէ, որովհետեւ ան չի կրնար գերեզմանուիլ ընդմիշտ: Ի սէր ճշմարտութեան, արդարութեան եւ մարդկային արժանապատուութեան, ո՛չ միայն հայեր, այլ ամբողջ քաղաքակիրթ մարդկութիւնը պէտք չէ երբեք մտահան ընէ, այլ միշտ յիշատակէ Հայկական Ցեղասպանութիւնը: Քաղաքակիրթ մարդկութիւնը զօրավիգ կանգնելու է Հայ Դատին, որպէսզի Թուրքիա արդար հատուցում ընէ մեր ժողովուրդին: Այլապէս, ան մեղսակից պիտի դառնայ ոճրագործին ու դահիճին, եւ վերջինը պիտի շարունակէ նորանոր ցեղասպանութիւններ գործել ու բռնագրաւել ուրիշ ազգերու հայրենի հողերը: Եւ այսպէս է որ պիտի շարունակուին ազգային ողբերգութիւնները՝ Կիպրոսի մէջ, Քիւրտիստանի մէջ, եւ այլուր:

Արդարեւ, մեղապարտ դահիճներուն եւ անոնց գործակատարներուն ու յանցաւոր բոլոր տէրութիւններուն տագնապող խղճմտանքը խաղաղութեան մէջ պիտի չըլլայ, ո՛չ ալ աշխարհ պիտի կարենայ խաղաղութիւն ապահովել, մինչեւ ճշմարտութիւնն ու արդարութիւնը չյաղթանակեն: Ուստի մենք պիտի շարունակենք յիշատակել մեր Նահատակաց Օրը, Ապրիլ 24-ը, մինչեւ այն ատեն՝ երբ Թուրքերը իրենց ոճիրը խոստովանին եւ արդար հատուցում ընեն հայ ազգին՝ իրենց գործած ցեղասպանութեան համար: Պէտք է շարունակենք ոգեկոչել յիշատակը մեր բիւրաւոր նահատակներուն, որպէսզի նորահաս հայ սերունդները իրազեկ դառնան Հայ Դատին, եւ արժանաւոր ժառանգորդները հանդիսանան արիւնով կտակուած իրենց ազգային ժառանգութեան: Շարունակենք ուրեմն յիշատակել հայ նահատակներու Օրը, որպէսզի եկուոր սերունդները հոգեզինուին անոնց ցեղադրոշմ առաքինութիւններով, եւ վճռեն ամբողջացնել անոնց անաւարտ առաքելութիւնը:

(Տիքրոյթ) — **ՎԵՐ. ՎԱՀԱՆ Յ. ԹՈՒԹԻԿԵԱՆ**

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Առ ի քաջալերութիւն թերթիս տարած ազգօգուտ գործունէութեան, Տէր եւ Տիկին Սարգիս Քիւբէլեան (Գերմանիայէն) կը նուիրեն ամերիկեան տոլար 50*

## ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Շնորհակալութեամբ ստացանք Պր. Աւետիս Քիւբէլեանէն (Գերմանիայէն) 1999-ի բաժանորդագինը:*

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՈՒԱՇԻՆԿԹԸՆԻ ՄԷՋ ՏԵՂԻ ՊԻՏԻ ՈՒՆԵՆԱՅ ...

1

*Երեւանի մէջ կայանալիք Հայաստան-Սփիւռք Համաժողովի նախապատրաստական աշխատանքներուն նուիրուած սոյն հանդիպումի ընթացքին ելոյթ պիտի ունենայ, Հայաստանի Հանրապետութեան նախագահ Ռոբերդ Քոչարեան , որ այդ օրերուն պիտի գտնուի Միացեալ Նահանգներու մայրաքաղաքը՝ մասնակցելու համար ՆԱԹՕ-ի 50-ամեակի առթիւ տեղի ունենալիք հանդիսութիւններուն:*

*Խորհրդակցական սոյն ժողովի աշխատանքները պիտի վարէ Հայաստանի արտաքին գործոց նախարար Վարդան Օսկանեան, որ համանախագահն է Հայաստան-Սփիւռք Համաժողովի կազմակերպիչ յանձնախումբին:*

*Խորհրդակցական ժողովի ընթացքին պիտի քննարկուին Հայաստան-Սփիւռք Համաժողովի կայացման ձեւն ու օրակարգերը, ընտրուին Համաժողովի մասնակիցները, որդեգրուի աշխատանքային ծրագիր ու քննարկուի՝ Սփիւռք-Հայաստան նոր կառոյցի հարցը:*

*Նման ժողով մը կայացած էր վերջերս Պրիւքսէլի մէջ, ընդգրկելով եւրոպական ցամաքամասին վրայ գործող հայկական կազմակերպութիւնները:*

*Երեւանի Համաժողովը տեղի պիտի ունենայ Սեպտեմբեր 22-ին*

## ԾԱՆՐԱԲԱՐՁ ԽԱՉԱՏՈՒՐ ԳԱՓԱՆԱԿՑԵԱՆ 168,5 ՔԻԼՕ ՎԵՐՑՆԵԼՈՎ ՊՈԿՈՒՄԻ ՄԷՋ ...

2

հանգչեցնելէ վերջ բարձրացնել): Գափանակցեան այս մարզէն ներս նախ յաջողեցաւ վերցնել 190 եւ 192,5 քիլօները, բայց չկրցաւ վերցնել 195-ը: Այս արդիւնքը բաւարար էր որ ան 360 ընդհանուր գումարով առաջնութեան կարգը գրաւէր, բայց չար բախտէն իրմէ վերջ երեք ուրիշ մրցորդներ ալ նոյն ընդհանուր գումարին (360 քիլօ) հասան անակնկալօրէն, եւ Գափանակցեան ընդհանուր գումարի դասաւորման մէջ, չորրորդ նկատուեցաւ պարզապէս անոր համար որ միւսներէն աւելի ծանր մարմին ունէր:

## ՀՀ ԵՒ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ՆԱԽԱՐԱՐՆԵՐՈՒ ...

1

տանի եւ Ատրպէյճանի Պաշտպանութեան նախարարները յառաջիկայ Մայիսին դարձեալ հանդիպում մը պիտի ունենան՝ Վրաստանի մէջ:

## Ապրիլեան Եղեռնի 84-րդ Տարելիցին առթիւ Համազգային Յուշահանդէս

Նախաձեռնութեամբ

**Գահիրէի Ազգային Իշխանութեան**

Կազմակերպութեամբ

Եգիպտահայ Մշակութային - Մարզական - Խնամատարական Բոլոր Կազմակերպութիւններուն

**Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգ. Վարժարանի «Պըլըքտանեան Հանդիսասրահ»**

Տեղի Կ'ունենայ

Շաբաթ 24 Ապրիլ 1999-ի գիշերը ժամը ճիշտ 8.30-ին

Կը Բանախօսէ

**ԴՐ. ՓՐՈՖ. ԳԷՈՐԳ ԲԱՂԴԻՇԵԱՆ**
**Գեղարուեստական Յատուկ Յայտագիր**

**Ասմունք՝ Պարոյր Սեւակի**

**ԱՆԼՌԵԼԻ ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆԸ**

**Մեծն Կոմիտաս Վարդապետի Ստեղծագործութիւններէն**

**ՄԵՆԵՐԳՆԵՐ ԵՒ ԽՄԲԵՐԳՆԵՐ**

**Ղեկավար՝ ԴՈՑԵՆՏ ԴԱՒԻԹ ՋԱԼԵԱՆ**

Սիրալիր Հրաւէր

*Նախապակներու քաղցր յիշապակը յարգեցէք*

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

# ՏՕՆԱԿԱՆ ՕՐ

**ՄԱՅԻՍ 2ին 1999**

**Առաւօտեան ժամը 11:30 ին**

**Հովանաւորութեամբ**

**Գերշհ. Զաւէն Արք. Չինչինեանի**

**Նախագահութեամբ**

**Տէր եւ Տիկին Կարօ Թումայեանցի**

Մրցանակաբաշխում

Ցուցադրութիւն

Խաղեր

Ներկայացում

Համադամ ուտելիքներ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax:(202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1402 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 6 ՄԱՅԻՍ 1999 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Պիկ. — ١٤٠٢ – الخميس ٦ مايو ١٩٩٩


ԳԱՀԻՐԷ

## «ՃԱՀԱԿԻՐ»Ի ՇՐՋԱՆԱԿԻ ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԱՅՑԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄՕՏ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԵԱՆ

*Չորեքշաբթի, 21 Ապրիլի կէսօրին, Եգիպտոսի «Ճահակիր»ի շրջանակէն պատուիրակութիւն մը պաշտօնական այցելութիւն մը տուաւ Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպանութեան՝ Ն. Գ. Սերկէյ Մանասարեանի, վերջերս Հայաստանի Հանրապետութեան դեսպան նշանակուելուն առիթով:*

*Ինչպէս ծանօթ է, ՀՀ արտաքին գործոց նախարարի տեղակալ՝ Պր. Ս. Մանասարեան ՀՀ նախագահի հրամանագրով, անցեալ 18 Մարտին, Եգիպտոսի մօտ արտակարգ և լիազօր դեսպան նշանակուած էր, եւ ուրեմն «Ճահակիր»ի շրջանակը փափաքեցաւ շնորհաւորել եւ իր բարեմաղթութիւնները յայտնել մեծարգոյ դեսպանին, սոյն դիւանագիտական պաշտօնին կոչման առիթով:*

*Յարգելի դեսպանը ծանօթանալէ ետք պատուիրակութեան անդամները, ողջունեց եւ շնորհակալութիւն յայտնեց, ապա զեկուցում մը տալով, անդրադարձաւ Հայաստանի եւ Եգիպտոսի միջեւ յարաբերութիւններու զարգացման, տարբեր մարզերէ ներս: Այս գծով ան տեղեկացուց թէ ՀՀ առողջապահութեան նախարարութենէն պատուիրակութիւն մը, օրերս Եգիպտոս կը գտնուի համատեղ համաձայնութիւններ կնքելու միտումով:*

*Ինչ կը վերաբերի Հայաստանի եւ Սփիւռքի ընդհանուր յարաբերութիւններուն, յարգարժան դեսպանը յայտնեց թէ զանազան ծրագիրներ կան զարգացնելու փոխ-յարաբերութիւններն ու համագործակցութիւնը: Անոնցմէ կարեւորագոյնները համարեց ան Համահայկական Խաղերը՝ յառաջիկայ աշնան եւ Երեւանի մէջ կայանալիք Հայաստան - Սփիւռք Համաժողովը, որ տեղի պիտի ունենայ 22 Սեպտեմբերին: Այս ուղղութեամբ՝ Միջին Արեւելքի երկիրներուն համար, Պէյրութի մէջ խորհրդակցական ժողով մը պիտի գումարուի Մայիսի 19-ին, Համաժողովի նախապատրաստական աշխատանքներուն նուիրուած, որուն ներկայ պիտի գտնուի ՀՀ արտաքին գործոց նախարար Վարդան Օսկանեանը: Պր. Ս. Մանասարեան նաեւ անդրադարձաւ Հայաստանի ներկայ իրադարձութիւններուն, Մայիս 30-ին կայանալիք խորհրդարանական ընտրութիւններուն, Ղարաբաղեան հարցի խաղաղ միջոցներով լուծման գործընթացին եւ այլ այժմէական հարցերու շուրջ:*

*Ճաշեկան զրոյցի ընթացքին, որուն ներկայ էր դեսպանութեան խորհրդական Օր. Անահիտ Թովմասեան, պատուիրակութեան անդամները արտայայտուեցան համայնքէս ներս Շրջանակին տարած գործունէութեան, ապա իրենց զօրակցութիւնը յայտնեցին հանդէպ հայրենիքի ամրապնդման, շեշտելով թէ Հնչակեան կուսակցութիւնը սկզբունքային եւ անփոփոխ կը մնայ իր կեցուածքին մէջ Հայաստանի իշխանութիւններուն հանդէպ, ամէն բանէ վեր նկատելով հայրենիքն ու հայ ժողովուրդը: Նաեւ տեղեկացուցին թէ Համահայկական Խաղերուն, Հայկական Ընթերցասրահի՝ Հ.Մ.Մ.-ի կազմը իր մասնակցութիւնը պիտի բերէ փինկ-փոնկի Եգիպտոսի հաւաքականին:*

*Պատուիրակութիւնը որ բաղկացած էր ընկերներ՝ Վրէժ Սէֆէրեանէ, Պետրոս Մովսէսեանէ, Մարտիկ Պալաեանէ, Աւետիս Մովսէսեանէ, Սիմոն Ջամքէրթէնեանէ եւ Տոքթ. Էտի Գասապեանէ, յաջողութեան բարեմաղթութիւններ յայտնելով, հրաժեշտ առին խոհեմ դիւանագէտ, դեսպան Սերկէյ Մանասարեանէն:*

## ՍՓԻՒՌՔ-ՀԱՅԱՍՏԱՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ՝ ՈՒԱՇԻՆԿԹԸՆԻ ՄԷՋ

*ՀՀ կառավարութեան կողմէ ծրագրուած է Սփիւռք-Հայաստան Համաժողով որ տեղի պիտի ունենայ յառաջիկայ Սեպտեմբեր ամսուան, երկրորդ կիսուն, Երեւանի մէջ:*

*Սոյն Համաժողովի նախապատրաստական մէկ հանդիպումը տեղի ունեցաւ Ուաշինկթընի մէջ, նախաձեռնութեամբ ՀՀ դեսպանատան: Հանդիպումը կայացաւ Ապրիլ 26, 1999, Երկուշաբթի առաւօտեան ժամը 10:00-էն սկսեալ:*

*Սոյն կարեւոր ժողովը բացաւ ՀՀ նախագահ, Ռոպերթ Քոչարեան: Իր բացման հակիրճ խօսքին մէջ, ան ընդգծեց կարեւորութիւնը ծրագրուած Համաժողովին, եւ իր կողմէ ունեցած պատկերացումներուն անոր կազմակերպչական ձեւին, օրակարգերու ճշդումին, եւ յաջողութեան անհրաժեշտութեան, թէ Հայաստանի, թէ Ղարաբաղի եւ թէ Սփիւռքի համար:*

*Ինչ կը վերաբերի Սփիւռքին, ան շեշտեց անոր բազմազանութիւնը, եւ դիտել տուաւ թէ Սփիւռքի արժէքը կը կայանայ իր բազմազանութեան մէջ, եւ անոր առաւել օգտագործման հայրենիքի ի նպաստ: Իր խօսքը վերջացնելով, նախագահ Ռոպերթ Քոչարեան յաջողութիւն մաղթեց սոյն հանդիպման:*

*Ապա ժողովը վարելու գործը ստանձնեց ՀՀ արտաքին գործերու նախարար Վարդան Օսկանեան, որ իր ողջոյնի խօսքէն ետք, որոշ մանրամասնութիւններով անդրադարձաւ քննարկման ենթարկուելիք օրակարգերու մասին, եւ իր գլխաւորած յանձնախումբի պատկերացումներու մասին: Ճեշտը դրաւ օրակարգի տարբեր հարցերու մասին, ինչպէս Սփիւռքէն տարբեր պատուիրակութեանց մասնակցութեան հարցը, Համաժողովի ձեւաւորումը, գոյութիւն ունեցող եւ նոր ստեղծուելիք կառոյցներու յաւագոյն օգտագործումը, Սփիւռքի մասնակցութեան աշխարհագրական ներկայացուցչութիւնը, համագումարային թէ կլոր սեղանային դասաւորումը Համաժողովի եւ այլն: Վարդան Օսկանեան նոյնպէս պատրաստուած ըլլալով այս հանդիպումի երթալու, ժողովը ապա վարելու հրաւիրուեցաւ ՀՀ Եւրոհամակարգի ներկայացուցիչ Տիար Վիգէն Չիտէճեան:*

*Ուաշինկթընի սոյն հանդիպումին կը մասնակցէր Ս.Դ.Հ.Կուսակցութեան Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմինէն յատուկ պատուիրակու-* 3

## ՀԱՅԿԱԿԱՆ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ ԲԱՂԴԱՏՈՒԵՑԱՒ ԳՈՍՈՎԱՅԻ ՄԷՋ Ի ԳՈՐԾ ԴՐՈՒԱԾ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՀԵՏ

Ինչպէս արդէն հաղորդուած էր, Պրիւքսէլի մէջ, Եւրոխորհրդարանի երդիքին տակ սկսաւ «Նոր դարաշրջանին հայերը» թէմայի շուրջ կազմակերպուած համագումարը, որուն կը մասնակցին 30 երկիրներէ ժամանած հայեր: Պելժիոյ Հայկական Կազմակերպութեան նախաձեռնութեամբ կազմակերպուած համագումարը կը շարունակուի «Ցեղասպանութեան ժառանգորդները» թէմայի շուրջ: Հաղորդուած տեղեկութեանց համաձայն, Եւրոխորհրդարանի նախագահ Ժիլ Րոպըլ չմասնակցեցաւ նիստին, անոր տեղ նիստին բացումը կատարեց Եւրոխորհրդարանի Արտաքին Յարաբերութիւններու Կոմիտէի նախագահ Թոմ Սփէնսըր, որ յայտնեց թէ կրկնակի հպարտութիւն կը զգայ «անոր համար որ Եւրոխորհրդարանը ճանչցած է հայկական ցեղասպանութիւնը»: Համագումարին մայր նպատակն է ճշդել հայ ժողովուրդին 21րդ դարու ուղղեալ նպատակները եւ կազմակերպել զանոնք: Բայց Թուրքիա անհանգստացաւ երբ համագումարի աշխատանքէն ներս առնուեցաւ նաեւ ցեղասպանութեան պնդումը: Թոմ Սփէնսըր, խօսելով հայոց ցեղասպանութեան մասին, ըսաւ. «Բոլորս ալ գիտենք թէ ցեղասպանութիւնը ինչ է: Միլոսեվիչին Գոսովայի մէջ գործադրածն ալ ցեղասպանութիւն է: Ասիկա բնաւ պէտք չէ մոռցուի»: Սփէնսըր աւելցուց.

«Հակառակ որ թուրքերը կը զայրանան, 21րդ դարը պէտք է ըլլայ բացայայտումի ու երկխօսութեան դար»:

Այն նիստին, որ նուիրուած էր «Ցեղասպանութեան Ժառանգորդները» նիւթին, վիճաբանութեան նիւթ դարձաւ այն տեսակէտները, ըստ որոնց Օսմանցի Թուրքերը սպանդի ենթարկած են հայերը:

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԿԸ ՀԵՐՔԷ ԱՏՐՊԷՅՃԱՆԱԿԱՆ ՍԽԱԼ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Երկուշաբթի, 26 Ապրիլին, Հայաստանի նախագահ Ռոպերթ Քոչարեան հեռատեսիլէն հերքեց ատրպէյճանական աղբիւրներու կողմէ հաղորդուած այն տեղեկութիւնները, ըստ որոնց, իբրեւ թէ «գրաւեալ հողերու» վերադարձին փոխարէն, Ատրպէյճան պիտի ջնջէ Հայաստանի շրջափակումը: Ըստ ազերի աղբիւրներուն, այս մասին «համաձայնութիւն» գոյացած է վերջերս Վրաստանի մէջ Հայաստանի եւ Ատրպէյճանի Պաշտպանութեան նախարարներուն միջեւ կայացած հանդիպումի ընթացքին:

Նախագահ Քոչարեան ըսաւ, թէ Ատրպէյճանի ղեկավարութիւնը այս ձեւով կը փորձէ արդարացնել ու բացատրել այս հանդիպումին իր մասնակցութեան շարժառիթները: Նախագահը աւելցուց, որ համաձայնութիւն գոյացած է պարզապէս սահմաններու անցուդարձերուն մասին որոշ քայլեր առնելու նիւթի շուրջ յառաջիկային հանդիպումներ ունենալու մասին: Օրինակ՝ չկրակել երկրագործական աշխատանք կատարող գիւղացիներուն վրայ, ջուրի պաշարները միասնաբար օգտագործել, եւլն.: Քոչարեան յայտնեց նաեւ, որ ինք փորձած է այս նախաձեռնութիւնը զարգացնել Մոսկուայի մէջ Ալիեւի հետ իր ունեցած հանդիպումի ընթացքին (ԱՊՀի գերատեսչանին), անոր առաջարկելով մասնայատուկ քայլեր առնել: «Սակայն խօսք չէ եղած հողերու վերադարձին մասին», ընդգծեց նախագահը:

## ՀՀԾ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝ ՎԱՆՕ ՍԻՐԱԴԵՂԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ ՎԵՐԱԴԱՐՁԱՒ

### Ան Օդանաւակայանին Մէջ Անմիջապէս Ձերբակալուեցաւ Ներքին Գործոց Պատասխանատուներուն Կողմէ

ՀՀԾ Կուսակցութեան Վարչութեան նախագահ, Ներքին Գործոց նախկին Նախարար՝ Վանօ Սիրադեղեանի հարցը քանի մը ամիսներէ ի վեր կը յուզէ երկրի քաղաքական ներքին կեանքը: Սիրադեղեան, որ կը մեղադրուի բարձրաստիճան պաշտօնեաներու դէմ մահափորձեր կազմակերպելու եւ կարգ մը այլ յանցագործութեանց մեղադրանքով, Յունուարի վերջաւորութեան, առողջական պատճառներով մեկնած էր Հայաստանէն:

3 Մայիսին, Վանօ Սիրադեղեան եւ իր ընտանիքի անդամները Սոֆիայէն Երեւան վերադարձան: Օդանաւակայան իջնելէ ետք, Սիրադեղեան անմիջապէս դատախազութիւն առաջնորդուեցաւ օրինապահ մարմիններուն կողմէ: Հայաստանի օրէնքին համաձայն, Սիրադեղեան կրնայ մինչեւ չորս օր արգելափակուած մնալ դատախազութեան մօտ: Խորհրդարանը աւելի առաջ համաձայնութիւն յայտնած էր դատախազութեան այն պահանջին, ըստ որու Սիրադեղեան արդարադատութեան պիտի յանձնուէր առանց ձերբակալուելու:

Սիրադեղեանը դիմաւորելու եկած էին ՀՀԾ վարչութեան անդամներն եւ լրագրողներ, որոնք սակայն չկրցան զինք տեսնել: ՀՀԾի վարչութեան անդամները որոշած էին նոյնիսկ հանդիսաւոր ընդունելութիւն մը կազմակերպել ՀՀԾ վարչութեան շէնքին մէջ: Արդարեւ, օդանաւին վայրէջք կատարելէն անմիջապէս ետք, Ներքին Գործոց նախարարութեան պաշտօնատարները զինք առին, ու դատախազութիւն տարին:

ՀՀԾ-ի վարչութեան անդամ Յովհաննէս Իգիթեան յայտնեց, որ Սիրադեղեանի պաշտպան փաստաբանը պիտի ըլլայ Ռուբէն Ռշտունին: Ըստ իրեն, ՀՀԾի դէմ կը կիրարկուի այն նոյն սէնարիոն, որով 1994-ի վերջաւորութեան ՀՅԴի կասեցումով խոչընդոտուեցաւ այդ կուսակցութեան մասնակցութիւնը խորհրդարանական ընտրութիւններուն:

ՍՈՒՐԻԱ

## Ուխտագնացութիւն Դէպի Տէր Զօր Եւ Մարգադէ

*Մայիսի 2-ին, ի յաւերժումն հայոց ցեղասպանութեան զոհերի յիշատակի, Բերիոյ Թեմի Ազգային Առաջնորդարանի կազմակերպած ամենամեայ ուխտագնացութեանը դէպի Տէր Զօր եւ Մարգադէ, մասնակցում էր Հալէպում Հայաստանի Հանրապետութեան գլխաւոր հիւպատոս Արեգ Յովհաննիսեանը:*

*Ինչպէս ԱՐՄԷՆՓՐԵՍ-ին յայտնեցին ԱԳՆ հասարակայնութեան հետ յարաբերութիւնների վարչութիւնից, ուխտագնացները ժամանել էին Սուրիայի հայաշատ քաղաքներից՝ Հալէպից, Դամասկոսից, Գամիշլիից, Լաթաքիայից, Հասաքէից եւ այլ վայրերից: Տէր Զօրի Նահատակաց եկեղեցում մատուցուել է Սուրբ պատարագ, եւ եղեռնի զոհերի յիշատակի առթիւ եղել են ելոյթներ:*

*Արք. Գաթարոյեանի գլխաւորած սուրիահայ պատուիրակութեան ուղեկցութեամբ Հայաստանի գլխաւոր հիւպատոսը հանդիպում-* 4

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԸՆԴՈՒՆԵՑ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻ ՆՈՐԸՆՏԻՐ ՆԱԽԱԳԱՀԸ

Շաբաթ, 1 Մայիսին, Հայաստանի Նախագահ Ռոպերթ Քոչարեան, իր գրասենեակին մէջ ընդունեց Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովի (ԿԸՅ) նորընտիր նախագահ Արտակ Սահրադեանը: Նախագահը, ընդգծելով ընտրական յանձնաժողովներու կարեւոր դերն ու պատասխանատուութիւնները արդար եւ օրինական ընտրութիւններ կատարելու ծիրէն ներս, շեշտեց օրէնքը գերակշիռ դարձնելու հարցը:

## ԱՄԵՐԻԿԱՅԻ ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐԸ ԿԸ ԽՈՍՏԱՆԱՅ ԶԱՐԿ ՏԱԼ ՀԱՅ-ԱԶԵՐԻ ՎԷՃԻ ԼՈՒԾՈՒՄԻՆ

6 Մայիսին Ամերիկայի Արտաքին նախարար՝ Մատլէն Օլպրայթ Ատրպէյճանի նախագահ Հայտար Ալիեւի յայտնեց, թէ ինք կը ծրագրէ զարկ տալ Լեռնային Ղարաբաղի հարցով Հայաստան-Ատրպէյճան վէճը լուծելու միտող քայլերուն: Ալիեւի մամլոյ գրասենեակին համաձայն, Արտաքին նախարար՝ Օլպրայթ հեռաձայնով կապ հաստատեց Ատրպէյճանի նախագահին հետ: Ինչպէս յայտնի է Ալիեւ ներկայիս Ամերիկայի մէջ կ'ապաքինի սրտի վիրաբուժական գործողութենէ մը ետք: Օլպրայթ իր խօսակիցին ըսաւ նաեւ, որ ամերիկեան կառավարութիւնը կը փափաքի ընդլայնել իր յարաբերութիւնները Ատրպէյճանի հետ եւ կը ծրագրէ աւելի աշխոյժ կերպով միջնորդելու Լեռնային Ղարաբաղի հակամարտութեան գծով:

## ՀԱՅԱՍՏԱՆ ԻՍՐԱՅԷԼԻՆ ԿՈՉ Կ'ԸՆԷ ՊԱՇՏՕՆԱՊԷՍ ՃԱՆՉՆԱԼ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

*Հայաստանի արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանը Իսրայէլին կոչ է արել պաշտօնապէս ճանաչել 1915 թուականի Հայոց ցեղասպանութիւնը, հաղորդում է իսրայէլական «Ճերուսալեմ Փոստ» թերթը:*

*«Ցեղասպանութեանը վերաբերող իրենց խօսքերն եւ գործերը ինչ-որ անհամապատասխանութիւն ունեն: Իսրայէլը պէտք է ցուցաբերի իր բարոյական հեղինակութիւնը, որովհետեւ ունենք նման պատմութիւն եւ փորձ»,- յայտարարել է Օսկանեանը թերթի հարցազրոյցի ժամանակ:*

*Ըստ արտաքին գործերի նախարար Օսկանեանի, Իսրայէլի պատուիրակութիւնը Հայաստան կը ժամանի յաջորդ ամիս: «Մենք տեսել ենք ինչպէս է Իսրայէլն սկսել զարգանալ զրոյից: Մենք կարող էինք շատ բան սովորել նրանցից»,- ասել է Օսկանեանը:*

*Հայաստանի արտաքին գործերի նախարարի կարծիքով, Հայաստանի եւ Իսրայէլի շահերը Կովկասում տրամագծօրէն հակադիր են: Բացի այն, որ Իսրայէլը Թուրքիայի դաշնակիցն է, նա ձգտում է նաեւ ատրպէյճանական նաւթը հանել արեւմտեան շուկաներ, յայտարարել է Օսկանեանը:*

*Ռուսաստանի եւ Իրանի հետ Հայաստանի յարաբերութիւնները «չեն բացառում, որ Հայաստանը կարող է լաւ յարաբերութիւններ ունենալ Իսրայէլի հետ,- նշել է Վարդան Օսկանեանը, աւելացնելով,- մենք փորձում ենք լաւ յարաբերութիւններ հաստատել այդ պետութեան հետ»:*

**ԼՈՍ ԱՆՃԷԼԸՍ**

## «ԿԱՅԾ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԱՊՐԻԼԵԱՆ ՀՍԿՈՒՄԸ

*Ապրիլեան Եղեռնի 84-րդ տարեդարձի առթիւ «Կայծ» Երիտասարդական Միութիւնը այս տարի եւս կազմակերպած էր հսկումի երեկոյ, որ տեղի ունեցաւ Փասատինայի «Աղաճանեան» սրահէն ներս:*

*Հանդիսութիւնը սկսաւ Հ.Մ.Մ.-ի սկաուտներու կողմէ՝ դրօշակի արարողութեամբ, որմէ ետք ուսանողուհի Օժիկ Թավուգճեան կատարեց Միացեալ Նահանգներու եւ Հայաստանի Հանրապետութեան քայլերգները:*

*Օրուայ հանդիսավար՝ Անճելա Ճէրէճեան բացման խօսք կատարելով յատկապէս ըսաւ.- «Անգամ մը եւս հաւաքուած ենք այս երեկոյ, յիշատակելու Մեծ Եղեռնի մէկ ու կէս միլիոն նահատակները: Ոչ ոք կրնայ մոռնալ այս դարու առաջին Ցեղասպանութիւնը, զոր գործադրուեցաւ Թուրքերու կողմէ»:*

*Ապա, «Կայծ» Երիտասարդական Միութեան խօսքը անգլերէնով ներկայացուց Կէրի Սինանեան, յայտնելով որ, օտարները հարց կու տան թէ ինչո՞ւ տակաւին կը յիշեն դժբախտ անցեալը: Պատասխանելով ան ըսաւ.- «Եթէ չյիշենք ու չոգեկոչենք, պատմութիւնը պիտի կրկնէ ինքզինք, ինչպէս որ պատահեցաւ Պաքուի ու Սումգայիթի մէջ: Փոխանակ մեզմէ պահանջելու, որ մոռնանք անցեալը, միջազգային հանրութիւնը, պէտք պատժէ ոճրագործը»: Տեղի ունեցաւ գեղարուեստական որակաւոր պատշաճ յայտագիր:*

*Խօսք առաւ ու նոր սերունդին իր պատգամը փոխանցեց Եղեռնէն վերապրող Պրն. Գէորգ Տէր Դաւիթեան, որու հետ վերջերս «Լոս Անճելըս Թայմզ» օրաթերթը հարցազրոյց ունեցած էր Հայկական ցեղասպանութեան մասին:*

*Հայկական Համագումարի Արեւմտեան Ափի գրասենեակի վարիչ Պրն. Փիթըր Ապաճեան իր խօսքին մէջ անդրադարձաւ Հայկական Ցեղասպանութեան ճանաչման ուղղութեամբ ամերիկեան քաղաքական շրջանակներու մօտ եւ յատկապէս Գոնկրէսէն ներս տարուող աշխատանքներուն:*

*Օրուայ գլխաւոր բանախօսն էր «Արմինյըն Օպզըրվըր» թերթի խմբագիր Պրն. Օշին Քէշիշեան, որ իր խօսքը սկսաւ ըսելով.-«Այսօր մէկ միլիոնէ աւելի պատճառ ունինք, նշելու Հայոց Եղեռնը: Մէկ միլիոնէ աւելի ձայներ ունինք, որոնք կը պահանջեն արդարութիւն: Մէկ միլիոնէ աւելի փաստեր ունինք, որ Երիտասարդ Թուրքերը յղացան, ծրագրեցին եւ անմարդկային միջոցներով ջանացին բնաջնջելու Հայ ժողովուրդը, որ կ'ապրէր իր պապենական եւ պատմական հողերուն վրայ կերտելով ու կառուցելով»:*

*Քէշիշեան խօսեցաւ առաւելաբար այն մասին թէ Ցեղասպանութեան ճանաչումի աշխատանքի կողքին անհրաժեշտ է քայլ մը առաջ անցնիլ եւ միջազգային ատեաններու առջեւ ներկայացնել օրինական պահանջքներ հետեւեալներու մասին.*

*Ա- Լքեալ գոյքեր, շարժուն, որոնք կը պատկանէին Հայերու եւ որոնց ցուցակագրումը կատարած է նոյնինքն Թուրք կառավարութիւնը: Նոյնիսկ Հայաստանի առաջին Հանրապետութեան եւ Թուրքիոյ միջեւ դաշնագիր ստորագրուեցաւ Հայապատկան գոյքեր վերադարձնելու իրենց տէրերուն, այսինքն Հայերուն:*

*Բ- Կեանքի ապահովագրութիւններու փաստաթղթեր որոնք գնուած էին Հայերու կողմէ «Նիւ Եորք Լայֆ Ինշուրընս» ընկերութենէն, որ տէրերուն մահուան պատճառ ներկայացուցած է «ջարդուած» բառով, ինչ որ կրկին ապացոյց մըն է Ցեղասպանութեան իրողութեան մասին: Աւելի քան 8 հազար անձեր ապահովագրութիւն գնած են ամերիկեան ընկերութենէն, որուն դէմ պէտք է դատ բանալ, ինչպէս որ ըրին հրեաները քանի մը տարի առաջ՝ զուիցերիական դրամատուներէն հատուցում ստանալով:*

*Գ- Թուրքական դրամատուներու մէջ Հայերու կողմէ պահ դրուած գումարներու փոխանցումը, իրենց տոկոսով, իրենց տէրերուն, այսինքն Հայերուն: Այս կապակցութեամբ Հայկական Համագումարը* (Armenian Assembly) *աշխատանքի լծուած է ու դիմած է Միացեալ Նահանգներու Պետական Քարտուղարութեան* (Department of State) *միջնորդելու սոյն գործի ի կատար ածման: Պետական Քարտուղարութիւնը դրական պատասխան տուած է Հայկական Համագումարին թէ «Անպայման պիտի զբաղին այդ գործով»:*

*Քէշիշեան հաւատք յայտնեց թէ ցեղասպանութեան կապակցութեամբ վերոյիշեալ աշխատանքները կը յաջողին միայն՝ միասնական եւ համախոհ կերպով եւ հնարաւորութիւն կայ հասնելու մեր նպատակներուն եթէ պատրաստակամութիւն յայտնենք մեր պահանջատիրութեան մէջ:*

*Հնչակեան Կուսակցութեան խօսքը փոխանցեց Ընկ. Տիրան Ճէրէճեան: Ան իր նյութի սկզբնաւորութեան ըսաւ.- «Օգտուելով համաշխարհային Առաջին պատերազմի ընձայած պատեհ առիթէն, Օսմանեան Թուրք ղեկավարութիւնը գործադրութեան դրաւ իր ծրագիրը՝ թրքացնել կերպով ու վերջնականապէս լուծելու Հայկական Հարցը:*

*Ընկեր Ճէրէճեան կեդրոնացաւ նորանկախ Հայաստանի այսօրուայ վիճակին վրայ ու ներկայացուց Հնչակեան Կուսակցութեան տեսակէտները՝ հայրենիքն ու սփիւռքը յուզող հարցերուն շուրջ:*

*Երեկոյի յայտնութիւնն էր Հ.Մ.Մ.-ի սկաուտներու «Հայրենիք»*

⇨ 3

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

### ԷՋՄԻԱԾԻՆՆ ՈՒ ԶՈՒԱՐԹՆՈՑԸ UNESCO-Ի ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԺԱՌԱՆԳՈՒԹԵԱՆ ՑՈՒՑԱԿԻՆ ՄԷՋ

Ինչպէս յայտնի է, ներկայիս Հայաստանի մշակութային կոթողներէն Հաղբատի վանական համալիրն ու Գեղարդի համալիրը ընդգրկուած են՝ UNESCO-ի Մշակութային Համաշխարհային Ժառանգութեան ցուցակին մէջ: Այս օրերուն Հայաստանի մէջ աշխատանքներ կը տարուին նաեւ Էջմիածինը՝ Զուարթնոց տաճարի հետ համատեղ այդ ցուցակին մէջ ներկայացնելու ուղղութեամբ:

29 Ապրիլին, այս հարցը քննարկելու նպատակաւ, հանդիպում մը ունեցան Հայաստանի Մշակոյթի եւ Մարզանքի նախարարութեան Յուշարձաններու Պահպանութեան վարչութեան պետ՝ Գագիկ Քիւրքճեան եւ ԻՒՆԷՍՔՕ-ի փորձագէտ՝ Տէյվիտ Միշէլ Մօր:

Նշուեցաւ որ մշակութային ժառանգութիւն մը UNESCO-ի ցուցակին մէջ ընդգրկելու համար անհրաժեշտ է տուեալ մշակութային ժառանգութիւնը ներկայացնել իր սկզբնական տեսքով. բարեկարգել շրջակայքը, հեռացնել կոթողի դիտողականութիւնը խանգարող շինութիւնները: Այս նպատակաւ, մօտ ապագային պէտք է հեռացուին առեւտուրի այն բազմաթիւ կրպակները, որոնք կը գտնուին Էջմիածնի Մայր Տաճարէն դէպի Ս. Գայիանէ եկեղեցին տանող ճամբուն վրայ: Էջմիածնի եւ Զուարթնոցի մասին ծրարը UNESCO-ին պէտք է յանձնուի մինչեւ Յունիսի վերջաւորութիւն:

Յայտնենք որ Միշէլ Մօր 1995էն փորձագիտական աշխատանքներ կը տանի Հայաստանի մէջ: Ան Հայաստանի մէջ ուսումնասիրած է աւելի քան 60 պատմական յուշարձաններ, եւ այդ յուշարձաններէն 7ը ընտրած է UNESCO-ի մէջ ընդգրկելու համար: Ըստ իրեն, Հայաստան հարուստ է բնական եւ մշակութային ժառանգութեամբ, որ դժբախտաբար յայտնի է միայն մասնագէտներու նեղ շրջանակին:

### «ԱՐՑԱԽԻ ԶԱՒԱԿՆԵՐԸ» ԺԱՊԱՒԷՆԸ ՑՈՒՑԱԴՐՈՒԵՑԱՒ ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԺՈՂՈՎԻՆ

Սփիւռքահայ մամուլի մէջ կը կարդանք, որ «Արցախի զաւակները» շարժանկարը, որ կը ներկայացնէ Արցախի մատղաշ տարիքի բնակիչներուն դիմագրաւած զրկանքները, առաջին անգամ ներկայացուեցաւ անցեալ ամիս, Պոքա Ռաթոնի մէջ (Ֆլորիտա) գումարուած Ամերիկայի Հայկական Համագումարի Խնամակալ Խորհուրդի տարեկան ժողովին: Ժապաւէնը կը պատկերացնէ Ղարապաղի մանուկներուն չարքաշ կեանքը:

Ժապաւէնը պատրաստած է Ճէֆրի Լ. Սփարքս, իսկ գեղարուեստական ղեկավարութիւնը կատարած է Կէրի Պէյըր, օգտուելով Անգլիոյ Լորտերու Տան փոխխօսնակ Պարոնուհի Գարոլայն Քոքսի Արցախի մարդասիրական այցելութիւններու ընթացքին կատարուած նկարահանումներէն:

Շարժանկարը այս գարնան վերջաւորութեան, տրամադրելի պիտի ըլլայ հանրութեան:

**ԳԱՀԻՐԷ**

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ ԵՒ «ԱՆԼՌԵԼԻ ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆ»Ի ՂՕՂԱՆՋԸ

Շաբաթ 24 Ապրիլ 1999-ի գիշերը, «Պըլըքտանեան» հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ Ապրիլեան նահատակներու 84-րդ տարելիցին նուիրուած համազգային յուշահանդէս, հովանաւորութեամբ յարանուանութեանց հոգեւոր պետերուն, նախաձեռնութեամբ Գահիրէի Ազգային Իշխանութեան եւ կազմակերպութեամբ Գահիրէի բոլոր միութիւններուն: Ներկայ էին թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան Եգիպտոսի մօտ ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան, Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեան, Հայ Կաթողիկէ համայնքի հոգեւոր հովիւ Տ. Ժիրայր Քհնյ. Անանեան, ռուսական դեսպանութեան կցորդ Սամուէլ Մելիքեան, Թեմական եւ Քաղաքական ժողովներու ատենապետներ՝ ՊՊ. Անդրանիկ Մեսրոպեան եւ Նուպար Սիմոնեան, համայնքի հանգամանաւոր դէմքեր եւ հայ հասարակութիւն մը:

Յանուն Ազգ. Իշխանութեան, երախտագիտական արտայայտութիւններով բացման խօսքը կատարեց Պր. Գրիգոր Մարգարեան, ապա բեմ հրաւիրեց օրուան բանախօս, բանասիրական գիտութիւններու դոկտոր,



*Ներկայացման մասնակցողները, ձախէն աջ՝ Սիլվա Պայրամեան, Ալիսիկ Մազլումեան, Սիլվա Թէրզիպաշեան, Սեդա Ալեքսանեան, Լորի Գազանճեան, Նորա Քէօհնէյեան, Սերճ Սէտէֆճեան, Լիզա Քրէտեան, Անայիս Միքայէլեան, Աւետիս Մովսէսեան եւ գեղարուեստական ղեկավար՝ Դոցենտ Դաւիթ Զալեան:*

Փրոֆ. Գէորգ Բաղդիշեան: Յարգելի պատգամախօսը իր նիւթին մօտեցաւ բազմաթիւ անկիւններէ՝ պատմական, հայրենասիրական եւ քաղաքական խորունկ հասկացողութեամբ:

Ան նախ վերլուծեց «եղեռն» եւ «ցեղասպանութիւն» բառերը: Ապա անդրադառնալով գաղթի մասին, թուեց ժամանակի ընթացքին տեղի ունեցած հայերու զանազան գաղթերը եւ Սփիւռքի ստեղծումը: Դոկտ. Բաղդիշեան խօսելով Թուրքիոյ կողմէ կատարուած ջարդերուն, յիշեց 1895-96 թուականներու կոտորածները: Այնուհետեւ շեշտը դնելով Երիտ. Թուրքերու խաբեբայութիւններուն, վայրագութիւններուն եւ արեւմտահայութիւնը բնաջնջելու ծրագրի գործադրման, արտայայտուեցաւ 1915 Ապրիլ 24-ին սկսած սոսկալի պատահարներուն, բռնագաղթին, խոշտանգումներուն եւ տառապանքներուն: Իր շահեկան խօսքին մէջ Պր. Բաղդիշեան նշեց Սարդարապատի ճակատամարտը, 1918 Մայիս 28-ին հռչակուած Հայաստանի առաջին հանրապետութիւնը եւ 1920 Նոյեմբեր 29-ի Խորհրդային Հայաստանի հռչակումը:

Ան ըմբռնելի ոճով մեկնաբանեց, թէ ինչո՞ւ թուրք ազգը մինչեւ այսօր չէ ճանչցած հայոց ցեղասպանութիւնը եւ ի՞նչ կը սպասուի Միջազգային Ատեանէն: Ապա անդրադառնալով հայոց պահանջատիրութեան, յարգելի բանախօսը կարեւորեց միասնականութիւնը եւ հաւաքական ուժը՝ ազգային մեծ կամ փոքր նպատակներ իրականացնելու համար, որուն վկան նկատեց մերօրեայ Արցախը: «**Եթէ չկայ հայու ցաւով եւ ուրախութեամբ այրուող սերունդ, ոչ հայ կայ, ոչ ալ հայկական պահանջատիրութիւն**» պատգամեց ան:

Դոկտ. Գ. Բաղդիշեան եզրափակելով իր ուշագրաւ խօսքը վեր առաւ Մեծն Թումանեանի սա խօսքերը.

**Ու պոէտներ, որ չեն պղծած իրենց շուրթերն անէծքով,**<br>
**Պիտի գովեն քու նոր կեանքը նո՛ր երգերով, նո՛ր խօսքով**<br>
**Իմ նոր հայրենիք**<br>
**Հզօ՛ր հայրենիք...**

Սոյն բովանդակալից խօսքը ջերմ ծափահարութիւններու արժանացաւ ներկաներուն կողմէ:

Կարճ դադարէ մը ետք պիտի ներկայացուէր բազմատաղանդ բանաստեղծ Պարոյր Սեւակի «Անլռելի Զանգակատունը»: Թէեւ երկու տարի առաջ կատարուած էր սոյն գրական սքանչելի գործը, սակայն այս անգամ կը ներկայացուէր կարգ մը փոփոխութիւններով՝ բանաստեղծութեան ամբողջացումի, ասմունքողներու ելոյթի եւ երգերու մեկնաբանութեան տեսակէտէն: Արդարեւ գրական-երաժշտական համապարփակ համադրում մըն էր, գեղարուեստական որակաւոր աշխատանք մը՝ ուր կը հայելացուէր հանճարեղ Կոմիտաս Վարդապետի տառապալից կեանքի ելեւէջներն ու թուրքին կողմէ գործադրուած ցեղասպանութեան սրտաշարժ վայրագութիւնները, ասմունքի, նուագի եւ երգերու յուզիչ երանգաւորումներով՝ «Զուարթնոց» երգչախումբի մենակատարներու մասնակցութեամբ: Ներկայացման գեղարուեստական ղեկավարն էր միջազգային եւ հանրապետական մրցոյթներու դափնեկիր Դոցենտ Դաւիթ Զալեան, նուագակցութեամբ հայրենի դաշնակահարուհի Իրինա Զալեանի:

Նախ կարգաւ բեմ կը բարձրանան եւ մուտք կը գործեն մենակատարներ՝ Լիզա Քրէտեան, Սիլվա Թէրզիպաշեան, Սեդա Ալեքսանեան եւ Սերճ Սէտէֆճեան, ապա առաջ կ'անցնի եւ դէպի դաշնամուր կը յառաջանայ Իրինա Զալեան: Յետոյ յաջորդաբար հանդարտօրէն իրենց տեղերը կը գրաւեն ասմունքողներ՝ Սիլվա Պայրամեան, Նորա Քէօհնէյեան, Աւետիս Մովսէսեան եւ վերջապէս նոյնինքն տիրիժօրը՝ Մօ. Դ. Զալեան, իր բաժինը բերելու ասմունքողներու շարքին:

Բեմի խորքին՝ օրուան խորհուրդը ներկայացնող խորհրդանշական պատկեր մը, որուն վերեւ աղօտ լոյսի տակ կը նշմարուի զոյգ զանգակներ: Բեմին առջեւը մոմեր եւ ծաղիկ: Քառ լռութեան մէջ ձայն կ'առնէր Մ.

⇨ 3



# ԵՐԲ ԱՌԱԳԱՍՏԸ ՈՒՂԻՂ Է



**ՍԵԴԻ ԳՕԶՈՒՆԵԱՆ**

Ազգապահպանումով մտահոգուողները շատ են մեր մէջ: Անշուշտ անիրաւ ալ չեն: Անոնք, որոնք իրենց ազգին հանդէպ ինքզինքնին պատասխանատու կը զգան, անշուշտ պարտականութիւն կը սեպեն պահպանել ազգը եւ անոր գոյութիւնը:

Ասիկա ինքնապաշտպանութեան բնազդն է որ կը գործէ թէ՛ անհատին եւ թէ՛ հաւաքականութեան մէջ:

Փոքր թիւով պզտիկ ազգ մըն ենք, բայց տարածուածութեամբ՝ ընդարձակ: Մայր հայրենիքէն դուրս ցրուած ենք աշխարհի չորս կողմը օտարութեան մէջ, ուր մեզ պէտք եղած Հայ միջավայրը եւ Հայ մթնոլորտը չենք կրնար գտնել, ինչ որ մեծագոյն ազդակներն են ազգի մը գոյութիւնը պահպանող:

Իրապէս պէտք է մտահոգուինք եւ խորհինք թէ աշխարհի զանազան կողմերը ցրուած հայութիւնը ի՞նչ կը ներկայացնէ որպէս Հայ, բացի բազմահայրենիք գաղթահայութիւն մը ըլլալէ: Օտար երկիրներու մէջ ապրող Հայ գաղութները ստիպուած են իրենց բնակած երկիրներու պետական նկարագիրը որդեգրելու: Անտրամաբանական պիտի չըլլար եթէ ըսէինք թէ սփիւռք հայութիւնը ազգ մը չէ եւ կը ստիպուինք սրտցաւօրէն հաշտուիլ առօրեայ այն բիրտ իրականութեան հետ, որն է ՁՈՒԼՈՒՄԸ: Օրէ օր կը պակսի մեր բարոյական դիմադրական ոյժը եւ պիտի դառնանք, եթէ տակաւին չենք դարձած, մահամերձ ազգ մը եւ այդ պարագային մահը անխուսափելի է:

Այս վտանգը երեւակայական չէ, այլ իրական:

Հայ ազգը ունեցաւ վեցդարեան գերութեան շրջան մը, ներխուժեցին ցեղեր, ստեղծելով նոր պայմաններ եւ տարասեռ տարրեր եւ մենք կորսնցուցինք մեր աշխարհագրական դիմագիծը: Սակայն այս բոլորով հանդերձ հայը գիտցաւ մնալ իր ազգային ինքնագիտակցութեան եւ նկարագրին մէջ եւ ամենակարեւորը՝ պահեց իր ոգին:

Արդարեւ, հակառակ արտաքին սեղմումներու, հայը միշտ ալ իր ոգիէն քաղեց իր ներշնչումները: Տիրապետող բռնաւոր ուժեր կրցան հայուն մարմինը միայն խլել, բայց ոգին մնաց անխոցելի: Հայը միշտ ալ գործեց իր ստեղծագործ միտքով:

Խնդիր է սակայն, թէ օտար երկիրներու մէջ ցիր ու ցան եղած սփիւռքահայութիւնը ինչո՞վ պիտի կարենայ երաշխաւորել իր գոյութիւնը եւ պահել իր ազգային ինքնագիտակցութիւնը: Բազմաթիւ երկիրներու մէջ ունենալ լոկ բարոյական հայրենիք մը, ընտելանալով միանգամայն տեղական պայմաններուն, հազիւ թէ պիտի բաւէր որ հայրը կարենայ պահել իր ազգային գոյութիւնը՝ այն ալ այն երկիրներուն մէջ, ուր ընկերային եւ մարդկային ըմբռնումները ծերբազատուած են հին նախապաշարումներէ եւ ստեղծած են ողջամիտ ազատութիւն մը բոլորին համար:

Ցանկալի է, որ գէթ այս պայմաններուն մէջ հայը կարենայ օգտուիլ: Աւելի՛ն, ան պարտի իր ազգը ծանօթացնել օտարին, իր նկարագրի լաւագոյն գիծերուն մէջ, հայրենասիրական մաքուր եւ առողջ զգացումներէ եւ դատողութիւններէ տարուած:

Սփիւռքահայութիւնը պէտք է լծուի թէ՛ մշակութային, թէ՛ գրական, թէ՛ արուեստի, թէ՛ ազգային եւ թէ ամէն տեսակ այլ աշխատանքներու, կատարեալ անկեղծութեամբ եւ բոլոր ուժերու, արժէքներու համագործակցութեամբ:

Ձուլումի վտանգին առջեւ, մեր համագործակցութեամբ եւ եղբայրութեամբ հաւանաբար կարենանք շրջել այդ վտանգին բնոյթն ու անոր հետեւանքները: Այլեւս վերջնականապէս պէտք է դադրին երկրորդական վէճերն ու տարակարծութիւնները եւ մեր բովանդակ ուշադրութիւնը պէտք է կեդրոնանայ մեր ազգային գոյութեան հետ անմիջական կապ ունեցող կենսական հարցերու վրայ:

Մեր լեզուն, մեր պատմութիւնը, մեր գրականութիւնը, մեր կրօնքը պէտք է մնան անգին գանձ մեզ համար ու ինչպէս անցեալին, այսօր եւս պէտք է ըլլան ազդակները մեր գոյատեւման եւ յառաջդիմութեան, որքան ատեն որ ազատութիւն կը վայելենք մեր հայրենիքի եւ մեզ հիւրընկալող երկիրներուն մէջ: Այսպիսի յոյժ կենսական հարցերու շուրջ ոչ մէկ կուսակցութիւն, ոչ մէկ հատուած կրնայ իր անհասկացողութիւններով եւ հակամարտութիւններով արդարացնել ինքզինքը:

Մենք բոլորս նաւավարներ ենք:

Իւրաքանչիւր արուեստագէտ, գրող, կրօնաւոր կամ ազգային գործիչ՝ իր նաւուն նաւավարն է: Ինչպէս նաւավարները, նոյնպէս եւ նաւերն ու առագաստները անշուշտ թէ իրամէ կը տարբերին: Ինչ որ ալ ըլլայ սակայն, պէտք չէ ծիծաղիլ եւ արհամարհել դիմացինին նաւը թէ ան փոքր է եւ կամ հին, թէ իրը նոր է եւ մեծ, թէ անոր առագաստը կարկտան ունի եւ նեղ է, իսկ իրը՝ նոր եւայլն: Կարեւորը կայմն է եւ եթէ ուղիղ է ան, ուղիղ է նաեւ առագաստը ու նաւուն ճամբան եւ որ օր մը չէ օր մը, ուշ կամ կանուխ, իւրաքանչիւր նաւավար պիտի կրնայ իր նաւը նաւամատոյց հասցնել, եթէ, ինչպէս ըսինք, առագաստը ուղիղ է:

## ՍՓԻՒՌՔ–ՀԱՅԱՍՏԱՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ՝ ՈՒԱՇԻՆԿԹԸՆԻ ՄԷՋ

1

*Թիւն մը, մասնակցութեամբ ընկերներ՝ Տոքթ. Յարութիւն Սաղրեանի, Ռուբէն Աւշարեանի, Գաբրիէլ Մոլոյեանի եւ Վարդան Քէօրօղլեանի: Այս պատուիրակութեան կը միանար Ուաշինկթընի մէջ, Լուիզիանայէն, Պաթոն Ռուժի Ս.Դ.Հ.Կ.-ի Ժիրայր Մուրատ մասնաճիւղի ատենապետ, Ընկ. Վազգէն Գալթաքճեան: Հնչակեան պատուիրակութեան անդամներու ժողովին ներկայացուելէ ետք, Ընկ. Տոքթ. Յարութիւն Սաղրեան ընթերցեց այն գրութիւնը որ յատուկ սոյն նախապատրաստական ժողովին համար պատրաստուած էր, եւ որ կ'արտացոլացնէր Ս.Դ.Հ.Կ. Արեւմտեան Ամերիկայի Վարիչ Մարմնի կեցուածքը Համաժողովի օրակարգերու վերաբերեալ:*

*Սոյն ժողովին ներկայ էին Միացեալ Նահանգներու եւ Գանատայի տարբեր շրջաններէն ժամանած եւ շուրջ հարիւր պատուիրակներ:*

*Նախապատրաստական ժողովներու շարքին երկրորդն էր այս, առաջինը կայացած էր եւրոպական երկիրներու համար:*

*Յառաջիկայ ամիսներու նման ժողովներ նախատեսուած են Միջին Արեւելքի եւ Հարաւային Ամերիկայի երկիրներուն համար:*



## ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ ԼՈՆՏՈՆԻ ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ԹԱՆԳԱՐԱՆԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Այս օրերուն պաշտօնական այցելութեամբ Հայաստան կը գտնուին Բրիտանական Թանգարանի Արեւելեան բաժանմունքի տնօրէն՝ Տոքթ. Կթրաճաւ Չարօ եւ Թանգարանի պատասխանատու՝ Տոքթ. Վրէժ Ներսէսեան, որոնք տեղւոյն վրայ շփումներ կը հաստատեն պաշտօնական շրջանակներուն հետ:

Անոնք ընդունուեցան Հայաստանի Մշակոյթի եւ Մարզանքի նախարար՝ Ռոլանտ Շառոյեանի կողմէ: Հիւրերը յայտնեցին որ Բրիտանական Թանգարանի Արեւելեան բաժանմունքը մշակած է ծրագիր մը, ըստ որու, նախատեսուած է 2001-ին աննախադէպ ցուցահանդէս մը կազմակերպել Լոնտոնի Բրիտանական թանգարանի նորաբաց սրահին մէջ: Ցուցահանդէսի մասնակից 16 երկիրներ պիտի ներկայացնեն աշխարհի լաւագոյն թանգարաններու քրիստոնէութեան պատմութիւնը ցոլացնող թանգարանային նմոյշներ:

Ըստ նախագծին ցուցահանդէսին պիտի մասնակցի նաեւ Հայաստան, ներկայացնելով Մատենադարանի, Հայաստանի Պատմութեան եւ Էջմիածնի թանգարաններու հայոց քրիստոնէութեան պատմութիւնն ու մշակոյթը ցոլացնող նմոյշներ: Այս մեծ ցուցահանդէսը, որ ըստ էութեան նուիրուած պիտի ըլլայ Քրիստոնէութեան 1700ամեակին, գործել պիտի սկսի Փետրուար 2001ին եւ բաց պիտի մնայ մինչեւ Մայիս:

## ԵՐԿՈՒ ՀՆԱԳՈՅՆ ՑՈՒՑԱՆՄՈՅՇՆԵՐ ՅԱՅՏՆԱԲԵՐՈՒԵՑԱՆ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Հայաստանի Գիտութիւններու Ազգային Ակադեմիոյ (ԳԱԱ) «Գիտութիւն» թերթի աշխատակից Արամ Վարդանեանի անձնական հաւաքածոյին մէջ յայտնաբերուած են երկու նոր ցուցանմոյշներ: Անոնցմէ մէկը, հնագոյն կոթողներէն ուղղանկիւն քար մըն է, որ յայտնաբերուած է Ջաւախքի սահմանագլխուն, գիւղատնտեսական աշխատանքներու ժամանակ: Անոր վերի մասը կամարաձեւ է, որուն վրայ փորագրուած նշաններ կան: Ըստ ուսումնասիրութիւններուն, այս նշանները Ն.Ք. 2րդ հազարամեակի գծային գիրեր են, այսինքն՝ ունին մօտաւորապէս 4 հազար տարուան հնութիւն:

Երկրորդ ցուցանմոյշը 20 սանթիմեթր երկարութեամբ ձուկի կմախքի բրածոյ մըն է, որ դրոշմուած եւ հիանալիօրէն պահպանուած է ժայռի մը բեկորին վրայ: Ըստ ԳԱԱի երկրաբանութեան հիմնարկի ճշդումներուն, բրածոն մէկ միլիոն 800 հազար տարեկան է: Ուսումնասիրութիւններ կը կատարուին բրածոյին վրայ դրոշմուած ձուկի տեսակը ճշդելու համար:

## «ԿԱՅԾ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԱՊՐԻԼԵԱՆ ՀՍԿՈՒՄԸ

2

*նուագախումբը ու անոր երգիչ Լեւոն Պետրոսեան, որոնք ազգային-հայրենասիրական երգերով գագաթնակէտին հասցուցին ներկայ հանդիսականներու խանդավառութիւնը:*

*«Կայծ» Երիտասարդական Միութեան Ապրիլեան աւանդական այս հսկումը աւարտեցաւ Արեւմտեան Ամերիկայի Թեմի առաջնորդ՝ Վաչէ Արք. Յովսէփեանի Հայրական պատգամով ու աղօթքով:*

**ԹՂԹԱԿԻՑ**

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ ԵՒ «ԱՆԼՌԵԼԻ ԶԱՆԳԱԿԱՏՈՒՆ»Ի ՂՕՂԱՆՋԸ

2

Եկմալեանի «Ամէն Հայր Սուրբ»ը, ապա զանգակներու ղօղանջիւնի ընդմէջէն Սիլվա Պայրամեան ջերմ զգացումով կը սկսի պատմել Սողոմոն Սողոմոնեանի (Կոմիտասի) մուտքը Էջմիածին 1881 թուին, խոր տպաւորութիւն թողելով հանդիսականներուն մօտ:

Միւս կողմէ, բեմին մէջտեղէն, յատուկ ոճով եւ արոգանութեամբ կը շարունակէ նկարագրել զայն Նորա Քէօհնէլեան. «**Իսկ մանկան երգը... թափ առաւ գնաց: Բառերը եղուկ, իսկ ձայնը զուլալ**»: Երբ ան ապրումով կ'արտայայտուէր այդ աղփուն մանչուկին մասին, ահա բեմին առջեւ կ'երեւի փոքրիկն Ալիսիկ Մազլումեան եւ հոգեպարար «Սուրբ սուրբ»ը կը կատարէ պարզութեամբ: Մինչ այդ, այժմ բեմին առջեւ հանդէս եկած է Աւետիս Մովսէսեան եւ իր արտայայտչական ոճով կը յայտնէ կաթողիկոսին զգացումները հանդէպ այդ որբուկին:

Ուստի 12 տարի անցած էր, «**Եւ որտեղ երգը՝ այնտեղ էր հիմա եւ Կոմիտասը...**», ինքնուրոյն ոճով կ'արտայայտուէր Դաւիթ Զալեան՝ Կոմիտասը որպէս երգիչ, եւ կը վերջացնէր իր խօսքը «Հորովել» գեղջկական երգով, աշուղական թռիչք առնելով:

Երբ 1896 թուին Կոմիտաս Պեռլին մեկնած էր ուսանելու, բանաստեղծը կը յիշէր «**Կռունկ... խապրիկ մը չունի՞ս**». պանդուխտի հոգեհարազատ «Կռունկ»ը ներշնչանքով կը կատարէր համայնքիս ծանօթ մեներգիչներէն՝ Լիզա Քրէտեան:

Ասմունքողները հետզհետէ կը շարունակեն ալեկոծել ունկնդիրներուն երեւակայութիւնը, մինչ իր քաղցր ձայնով հմտօրէն կ'երգէր Սիլվա Թէրզիպաշեան սրտագրաւ «Ախ մարալ ջան»ը:

Դաշնակի ոգեւորիչ նազպարը «Շուշիկի»ն Իրինա Զալեան կը նուագէ հոգեզմայլ վայելք պարգեւելով բոլորին: Ս. Թէրզիպաշեան կրկին յառաջանալով, հիանալի մեկնաբանութեամբ, այս անգամ կը հրամցնէր «Աւէ Մարիա»ն: Ու «**Երբ տգիտութեան հազար դեսպաններ անվերջ, չորս կողմից հարուածում էին, խայթում**»՝ զուգերգով Սիլվա եւ Սեդա Ալեքսանեան իրենց հաղորդական ձայնով կ'երգէին «Էրւում եմ»: Սակայն երբ Կոմիտասին Էջմիածինէն հեռացուցած էին եւ տարած Պոլիս՝ խոր ապրումով Սիլվան կը կատարէր «Սարերի վրով» խորհրդաւոր երգը:

Թախիծը պատած էր ամբողջ հանդիսասրահը: Ներկաները լարուած՝ կը հետեւէին ասմունքողներուն արտասանութիւններուն, որոնք մէկը միւսին գերազանցելով, խոր հասկացողութեամբ կը թուէին Կոմիտասի կրած տուայտանքները: Կրկին դաշնակի նուագածութիւն՝ Բաբաջանեանի «Էլէգիա»ն է, որ հմտութեամբ կը նուագէր Իրինան: Նուագածութեան կը յաջորդէր «Ատանայի ողբը» որ կը կատարէր թախծոտ ձայնով Ս. Ալեքսանեան, խռովելով ներկայ հասարակութեան զգացումները: Եւ ահա Լիզա Քրէտեան առջեւ գալով, արձագանգ կու տար բանաստեղծին խօսքերուն. «Գարուն ա, ձիւն ա արել» մրմնջելով ունկնդիրները: Միւս կողմէ Սիլվա Թէրզիպաշեան վերացած է ու ձայնի եւ յուզումի տիրապետութեամբ կը մեկնաբանէ անզուգական «Սլէ եամամ»:

Սրտայոյզ աղօթք, «Տէր Ողորմեա»՝ Լիզան իր մատչելի հնչերանգով եւ Սերճ Սէտէֆճեան իր գրաւիչ ձայնով կը յուզեն ներկայ հանդիսականները: Խօսքը Վանի մասին է. եւ ուստի կամաց-կամաց առջեւ կը յառաջանան Լիզա, Սիլվա եւ Սեդա ու ազգային շունչով տոգորուած, կը յաջողին կատարել «Վանի ողբը»՝ «Մի գեղեցիկ պարզ գիշեր էր...», ամենայն զգացումով:

Իրաւամբ, ասմունքողները յաջողած էին յուզումնախառն իրենց արտայայտութիւններով, թափանցել իմաստուն Պ. Սեւակի փիլիսոփայական մտքին: Մինչ Կոմիտաս Վարդապետ ուղարկուած է Փարիզ: «**Բայց խեղճ Փարիզն ինչ դեղ ճարի, ինչպէս փրկի քո հանճարին...**» Քանզի՝ «**Բնաջնջել մի ո՛ղջ անտառ, - եւ չխենթանալ չէ՛ր կարելի**»: Քսան տարի այդպէս մնաց...:

Սակայն կայ դեռ հայութիւն, «**Որ յարութիւն առաւ...**», «Հայոց տառեր»՝ անմեղօրէն կը գեղգեղեն փոքրիկներ՝ Անայիս Միքայէլեան եւ Լորի Գազանճեան, ոգեւորելով ներկաները:

Եւ վերջապէս, բոլորիս սիրելի Կոմիտաս Վարդապե՛տ. «**Դու մեր մշտահունչ ու մշտարթուն անլռելի զանգակատուն**»: Բոլոր մասնակիցները հաւաքուած են ու խմբովին ձայն կու տան Նորա Քէօհնէլեանի եւ Սիլվա Թէրզիպաշեանի գեղեցիկ ձայներուն, ճարտարօրէն երգելով Ա. Սմբատեանի՝ «Հայաստան» ազգագրական երգը:

Բուռն ծափերու տակ վերջ գտաւ սոյն բացառիկ գրական - երաժշտական գործը, որուն համար կը շնորհաւորենք բոլորին անխտիր, յատկապէս անոր գեղարուեստական ղեկավար, տաղանդաւոր Դոցենտ՝ Դաւիթ Զալեանին:

Յուշահանդէսը իր լրումին հասաւ Սրբազան Հօր փակման շնորհակալական խօսքերով:

Ներկաները մեկնեցան իրենց նահատակներուն յիշատակը յարգած ըլլալու ներքին գոհունակութեամբ եւ «Անլռելի զանգակատան» ղօղանջիւնի արձագանգով:

## Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ

Կիրակի 25 Ապրիլի առաւօտեան, ի ներկայութեան հայրենակիցներու, Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր տաճարին մէջ տեղի ունեցաւ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն: Պատարագիչն էր Եգիպտոսի հայո՛ց բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, որ աւուր պատշաճի քարոզ մը խօսեցաւ:

Աւարտին, հոգեհանգստեան արարողութիւն կատարուեցաւ մարտիրոսացած նահատակներու հոգւոյն, եկեղեցւոյ Մեծ Եղեռնի յիշատակարան մատուռին մէջ: Արարողութեան մասնակցեցան Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեան, ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան, Թեմական եւ Քաղաքական ժողովներու ատենապետները եւ համայնքի ներկայացուցչական անձնաւորութիւններ:

Ապա դպրաց դասի թափօրով բոլորը ուղղուեցան եկեղեցւոյ շրջափակին մէջ գտնուող Մեծ Եղեռնի նահատակներու ի յիշատակ յուշակոթողին, եւ Մայր հայրենիքէն բերուած Խաչքարին առջեւ ծաղկեպսակներ զետեղուեցան եւ Հոգւոց արտասանուեցաւ:

Ապա Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ հաւատացեալներէն շատեր, ներկայ գտնուեցան ընդունելութեան մը, ուր Առաջնորդ Սրբազան Հայրը Տէրունական աղօթք արտասանեց: Ապա խօսք առին ՀՀ յարգելի դեսպանը եւ Թեմական ժողովի փոխ - ատենապետ Պր. Կարպիս Եազըճեանը, շեշտը դնելով հայ ժողովուրդի գոյատեւման եւ անսասանութեան վրայ:

**ԱՊԱՀՈՒՆԻ**

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## Մ Ա Ր Զ Ա Կ Ա Ն

**ՖՈՒԹՊՈԼ**

### Հ.Մ.Մ. ՎԱՆԻԿ ԴԱՐՁԱՒ ԲԱԺԱԿԱԿԻՐ

*Կիրակի 4 Ապրիլին, Լիբանանի Հ.Մ.Մ. Վանիկ դարձաւ, Քարմէլ մարզական ակումբի կազմակերպած մրցաշարքին բաժակակիրը: Ութ երիտասարդ խումբեր, որոնց շարքին էր, Հայ Մարմնամարզական Միութեան (Հ.Մ.Մ.) անունը եւ դրօշը միշտ բարձր պահող անյաղթ Վանիկ խումբը, չորս փայլուն յաղթանակներ արձանագրելէ ետք, հասաւ աւարտական հանգրուան, մրցակից ունենալով Նուժում Մուսթաքպալ խումբը:*

*Այդ օրը տարբեր էր Հ.Մ.Մ. Վանիկին համար: Բոլոր տղաքը կազմ ու պատրաստ վճռական մրցումին, իջան դաշտ որպէս հաւաքական խումբ, մէկ անձի պէս: Մրցումը շարունակուեցաւ Հ.Մ.Մ. Վանիկի 11ի աննկուն կամքով, որոնք ֆութպոլիստ ըլլալու արժանիքները չէ որ ունին միայն, այլ ունին այն բարձր արժանիքը, ըլլալով միութենական, ըլլալով գաղափարապաշտ եւ հաւատարիմ ժառանգորդները կարմիր-ճերմակ դրօշին: Մրցումը վերջ գտաւ 1-1 արդիւնքով, եւ յաղթանակը վստահուեցաւ բերդապահներուն, ուր տեղի պիտի ունենար 11 մեթրանոց հարուածի իրաւունքները:*

*Խմբապետ Լեւոն նշանակեց մրցումին 6րդ փենալթին ու կարգը Աւոյին էր եւ յաղթանակը իրեն վստահուած՝ Աւօ պատրաստ էր զսպելու մրցակիցին հարուածը. ան ինքնավստահ կանգնեցաւ բերդին առաջ եւ վարպետօրէն, բռունցքի ուժգին հարուածով մը հեռացուց մրցակիցին 10 մեթրանոց հարուածի իրաւունքը՝ յաղթանակը նուիրելով Հ.Մ.Մ.ին, եւ արդարօրէն արժանանալով բաժակին:*

*Խմբապետ Լեւոն Ղազարեան ստանալէ ետք, մրցաշարքի կազմակերպիչ խումբի ատենապետէն արժանացած առաջին դիրքը յատկանշող բաժակը, վերադարձան Հ.Մ.Մ.ի մայր ակումբ՝ Խալիլ Պատտուր, ուր տօնակատարեցին Հ.Մ.Մ. Վանիկ անյաղթ խումբի մեծ յաղթանակը, խորին շնորհակալութիւն յայտնելով ընկ. Կարպիս Ռրդեանին, որ իր գնահատելի աշխատանքի իրագործումով նուաճեց թիրախ մը եւս, որու անշեղ նպատակը կը մնայ միայն մարզական գոյատեւումը:*

***ԹՂԹԱԿԻՑ***

---

## ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Կիրակի, 9 Մայիս 1999, երեկոյեան ժամը 8.30-ին

**«Պըլըքտանեան» Յանդիսասրահին մէջ**

**ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ՀԱՄԵՐԳ**

Կը մասնակցին

**«ԶՈՒԱՐԹՆՈՑ» ՔԱՌԱՁԱՅՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ԵՒ ՄԵՆԱԿԱՏԱՐՆԵՐ**

Հովանաւորութեամբ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց

Նախագահութեամբ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿ. ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**

Ատենապետ Գահիրէի Պատկ. Թեմական Ժողովի

Գեղարուեստական Ղեկավար և Խմբավար

**ԴՈՑԵՆՏ ԴԱՒԻԹ ՋԱԼԵԱՆ**

Նուագակցող

**ԻՐԻՆԱ ՋԱԼԵԱՆ**

Սիրալիր հրաւէր բոլորին

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Կիրակի 23 Մայիս 1999 կ.ե. Ժամը 7-ին

**ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ**

Հովանաւորութեամբ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Հայոց Եգիպտոսի

Նախագահութեամբ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՐԹԻՒՐ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԻ**

Տեղի Պիտի Ունենայ Նաեւ

**ԱՇԱԿԵՐՏԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ**

Գծագրութեանց Եւ Ձեռային Աշխատանքներու

Սիրելի հրաւէր բոլորին

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Գահիրէի Քաղաքական Ժողովը, գործադրելով, «Վ. Զագրճեան» հայերէն եւ հայագիտական նիւթերու ուսուցչաց ֆոնտին յատուկ կանոնագրութեան տրամադրութիւնները, որոշեց 1998 Հոկտ. Դեկտ. եռամսեայ շրջանին համար, Գալուստեան, Նուպարեան եւ Պօղոսեան վարժարաններէն ներս այս նիւթերը դասաւանդող ուսուցիչ-ուսուցչուհիներուն եգ. ոսկի 4026 քաջալերական յատկացում կատարել Գշ. 27 Ապրիլ 1999-էն սկսեալ, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Առաջնորդարաններուն միջոցաւ:*

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

---

## ՊՐ. ՀԷՐԻ ԳԱԶԱՆՃԵԱՆ ԿՐԿԻՆ ՊԱՏՆԷՇԻ ՎՐԱՅ



Ուրախութեամբ տեղեկացանք թէ նշանառութեան (տուփէ արձակուած աղաւնի) Եգիպտոսի ազատ ախոյենութեան մրցումներուն, մեր բարեկամներէն՝ Պր. Հէրի Գազանճեան առաջնութեան տիտղոսին արժանացած է, թէ՛ խումբերուն եւ թէ՛ անհատական խաղերուն ու տիրացած մրցանակներուն:

Ան արդիւնք ձեռք բերած է 20-20 եւ 19-20 կէտեր եւ անգամ մը համար եւս իր անունը արձանագրած Եգիպտոսի նշանառութեան ֆետերասիոնի պատուոյ յուշատախտակին վրայ:

Ջերմօրէն կը շնորհաւորենք զինք եւ իր տիկնոջ՝ Ալինին նաեւ ծնողքին՝ համայնքիս ծանօթ ազգայիններէն՝ Տէր եւ Տիկին Վարուժան եւ Սօնա Գազանճեաններուն, մաղթելով նորանոր յաջողութիւններ պատուաբեր մարզիկ Հէրի Գազանճեանին:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրելի հօր եւ մեծհօր Ողբ. Զաւէն Պալաեանի մահուան Ա. տարելիցին առթիւ, անոր քաղցր յիշատակին Տէր եւ Տիկին Դանիէլ Ճոճոեան եւ զաւակները Լիւսի եւ Կարէն կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հայկական Ընթերցասրահին | 50 |
| «Ջահակիր»ին | 50 |
| «Արեւ»ին | 25 |
| «Յուսաբեր»ին | 25 |

(Ստանալ «Ջահակիր»էն)

Ողբ. Գէորգ Թէրզեանի (Երեւան) մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան, ընկեր Վրէժ Սէֆէրեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Հայկական Ընթերցասրահին | 25 |
| «Ջահակիր»ին | 25 |

---

### Ուխտագնացութիւն Դէպի Տէր Զօր Եւ Մարգադէ

1

*ներ է ունեցել Տէր Զօրի նահանգապետ Սալահ Իպրահիմ Քաննաճի եւ «Պաաս» կուսակցութեան Տէր Զօրի մասնաճիւղի գլխաւոր քարտուղար Ասաատ Իսայի հետ:*

*Հանդիպումների ընթացքում ընդգծուել է, որ Տէր Զօրը եւ Մարգադէն ոչ միայն մահուան եւ սարսափի պատկերներ են յիշեցնում հայ ժողովրդին, այլեւ երախտագիտութեան զգացմունք են առաջացնում հազարաւոր մարդկանց ոչնչացումից փրկած արաբ բարեկամ ժողովրդի նկատմամբ:*

*Քննարկուել են նաեւ Տէր Զօրի նահանգի եւ Հայաստանի մարզերից որեւէ մէկի համագործակցութեան հնարաւորութիւնը, ինչպէս նաեւ նահանգի Հայաստանի հետ տնտեսական յարաբերութիւնների շրջանակներում ընդգրկուելու հեռանկարները:*

*Սուրիացի պաշտօնեաները հանդիպումներում ընդգծել են հայ-սուրիական ջերմ յարաբերութիւնները, Սուրիայում հայ համայնքի առանձնայատուկ դերը: Այնուհետեւ ուխտագնացներն ուղեւորուել են Մարգադէ, որտեղ վերջերս հողափորման աշխատանքների ընթացքում յայտնաբերել են եղեռնի զոհերի բազմաթիւ աճիւններ:*

---

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Լիւսի Պալաեան (Մոնթրէալ), Տէր եւ Տիկին Դանիէլ Ճոճոեան եւ զաւակները՝ Կարէն եւ Լիւսի, Տէր եւ Տիկին Վահէ Պալաեան եւ զաւակը՝ Վաչէ (Մոնթրէալ), Տիկին Ժագլին Պալաեան (Մոնթրէալ), Տիկին Անոյշ Պալաեան, Տէր եւ Տիկին Շանթ Պալաեան եւ զաւակները՝ (Մոնթրէալ), Տիկին Մարօ Պալաեան եւ զաւակները (Մոնթրէալ) , Տէր եւ Տիկին Թագւոր Արապեան եւ զաւակները (Լոս Անճելըս), Տէր եւ Տիկին Մարտիկ Պալաեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Վահէ Վարժապետեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Վահան Գազանճեան եւ զաւակը (Մոնթրէալ), Տէր եւ Տիկին Անտրէ Հապիպ եւ դուստրը (Մոնթրէալ), ինչպէս նաեւ Ճոճոեան, Շահպենտէրեան, Հապէշեան, Գիրոյօս, Չիքճեան, եւ Գազանճեան ընտանիքները եւ համայն սգակիր պարագաները կը ծանուցանեն, թէ Կիրակի 16 Մայիս 1999-ի առաւօտեան, Աղեքսանդրիոյ Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մէջ, յաւարտ Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, մեծհօր, հօրեղբօր եւ ազգականին Ողբ.՝

**ԶԱՒԷՆ Մ. ՊԱԼԱԵԱՆԻ**

մահուան Ա. տարելիցին առթիւ:

Ողբացեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

---

**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԻՒՆ ԵՒ ԳԱՀԻՐԷԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ**

Չորեքշաբթի, 19 Մայիս 1999, երեկոյեան ժամը 7-ին

**ԳԱՀԻՐԷԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ORIENTAL HALL-Ի ՄԷՋ**

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ

**ՈՒԻԼԻԸՄ ՍԱՐՈՅԵԱՆ**

**ՄԱՐԴԸ, ԳՐՈՂԸ**

Աշխարհահռչակ հայ գրողի կեանքին և գործերուն մասին պատրաստուած մէկ ժամ տեւող վաւերագրական բացառիկ ֆիլմը

**ՀԱՅԵՐԷՆՈՎ ԵՆԹԱԽՈՐԱԳՐՈՒԱԾ**

Ֆիլմը արժանացած է վեց մրցանակներու, Միջազգային Վաւերագրական Ֆիլմերու Փառատօններուն, որոնցմէ մին Ոսկի Մրցանակը՝ որպէս լաւագոյն վաւերագրական ֆիլմ

Ֆիլմի Խօսնակ՝ դերասան

**ՄԱՅՔ ՔԱՆՆԸՐԶ (Mannix՝ Գրիգոր Օհանեան)**

Գրող, Բեմադրող և Արտադրող

**ՓՈԼ ԳԱԼԻՆԵԱՆ**

Ներկայ պիտի ըլլայ, ցուցադրութենէն ետք պատասխանելու ժողովուրդին հարցումներուն

*ԾԱՆՕԹ-Փափաքողները կրնան գնել մեծ վարպետին յիշատակին նուիրուած Սովետական եւ Միացեալ Նահանգներու դրոշմաթուղթերը*

Մուտքը Ազատ

Սիրալիր հրաւէր հայ հասարակութեան

---

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ**

*1999թ. Մայիսի 30-ին տեղի են ունենալու Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողովի ընտրութիւնները:*

*Հայաստանի Հանրապետութեան ընտրական օրէնսգրքի համաձայն արտասահմանում բնակուող կամ գտնուող ընտրական իրաւունք ունեցող ՀՀ քաղաքացիները կարող են մասնակցել համամասնական կարգով անցկացուող ընտրութիւններին:*

*Այս կապակցութեամբ ընտրական տեղամաս է կազմաւորուած Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնում: Քուէարկութիւնն անց է կացուելու Մայիսի 30-ին առաւօտեան ժամը 8:00-ից մինչեւ երեկոյեան ժամը 8:00-ը:*

*Քուէարկութեանը մասնակցելու իրաւունք ունեն դեսպանութիւնում հաշուառման կանգնած ընտրական իրաւունք ունեցող ՀՀ քաղաքացիները:*

*ՀՀ այն քաղաքացիները, ովքեր գտնւում են Եգիպտոսում եւ մինչեւ օրս հաշուառման չեն կանգնել դեսպանութիւնում, կարող են մինչեւ Մայիսի 25-ը ներկայանալ դեսպանութիւն հաշուառման կանգնելու համար: Հաշուառումը կատարւում է անվճար:*

*Դեսպանութեան հասցէն է՝ 20, Մոհամմէտ Մազհար փողոց, Զամալէք, Գահիրէ:*

*Լրացուցիչ տեղեկութիւնների համար զանգահարել 342-41-57, 342-41-59:*

**ԵԳԻՊՏՈՍԻ ԱՐԱԲԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆՈՒՄ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

---



دار شركة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 3914908, Fax: (202)4530327
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1403 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 20 ՄԱՅԻՍ 1999 ՀԱՏԸ ՃԵՌՔԷ 50 Եգ. Դիկ. عدد رقم ١٤٠٣ — الخميس ٢٠ مايو ١٩٩٩


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ**

## ՍԱՐԴԱՐԱՊԱՏԻ ՍԽՐԱՆՔԸ՝ ՆՈՐ ՅԱՂԹԱՆԱԿՆԵՐՈՒ ԵՐԱՇԽԻՔԸ

*Սարդարապատի հերոսամարտը մեր պատմութեան նոր Աւարայրն է: Մեր գոյատեւման գրաւականը եւ անկախ Հայաստանին հիմնաքարը:*

*Արդարեւ, հայ ժողովուրդը վճռած էր գոյատեւել իր պապենական հողին վրայ: Եւ արեւելահայութիւնը ի տես իր եղբայրներուն կորստեան եւ կոտորածին, ունէր յստակ դիրքորոշում՝ չզիջիլ հայրենի հողէն թիզ մը անգամ: Ան յաջողեցաւ նորագոյն հայ պատմութեան կերտել պանծալի մէկ էջը եւ ծնունդ տալ նոր Հայաստանի, անկախ հանրապետութեամբ մարմնաւորուած:*

*Օսմանեան բանակը որ 1914-1918 կրած էր զանազան պարտութիւններ տարբեր վայրերու մէջ, կորսնցուցած իր տարածքներուն մեծ մասը, իր պարտութիւնները կ'ուզէր յաղթանակի վերածել Արեւելեան Հայաստանի մէջ՝ հայ ժողովուրդին հաշւոյն: Ան ամբողջացնելէ ետք Արեւմըտեան Հայաստանի դատարկումը իր բնիկ ժողովուրդէն՝ հայերէն, նոր եռանդով, իր զօրքերը կ'ուղարկէր Արեւելեան Հայաստան՝ իր լրումին հասցնելու համար հայաջինջ ծրագիրը: Ուրեմն թրքական բանակը, զօրավար Քեազիմ Քարապաքիրի գլխաւորութեամբ կը ներխուժէր Արաքսի շրջանը այն յոյսով, որ դիւրութեամբ կարելի պիտի ըլլայ վերացնել արեւելահայութիւնը եւ այսպէսով միանալ Պաքուի թուրք - թաթար արիւնակիցներուն: Թրքական ներխուժումը Անդրկովկաս ուրիշ նպատակ չունէր, եթէ ոչ՝ Արեւելեան Հայաստանը միացնել թուրք - թաթարական մեծ կայսրութեան:*

*Սակայն այդ դաւը ձախողութեան կը մատնուէր Պաշ - Ապարանի, Ղարաքիլիսայի եւ Սարդարապատի մէջ՝ հայ ժողովուրդի միասնական ջանքերով: 1918-ի Մայիս 22-26-ին կատաղի մարտեր տեղի կ'ունենային այդ շրջաններուն մէջ: Համայն հայութիւնը միաբռունցք եւ միացեալ պայքարով իր վճռական ու պատմական պատասխանը կու տար ցեղասպանին: Այդ ճակատագրական պահուն, մէկ խրամատի ետին կը մարտընչէին տարբեր սեռի ու տարիքի հայորդիներ, տարբեր կազմակերպութեանց պատկանող հերոսներ. մէկ պատնէշի ետին էին, նոյնիսկ հայութեան բարեկամ ազգերու ներկայացուցիչներ՝ ինչպէս ռուսեր, եզիտիներ եւ ասորիներ: Հայ ժողովուրդը իր գոյութեան եւ հողին համար կը պայքարէր բոլոր հնարաւոր եւ անհնար միջոցներով: Կամաւորներ, ժողովուրդի տարբեր խաւեր, կիներ ու մանուկներ, ծերունիներ թէ մտաւորականներ, գրողներ թէ եկեղեցականներ միասնաբար կ'առաջնորդուէին Սարդարապատ «ոչ» ըսելու քեմալական ուժերուն եւ խորտակելու յաւակնոտ թրքական զօրքերը: Միահամուռ ջանքերով՝ Ա. Մանուկեանի, զօրավարներ՝ Մ. Սիլիկեանի, Դ. Փիրումեանի, Թ. Նազարբէկեանի եւ այլ գնդապետներու մաքառումով ինչպէս նաեւ Սարդարապատի Ղեւոնդ Երէցը՝ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոս Գարեգին Եպիսկոպոս Յովսէփեանցի քաջարիութեամբ. եւ ինչպէս չյիշենք սոյն ճակատամարտին իր անհրաժեշտ ներդրումը ունեցող Մշեցի Պանդուխտի ղեկավարած Հընչակեան ջոկատը, որ կարողացաւ օրհասական մէկ պահուն հարուածել թրքական զօրքին թիկունքէն, հարկադրելով ներխուժող թշնամիին հեռանալ ճակատամարտէն: Եւ ահա Մայիս 26-ին թրքական զօրքը ջախջախիչ պարտութենէ ետք, կը հեռանար մարտադաշտէն, Արեւելեան Հայաստանի տարածքը թողելով իր իսկական իրաւատիրոջ՝ Հայ ժողովուրդին:*

*Սարդարապատի հերոսամարտը հայութեան համար բացի ռազմականքաղաքական նշանակութենէ, ունի նաեւ ուսանելի կէտեր: Այդ կէտերը առ այսօր կը մնան այժմէական Հայաստանէն մինչեւ Արցախ եւ Սփիւռք: Հետեւաբար հայ ժողովուրդի պատմութեան մէջ նոր էջ մը բացուեցաւ Հայկական պետականութեան հռչակումով՝ Մայիս 28-ին, որմէ զրկուած էր 1375 տարիներէ ի վեր: Այդ օր՝ հայ ազգը ապացուցեց աշխարհին թէ Հայաստանը չի ջնջուիր քարտէզին վրայէն: Ան եղած է վկայութիւնը լինելիութեան եւ անմահութեան:*

*Սարդարապատէն ետք հայկական պետականութիւնը ունեցաւ երեք հանգրուաններ. փոխուեցան իշխանաւորներ եւ իշխանութիւններ, բայց հողն ու պետականութիւնը մնացին, դրօշն ու բանակը մնացին, որովհետեւ անոնք յաւիտենական ու նուիրական արժէքներ են:*

*Սարդարապատի հերոսամարտը արիւնալի բախումի կողքին, է նաեւ սխրանք մը բոլոր ժամանակներու համար, ազգային - քաղաքական մարտահրաւէրներու դիմաց: Արդ, ան կը շարունակուի այսօր Արցախի մէջ, արտերկրի զանազան շրջաններու մէջ եւ ապագային պիտի շարունակուի մարտադաշտերու վրայ: Անոր հիմնական ուսանելի խորհուրդներն են. միասնականութիւն՝ ազգին սպառնացող օրհասական պահերուն, պայքար՝ մինչեւ նահատակութիւն յանուն հողի պահպանման եւ հաւատք ու կամք՝ յաղթանակի նկատմամբ, անկախ ու ազատ հայրենիքի հանդէպ:*

*Նոր Սարդարապատներ մղելու մեր երթին մէջ, միշտ հաւատարիմ պիտի մնանք Սարդարապատի սխրանքին եւ կառչած անոր ուսանելի կէտերուն ու խորհուրդին: Աւարայրէն Սարդարապատ եւ Արցախ շարունակուող մեր ազգային գոյատեւման ուղին պիտի վճռուի միաբռունցք ոգիով:*

*Բիւր յարգա՛նք բոլոր անոնց, որոնք ինկան Սարդարապատի հերոսական ճակատամարտին:*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## «ՄԻԱՍՆՈՒԹԻՒՆ» ԴԱՇԻՆՔԸ ՊԱՏՐԱՍՏ Է ՍՏԱՆՁՆԵԼՈՒ ԵՐԿՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԻՒՆԸ

### ՎԵՐՋԻՆ ՀԱՐՑԱԽՈՅԶԵՐՈՒ ՀԱՄԱՁԱՅՆ «ՄԻԱՍՆՈՒԹԻՒՆ»Ը ԱՌԱՋԻՆ ԴԻՐՔԻ ՎՐԱՅ ԿՈՄԿՈՒՍԸ, ԱԺՄ-Ն ԵՒ «ՕՐԻՆԱՑ ԵՐԿԻՐ»Ը ԿԸ ՅԱՋՈՐԴԵՆ ԻՐԵՆ



Կարէն Դեմիրճեան



Վազգէն Սարգսեան

*«Միասնութիւն» դաշինքը կը շարունակէ իր նախընտրական քարոզարշաւը՝ այցելելով Հայաստանի տարբեր մարզերը եւ ամէնուրեք Դաշինքի ղեկավարներ՝ Կարէն Դեմիրճեան եւ Վազգէն Սարգսեան կ'արժանանան ժողովրդային խանդավառ ընդունելութեան:*

*Մայիս 15-ին, այցելելով Արագածոտնի մարզի չուրջ երկու տասնեակ բնակավայրեր, Կարէն Դեմիրճեան ու Վազգէն Սարգսեան ներկայացուցին «Միասնութիւն» դաշինքի նախընտրական ծրագիրը:*

*Կ. Դեմիրճեան, տնտեսութեան մէջ ընդհանրապէս նշելով պետութեան կարգաւորիչ դերի անհրաժեշտութիւնը, մասնաւորապէս գիւղատնտեսութեան ոլորտէն ներս կարեւոր կը նկատէ մատչելի վարկերու ձեւով պետական օժանդակութիւնը:*

*Վ. Սարգսեանի գնահատմամբ, անցած տարիներու ընթացքին Հայաստանի վարած տնտեսական քաղաքականութիւնը յանգեցուցած է ժողովուրդի աչքին անկախութեան, ազգային ազատագրական պայքարի, ազատական գաղափարախօսութեան, շուկայական յարաբերութիւններու վարկաբեկման:*

*Դաշինքը կարեւոր կը նկատէ նաեւ երկրի համար քաղաքական պատասխանատուութիւնը: Այդ առումով Դեմիրճեան ու Սարգսեան կ'ընդգծեն խորհրդարանէն ներս քաղաքական մեծամասնութեան առկայութեան նշանակութիւնը: Անոնց գնահատմամբ, մինչեւ այժմ խորհրդարանը ու կառավարութիւնը գործած են իրարմէ անկախ եւ կառավարութիւնը հաշուետու չէ եղած Ազգային Ժողովին: «Մենք պատրաստ ենք մեր վրայ քաղաքական պատասխանատուութիւն վերցնել», կը յայտարարեն անոնք վերջին օրերու ընտրական հաւաքներու ընթացքին:*

*Կարէն Դեմիրճեան եւ Վազգէն Սարգսեան, որպէս Ազգային Ժողովէն ներս դաշինքի գործունէութեան որպէս առաջին քայլ, կը յիշեն պատգամաւորական անձեռնմխելիութեան վերացման եւ պատգամաւորի ետ կանչման մասին օրէնքներու ընդունումը:*

*Կարէն Դեմիրճեան կը խոստանայ, որ մէկ տարի ետք, 2000 Թուականի Յունիսին, դաշինքի կողմէ ընտրուած պատգամաւորները մէկ տարուայ իրենց գործունէութեան մասին հաշուետուութիւն կը ներկայացնեն ընտրողներուն:*

2

## ՄԱՅԻՍԻՆ ԱՐՑԱԽԻ ՀԱՐՑՈՎ ՈՒՆԿՆԴՐՈՒԹԻՒՆ՝ ՍԹՐԱԶՊՈՒՐԿԻ ՄԷՋ

Սթրազպուրկի մէջ, 25 Մայիսին, տեղի պիտի ունենայ Արցախի հակամարտութեան մասին ունկնդրութիւն մը, Եւրոխորհուրդի քաղաքական յանձնախումբի նիստին: Այդ օր, ելոյթ պիտի ունենայ ատրպէյճանական կողմը: Հայկական կողմի տեսակէտները արդէն իսկ փոխանցուած էին անցեալ Դեկտեմբերի ունկնդրութիւններուն: Այս նիստին պիտի մասնակցին Ատրպէյճանի խորհրդարանի ղեկավարութիւնը, պատգամաւորներ եւ Ղարաբաղի «ատրպէյճանական համայնքի» ներկայացուցիչներ:

## ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ ԱՊԱՀՈՎԵԼՈՒ ՅՈՅՍԵՐԸ ՏԱԿԱՒ ԿԸ ՄԱՐԻՆ

### Արեւելեան Թեմի Առաջնորդարանի «Միութեան Յանձնաժողովը» Յուսահատեցաւ Ու Հրաժարեցաւ

Անցեալ շաբաթ , երբ Հայաստանեայց Առաքելական Եկեղեցիի ապագայով հետաքրքրուած բոլոր հայերու ուշադրութիւնը ուղղուած է դէպի Մայր Աթոռ Ս. Էջմիածին, ուր Հոգեւոր Գերագոյն Խորհուրդը կը բանար իր նիստը, Ամերիկայի Արեւելեան Թեմի Առաջնորդարանէն ստացուած երկար հաղորդագրութեամբ մը, խոր ցաւով տեղեկացանք թէ իր հրաժարականը տուած է Ամերիկայի Հայոց Արեւելեան Թեմի Առաջնորդարանի անունով գործող «Միութեան Յանձնախումբը»:

Այս միութիւնը տասնամեակներէ ի վեր ջանք կը վատնէր, այսպէս կոչուած, Էջմիածնական ու Անթիլիասական թեմերու միջեւ ճակատումը հարթելու ու երկու եկեղեցիները իրարու միացնելու, միասնութիւն ստեղծելու ցանկալի նպատակով: Յանձնախումբը, ըստ մեզի հասած հաղորդագրութեան, կը հրաժարի, որովհետեւ այլեւս յուսահատած է Անթիլիասական Թեմի Առաջնորդարանի կողմէ ցոյց տրուած անտարբերութենէն:

## ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆԻ ԳԼԽԱՒՈՐԱԾ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ Կ'ԱՅՑԵԼԷ ԼԻԲԱՆԱՆ

*Մայիսի 19-21-ը կը կայանայ ՀՀ արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանի ղեկավարած պատուիրակութեան այցը Լիբանան:*

*ՀՀ ԱԳՆ հասարակայնութեան հետ յարաբերութիւններու վարչութեան հաղորդագրութեան համաձայն, այցելութեան առաջին օրը տեղի է ունեցել խորհրդակցութիւն Հայաստան-Սփիւռք փոխյարաբերութիւններու հիմնահարցերուն նուիրուած համահայկական խորհրդաժողովի նախապատրաստական աշխատանքների շրջանակներում, որուն կը մասնակցին Միջին Արեւելքում հայ համայնքների ներկայացուցիչները:*

*Այսօր, Մայիսի 20-ին նախարար Օսկանեանը հանդիպումներ կ'ունենայ Լիբանանի նախագահ Էմիլ Լահուտի, վարչապետ, արտգործնախարար եւ գաղթականների հարցերով նախարար Սելիմ Հոսսի եւ խորհրդարանի նախագահ Նապիհ Պըրրիի հետ:*

*Առ ի տեղեկութիւն՝ Եգիպտոսի համայնքը եւս իր մասնակցութիւնը բերած է նախապատրաստական աշխատանքներուն, եւ վեց ազգայիններ, տարբեր միութիւններ ներկայացնելով, ներկայ գտնուած են սոյն խորհրդաժողովին:*

## ԱՏՐՊԷՅՃԱՆ ԿԸ ՄԵՂԱԴՐԷ ՉԻՆԱՍՏԱՆԸ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻՆ ԶԷՆՔ ՄԱՏԱԿԱՐԱՐԵԼՈՒ ՄԷՋ

*Ֆրանսական մամլոյ գործակալութիւնը Մայիս 18-ին Պաքուէն կը հաղորդէ, որ Ատրպէյճան պաշտօնական բողոք ներկայացուցած է Չինաստանի կառավարութեան, մեղադրելով զինք Հայաստանին զէնք մատակարարելու մէջ՝ Կասպիական քարիւղի հոսքը խանգարելու նպատակով:*

*Ատրպէյճանի Արտաքին գործոց նախարար Թոֆիկ Զուլֆուքարով բողոքի գիրը յանձնած է Պաքուի մօտ Չինաստանի դիւանա-*

4

**ԳԱՀԻՐԷ**

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

Այսօր, 20 Մայիսի առաւօտեան, հանդէսը ունեցանք ընդունելու օրերս Միացեալ Նահանգներէն ժամանած արուեստագէտ բեմադրիչ Փոլ Գալինեանը, իր տիկնոջ՝ Արաքսիի հետ:

Յարգելի արուեստագէտը Եգիպտոս ժամանած է հիւրը ըլլալով Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.-ի վարչութեան, որ իր կարգին գեղեցիկ գաղափարը ունեցած էր Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի հայ եւ օտար հասարակութեան ներկայացնել աշխարհահռչակ գրող Ուիլիըմ Սարոյեանի կեանքին ու գործին նուիրուած վաւերագրական բացառիկ ֆիլմը, որուն հեղինակն ու բեմադրիչն է նոյնինքն Փոլ Գալինեան:

3

## ՀԱՅԱՍՏԱՆ

### ԾՆՆԴԵԱՆ 75-ԱՄԵԱԿԻ ԿԱՊԱԿՑՈՒԹԵԱՄԲ ՀՀ ՆԱԽԱԳԱՀԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԱԿԱՆ ՈՒՂԵՐՁ Է ՅՂԵԼ ՇԱՐԼ ԱԶՆԱՒՈՒՐԻՆ

Ծննդեան 75-ամեակին առթիւ նախագահ Ռոպերթ Քոչարեանը շնորհաւորական ուղերձ է յղել աշխարհահռչակ երգիչ Շարլ Ազնաւուրին:

Ինչպէս յայտնում են ՀՀ նախագահի մամլոյ գրասենեակից, ուղերձում մասնաւորապէս ասուած է. «Լինելով մեր դարաշրջանի խորհրդանիշներից մէկը, որի արուեստը այլեւս համամարդկային արժէքների ոլորտում է, Դուք իւրաքանչիւր հայի համար հանդիսանում էք սիրոյ եւ հպարտութեան անսպառ աղբիւր:

Օգտուելով այս ուրախալի առիթից՝ կ՛ուզենայի յայտնել Ձեզ մեր ժողովրդի երախտագիտութիւնն ու խոր յարգանքը: Հայաստանը երբեւէ չի մոռանայ Ձեր մարդասիրական, բայց առաւել բարոյական աջակցութիւնը՝ երկրաշարժին յաջորդած օրերից մինչեւ այսօր:

Ձեզ յղելով հայ ժողովրդի մաղթանքն առ այն, որ Ձեր եռանդը անմար մնայ, ցանկանում եմ Ձեզ, սիրելի Վարպետ, երջանկութիւն եւ նորանոր նուաճումներ»:

### EXPO-2000 ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՆԱՅ ՆՈՅԵԱՆ ՏԱՊԱՆԻ ՏԵՍՔ ՈՒՆԵՑՈՂ ՏԱՂԱՎԱՐՈՎ

Մայիսի 19-ին ՀՀ արդիւնաբերութեան եւ առեւտրի նախարարի առաջին տեղակալ, EXPO-2000 համաշխարհային ցուցահանդէսի Հայաստանի գլխաւոր յանձնակատար Մովսէս Զաւարեանը, ցուցահանդէսի Կեդրոնական եւ Արեւելեան Եւրոպայի եւ ԱՊՀ երկրների պատասխանատու Պր. Ա. Սարկանիի հետ ստորագրեց Հայաստանի ցուցահանդէսի մասնակցութեան պաշտօնական պայմանագիրը: Ըստ Պր. Զաւարեանի, 2000 Թուականին Գերմանիայի Հաննովրը քաղաքում անցկացուելիք EXPO-2000 համաշխարհային ցուցահանդէսին Հայաստանի մասնակցութեան հիմնական նպատակը հանրապետութեան վարկանիշի բարձրացումն ու համաշխարհային քարտէզի վրայ «Հայաստանի տեղը ցոյց տալն է»: Նշուեց նաեւ, որ աւելի քան 100 հազար քառ. մեդր տարածութիւն գրաւող ցուցահանդէսին մասնակցելու ցանկութիւն են յայտնել արդէն 187 երկրներ:

Մովսէս Զաւարեանը ներկայացնելով նախապատրաստական աշխատանքների ներկայ վիճակն ընդգծեց, որ այս խնդրում իրենք ակնկալում են նաեւ հայ գործարարների եւ սփիւռքի մասնակցութիւնը: Ցուցահանդէսին Հայաստանի մասնակցութեան համար, ըստ Զաւարեանի կը պահանջուի մօտ 400 հազար մարք: Հայաստանում Գերմանիայի դեսպան Գարոլա Միւլլըր Հոլթքեմփերը յայտնեց, որ ցուցահանդէսում սպասուող աւելի քան 40 մլն. այցելուների եւ մասնակից երկրների քանակով, EXPO-2000-ը մինչ այժմ կայացած նմանատիպ ցուցահանդեսներից առաջինն է լինելու: ↳ 4

### ՖՐԱՆՍԻԱՅԻ ՍԵՆԱՏԸ ԽՈՐՀՈՒՐԴ Է ՏԱԼԻՍ ՀԱՅԵՐԻՆ 84 ՏԱՐԻ ՍՊԱՍԵԼՈՒՑ ՅԵՏՈՅ ՍՊԱՍԵԼ ԵՒՍ 84 ՕՐ

Ապրիլի 24-ին ֆրանսահայութեանը միաւորող «Ապրիլի 24-ի» յանձնախումբը կազմակերպել էր Լիոն-Փարիզ քայլարշաւ, որի մասնակիցները Ֆրանսիայի Սենատից պահանջում էին ճանաչել Հայոց ցեղասպանութիւնը: Ըստ «Ամերիկայի ձայն» ռատիոկայանի, 550 քմ. ճանապարհը ցուցարարներն անցել են 19 հանգրուանով: Ճանապարհին ամէն քաղաքի քաղաքապետ ընդունել է ցուցարարներին եւ իր զօրակցութիւնն է յայտնել հայութեան պահանջին: Իւրաքանչիւր հանգրուանում խմբին նոր ցուցարարներ են միացել, եւ Մայիսի 12-ին թիւով 1500 քայլարշաւողները հասել են Փարիզի քաղաքապետարան, ապա Ազգային Ժողով, ուր ցուցարարների պատուիրակութիւնը Սենատին է յանձնել ֆրանսահայութեան պահանջը:

Ըստ «Ազատութիւն» ռատիոկայանի, Սենատի նախագահի բացակայութեան պատճառով, պատուիրակութեանն ընդունել է նախագահի գրասենեակի պետը: «84 տարի համբերել էք, 84 օր էլ սպասէք»,- եղել է պատասխանը:

### «ՄԻԱՍՆՈՒԹԻՒՆ» ԴԱՇԻՆՔԸ ՊԱՏՐԱՍՏ Է ՍՏԱՆՁՆԵԼՈՒ ԵՐԿՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԻՒՆԸ

1 ↳

*Միւս կողմէ, Հայաստանի Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի կից գործող հանրային կարծիքի ուսումնասիրութեան կեդրոնին կողմէ կատարուած նախընտրական հարցախոյզի մը համաձայն, «Միասնութիւն» դաշինքը կը գրաւէ առաջին դիրքը՝ վայելելով ժողովուրդի չուրջ մէկ չորրորդի վստահութիւնը:*

*Երեւանի մէջ, 1000 քուէարկողներու մասնակցութեամբ կատարուած հարցախոյզի ընթացքին 23.4 տոկոսը յայտնած են որ իրենց ձայները պիտի տան «Միասնութիւն» դաշինքին, 9.6 տոկոսը՝ Կոմունիստական Կուսակցութեան, 9,4 տոկոսը՝ Ազգային Ժողովրդավարական Միութեան, իսկ 5.4 տոկոսը «Օրինաց Երկիր» կուսակցութեան: Մնացեալ կուսակցութիւններու ժողովրդականութիւնը 5 տոկոսէն պակաս է:*

*Այս տուեալներուն մէջ գլխաւորաբար անբնական է նորակազմ «Օրինաց Երկիր» կուսակցութեան ցուցանիշը: Սակայն Հայաստանի քաղաքական շրջանակներուն մօտ տիրող կարծիքը այն է թէ, այս կուսակցութիւնը ստեղծուած է ներքին գործոց եւ ազգային անվտանգութեան նախարար Սերժ Սարգսեանի կողմէ եւ կը վայելէ իրաւապահ մարմիններու նիւթական ու բարոյական աջակցութիւնը:*

*«Օրինաց Երկիր»ը ընտրապայքարի ընթացքին ամենէն աւելի մեծ գումարներ ծախսող կուսակցութիւնն է:*

*Հարցումներուն պատասխանողներու 75 տոկոսը յայտնած են թէ պիտի մասնակցին Մայիս 30-ի խորհրդարանական ընտրութիւններուն:*

*Նկատելով որ հարցախոյզը կատարուած է միայն Երեւանի մէջ, ընտրութիւններու իսկական արդիւնքները կրնան տարբեր ըլլալ: «Միասնութիւն» դաշինքի տոկոսները հաւանաբար բարձրանան՝ շրջաններու մէջ Կարէն Դեմիրճեանի վայելած ժողովրդականութեան պատճառաւ, իսկ մի քանի կուսակցութիւններ, յատկապէս Պարոյր Հայրիկեանի Ինքնորոշում Միաւորումը եւ Հայ Յեղափոխական Դաշնակցութիւնը կրնան անցնիլ 5% տոկոսի «պատը»:*

*Ազգային Ժողովի 131 տեղերուն համար պայքար կը մղեն աւելի քան 40 կուսակցութիւններ եւ անհատ թեկնածուներ, որոնցմէ շատեր կը ծախսեն տասնեակ հազաւոր տոլարներ պատգամաւորական մէկ աթոռ ձեռք ձգելու համար:*

### ԳՆԱՀԱՏԱԿԱՆ ԳԻՐԵՐ ՈՒՂԱՐԿՈՒԱԾ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ

*Ուրախութեամբ տեղեկացանք, թէ Գահիրէի Արեւմտեան շրջանի՝ Ուսուցչական Սենտիքան 1998 տարեշրջանի տիպար ուսուցիչ ընտրած է Գալուստեան Ազգ. վարժարանէն ներս դասաւանդող՝ Պր. Ռուպէր Նակիպ Արթինեանը եւ Տիկ. Նահէտ Եուսէֆ Սրտքին:*

*Խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ ջանասէր ուսուցիչներն ու անոնց յարգելի ծնողները, մաղթելով, նորանոր յաջողութիւններ իրենց ընտրած դժուար ասպարէզէն ներս:*

*****

*Նոյնպէս տեղեկացանք, որ 1998-99 կրթաշրջանին, վարժարանէն ներս նկարչական գործունէութեան մէջ իրենց ձեռք բերած անխոնջ աշխատանքին համար, Եգիպտոսի կրթական նախարարութիւնը, նախարարին ստորագրութեամբ, գնահատանքի գիրեր ուղարկած է աշակերտուհի Արփինէ Արմէն Շապոյեանի եւ գծագրութեան ուսուցչուհի Տիկ. Հենտ Ղարիպ Ապտէլ Րահիմի:*

*Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք անոնց եւ անոնց ծնողներուն, ինչպէս նաեւ յատուկ շնորհակալ խօսք ունինք Գալուստեան Ազգ. վարժարանի տնօրինութեան:*

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

### ՍՊԻԴՈՎ (AIDS) ՀԻՒԱՆԴՆԵՐԻ «ԱՐՄԵՆԻԿՈՒՄ»-ՈՎ ԲՈՒԺՄԱՆ ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ Կ՛ԸՆԴԼԱՅՆՈՒԻ

Սպիդի կանխարգելման հանրապետական կեդրոնն ընդլայնւում է. Սպիդի կեդրոնին է յանձնուել նրա մօտակայքում գտնուող (Պուշկինի փող., 56 ա) նախկին Սպորտային բժշկութեան կենտրոնի շէնքը: Ինչպէս «Նոյեան Տապանի» թղթակցին յայտնեց Սպիդի կեդրոնի տնօրէն Լեւ Զօհրաբեանը, նոր շէնքում կը տեղաբաշխուեն կեդրոնի բոլոր ծառայութիւնները:

Նշենք, որ ըստ «Նոյեան Տապանի» տեղեկութիւնների, սպիդով հիւանդների եւ վիրուսակիրների տեղաւորումն ու բուժումը կեդրոնացուելու է նախկին քաղաքային ինֆեկցիոն հիւանդանոցում, որը վերջերս անցել է Հայաստանի ներքին գործերի եւ ազգային անվտանգութեան նախարարութեան տնօրինութեան տակ: Ներկայումս մի քանի հիւանդներ, այդ թւում նաեւ Ռուսաստանից ժամանած Նիկոլայ Քոլեսնիքովը, արդէն աւարտել են «Արմենիկում»-ով բուժման կուրսը՝ դրական արդիւնքներով:

### Պետական Պարգեւը Յանձնուեց Սփիւռքահայ Բանաստեղծ Զահրատին

ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանի Մայիսի 17-ի հրամանագրով հայ գրականութեանը մատուցած ակնառու ծառայութիւնների համար սփիւռքահայ բանաստեղծ Զահրատը (Զարեհ Եալտըզեան) պարգեւատրուել է Մովսէս Խորենացու մեդալով: Նոյն օրը ՀՀ կառավարութեան շէնքում պարգեւը գրողին յանձնեց եւ նրան ջերմօրէն շնորհաւորեց ՀՀ վարչապետ Արմէն Դարբինեանը: Շնորհակալութեամբ ընդունելով պարգեւը, Զահրատը ՀՀ վարչապետին ընծայեց իր բանաստեղծութիւնների ժողովածուն:

Արարողութեանը ներկայ էր Կ. Պոլսից Հայաստանում գտնուող հոգեւոր եւ աշխարհիկ գործիչների պատուիրակութիւնը, որը գլխաւորում է Կ. Պոլսոյ Պատրիարք Մեսրոպ Արքեպիսկոպոս Մութաֆեանը:

ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԽԱՂԵՐ
PAN-ARMENIAN GAMES

### ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐՈՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԳՈՐԾԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

#### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք թէ՝ ընդառաջելով Համահայկական Խաղերու Համաշխարհային Կոմիտէի կոչին, Եգիպտահայ մարզական միութիւնները ինչպէս նաեւ մշակութային միութիւնները որոնք մարզական գործունէութիւն ունին, կազմեցին Համահայկական Առաջին Խաղերու Եգիպտահայ Գործադիր Յանձնախումբ մը:

Այս Յանձնախումբը որոշեց Եգիպտահայ մարզիկներու մասնակցութիւնը Համահայկական Առաջին Խաղերուն որոնք տեղի պիտի ունենան Երեւան՝ Օգոստոս 28 - Սեպտեմբեր 5, 1999-ին, պասքէթ պոլի եւ փինկ փոնկի խումբերով:

Համահայկական Առաջին Խաղերը պիտի ըլլան Հայաստանի եւ Սփիւռքի հայութեան համատեղ ուժերով կազմակերպուած՝ հայ մարզիկներու փառատօնը:

ԿՈԿԱՆԵԱՆ ՍՐԱՀ
ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ
ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ (Հ.Մ.Մ.)
Հ.Մ.Ը.Մ. ԱՐԱՐԱՏ
Հ.Մ.Ը.Մ. ԿԱՄՔ
Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ (ԱՂԵՔՍ.)
Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ (ԳԱՀԻՐԷ)
ՆԻԸՐ ԻՍԹ ԱԿՈՒՄԲ
ՍՐԲՈՒՀԻ ԹԵՐԵԶԱ ԱԿՈՒՄԲ

## ԳԱՀԻՐԷ

### Հ.Բ.Ը.Մ.-ի «Սաթենիկ Ճ. Չագըր» Մշակութային Կեդրոն Հելիոպոլսոյ Մէջ

*Գահիրէի Հ.Բ.Ը. Միութեան «ՏԵՂԵԿԱՏՈՒ» պարբերաթերթէն կը տեղեկանանք, թէ վերջերս կայացած է նախնական համաձայնութիւնը Հելիոպոլսոյ Մուրատ Պէյ եւ Տրսուք փողոցներուն անկիւնը գտնուող թիւ 26 շէնքին եւ յարակից գետնայարկ սրահին, որ սեփականութիւնը պիտի դառնայ Հ.Բ.Ը. Միութեան Գահիրէի մասնաճիւղին:*

*Նկատի ունենալով «Սաթենիկ Ճ. Չագըր» Հիմնադրամի բազմաճիւղ աշխատանքը, ՀԲԸՄ-ի Գահիրէի մասնաճիւղի վարչութիւնը մտադրած է այս շէնքին մէջ կեդրոնացնել Հիմնադրամին հետ առնչութիւն ունեցող իր բովանդակ գործունէութիւնը:*

*Այս չորս յարկանի շէնքը՝ պիտի պարփակէ «Սաթենիկ Ճ. Չագըր» Մշակութային Կեդրոնը, գրադարանով եւ «ՏԵՂԵԿԱՏՈՒ» Պաշտօնաթերթի խմբագրութեան գրասենեակով: Անջատ յակաբաժին մը պիտի տրամադրուի առողջապահական սպասարկութեան ծառայութիւններու համար: Իսկ գետնայարկը ցուցասրահ մը՝ պարբերական ցուցահանդէսներ սարքելու համար:*

### Ուիլիըմ Սարոյեանի Վաւերագրական Բացառիկ Ֆիլմի Ներկայացումը

Երէկ, Չորեքշաբթի 19 Մայիսի երեկոյեան, Գահիրէի Ամերիկեան համալսարանի «Oriental Hall»ի մէջ, ներկայացուեցաւ հռչակաւոր ամերիկահայ արձակագիր եւ թատերագիր Ուիլիըմ Սարոյեան Մարդը Գործը՝ վաւերագրական բացառիկ ֆիլմը:

Երեկոյին, ֆիլմին հեղինակ, բեմադրող, ամերիկահայ արուեստագէտ Փոլ Գալինեան, ներկայ գտնուեցաւ ցուցադրութեան եւ աւարտին պատասխանեց ներկաներուն կողմէ ուղղուած բոլոր հարցումներուն:

Սարոյեանի կեանքն ու գործերուն նուիրուած սոյն հետաքրքրական երեկոյթին մասին պիտի անդրադառնանք յաջորդ թիւով:

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*1999թ. Մայիսի 30-ին տեղի են ունենալու Հայաստանի Հանրապետութեան Ազգային Ժողովի ընտրութիւնները:*

*Հայաստանի Հանրապետութեան ընտրական օրէնսգրքի համաձայն արտասահմանում բնակուող կամ գտնուող ընտրական իրաւունք ունեցող ՀՀ քաղաքացիները կարող են մասնակցել համամասնական կարգով անցկացուող ընտրութիւններին:*

*Այս կապակցութեամբ ընտրական տեղամաս է կազմաւորուած Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնում: Քուէարկութիւնն անց է կացուելու Մայիսի 30-ին առաւօտեան ժամը 8:00-ից մինչեւ երեկոյեան ժամը 8:00-ը:*

*Քուէարկութեանը մասնակցելու իրաւունք ունեն դեսպանութիւնում հաշուառման կանգնած ընտրական իրաւունք ունեցող ՀՀ քաղաքացիները:*

*ՀՀ այն քաղաքացիները, ովքեր գտնւում են Եգիպտոսում եւ մինչեւ օրս հաշուառման չեն կանգնել դեսպանութիւնում, կարող են մինչեւ Մայիսի 25-ը ներկայանալ դեսպանութիւն հաշուառման կանգնելու համար: Հաշուառումը կատարւում է անվճար:*

*Դեսպանութեան հասցէն է՝ 20, Մոհամմէտ Մազհար փողոց, Զամալէք, Գահիրէ:*

*Լրացուցիչ տեղեկութիւնների համար զանգահարել 342-41-57, 342-41-59:*

**ԵԳԻՊՏՈՍԻ ԱՐԱԲԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

# Տ. ՉՈՒՀԱՃԵԱՆԻՆ ՎԵՐԱԳՐՈՒՈՂ ԵՐԵՔ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ՝ «ԻՆՏԻԱՆԱ» ՕՓԵՐԱՆ ԵՒ «ՃԷՅՊԷՔԼԷՐ» ՈՒ «ՉԷՆԿԻԼԷՐ» ՕՓԵՐԷԹՆԵՐԸ

## «ԻՆՏԻԱՆԱ» ՕՓԵՐԱՆ

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

1941 Թուականին, պոլսահայ անուանի դերասան ու դերուսոյց Աչոտ Մատաթեան կը հրապարակէր վարկած մը, ըստ որում Չուհաճեանի վերջին օփերան ոչ թէ «Զէմիրէ»-ն է՝ այլ «Ինտիանա»-ն, որ «տակաւին ներկայացուած չէ, եւ կը մնայ Իսթանպուլ Պ. Արամ Մելիքեանի քով» [1]:

Երեք տարի ետք՝ 1944-ին, «Փէրտէ սահնէ»-ին մէջ ան դարձեալ կ'անդրադառնայ «Ինտիանա»-յին մասին [2]:

1946-ին, Չուհաճեանին նուիրուած իր ծաւալուն յօդուածին մէջ, Մատաթեան կարեւոր տեղ կը յատկացնէ «Ինտիանա»-յին: «1897-ին գրեց *Ինտիանա* օփէրան, որ իր վերջին գործը եղաւ, եւ մէկ քանի ոսկիի փոխարէն Մելիքեանին քով աւանդ թողելէ յետոյ՝ գնաց Իզմիր» կը գրէ ան եւ կ'աւելցնէ. «Չուհաճեան այս օփէրան եղանակաւորեր է ներշնչուելով Ապտիւլհագ Համիտի *Հնդկուհին* անուն քերթուածական թատերախաղէն: Այս տեղեկութիւնը ստացած եմ դերասանապետ Մնակեանէ: Չուհաճեան, իր այս «կարապի երգ»-ը մէկ քանի ոսկիի փոխարէն աւանդ ձգելով Եղիազար Մելիքեանին, գացած է Իզմիր: Ըստ Արամ Մելիքեանի, «*Ինտիանա*-ն Չուհաճեանի ամենէն գեղարուեստական եւ անքննադատելի գործն է՝ որ մինչեւ այսօր կը մնայ անոր մօտ: Շատ փափաքելի է որ մեր գեղարուեստասէր հարուստներէն մին՝ գնահատելի ելոյթով մը՝ գոհացում տար Ա. Մելիքեանին եւ մութէն լոյսի մէջ դնէր այդ գեղեցիկ գործը» [3]:

1955-ին, Թուրք երաժշտագէտ Օսման Նահիտ՝ Չուհաճեանի ստեղծագործութիւններու ցանկին մէջ կը յիշատակէ «Ինտիանա» օփերան [4]:

Հիմնուելով այս աղբիւրներուն վրայ, Թատերագէտ Գառնիկ Ստեփանեան 1957 Թուականին Հայաստանի մէջ եւս շրջանառութեան մէջ կը դնէ «Ինտիանա»-յի մասին վարկածը [5]:

Այնուհետեւ, հայկական եւ Թրքական երաժշտագիտական ու Թատերագիտական գրականութեան մէջ «Ինտիանա»-ն կ'արմատաւորուի իբրեւ Չուհաճեանի վերջին օփերան: Անոր մասին կը շարունակեն յիշատակել Մեթին Անտ (1972) [6], Ֆերիթ Ռաղիբ Թինքոր (1960) [7], Վահրամ Բարունեան (1975) [8] եւ ուրիշներ: Ան տեղ կը գրաւէ 1975-ին Իսթանպուլի մէջ Թուրք օփերէթի հարիւրամեակին առիթով հրատարակուած գիրքին [9] եւ «Մէյտան Լարուս» Թրքական հանրագիտարանին [10] մէջ:

Ուրեմն, «Ինտիանա»-յի մասին մեզի յայտնի առաջին յիշատակութիւնը գրանցուած է 1941 Թուականին, այսինքն Չուհաճեանի մահէն աւելի քան քառասուն տարի ետք, Թատերագէտի մը կողմէ՝ որ ժամանակակից եղած չէ երաժշտահանին:

Մատաթեան իր վարկածը կը հաստատէ երկու փաստարկումով՝ Մարտիրոս Մնակեանի *բանաւոր* հաղորդումը, եւ՝ ձեռագիրին առկայութիւնը Արամ Մելիքեանին քով: Յաջորդող բոլոր յօդուածագիրներն ալ, առանց առարկութեան, բառացիօրէն կը կրկնէին Մատաթեանի տեղեկութիւնները: Հաւանաբար, բոլորն ալ իրենց տեղեկութիւնները հիմնած էին Մատաթեանի յօդուածներուն վրայ, քանի որ վերջինը հեղինակաւոր անձնաւորութիւն մը ըլլալով Թուրքական Թատերական աշխարհին մէջ՝ իր գրութիւններն ու կարծիքները վստահելի աղբիւրներ կը նկատուէին [11]:

1970-ական Թուականներուն սկիզբը, պոլսահայ անուանի երաժշտահան եւ դաշնակահարուհի Սիրվարդ Գարամանուկ, կազմելով յանձնախումբ մը, կը հաւաքէ պահանջուած գումարը եւ Արամ Մելիքեանի դուստր Սոֆի Կիւլոյեանէն գնելով «Ինտիանա»-յի ամբողջական ձեռագիրը՝ զայն կ'ուղարկէ Հայաստան [12]: Այսօր, ձեռագիրը կը պահպանուի Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Չուհաճեանի դիւանի Թիւ 137-148 Թղթածրարներուն մէջ:

Անոր մասին անմիջապէս կ'արձագանգեն Գառնիկ Ստեփանեան [13] եւ Մաթեւոս Մուրադեան [14], համոզուած ըլլալով՝ որ ան իրօք կը հանդիսանայ Չուհաճեանի օփերան:

Ձեռագիրը կը բովանդակէ նուագագրութիւն (full score), նուագախումբի նուագամասեր եւ դաշնակագրութիւն: Կազմուած է 1100 Թերթէ (2200 էջ):

Նուագագրութեան տիտղոսաթերթը կը կրէ «L'indiana» խորագիրը, որուն վրայ նոր Թուղթ մը կպցուած է եւ փոխարէնը նոյն ձեռագիրով գրուած՝ «Covinda Re delle Indie»: Կը յաջորդէ հետեւեալ ենթախորագիրը. « Opera Comica in tré Atti, e cinque Quadri. Parole di Giuseppe Iazadjihan. Musica di Alessandro Alboreto. Constantinopoli, Giugno 1876» Օփերա քոմիք երեք արարով եւ հինգ տեսարանով: Բառերը Յովսէփ Եազըճեանի [15]: Երաժշտութիւնը Ալեսսանտրօ Ալպորէթոյի: Կոստանդնուպոլիս Յունիս 1876) [16]:

Նուագախումբի բոլոր նուագամասերուն վրայ (Թիւ 143-148) խորագիրը դրուած է սրբագրուած վիճակով՝ «Covinda Re delle Indie»: Իտալերէն լեզուով յիշատակուած են Եազըճեանի եւ Ալպորէթոյի անունները: Հայերէն լեզուով գրուած է՝ «Սեփականութիւն Ե. Մ. Մելիքեանի»: Անթուակիր են:

Դաշնակագրութեան վրայ հայատառ Թուրքերէն գրուած է՝ «Ինտանա, բիեանօ-Շան» եւ իտալերէն՝ «L'Indiana d'Alboreto» (Թիւ 140/1): Գ. արարին վրայ գրուած է՝ «Covinda Re delle Indie» (Թիւ 142/242):

Բառերը գրուած են լատինատառ Թրքերէն:

Երաժշտութեան ձեռագիրը անյայտ է: Չուհաճեանի ձեռագիրի ոչ մէկ հետք կը գտնուի:

Օփերայի գրեթէ առաջին կէսին մէջ, ձայնանիշերուն տակ գրուած բառերուն վրայ Թերթիկներ կպցուած են ու շարադրուած նոր լիպրէթթօ մը, առանց ոչ մէկ փոփոխութեան ենթարկելու երաժշտութիւնը: Օփերայի երկրորդ կէսին մէջ փոփոխութիւններ չկան:

Այս է ձեռագիրներուն ընդհանուր պատկերը: Անոնք, սակայն, «Ինտիանա»-յի վարկածը լուծելու փոխարէն՝ նոր հարցադրումներ կ'առաջադրեն եւ յաւելեալ բարդութիւններ կը յարուցանեն:

Նախ, իբրեւ երաժշտութեան հեղինակ նշուած է Ա. Ալպորէթօ: Վերջինս Կ. Պոլիս ապրած իտալացի երաժշտահան մըն է եւ Չուհաճեանի հետ եղած է «Արիֆ» օփերէթին հեղինակակիցը: Այլ տեղեկութիւններ իր մասին չկան: Գ. Ստեփանեան կը կարծէ՝ թէ դիտաւորեալ չէ յիշատակուած Չուհաճեանի անունը, խուսափելու օսմանեան գրաքննութենէն եւ ընդհանրապէս իբր հետեւանք ԺԹ. դարավերջի օսմանեան բռնատիրական, հակահայ քաղաքականութեան, որ իր գագաթնակէտին հասած էր օփերայի յօրինումին ժամանակ՝ 1897 Թուականին [17]: Նոյն կարծիքն ունի նաեւ Մ. Մուրադեան [18]: Այլեւ, ըստ Գ. Ստեփանեանին, «Ինտիանա»-ն բեմադրելու համար, յետ մահու, անհրաժեշտ էր «բնագրի մէջ կատարել որոշ փոփոխութիւններ, տուրք տալով «օգոստափառ կայսեր», որուն համար ամենայարմար անձը Չուհաճեանի վաղեմի բարեկամ, «Արիֆ» օփերէթի հեղինակակից Ալպորէթօն էր [19]: Պատճառաբանումը տրամաբանական է, բայց կը պակսին փաստերը:

Նշեցինք, որ նուագագրութեան վրայ յիշուած է 1876 Թուականը, որ գրուած ըլլալով մաքուր ու յստակ ձեռագիրով՝ կասկած չի թողուր իր ճշտութեան: Ուրեմն, քսան տարուայ տարբերութիւն կայ ձեռագիրի Թուականին եւ Ա. Մատաթեանի ու իր հետեւորդներուն հաղորդածին:

1870-ական Թուականները Չուհաճեանի փառքի տարիներն էին՝ երբ իրար ետեւէ կը յօրինէ ու բացառիկ յաջողութեամբ կը բեմադրէ «Արիֆ», «Քէօսէ Քէհեա» եւ «Լէպլէպիճի Հօր Հօր աղա» օփերէթները: Եթէ այդ տարիներուն տարբեր նկատառումներով «Արիֆ»-ին համար հեղինակակից ունեցած է Ալպորէթօն, այնուամենայնիւ, երբեք չէ հրաժարած իր անունը յիշատակելէ:

Հարցական կէտ մըն է նաեւ ամբողջ 2200 էջերուն մէջ Չուհաճեանի ձեռագիրին բացակայութիւնը: Ճիշտ է, Երեւանի Չուհաճեանի դիւանին մէջ կը գտնուին երաժշտահանին ոչ ինքնագիր բնագիրներ, սակայն անոնք մեծ մասամբ նուագախումբի նուագամասեր են, որոնց նուագագրութիւնը կամ դաշնակագրութիւնը անպայման ինքնագիր է: Եթէ Չուհաճեանի հեղինակութիւնն է այս բնագիրը, ուրեմն յետ մահու իրականացուած ընդօրինակութիւն մըն է:

Ի վերջոյ, Չուհաճեանին յատուկ լայնածիր մեղեդայնութիւնը, Թարմ դաշնակումները (հարմոնիները), ճկուն զարտուղութիւնները (մոտիւլասիոնները), մեծալար-փոքրալար (մաժէօր-մինէօր) գունախաղերը չկան բնագիրին մէջ:

Այսպէս, սոյն ձեռագիրը ոչ մէկ օգնութիւն կը ցուցաբերէ «Ինտիանա»-յի հեղինակութեան հարցին նկատմամբ:

Հետեւաբար, Ա. Մատաթեանի փաստարկումին այն կէտը՝ որ հիմնուած էր «Ինտիանա»-յի ձեռագիրին գոյութեան փաստին վրայ, կը դառնայ հարցական: Կը մնայ Մնակեանին հաղորդած բանաւոր տեղեկութիւնը, որ կարիք ունի զայն հաստատող կամ հերքող փաստարկումի: Իսկ միւս յօդուածագիրներուն նշումները՝ որոնք կը կրկնեն Մատաթեանի հաղորդածը, ոչ մէկ աղբիւրագիտական հենք կը ներկայացնեն: Բաց աստի, անոնցմէ ոչ մէկը ծանօթ էր երաժշտութեան: Նոյնիսկ Մատաթեան չի նշեր թէ տեսած է բնագիրը, այլ անոր մասին լսած է սեփականատէրէն՝ Ա. Մելիքեանէն:

Հարց մը եւս: Եթէ Չուհաճեանի վերջին երկերէն է՝ ինչպէս նշեցին յօդուածագիրները, ԺԹ. դարավերջի Թրքահայ մամուլը յիշատակած պէտք է ըլլար անոր մասին: Կ. Պոլսոյ եւ Զմիւռնիոյ մամուլը մանրամասն հետեւած է երաժշտահանի կեանքի վերջին տասնամեակի գործունէութեան, յիշատակելով նոյնիսկ անաւարտ ստեղծագործութիւն մը՝ «Եմիշճիլէր» օփերան [20]: Չուհաճեանի վերջին մեծակտաւ աւարտուն ստեղծագործութեան՝ «Ինտիանա»-յի յիշատակութեան բացակայութիւնը շարք մը աւելորդ հարցադրումներու

4

# ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ ԸՆԿԵՐ ԶԱՒԷՆ ՊԱԼԱԵԱՆԻ ՄԱՀՈՒԱՆ Ա. ՏԱՐԵԼԻՑԻ ԱՆԹԱՌԱՄ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Կիրակի 16 Մայիսի առաւօտեան, Աղեքսանդրիոյ Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ մէջ, յաւարտ Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն կատարուեցաւ Հայկական Ընթերցասրահի ցկեանս նախագահ, «Ջահակիր» շաբաթաթերթի նախորդ վաստակաւոր խմբագիր, Հնչակեան հաւատաւոր ղեկավար, ազգային-հասարակական գործիչ եւ ընտանիքի տիպար հայր՝ ողբացեալ ընկեր Զաւէն Պալաեանի մահուան առաջին տարելիցին առթիւ: Հանգուցեալը իր մահկանացուն կնքած էր 5 Մայիս 1998-ին Մոնթրէալի մէջ, խոր բաց մը թողելով իր ետին:

Օրուան պատարագիչն էր Աղեքսանդրիոյ հոգեւոր հովիւ Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեան, որ աւուր պատշաճի քարոզ մը խօսեցաւ: Խորանին առջեւ կը սպասարկէր Բրշ. Նազարէթ Աւագ Սրկ. Գարբալեան: Մինչ հոգեւոր երգեցողութիւնները կը կատարուէին «Կոմիտաս» երգչախումբին կողմէ:


Զաւէն Պալաեան

Ներկայ էին անմիջական իր ընտանիքի անդամները, ազգականներ, գաղափարի ընկերներ եւ այլ անձնաւորութիւններ, որոնք եկած էին խոնարհելու իր յիշատակին առջեւ:

***

Թէեւ տարի մը անցած է, սակայն ցարդ չենք կրցած հաշտուիլ բոլորիս սիրելի Զաւէն Պալաեանի անվերադարձ բաժանումը այս աշխարհէն:

Արդարեւ անբասիր մարդ մըն էր ան, եւ իր սկզբունքներուն մէջ անշեղ: Ազնիւ եւ համեստ բնաւորութեան տէր անձ մը, որ լռելեայն եւ անտրտունջ աշխատանքով սատարած է ազգապահպանման նուիրական գործին:

Հանգուցեալ ընկերը գնահատելի զոհաբերութեամբ նուիրուած էր Ս.Դ. Հնչակեան կուսակցութեան գաղափարին եւ ուղղամիտ կուսակցականի իր հանգամանքով երկար տարիներ վարած է Եգիպտոսի շրջանակի ատենապետութիւնը:

Անսպառ կորովով, տարիներ շարունակ եռանդուն գործունէութիւն ցուցաբերած է Հայկական Ընթերցասրահէն ներս. մաս կազմած է վարչութեան եւ ապա ցկեանս նախագահ նշանակուած:

Ողբացեալ Զաւէն, «Ջահակիր»ի խմբագրութեան պատասխանատուութիւնը ստանձնած էր 1979-ին, որ մօտ 10 տարիներ միայնակ աշխատանքով, ամէն Հինգշաբթի օր կանոնաւորապէս հրատարակած է զայն, մինչեւ կայք հաստատելը Գանատա՝ 1988-ին:

Նուիրեալ ընկերը օրինակելի աշխատանքով, իր բաժինը բերած է նաեւ համայնքային կեանքէն ներս, գործօն մասնակցութիւն բերելով զանազան ընկերային, կրթական կամ հասարակական գործունէութեանց՝ հոգաբարձական կազմերուն: 1970-ական թուականներէն ընտրուած էր Գահիրէի Ազգային Իշխանութեան անդամ եւ նուիրական գործունէութեամբ քանիցս մաս կազմած է Գահիրէի Քաղաքական ժողովին:

Հանգուցեալը Մոնթրէալ հաստատուելէն ետք եւս հաւատարմօրէն յարած է ազգային-ընկերային ծառայութիւններու, եւ իրեն վստահուած Մոնթրէալի «Նոր Սերունդ» Մշակ. Միութեան վարչութեան ատենապետութիւնը, որ իր ժրաջան գործունէութեամբ շարունակած է մինչեւ՝ 1994 տարին: Այսպէս՝ մինչեւ վերջերը, անզուգական ընկերը անշահախնդիր պատրաստակամութիւն ցուցաբերած է Մոնթրէալի մէջ, ամէն անգամ որ ազգօգուտ ծառայութիւն մը առաջարկուած է իրեն:

Ընկեր Զաւէն Պալաեան ազգասէր հայորդի մըն էր եւ իրաւ հայրենասէր անձնաւորութիւն մը, որ իր կորովի հօր՝ Ողբ. Մարտիրոսի եւ եղբայրներուն՝ Ողբբ. Սարգիսի եւ Նուպարի նման, եղաւ Հնչակեան հերոս մը որ խորապէս շահագրգռուած էր մայր հայրենիքով եւ անոր անցուդարձերով: Իր յուսալից աչքերը յառած էին այնտեղ եւ խանդավառուած անկախ Հայաստանով:

Մեր ցաւակցութիւնները կը յայտնենք մահուան Ա. տարելիցին առթիւ, հանգուցեալի այրիին՝ ընկերուհի Լիւսի Պալաեանի, զաւակներուն՝ Տէր եւ Տիկին Դանիէլ եւ Մայտա Ճօճռեաններուն եւ Տէր եւ Տիկին Վահէ եւ Ռոզիկ Պալաեաններուն, ինչպէս նաեւ բոլոր հարազատներուն եւ գաղափարի ընկերներուն:

Յիշատակդ անթառա՛մ պիտի մնայ սիրելի ընկեր Զաւէն, եւ յաւիտենական փա՜ռք ու յարգա՛նք:

«Ջ.»

# ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

1

Առաջին առթիւ մեր հիացումը յայտնեցինք տաղանդաւոր բեմադրիչին պատրաստած վեհ աշխատանքին համար: Իրաւամբ, պատուաբեր գործ մը՝ որմով առաւել եւս կ'անմահանայ համբաւաւոր հայ գրող Սարոյեան:

Մտերմիկ զրոյցի ընթացքին, սիրելի հիւրը հետաքրքրուեցաւ թերթիս տարած աշխատանքին մասին: Ապա իր գնահատանքը յայտնելէ ետք, անդրադարձաւ ամերիկահայ գաղութի շուրջ: Համեստաբարոյ հիւրերը սիրով պատասխանեցին ֆիլմին մասին, մեր ուղղած հարցումներուն: Պր. Գալինեան զրուցելով, արտայայտուեցաւ ութը տարուայ ընթացքին ֆիլմը պատրաստելու զանազան խոչընդոտներուն եւ տարած անխոնջ աշխատանքին՝ ինչպէս նաեւ իր ունեցած յարաբերութիւնները Սարոյեանի հետ: Ան յայտնեց թէ Եգիպտոս ժամանելէ առաջ նոյն ֆիլմը բացառիկ յաջողութեամբ ցուցադրուած է Պոլիս եւ Եգիպտոսէն մեկնելով ֆիլմը պիտի ներկայացուի Լիբանան ու Սուրիա:

Պր. Գալինեան յայտնեց թէ ընդառաջելով ՀՀ մշակոյթի նախարարութեան հրաւէրին, սոյն ֆիլմը պիտի ցուցադրուի Հայաստանի զանազան քաղաքներու մէջ, Սեպտեմբեր 1-էն մինչեւ Հոկտեմբեր 15 :

Խօսեցանք երկուստեք հետաքրքրող տարբեր նիւթերու շուրջ, սակայն ընդհանրապէս նիւթին առանցքը կ'առնէր մեծ գրողին ապրած բովանդակ կեանքն ու գործերը: Սարոյեանի այցելութիւնները Եգիպտոս՝ 1957 եւ 1979 տարիներուն, որոնք թէեւ եղած են կարճ բայց եւ տպաւորիչ ու թողած զանազան յիշատակներ:

Սոյն հետաքրքրական զրոյցի աւարտին, հրաժեշտ առինք արուեստագէտ Փոլ Գալինեանէն եւ իր ազնիւ տիկնոջմէն, նորանոր յաջողութիւններ մաղթելով, Սարոյեանի մասին յառաջիկային պատրաստուելիք ֆիլմին առիթով:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

### ԱՄԱՌՆԱՅԻՆ ՃԱՄԲԱՐ
### 1999

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ջագըր Ֆոնտը կը կազմակերպէ ամառնային ճամբար Հայաստանի մէջ 26 Յուլիսէն 23 Օգոստոս 1999 երկարող շրջանին:

Մասնակցութեան տարիք 17-27 տարեկան:

Մասնակցողներու թիւ 6-8 հոգի:

Մանրամասնութիւններու եւ յատուկ հարցարաններ լեցնելու համար դիմել՝

- Գահիրէի մէջ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի գրասենեակը

15 էմատ էլ-տին փողոց, Ա-յարկ, հեռ. 5919636

- Աղեքսանդրիոյ մէջ

Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքսանդրիոյ մասնաճիւղին

Դիմումներու վերջին թուականն է 15 Յունիս 1999:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

### ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

**«Ահա Եկաւ Նոր Գարուն»**

Կիրակի, 30 Մայիս 1999 Երեկոյեան ժամը 7-ին

**«Պըլըքտանեան» հանդիսասրահին մէջ**

Հովանաւորութեամբ
ԹԵՄԻՍ ԲԱՐԵԽՆԱՄ ԱՌԱՋՆՈՐԴ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Նախագահութեամբ
**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՒՐՀԱՆ ՔԻՒՐՔՃԵԱՆԻ**

Սիրալիր հրաւէր բոլորին

## «ԻՆՏԻԱՆԱ» ՕՓԵՐԱՆ

3 տեղիք կու տայ:

Ասոնց աւելցնելով անորոշութիւններով լեցուն ձեռագիրը՝ պարզ կը դառնայ, որ Չուհաճեանի «Ինտիանա» օփերային հետ առնչուող հարցերը կարօտ են լուսաբանութեան եւ նոր փաստերու յայտնաբերումին:

*(Վերջը յաջորդով)*

### ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1.- Թուրքիոյ Երաժշտական Թատրոնը, «Երջանիկ Զատիկ», Կ. Պոլիս, 1941, էջ 27, ծնթգր.:

2.- Տե՛ս Վահրամ Բարունեան, Տիգրան Չուհաճեան եւ իր գործը (1837-1898), «Քուլիս», հանդէս, Իսթանպուլ, 1 Ապրիլ 1975, թիւ 7-679, էջ 13:

3.- Աչոտ Մատաթեան, Տիգրան Չուհաճեան, «Անի», ամսագիր, Կ. Պոլիս, Յունիս 1946, թիւ 2, էջ 39 եւ Օգոստոս 1946, թիւ 4, էջ 33:

4.- Տե՛ս «Հայ կեդրոն» տարեցոյց, 1956, էջ 216:

5.- Տե՛ս Գառնիկ Ստեփանեան, Տ. Չուխաճեանի մի անյայտ օպերայի մասին, «Սովետական արուեստ», Երեւան, 1957, թիւ 2, էջ 49:

6.- Տե՛ս անդ, էջ 28:

7.- Տե՛ս Ferit Ragip Tuncor Տիգրան Չուխաճեան, Թարգմ. Պերճ Էրզիեան, «Քուլիս», հանդէս, Իսթանպուլ, 1 Դեկտեմբեր 1960, թիւ 23 (335), էջ 20:

8.- Վահրամ Բարունեան, նչ. յօդ.ը, էջ 13:

9.- Տե՛ս Գ. Ստեփանեան, նչ. յօդ.ը, էջ 28:

10.- Անդ, էջ 28:

11.- Այս ընդհանուր կորագիծէն դուրս է Ֆարուք Ենէրի տեղեկութիւնը, ըստ որում Թեմաչայը հիւնէր անունով խումբ մը ներկայացուցած է «Տիգրան Գալէմճեանի կողմէ գրի առնուած եւ Թոնի Կորոքի կողմէ դաշնաւորուած «Ինտիանա» անուն խաղը, որ օփերա մըն էր» (Ֆարուք Ենէր, Թուրք եւ հայ յարաբերութիւնները երաժշտական կեանքէն ներս, «Քուփըս», ամսագիր, Իսթանպուլ, Յունիս 1996, թիւ 1098, էջ 11): «Ինտիանա» խորագիրով ուրիշ օփերա մը ն՞ւս յօրինուած է արդեօք:

12.- Սիրվարդ Գարամանուկ Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէնութեան կ'ուղարկէ նամակ մը, ուր հանգամանօրէն կը բացատրէ ձեռագիրին գնումին եւ Հայաստան առաքումին պայմանները: Նամակը կը պահպանուի Թանգարանի Չուհաճեանի դիւանին մէջ, թիւ 151:

13.- Տե՛ս Գառնիկ Ստեփանեան, Տիգրան Չուխաջեանի նորայայտ օպերան, «Գարուն», ամսագիր, Երեւան, Ապրիլ 1977, թիւ 4, էջ 26-30:

14.- Տե՛ս Մաթեւոս Մուրադեան, «Ինդիանա» օպերայի կլաւիրի մասին, «Գարուն» ամսագիր, Երեւան, Ապրիլ 1977, թիւ 4, էջ 30-32:

15.- Յովսէփ Եազըճեան (1838-1893), դերասան, թատերագիր, թարգմանիչ: Ծնած է Կ. Պոլիս: Կրթութիւնը ստացած է Վենետիկի Մուրատ Ռափայէլեան վարժարանին մէջ: Խաղացած է պոլսահայ տարբեր թատերախումբերու հետ: Հեղինակն է ինքնուրոյն ու թարգմանուած թատերգութիւններու (իր մասին տե՛ս Գառնիկ Ստեփանեան, Կենսագրական բառարան, հատոր Գ, գիրք 1, Երեւան, 1990, էջ 97):

16.- Հայերէն թարգմանութիւնը մերն է, Հ. Ա.:

17.- Տե՛ս Գ. Ստեփանեան, Տիգրան Չուխաջեանի նորայայտ օպերան, էջ 27-28:

18.- Տե՛ս Մ. Մուրադեան, նչ. յօդ.ը, էջ 31-32:

19.- Գ. Ստեփանեան, նչ. յօդ.ը, էջ 28:

20.- Տե՛ս Ա. Տ., Տիգրան Էֆ. Չուհաճեան, «Արեւելեան մամուլ», Զմիւռնիա, 15 Մարտ 1898, թիւ 6, էջ 235:

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Առ ի գնահատութիւն թերթիս տարած ազգօգուտ գործունէութեան, Տէր եւ Տիկին Արա Քեօհնէլեան կը նուիրեն 30

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ի յիչատակ 1915 Ապրիլեան Մեծ Եղեռնի իր գերդաստանին եւ հայ ազգի համայն զոհերուն, Տիկին Աչխէն Թաժոյեան - Իչխանեան կ'ընէ հետեւեալ նուիրատուութիւնները.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 150 |
| «Այծեմնիկ Հանգստեան Տան» | 150 |
| «Արեւ»ին | 20 |
| «Յուսաբեր»ին | 20 |
| «Ջահակիր»ին | 20 |

(Ստանալ «Արեւ»էն)

### ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.-էն Աստղիկ Գէորգեանի «ՀԱՅ ՄԱՆՐԱՆԿԱՐԻՉՆԵՐ» մատենագիտութիւն IX - XIX դդ. գիրքը:

Լայնածաւալ հատորը՝ 823 էջ եւ ներդրուած 32 գունաւոր մանրանկարչութիւններով, որ կ'ընդգրկէ 464 մանրանկարիչներու համառօտ կենսագրութիւններն ու անոնց մանրանկարներու մատենագիտութիւնը:

Գիրքը հրատարակուած է Մաշտոցի անուան մատենադարանի գիտական խորհուրդի որոշումով: Տպագրութիւն Գահիրէի, «Նուպար» տպագրատուն՝ 1998-ին :

Սոյն արժէքաւոր գիրքը տըպուած է Գահիրէի Հ.Բ.Ը. Միութեան «Սաթենիկ Ճ. Չագըր» հիմնադրամի մեկենասութեամբ:

## ԱՏՐՊԷՅՃԱՆ ԿԸ ՄԵՂԱԴՐԷ ՉԻՆԱՍՏԱՆԸ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻՆ ԶԷՆՔ ՄԱՏԱԿԱՐԱՐԵԼՈՒ ՄԷՋ

1 *գիտական ներկայացուցիչ Ջիանկ Քիւոգիանկին, առարկելով Հայաստանին «Թայֆուն» տեսակի հրթիռներու համակարգ յանձնելուն:*

*«Չինաստանի նպատակը յստակ է. անոնք կ'ուզեն որ քարիւղը արեւելք փոխադրուի Չինաստանի վրայով»-. ըսած է Ատրպէյճանի նախագահի խորհրդական Վաֆա Կիւլիզատէ ու աւելցուցած-«Մենք կը պահանջենք որ այդ համակարգը անմիջապէս վերադարձուի Չինաստան:*

*Կիւլիզատէ Ֆրանսական մամլոյ գործակալութեան թղթակիցին յայտնած է թէ, հրթիռները Հայաստանի մէջ մնալու պարագային Ատրպէյճան վերատեսութեան պիտի ենթարկէ Չինաստանի հետ իր յարաբերութիւնները:*

## EXPO-2000 ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԻՆ ...

2 Նախապատրաստական աշխատանքների գործադիր Նարինէ Սահակեանի համոզմամբ, հայ ժողովուրդն աշխարհին ներկայացնելու շատ բան ունի եւ մասնակցութեան հիմնական թեման ունենալու է «Նոյեան Տապան»ի հետքերով ձեւակերպումը: «Նոյեան Տապան»ի տեսք ունեցող հայկական տաղաւարը կը գրաւի 3000 քառ. մետր տարածութիւն՝ կեդրոնական մասում, Վրաստանի եւ Մոլտովայի հարեւանութեամբ: Նաւը ներսում բաժանուած կը լինի մի քանի մասերի, ուր կը ներկայացուեն Հայաստանը բնորոշող պատմական կարեւոր նշանակութիւն կամ զարգացման հեռանկար ունեցող թեմա: Ն. Սահակեանը յայտնեց, որ առանձնակի ուշադրութիւն կը դարձուի թուրիզմի, կրթական համակարգի, առողջապահութեան, ինֆորմացիոն թէքնոլոժիաների եւ գիտական մշակումների ճիւղերին, որոնց ուղղութեամբ, Հայաստանը կարող է դառնալ տարածաշրջանային կեդրոն:

## ՄԱՀԱԶԴ

Տէր եւ Տիկին Ժոզէֆ եւ Ալիս Գասպարեան, Տիար Գրիգոր Շամլեան եւ զաւակները՝ Րաֆֆի, Մարալ եւ Յակոբ (Պէյրութ), Տէր եւ Տիկին Ազիզ եւ Ագնիւ Մրչրիֆի, Տէր եւ Տիկին Յակոբ եւ Արուսեակ Յակոբեան եւ զաւակները՝ Ալիս եւ Յակոբ , Տէր եւ Տիկին Խալէտ եւ Ժօժէնի Իսաի եւ զաւակները՝ Սանտրա եւ Մայքըլ, Տոքթ. Եուսէֆ եւ Նանսի Արչուն եւ դուստրը Անճէլա (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Պետուէն եւ Լուսի Պուսթանի եւ դուստրը՝ Մարի Ժոզէֆ (Պէյրութ), Գերչ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, Տիկին Արաքսի Աղաճանեան, ինչպէս նաեւ Բոյատ ընտանիք (Պոլիս), Դաւիթեան ընտանիք (Զուիցերիա), Գասպարեան, Յակոբեան եւ Շամլեան ընտանիքները կը ծանուցանեն մահը իրենց սիրելի մօր, մօրաքրոջ, մեծմօր եւ ազգականին, ողբացեալ՝

### ՍԻՐԱՐՓԻ ԱՍԱՏՈՒՐԵԱՆԻ
### (ԾՆԵԱԼ ՔԷՇԻՇԵԱՆ)

որ հանգեաւ ի Տէր, Չորեքչաբթի 12 Մայիս 1999-ի կէսօրին, իր բնակարանին մէջ եւ Հինգչաբթի 13 Մայիսին յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատան Ամենայն Սրբոց մատրան մէջ, եւ հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

*Այս փխուր առթիւ «Ջահակիր» իր խորազգած ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին հարազատներուն եւ ազգակից պարագաներուն:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հ.Բ.Ը.Մ.-ի Կեդրոնական Վարչական Ժողովը, ինչպէս նաեւ Եգիպտոսի շրջանակը ներկայիւս կը ծանուցանեն, թէ յառաջիկայ Կիրակի 23 Մայիս 1999ին, առաւօտեան ժամը 10.30-ին, յաւարտ Ս. Պատարագի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ հոգեհանգստեան մասնաւոր պաչտօն պիտի կատարուի Միութեան կրկնակի վեթերան եւ բարերար անդամուհի՝

### ՈՂԲ. ՍԱԹԵՆԻԿ ՃԱՆԻԿ ՉԱԳԸՐԻ
### (ԾՆԵԱԼ ԹՕՓԱԼԵԱՆ)

մահուան 17-րդ տարելիցին առթիւ:

Հ.Բ.Ը.Մ.ի եւ Հ.Մ.Ը.Մ.- Նուպարի մեծ ընտանիքի անդամներէն, ինչպէս նաեւ հանգուցեալ բարերարուհիին յիչատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ՅՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Կիրակի 27 Յունիս 1999

Մանրամասնութիւնները յաջորդիւ

Կը խնդրուի նկատի ունենալ

**ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՎԵՐԻՆ ՄԱՐՄԻՆ**

## ԱՂՔԱՏԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

### ՀՐԱՒԷՐ ՏԱՐԵԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ

Տարեկան անդամական ընդհանուր ժողովը տեղի պիտի ունենայ Ուրբաթ, 11 Յունիս 1999 կէսօրուայ ժամը 12-ին, Հոգաբարձութեան Կեդրոնատեղիին մէջ, 179 Ռամսէս Պողոտայ, Գահիրէ:

**ՕՐԱԿԱՐԳ.-**

1.- Ընթերցում եւ վաւերացում նախորդ տարեկան ընդհանուր ժողովի ատենագրութեան:

2.- Ընթերցում վարչութեան 1998 տարուայ գործունէութեան բարոյական տեղեկագրի:

3.- Ընթերցում վարչութեան 1998 տարուայ հաշուետուութեան:

4.- Վաւերացում 1999 տարեշրջանի նախահաշուի պիւտճէի:

5.- Ընտրութիւն հաշուեքննիչի 1999 տարուան համար:

6.- Ընտրութիւն վարչական 3 նոր անդամներու:

**ԾԱՆՕԹ.-**

Մեծամասնութիւն չգոյանալու պարագային, ժողովը կը յետաձգուի մէկ ժամով:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ ՄԵԼԳՈՆԵԱՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

### ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Կիրակի, 6 Յունիս 1999 երեկոյեան ժամը 6-ին

Հովանաւորութեամբ
**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**
Բարեխնամ Առաջնորդ Հայոց Եգիպտոսի

Նախագահութեամբ
**ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ ՍԱՄՈՒԷԼ ԽՈՒՆԿԱՆԵԱՆԻ**

Սիրալիր հրաւէր բոլորին

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1404 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 3 ՅՈՒՆԻՍ 1999 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. عدد رقم ١٤٠٤ — الخميس ٣ يونيو ١٩٩٩


ՀԱՅԱՍՏԱՆ

## «ՄԻԱՍՆՈՒԹԻՒՆ» ԴԱՇԻՆՔԸ ՅԱՂԹԱԿԱՆ՝ ՁԱՅՆԵՐՈՒ 42 ՏՈԿՈՍՈՎ

Մայիս 30-ին տեղի ունեցան Հայաստանի խորհրդարանական ընտրութիւնները, որոնք կոչուած էին ժողովուրդի քուէներով ստեղծելու երկրի օրէնսդիր ժողովը՝ խորհրդարանի նոր կազմը:

Կեդրոնական Ընտրական Յանձնաժողովի հաղորդած գրեթէ վերջնական, սակայն ոչ ամբողջական տուեալներուն համաձայն, Կարէն Դեմիրճեանի եւ Վազգէն Սարգսեանի գլխաւորած «Միասնութիւն» դաշինքը նորընտիր Ազգային Ժողովէն ներս պիտի կազմէ մեծամասնութիւն:



Ռոպերթ Քոչարեան

Համամասնական(կուսակցական) ցուցակներու ընտրութեան մէջ, «Միասնութեան» դաշինքին ի նպաստ քուէարկած են ընտրողներու աւելի քան 42 տոկոսը: Յաջորդ դիրքերու վրայ կու գան Հայաստանի Կոմունիստական Կուսակցութիւնը(12.4%), Հայ Յեղափոխական Դաշնակցութիւնը(7.8%), «Իրաւունք եւ Միաբանութիւն» դաշինքը(7.4%), «Օրինաց Երկիր» կուսակցութիւնը (5.6%) եւ Ազգային Ժողովրդավարական Միութիւնը(5.1%):



Կարէն Դեմիրճեան



Վազգէն Սարգսեան

Մեծամասնական(անհատական) կարգով ընտրուած 75 պատգամաւորներուն մէջ եւս մեծամասնութիւն կը կազմեն «Միասնութիւն» դաշինքի պաշտպանած թեկնածուները: Մեծամասնական ընտրութիւններու արդիւնքներուն մէջ յատկանշական էր ՀՀՇ-ի ղեկավար Վանօ Սիրադեղեանի յաղթանակը եւ այժմու Ազգային Ժողովի նախագահ Խոսրով Յարութիւնեանի պարտութիւնը: Մեծամասնական ընտրութիւններուն յաղթողներուն մէջ մեծ թիւ կը կազմեն գործարար-անկուսակցական թեկնածուներ եւ թաղային հեղինակութիւններ:

Քուէարկութեան ընթացքին հետեւող միջազգային դիտորդները ընդհանրապէս դրական գնահատեցին ընտրութիւնները՝ բարելաւում նկատելով նախորդներուն հետ համեմատած:

Օտար դիտորդներու, քուէարկողներու եւ քաղաքական կուսակցութիւններու գլխաւոր դժգոհութիւնը կը վերաբերի ընտրական ցուցակներուն մէջ ի յայտ եկած անճշդութիւններուն, որոնց պատճառաւ քուէատուփերու մօտ յառաջացած է իրարանցում եւ տասնեակ հազարաւոր քաղաքացիներ զրկուած են քուէարկելու իրաւունքէն:

Այս ուղղութեամբ մեղադրանքները ընդհանրապէս կ'երթան իշխանութեան ներքին օղակներուն, յատկապէս համայնքապետերուն ու թաղապետերուն, որոնց պարտականութիւնն էր ցուցակներու կազմութիւնը: Սակայն որոշ մեկնաբաններու կարծիքով, ներքին գործոց եւ ազգային անվտանգութեան նախարարութիւնը մեծ դեր ունի ցուցակներու աղաւաղումին մէջ, նպատակ ունենալով վարկաբեկելու «Միասնութեան» դաշինքը եւ նսեմացնելու անոր յաղթանակը, յատկապէս որ, ներքին գործոց եւ ազգային անվտանգութեան նախարար Սերժ Սարգսեան անուղղակիօրէն կը հովանաւորէր «Օրինաց Երկիր» կուսակցութիւնը:

Ընտրութիւնները տակաւին չաւարտած, շարք մը կուսակցութիւններ եւ քաղաքական գործիչներ հանդէս եկան յայտարարութիւններով՝ ընտրացուցակներու մէջ տեղ գտած մասսայական խախտումներուն պատճառաւ ընտրութիւնները անվաւեր հռչակելու պահանջով: Այդ գործիչներու շարքին էր Պարոյր Հայրիկեան, որու գլխաւորած Ինքնորոշում Միաւորում կուսակցութիւնը եւ ինք անձնապէս՝ դուրս մնացին նորընտիր խորհրդարանէն:

## ԵԱՀԿ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԲԱՒԱՐԱՐՈՒԱԾ ԵՆ

*1999թ Հայաստանի խորհրդարանական ընտրութիւնները ցոյց տուեցին, որ նախկին ընտրութիւնների համեմատ կան բարելաւումներ՝ ընտրութիւններն ընդհանրապէս անցան խաղաղ եւ կանոնաւոր կերպով, առանց աճաբեկչութիւնների, ասում է ԵԱՀԿ նախնական եզրակացութեան մէջ, որն այսօր հրապարակուեց միջազգային դիտորդական առաքելութիւնների համատեղ ասուլիսի ժամանակ:*

4

## ԱՄԵՐԻԿԱՑԻ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԴԺԳՈՀ ԵՆ

*Յունիս 1-ին ԱՄՆ Ազգային ժողովրդավարական ինստիտուտի (ԱԺԻ) դիտորդական պատուիրակութիւնը ներկայացրեց Հայաստանի խորհրդարանական ընտրութիւնների վերաբերեալ իր նախնական եզրակացութիւնը: ԱԺԻ-ի 18 հոգիանոց պատուիրակութիւնը Հայաստան է ժամանել մէկ շաբաթ առաջ եւ հնարաւորութիւն է ունեցել ծանօթանալ, բացի քուէարկութիւնից, նաեւ նախընտրական եւ ետընտրական իրավիճակին:*

*Պատուիրակութեան ղեկավար, դեսպան Նելսոն Լեդսկին հենց*

4

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՑՈՒՑԱԿՆԵՐՈՎ

| | | |
|---|---|---|
| 1.-«Միասնութիւն» | 416,461 | 42.7% |
| 2.-Կոմունիստական Կուսակցութիւն | 121,808 | 12.4% |
| 3.-ՀՅԴ | 76,927 | 7.88% |
| 4.-«Իրաւունք եւ Միաբանութիւն» | 72,327 | 7.41% |
| 5.-«Օրինաց Երկիր» | 55,032 | 5.64% |
| 6.-ԱԺՄ՝ | 50,607 | 5.18% |
| 7.-«Արժանապատիւ Ապագայ» | 31477 | 3.20% |
| 8.-«Կոմունիստական եւ Սոցիալիստական Կուսակցութիւնների Միութիւն» | 24645 | 2.50% |
| 9.-«Հզօր Հայրենիք» | 23430 | 2.40%, |
| 10.-«ԱԻՄ+» | 22645 | 2.32% |
| 11.-«Հայրենիք» | 12197 | 1.25% |
| 12.-ՀՀՇ | 11618 | 1.19% |
| 13.-«Ազատութիւն» | 10178 | 1.04% |
| 14.-Հայաստանի Երիտասարդական Կուսակցութիւն | 9953 | 1.02% |
| 15.-ՀԴԿ | 9953 | 1.02% |
| 16.-«Առաքելութիւն» | 7134 | 0.73% |
| 17.-ՀՌԱԿ | 6730 | 0.69% |
| 18.-«Ազատ Հայք Առաքելութիւն» | 6453 | 0.66% |
| 19.-«Ազգային Պետութիւն» | 5181 | 0.53% |
| 20.-«Սոցիալիստական Ուժերի եւ Մտաւորականների Միութիւն» | 2420 | 0.24% |
| 21.-«Շամիրամ» | 2134 | 0.21% |

*Այս արդիւնքներու հիման վրայ, 5 տոկոսը անցած կուսակցութիւնները խորհրդարանի 56 տեղերէն հաւանաբար ունենան հետեւեալ բաժինը.-*

| | |
|---|---|
| «Միասնութիւն» | 30 աթոռ |
| Կոմկուս | 8 աթոռ |
| ՀՅԴ | 6 աթոռ |
| Իրաւունք եւ Միաբանութիւն | 5 աթոռ |
| Օրինաց Երկիր | 4 աթոռ |
| ԱԺՄ | 3 աթոռ |

### ՄԵԾԱՄԱՍՆԱԿԱՆ ԿԱՐԳՈՎ

*Մեծամասնական կարգով ընտրութիւններուն խորհրդարանի 76 տեղերը բաժնուած են հետեւեալ ձեւով.-*

| | |
|---|---|
| «Միասնութիւն» | 35 աթոռ |
| Անկուսակցականներ | 29 աթոռ |
| ԱԺՄ | 2 աթոռ |
| Կոմկուս | 2 աթոռ |
| ՀՅԴ | 2 աթոռ |
| ՀՀՇ | 1 աթոռ |
| Առաքելութիւն | 1 աթոռ |

*Մնացեալ 4 տեղերու արդիւնքները տակաւին վերջնական չեն:*

ԹՈՒՐՔԻԱ

## ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ-ՊԱՏՐԻԱՐՔ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԵՏՐՈՍ ԺԸ. ՓԱՌԱՒՈՐ ԱՐԱՐՈՂՈՒԹԵԱՄԲ ԴԻՄԱՒՈՐՈՒԵՑԱՒ ԳՈՒՄԳԱԲՈՒԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՄԷՋ

Կաթողիկէ Հայոց Կաթողիկոս-Պատրիարք Ամեն. Տ. Յովհաննէս-Պետրոս ԺԸ., Մայիս 27-ին, պաշտօնապէս այցելեց Պատրիարքարան եւ Հրաշափառով Մայր Եկեղեցի առաջնորդուեցաւ: Բարի կամեցողութեան իմաստալից ուղերձներ արտասանուեցան եւ Պատրիարք Հայրն ու հիւր Կաթողիկոսը ողջագուրուեցան:

Բարձրաստիճան հոգեւորականները առաջնորդուեցան դէպի դաս, ուր անոնք գոհութեան աղօթքներ կարդացին: «Ուրախ Լեր Սուրբ Եկեղեցի» շարականէն վերջ բարձրաստիճան հոգեւորականները բարձրացան Խորան եւ Աւետարանի ընթերցումէն ետք, ողջոյնի խօսքը արտասանեց

3

## «ՋԱՀԱԿԻՐ» ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ ՀԻՄՆԱԴԻՐ ՀԱՅԿ ԺԱՄԿՈՉԵԱՆ ՈՉ ԵՒՍ Է

Յապաղումով եւ անհուն կսկիծով տեղեկացանք, որ անցեալ 7 Մարտ 1999-ին Մոնթրէալի մէջ, յետ երկարատեւ հիւանդութեան, 88 տարեկանին իր մահկանացուն կնքած է «Ջահակիր» շաբաթաթերթի հիմնադիր, նախկին արտօնատէր - խմբագիր, հրապարակագիր, վաստակաւոր լրագրող, գրաքննադատ, նախկին հայագիտական նիւթերու ուսուցիչ եւ հասարակական գործիչ՝ **ՀԱՅԿ ԺԱՄԿՈՉԵԱՆ**, խոր սուգի մատնելով իր ընտանեկան պարագաներն ու բարեկամները:

Հ. Ժամկոչեանի մահով համայն հայութիւնը կը կորսնցնէ մտաւորական դէմք մը, հմուտ լրագրող մը եւ հայ լեզուի ու գրականութեան մշակ մը: Հանգուցեալի կենսագրականին պիտի անդրադառնանք յաջորդիւ:

Այս տխուր առթիւ «Ջահակիր» իր խորազգած ցաւակցութիւնները կը յայտնէ ողբացեալի այրիին՝ Տիկին Գլէրին, զաւակներուն՝ Պր. Միքայէլ Ժամկոչեանի, Տէր եւ Տիկ. Լորիս Ժամկոչեանի եւ Տէր եւ Տիկ. Շահէն Ժամկոչեանի, ինչպէս նաեւ սգակիր բոլոր պարագաներուն:

ԷՋՄԻԱԾԻՆ

## Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա.-ի Առողջական Վիճակը Դանդաղ Կ'ընթանայ

*Ս. Էջմիածնի Մամլոյ Դիւանէն ստացուած հաղորդագրութենէ մը, կը տեղեկանանք թէ՝ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի ապաքինումը դանդաղ կ'ընթանայ եւ առայժմ Նորին Սրբութիւնը կարող չէ ծանր աշխատանք տանիլ:*

*Այս գծով Ս. Էջմիածնի մէջ Գերագոյն Հոգեւոր Խորհուրդը յատուկ նիստ մը գումարած է, ուր կոչ կ'ուղղեն մեր հաւատացեալ ժողովուրդին չարունակել աղօթել Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետին շուտափոյթ ապաքինման համար:*

*Առ այդ, Մամլոյ Դիւանը պաշտօնապէս հերքած է որ Հռոմի կաթոլիկ պետ Յովհաննէս-Պօղոս Բ. Պապի Հայաստանի այցը յետաձգուած է:*

*Խմբագրութիւնս եւս շուտափոյթ ապաքինում կը մաղթէ Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետին:*

## ՀՀ Դեսպան Սերկէյ Մանասարեան Ալճերիոյ Եւ Մարոքի Մօտ Եւս Դեսպան Նշանակուած Է

*Հայաստանի նախագահի մամլոյ գրասենեակէն յաջորդաբար հաղորդեցին՝ 27 եւ 31 Մայիսին, թէ նախագահ Ռոպերթ Քոչարեան հրամանագրերով, Եգիպտոսի մօտ ՀՀ լիազօր եւ արտակարգ դեսպան Սերկէյ Մանասարեան համատեղութեան կարգով նախ Ալճերիոյի Հանրապետութեան ապա Մարոքի Թագաւորութեան մօտ եւս Հայաստանի լիազօր եւ արտակարգ դեսպան նշանակուած է:*

## Ապտուլլահ Էօճալանի Դատավարութիւնը Սկսաւ

### ՓՔՔ.-ի Ղեկավարը Յայտնեց Թէ Հայաստանի Մէջ Ալ Ներկայացուցիչ Ունի, Սակայն Կապ Չի Պահեր Պետութեան Հետ

*Ապտուլլահ Էօճալանի դատավարութեան ընթացքին, ան ըսաւ որ 1980-ական թուականներուն ԱՍԱԼԱ-ի հետ կապեր հաստատած էր, բայց յետոյ այս կապերը ընդհատուեցան ԱՍԱԼԱ-ի ներքին քայքայման ու գործելակերպի տարբերութեան պատճառով:*

*Ան յայտնեց նաեւ թէ ՓՔՔ-էն Հայաստանի մէջ ներկայացուցիչներ ունի, բայց Հայաստանի պետութիւնը պաշտօնական կապ չէ հաստատեր: Միայն թէ արգելք ալ չ'ըլլար:*

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

# Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

## ԱՄԱՌՆԱՅԻՆ ՃԱՄԲԱՐ
## 1999

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Զագըր Ֆոնտը կը կազմակերպէ ամառնային ճամբար Հայաստանի մէջ 26 Յուլիսէն 23 Օգոստոս 1999 երկարող շրջանին:

Մասնակցութեան տարիք 17-27 տարեկան:

Մասնակցողներու թիւ 6-8 հոգի:

Մանրամասնութիւններու եւ յատուկ հարցարաններ լեցնելու համար դիմել՝

- Գահիրէի մէջ
Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի գրասենեակը
15 Էմատ Էլ-տին փողոց, Ա-յարկ, հեռ. 5919636
- Աղեքսանդրիոյ մէջ
Հ.Բ.Ը.Մ.ի Աղեքսանդրիոյ մասնաճիւղին

Դիմումներու վերջին թուականն է 15 Յունիս 1999:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԳԵՐԱԳՈՅՆ ՀՈԳԵՒՈՐ ԽՈՐՀՐԴԻ ԸՆԴԼԱՅՆՈՒԱԾ ՆԻՍՏԸ՝ ՄԱՅՐ ԱԹՈՌ ՍԲ. ԷՋՄԻԱԾՆՈՒՄ

2

կազմակերպման գործում մինչ այժմ կատարուած աշխատանքների ընթացքի մասին:

Նոյն օրը Գերագոյն Հոգեւոր Խորհրդի ժողովն աւարտեց իր աշխատանքը:

Ընդլայնուած նիստի աշխատանքներին մասնակցում էին Գերագոյն Հոգեւոր Խորհրդի անդամներ՝ Եգիպտոսի թեմի առաջնորդ Տ. Զաւէն Արք. Չինչինեանը, ԱՄՆ Արեւմտեան թեմի առաջնորդ Տ. Վաչէ Արք. Յովսէփեանը, Արեւմտեան Եւրոպայի Հայրապետական Պատուիրակ եւ Փարիզի առաջնորդ Տ. Գիւտ Արք. Նագաշեանը, Վիրահայոց թեմի առաջնորդ Տ. Գէորգ Արք. Սէրայտարեանը, Մայր Աթոռի Դիւանապետ Տ. Ներսէս Արք. Պոզապալեանը, Ծայրագոյն Արեւելքի Հայրապետական Պատուիրակ, Աւստրալիայի եւ Նոր Զելանդիայի առաջնորդ Տ. Աղան Արք. Պալիօզեանը, Գեղարքունեաց թեմի առաջնորդ Տ. Անանիա Արք. Արաբաջեանը, Ռուսաստանի թեմի առաջնորդ Տ. Տիրան Արք. Կիւրեղեանը, Արգենտինայի թեմի առաջնորդ Տ. Գիսակ Արք. Մուրադեանը, ԱՄՆ Արեւելեան թեմի առաջնորդ Տ. Խաժակ Արք. Պարսամեանը, Արցախի թեմի առաջնորդ Տ. Պարգեւ Եպս. Մարտիրոսեանը, Սիւնեաց թեմի առաջնորդ Տ. Աբրահամ Եպս. Մկրտչեանը, Ուկրաինայի թեմի առաջնորդ Տ. Նաթան Եպս. Յովհաննիսեանը, ինչպէս նաեւ Գերագոյն Հոգեւոր Խորհրդի աշխարհական անդամներ Պիոն Յակոբեանը, Ռաֆայէլ Պապայեանը եւ Վլադիմիր Բարխուդարեանը: Ժողովին մասնակցում էին նաեւ Գանատայի թեմի առաջնորդ Տ. Յովնան Արք. Տէրտէրեանը եւ Կրօնի Գործերի Խորհրդի Նախագահ Լազար Սուջեանը:

ՄԱՄԼՈՅ ԴԻՒԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌԻ

## «ՔԷՅՊԷՔԼԷՐ» ԵՒ «ՉԷՆԿԻԼԷՐ» ՕՓԵՐԷԹՆԵՐԸ

3

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1.- Հ. Սեւեան, Թատրոնի շուրջը, «Մուրճ», ամսագիր, Թիֆլիս, Ապրիլ 1898, թիւ 4, էջ 552:

2.- Տե՛ս Հ. Ս(իմոն) Երեմ(եան), Հայ Վերտին, «Բազմավէպ», Վենետիկ, Փետրուար 1899, էջ 81:

3.- Կրեսչենդօ, Մի փոքրիկ ակնարկ մեր երաժշտութեան մասին, «Մուրճ», ամսագիր, Թիֆլիս, Յունուար 1905, թիւ 1, էջ 127:

4.- Գառնիկ Ստեփանեան, Ուրուագիծ արեւմտահայ թատրոնի պատմութեան, հատոր երկրորդ, Երեւան, 1969, էջ 423:

5.- Մաթէոս Մուրադեան, Հայ երաժշտութիւնը XIX դարում եւ XX դարասկզբում, Երեւան, 1970, էջ 180:

6.- Ն. Թահմիզեան, Երաժշտութիւնը հայկական Կիլիկիայում, Երեւան, 1989, էջ 5-6:

7.- Ն. Կ. Թահմիզեան, Տիգրան Չուխաջեան, կեանքը, «Հանդէս ամսօրեայ», Հայագիտական ուսումնաթերթ, Վիեննա, Յունուար-Դեկտեմբեր, 1994, էջ 144:

8.- Իբր հետեւանք վերոյիշեալներուն, նոր երգարաններու մէջ «Ջէյթունցւոց քայլերգ»-ը հրատարակուեցաւ իբր Չուհաճեանի հեղինակութիւն (տե՛ս Ոսկեփորիկ, կազմեց եւ խմբագրեց Ն. Թահմիզեան, Երեւան, 1982, էջ 120: Ձայնագրեալ եւ պատկերազարդ յեղափոխական երգարան, խմբագրեց եւ կազմեց Կարապետ Հաննէսեան, Պէյրութ, 1984, էջ 63: Հայ երգանի, կազմող՝ Մ. Ջաւախք, Երեւան, 1985, էջ 124-125): Հին երգարաններուն մէջ հեղինակ նշուած չէ (տե՛ս Պատկերազարդ ձայնագրուած հայկական երգարան, երրորդ տպագրութիւն, աշխատակցութեամբ Ահարոն Մսրլեանի եւ ծանօթ երաժիշտներու, Կ. Պոլիս, Զարդարեան հրատարակութիւն, անթուակիր, էջ 66-67: Գանձարան հայկական երգերու, երաժշտական խմբագրութիւն՝ Ա. Պատմագրեան, Գահիրէ, անթուակիր, էջ 105-106):

9.- Իր մասին տե՛ս «Անահիտ», հանդէս, Փարիզ, Նոյեմբեր-Դեկտեմբեր 1899, թիւ 1-2, էջ 30:

10.- Տե՛ս Ատոլֆ Թալասօ, Թրքական ժամանակակից թատրոնը, «Անահիտ», հանդէս, Փարիզ, Դեկտեմբեր 1904, թիւ 12, էջ 195:

11.- Աշոտ Մաթաթեան, Տիգրան Չուհաճեան, «Անի», ամսագիր, Կ. Պոլիս, Յունիս 1946, թիւ 2, էջ 38:

12.- Ճիշդ է, գգուշութեամբ վերաբերուեցանք «Ինտիանա»-յի մասին Ա. Մաթաթեանի արտայայտած կարծիքին: Բայց այստեղ տարբեր է պարագան: «Ջէյպէքլէր»-ն ու «Ջէնկիլէր»-ը՝ ի տարբերութիւն «Ինտիանա»-յին, լայնօրէն տարածուած ստեղծագործութիւններ էին, որոնց ծանօթ պէտք է ըլլար թրքական թատերական կեանքով զբաղուող ոեւէ անձ:

13.- Ն. Պէշիկթաշլեան, Տիգրան Չուհաճեան, «Ակօս», ամսագիր, Պէյրութ, Մայիս-Յունիս-Յուլիս 1955, թիւ 5-6-7 (75), էջ 124:

14.- Անդ, էջ 133:

15.- Ֆարուք Ենէր, Թուրքեւհայ յարաբերութիւնները երաժշտական կեանքէն ներս, «Քուլիս», ամսագիր, Իսթանպուլ, Յունիս 1996, թիւ 1098, էջ 11:

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Ողբ. Սիրարփի Աստուրեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Տէր եւ Տիկին Արսէն Էմիրզեան կը նուիրեն 20

### ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

*Փառաւոր Գալուստեան մեր վարժարանին 1925-ի շրջանաւարտներէն եւ չորս տարի ալ բարձրագոյնի եւ երկրորդականի կարգերուն հայերէն լեզուի դասախօս՝ Ողբ.* ***ՀԱՅԿ ԺԱՄԿՈՉԵԱՆԻ*** *յիշատակին, իր հարազատները՝ մանկապարտէզի բոլոր սանիկներուն կը նուիրեն խաղալիք ընդհ. գումար 150 Ե.Ո.:*

*Ողբացեալին հարազատները այս համեստ նուէրը պիտի կրկնեն ամէն տարի՝ այնքան ատեն որ մեր դարաւոր վարժարանը գոյատեւէ եւ գործէ:*

## «ՈՒԻԼԻԸՄ ՍԱՐՈՅԵԱՆ ՄԱՐԴԸ ԳՐՈՂԸ» ...

3

անտարակոյս հիմքը կը կազմէ ֆիլմին յաջողութեան»:

Ուրեմն եթէ կ'ուզենք համայն աշխարհի ժողովուրդներուն առաւել եւս ծանօթացնել աշխարհահռչակ Սարոյեանը, պէտք է հարթուին բոլոր դժուարութիւնները եւ իրագործուի Փոլ Գալինեանի պատրաստելիք յաջորդ ֆիլմի ծրագիրը... :

Ա. Մ.

## ԵԱՀԿ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԲԱՒԱՐԱՐՈՒԱԾ ԵՆ

1

*Եզրակացութեան մէջ, որը ներկայացրեց* ***ԵԱՀԿ*** *դիտորդական առաքելութեան ղեկավար Տիկ. Թոնէ Թինսգաարդը, որպէս դրական ձեռքբերում է գնահատւում այն փաստը, որ իրական դաշտը չօգտագործուեց՝ արգելելու քաղաքական կուսակցութիւնների մասնակցութիւնը ընտրութիւններին, ինչպէս եղել է նախկինում: Նոր Ընտրական օրէնսգիրքը դարձեալ մի բարելաւում է նախկինի համեմատութեամբ եւ պարունակում է* ***ԵԱՀԿ*** *մի շարք առաջարկութիւններ:*

*Այնուամենայնիւ, մի շարք մտահոգութիւններ, որոնք արտայայտուել էին* ***ԵԱՀԿ*** *կողմից, հաստատուեցին նախընտրական փուլում եւ ընտրութիւնների օրը: Խօսքը մասնաւորապէս գնում է ընտրացուցակների ճշտութեան, ընտրական յանձնաժողովների կազմաւորման, տեղամասերում չլիազօրուած անձանց ներկայութեան եւ բազմաթիւ տեխնիկական եւ կազմակերպչական թերութիւնների մասին: Քուէարկութեանը զինուորականների մասնակցութեան կարգի ուշացումով սահմանումը եւ վատ կատարումը ունեցաւ այն հետեւանքը, որ նախկին ընտրութիւնների համեմատ պայմանների մէջ տեղի ունեցաւ միայն մասնակի բարելաւում:*

## ԱՄԵՐԻԿԱՅԻ ԴԻՏՈՐԴՆԵՐԸ ԴԺԳՈՀ ԵՆ

1

*սկզբում ասաց, որ չնայած արդար ընտրութիւն կազմակերպելու Հայաստանի հաւաստիացումներին, իրենց դիտարկումների տուեալներով, Հայաստանի «նախորդ ընտրութիւնների տխուր աւանդոյթը շարունակուեց նաեւ այժմ»՝ ընտրութիւններն անցան խախտումներով եւ օրէնքի խաթարումներով:*

*ԱԺՄ-ն իր նախնական եզրակացութեան մէջ նշում է, թէ «Հայաստանը եւս մէկ անգամ ձախողեց միջազգային չափանիշներին համապատասխան ընտրութիւն կազմակերպելու գործը»: ՀՀ իշխանութիւններին առաջարկւում է քննել բոլոր խախտումները, պատժել մեղաւորներին եւ եզրակացութիւնների հանգել:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Յառաջիկայ Կիրակի, 13 Յունիս 1999-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ:

Յաւարտ Ս. Պատարագի պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն, 1915-ին, Կ. Պոլսոյ մէջ կախաղան հանուած ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ նահատակութեան 84-րդ տարելիցին առթիւ:

Կը հրաւիրենք մեր բարեպաշտ ժողովուրդը ներկայ գտնուելու եւ աղօթելու նահատակներու հոգիներուն խաղաղութեան համար:

Սկիզբ ժամերգութեան առաւօտեան ժամը 8.-ին
Սկիզբ Ս. Պատարագի - - 10.-ին

Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

Կիրակի, 13 Յունիս 1999, առաւօտեան ժամը 10.30-ին

**ԳԱՀԻՐԷԻ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԻՆ ՄԷՋ**

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

## 1915-ԻՆ ՊՈԼՍՈՅ ՄԷՋ ԿԱԽԱՂԱՆ ՀԱՆՈՒԱԾ ՔՍԱՆ ՀՆՉԱԿԵԱՆՆԵՐՈՒ

**ՅԻՇԱՏԱԿԻՆ, ԱՆՈՆՑ ՆԱՀԱՏԱԿՄԱՆ 84-ՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ**

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը անխտիր, իր ներկայութեամբ յարգելու աննման հերոսներուն յիշատակը:

## ՏԽՐՈՒՆԻ

Տիկին Զարուհի Սարգիսեան եւ զաւակը Ռաֆֆի, Պր. Գէորգ Սարգիսեան, Օր. Անահիտ Սարգիսեան (Իտալիա) եւ համայն սգակիր պարագաները, ցաւ ի սիրտ կը ծանուցանեն յանկարծական մահը իրենց սիրելի մօր եւ մեծ մօր Ողբ՝

## ՆԱԶԻԿ ՍԱՐԳԻՍԵԱՆԻ
### (Ծնեալ Ասլանեան)

որ պատահեցաւ Երեքշաբթի 26 Մայիս 1999-ի առաւօտեան: Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցաւ նոյն օրը յ.մ. ժամը 2-ին, Մարմինայի Ս. Մինաս մատրան մէջ, ապա հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

*Այս փխուր առթիւ «Ջահակիր» իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին զաւակներուն եւ սգակիր բոլոր պարագաներուն:*

# ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Կիրակի 27 Յունիս 1999

Մանրամասնութիւնները յաջորդիւ

Կը խնդրուի նկատի ունենալ

ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՎԵՐԻՆ ՄԱՐՄԻՆ

## ԱԶՆԱՒՈՒՐ ՔԻՉ ՄԸ ՎՇՏԱՑԱԾ Է...

2

հարցն այն է որ մեզ կ'ընդունին որպէս նախկին նախագահի մարդիկը ...: Ես ո՛չ մէկ նախագահի մարդն եմ, այն, ինչ որ ես կ'ընեմ, ատիկա Հայաստանի համար է, ատիկա հայերու համար է։ Ով որ ալ ըլլայ Հայաստանի Նախագահը, ես պէտք է ընեմ նոյնը։ Ես կը փափաքիմ որ Հայաստանի այժմու Նախագահը ատիկա գիտնայ, որպէսզի ան ինծի հանդէպ ունենայ այն նոյն վերաբերումը, զոր ես ունիմ Հայաստանի հանդէպ»:

Երգիչը ընդգծած է նաեւ որ 1998ի նախագահական ընտրութիւններէն ետք, իր երկխօսութիւնը Հայաստանի իշխանութիւններու հետ առայժմ չի շարունակուիր եւ ինք 1998էն ետք չէ այցելած Հայաստան։

Ազնաւուր ըսած է որ ինք չունի յաջողութեան զգացում այն գործին մէջ, զոր կը փափաքէր իրականացնել Հայաստանէն ներս։ «Իմ դերս է զբաղիլ իմ հիմնարկութեան աշխատանքներով, սակայն ես կը փափաքիմ որ Հայաստանի այժմու իշխանութիւնները հասկնան, որ եթէ այդ խոչընդոտները չջնջուին, ես իմ գործունէութիւնը կը շարունակեմ այլ երկրի մը մէջ։ Ես կ'իրականացնեմ մարդասիրական ձեռնարկ մը, որ կը կոչուի «Ազնաւուրը Հայաստանին»։ Այդ ձեռնարկը կրնար կոչուիլ նաեւ «Ազնաւուրը Վրաստանին», Վրաստան իմ ծնողքիս ծննդավայրն է։ Վրացիներ շատ մեծ բան ըրած են ինծի համար. անոնք ամբողջովին վերականգնած են իմ հօրենական տունը։ Իմ ծնողքս ծագումով Վրաստանէն են։ Եւ ես որոշ բաներ պիտի ընեմ այդ երկրի համար։ Կովկասեան տարածքաշրջանի ապագային համար անհրաժեշտ է որ Հայաստան եւ Վրաստան քալեն ձեռք-ձեռքի», յայտարարած է Ազնաւուր։

Մեծ երգիչը յայտնած է նաեւ որ ինք Հայաստան պիտի այցելէ Հայաստան-Ֆրանսա ֆութպոլային փոխ-վրէժի խաղին։ «Ես պիտի օգտուիմ այդ այցելութենէն՝ Վրաստան այցելելու եւ իմ ծնողքի տունը տեսնելու, ինչպէս նաեւ ջավախքի հայերու հետ հանդիպելու համար», նշած է Ազնաւուր։



دار شورشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير

جريدة أسبوعية

ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR

Armenian Weekly

P.O.Box 2111 (Cairo),

Tel: 4530327, Fax:(202)4522282

E-mail: emarco@ritsec3.com.eg

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1405 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 17 ՅՈՒՆԻՍ 1999 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. عدد رقم ١٤٠٥ — الخميس ١٧ يونيو ١٩٩٩


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ**

## ՔՍԱՆՆԵՐՈՒ ԽՈՐ ՀԱՒԱՏՔԸ

*Յունիս 15. տօն Քսան կախաղան հանուած Հնչակեան հայորդիներու: Արդարեւ նշանակալից պատմական օր մը, որուն պիտի չմօտենանք սարսուռով, այլ անոր պատգամին բովանդակ խորհուրդը ըմբռնելու խորունկ գիտակցութեամբ:*

*Հայութեան ազատագրական պայքարին մէջ չկայ այնքան նշանակելի, այնքան ցնցող, որքան քսան կախաղաններու դէպքը: Եւ այդ՝ հակառակ իր կրած անմիջական ձախողանքին, դեռ եւս կը մնայ մեծ, հպարտացնող եւ յիշատակութեան արժանի:*

*Յանուն հայ ժողովուրդի ազատագրութեան կախաղան բարձրացան Հնչակեան Քսանները, ուր մահասիւնին առջեւ չունեցան զղջումի զգացում, ո՛չ վախ, չպահանջեցին նաեւ դատարանի ներման շնորհք:*

*84 տարիներէ ի վեր հայ ժողովուրդը ամէն տարի Յունիս 15-ին պահ մը կը մտամփոփուի եւ կը պատկերացնէ այն ծրագիրը, զոր գործադրել յանձն առին Փարամազները, Արամները ու Վանիկները, վասն հայրենիքի եւ հայ ժողովուրդի ազատագրութեան եւ իրենց թանկագին կեանքերը զոհաբերեցին այն խորանին առջեւ որուն լուսաւոր կանթեղին մէջ ամէն տարեդարձի հայ ժողովուրդը պարտի մշտավառութեան իւղը աւելցնել ու հաղորդուիլ այդ հերոսներուն գաղափարներով:*

*Անոնք կախաղան բարձրացան այն անբաստանութեամբ թէ՝ «Կուզէին Օսմանեան կայսրութեան հողերէն մաս մը անջատել եւ հայկական պետութիւն մը ստեղծել»: Զրպարտութիւն մը չէր Իթթիհատի այս անբաստանութիւնը, որովհետեւ Հնչակեան Կուսակցութիւնը բացայայտօրէն հրապարակ եկած էր ազատագրելու եւ պաշտպանելու հայ ժողովուրդի մարդկային եւ ազգային իրաւունքներն ու սեփական հողերը, որոնք թրքական եաթաղանին տակ ճզմուած կը մնային:*

*Օսմանեան կայսրութեան համար 1887 թուականէն Ս. Դ. Հնչակեան կուսակցութիւնը կը ներկայացնէր լուրջ վտանգ մը, որովհետեւ ան ըլլալով դրօշակակիրը հայ ազատագրական պայքարին, կ'ուռճանար յեղափոխականներով, որոնք կեանքի գնով կու գային խախտելու Օսմանեան կայսրութեան հիմքերը, կը քարոզէին ազատաշունչ գաղափարներ, որոնց նպատակը ուրիշ բան չէր, եթէ ոչ՝ Ամբողջական Հայաստանի գոյառումը: Այսպիսով ծնունդ կ'առնէր բուռն եւ ահալի գօտեմարտ մը Օսմանեան իշխանաւորներուն եւ Ս.Դ. Հնչակեան կուսակցութեան միջեւ: Բնականաբար տեղի կ'ունենային արիւնալի բախումներ երկուքին միջեւ: Եւ ահա կ'արձանագրուէին մեր պատմութեան յեղափոխական դրուագները Սասունի ու Զէյթունի մէջ, Պապը Ալիի եւ Գում Գաբուի մէջ, առաջնորդութեամբը Հնչակեան անձնուրաց գործիչներու: Վերջապէս Հնչակեան կուսակցութիւնը կը զօրանար ու կը ծաւալէր անհաւասար պայքարին մէջ, սարսափ ստեղծելով կայսրութեան մօտ: Այս հանգրուանին, Օսմանեան կայսրութեան ղեկը ստանձնած Իթթիհատականներ կը ծրագրէին բնաջնջումը ողջ ժողովուրդի մը: Այս հայաջինջ ծրագիրը չգործադրելու ուղղութեամբ, չկար այլընտրանք, բացի անձնազոհ խոյանքէ, որ ստանձնեց Ս.Դ. Հնչակեան կուսակցութիւնը: Ան չէր հաւատար 1908-ի թրքական սահմանադրութեան, որ վերջ տալով Սուլթանական բռնատիրութեան, կը յայտարարէր նոր կարգ ու սարք: Հետեւաբար կուսակցութեան նպատակը Մեծ եղեռնը կանխել էր: Եւ կարելի էր այդ, եթէ միայն հետեւելով Քսաններուն, հայութիւնը մէկ բռունցք կազմելով, ցցուէր Երիտ. Թուրքերու իշխանութեան դէմ:*

*Դժբախտաբար, անսպասելի դաւաճանութեան մը պատճառով թրքական կառավարութիւնը կ'իմանար Հնչակեան այդ յանդուգն որոշումը: Ուրիշ որոշում չկար եթէ ոչ՝ հալածանք հնչակեաններու դէմ: Փարամազի գլխաւորութեամբ կը ձերբակալուին 120 գործիչներ: 1915-ին կեղծ դատավարութենէ մը ետք անոնցմէ 22-ը կը դատապարտուին մահապատիժի: Եւ որովհետեւ անոնցմէ երկուքը՝ Սապահ Գիւլեան եւ Բ. Վարազդատ կը գտնուէին անհասանելի տեղեր, քսան ձերբակալեալները 1915 Յունիս 15-ին կը մահանային կախաղաններու ձողափայտերուն վրայ:*

*Այ՛ո, Քսանները մահացան, բայց կախաղաններու վրայէն աւետեցին հայ ժողովուրդի և հայրենիքի լուսաշող առաւօտը: Եւ իրաւամբ այդ խոր հաւատքը չուշացաւ իրականութիւն դառնալու: Անկախ Հայաստանի վերածնունդը իրականացած է այսօր, և իր լուսաշող արեւով կը ջերմացնէ մեր հոգիները:*

*Հնչակեան Քսանները ամբողջութեամբ կը պատկանին հայ ժողովուրդին, որովհետեւ անոնք իրենց կեանքը զոհեցին հայութեան համար:*

*Անգամ մը եւս հաղորդուինք ու ներշնչուինք հայ ժողովուրդի բոլոր արդար իրաւունքներու ստացման և պաշտպանութեան համար զոհուած վկաներուն մաքուր գաղափարականովը: Եւ այդ հաւատքով շարունակենք մեր ճանապարհը, հաւատալով որ վաղը, հայութիւնը ամբողջ, ի մայր Հայաստան և ի Սփիւռս աշխարհի, իր արժանի յարգանքը պիտի մատուցանէ անոնց, որոնք կախաղան բարձրացան ու նահատակուեցան, որպէսզի հայը ապրի:*

*Պէտք է իրագործենք քսան հերոսներու կտակը, որ է՝ պաշտպանել հայրենիքը Ամբողջական Հայաստանի հաստուցումով:*

*Փա՛ռք Քսաններու անթառամ յիշատակին:*

## ՀԱՅ-ԱԶԵՐԻ ԶԻՆԵԱԼ ՈՒԺԵՐՈՒ ՈՒԺԵՂ ԲԱԽՈՒՄ՝ ՂԱՐԱԲԱՂԻ ՀԻՒՍԻՍ-ԱՐԵՒԵԼԵԱՆ ՀԱՏՈՒԱԾԻՆ ՎՐԱՅ

14 Յունիսի առաւօտուն, Ատրպէյճանական զինեալ ուժերը փորձած են մուտք գործել Լեռնային Ղարաբաղի հիւսիս-արեւելեան հատուածէն ներս, Մարտակերտ շրջանի Հոռաթաղ գիւղի մերձակայքը:

Ղարաբաղի բանակի պատասխան կրակէն ետք, հակառակորդը ստիպողաբար նահանջած է: Հայկական բանակէն ծանրապէս վիրաւորուած են երկու զինուորներ, զոհուածներու մասին տակաւին տեղեկութիւններ չեն փոխանցուած: Ներկայիս կը ճշդուին միջադէպի մանրամասնութիւնները:

Միւս կողմէ, ԻԹԱՐ-ԹԱՍՍ գործակալութեան Պաքուի թղթակիցը հրապարակած է հաղորդագրութիւն մը, ըստ որու, կ'ըսուի թէ Ատրպէյճանի զինեալ ուժերը սահման անցնելու նպատակաւ գրոհ մը չեն կազմակերպած եւ հայկական զինեալ ուժերն են, որ աւելի քան չորս ժամ տեւողութեամբ գրոհի մը ձեռնարկած են Ատրպէյճանի Թարթառ շրջանի ազերի զօրամասերու ուղղութեամբ: Ատրպէյճանի Պաշտպանութեան նախարարութեան համաձայն, հայկական զինեալ ուժերը, մօտաւորապէս 300 զինուորներէ բաղկացեալ, երեք անգամ փորձ կատարած են յարձակում կազմակերպելու, օգտագործելով հրաձիգներ, ականանետներ եւ գնդացիներ: Նոյն աղբիւրը հաղորդած է նաեւ որ գրոհները կասեցնելու պահուն զոհուած են ատրպէյճանցի երկու զինուորներ եւ վիրաւորուած՝ չորս ուրիշներ: «Հակառակորդի կորուստները զգալիօրէն աւելի են», նշուած է Ատրպէյճանի Պաշտպանութեան նախարարութեան հաղորդագրութեան մէջ: Ատրպէյճան այս միջադէպի ամբողջ պատասխանատուութիւնը բեռցուցած է հայկական կողմին վրայ:

Ղարաբաղի Պաշտպանութեան նախարարութիւնը վճռաբար հերքեց Ատրպէյճանական Պաշտպանութեան նախարարութեան կողմէ հրապարակուած այն յայտարարութիւնը, ըստ որու, իբր թէ յարձակումի ձեռնարկած են հայկական զինեալ ուժերը եւ միջադէպի ամբողջ պատասխանատուութիւնը պէտք է ստանձնէ հայկական կողմը:

## ԱՄԵՐԻԿԱ ՀՐԱԴԱԴԱՐԸ ՊԱՀՊԱՆԵԼՈՒ ԿՈՉ ՈՒՂՂԵՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ

14 Յունիսին զինեալ ուժեղ բախում մը պատահած էր Ղարաբաղի եւ Ատրպէյճանի սահմանին վրայ:

Արձագանգ հանդիսանալով սահմանային այս տխուր միջադէպին, Ամերիկա հրադադարը պահպանելու կոչ ուղղեց Հայերուն եւ Ատրպէյճանցիներուն:

Ամերիկայի արտաքին նախարարութեան խօսնակ՝ Ճ. Ռուպին յայտարարեց հետեւեալը. «Մենք կը վերահաստատենք զինադուլը պահպանելու այն յորդորը, զորս անցեալ շաբաթ կողմերուն յղեցին ԵԱՀԿի Մինսքեան Խմբակի համանախագահները: Այդ զգայուն տարածքաշրջանին մէջ որեւէ միջադէպ կը պարունակէ ռազմական գործողութիւններուն վերսկսելու վտանգ մը, հետեւաբար ամէնէն առաջ մենք կը շեշտենք որ անհրաժեշտ է բանակցութիւններ վարել Մինսքեան Խմբակի շրջագծով հակամարտութեան համապարփակ եւ ճկուն լուծում մը գտնելու նպատակաւ»:

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ԻՐ ԱՆԴՐԱՆԻԿ ՆԻՍՏԸ ԳՈՒՄԱՐԵՑ

16 Յունիսին, Երեւանի մէջ իր անդրանիկ նիստը գումարեց Հայաստանի նոր կառավարութիւնը: Նիստի բացումը կատարեց Նախագահ Ռոպերթ Քոչարեան, որ շնորհաւորեց եւ արդիւնաւէտ գործունէութիւն մաղթեց կառավարութեան անդամներուն: Նշեց որ նոր կառավարութեան մաս կը կազմեն Հայաստանի ամէնէն կարող ուժերը:

Իր կարգին, Վարչապետ Վազգէն Սարգսեան եւս շնորհաւորեց նոր նշանակուած կառավարութեան անդամները, հաւաստիացնելով որ նոր Նախարարները պիտի արդարացնեն Նախագահի եւ ժողովուրդի վստահութիւնը:

(Կառավարութեան նոր կազմը տեսնել էջ 2)

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ՌՈՊԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆ Կ'ԸՆԴՈՒՆԻ

### Համահայկական Խաղերու Համաշխարհային Կոմիտէի Անդամները

16 Յունիսին, Հայաստանի նախագահ Ռոպերթ Քոչարեան ընդունեց Համահայկական Խաղերու կոմիտէի 3րդ նստաշրջանի մասնակիցները: Ողջունելով Համահայկական Խաղեր Կազմակերպելու գաղափարը, նախագահը զայն նկատեց որպէս գործնական քայլ մը՝ Սփիւռք-Հայաստան փոխ-յարաբերութիւններու մէջ: Ռ. Քոչարեան յատկապէս ընդգծեց որ ներկայիս աշխատանքներ կը տարուին Հայաստանի մէջ կազմակերպուող զանազան հանդիսութիւններու ընթացքին Սփիւռքահայութեան գործօն մասնակցութիւնը ապահովելու ուղղութեամբ:

Համահայկական Խաղերու Համաշխարհային Կոմիտէի նախագահ Աշոտ Մելիք-Շահնազարեան համառօտ կերպով ներկայացուց նախապատրաստական աշխատանքներու գործընթացը:

Հանդիպումի աւարտին, նախագահ Քոչարեան նշեց որ պետութիւնը ամէն կերպով իր աջակցութիւնը պիտի ցուցաբերէ Համահայկական Խաղերու Կազմակերպչական աշխատանքներուն:

## ՀՌՈՄԻ ՊԱՊԻ ԱՆՁՆԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ ԳԱՐԵԳԻՆ Ա. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ՝ ՅԵՏԱՁԳՈՒԵՑԱՒ

Յովհաննէս-Պօղոս Բ. Պապը, որ պաշտօնական այցելութեամբ Լեհաստան կը գտնուէր, 18 Յունիսին քանի մը ժամուան համար Մայր Աթոռ պիտի մեկնէր Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսին զուտ անձնական այցելութիւն մը տալու նպատակաւ:

Սակայն Մայր Աթոռի Մամլոյ Դիւանը երէկ հաղորդեց որ Հռոմի Պապի առժամեայ տկարութեան հետեւանքով, Սրբազան Քահանայապետի 18 Յունիսին նախատեսուած անձնական այցելութիւնը Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսին, յետաձգուած է:

Մայր Աթոռի Մամլոյ Դիւանը կը հաղորդէ թէ Հռոմի Պապը յոյս յայտնած է որ մօտ ապագային պիտի կարենայ իրականացնել էքիմէնիք ուխտագնացութիւն դէպի Հայաստան:

**ԳԱՀԻՐԷ**

## ՈԳԵԿՈՉՈՒՄ ՔՍԱՆ ԱՆՄԱՀՆԵՐՈՒՆ

Անցեալ Կիրակի 13 Յունիս 1999-ի առաւօտեան, Ս. Գրիգոր Լուսաւորիչ մայր տաճարին մէջ, ի յուշ 1915 Յունիս 15-ին, Պոլսոյ Պայազիտ հրապարակին վրայ կախաղան բարձրացուած Քսան Հնչակեան նահատակներու 84-րդ տարելիցին, Ս. Պատարագ մատուցուեցաւ եւ տեղի ունեցաւ Հոգեհանգիստ, ի ներկայութեան գաղափարի ընկեր - ընկերուհիներու, համայնքի ներկայացուցչական դէմքերու եւ համակիրներու:

Օրուան պատարագիչն էր թեմիս բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, որ խօսեցաւ յաւուր պատշաճի քարոզ մը, արժանին մատուցելով հերոսներուն: Սրբազան Հայրը անդրադարձաւ թէ Քսան անմահներուն երազանքը իրականացած է այսօր ազատ եւ ինքնիշխան հայրենիքի գոյութեամբ: «Քսաններու անսասան հաւատքն էր որ զիրենք մղեց արհամարհելու մահը ի խնդիր անկախ Հայաստանի» յարեց Գերաշնորհ Ս. Հայրը:

Հոգեհանգստեան արարողութենէն ետք, Ազգ. Առաջնորդարանի դահլիճին մէջ հաւաքուեցան ներկաները, ուր կրկին արծարծուեցաւ թէ քսան հերոսները իրենց կեանքը զոհեցին հայ ժողովուրդին ազատագրութեան համար:

Ապա Հելիոպոլսոյ մէկ շքեղ ճաշարանի մը մէջ, ոգեկոչումը շարունակուեցաւ գաղափարի եւ համակիրներու հանդիպումով, ներկայութեամբ Առաջնորդ Սրբազան Հօր: Աւարտին, Սրբազան Հայրը ոգեկոչելով Քսաններու յիշատակը, վեր առաւ անոնց անըմբռնելի նուիրաբերումը յանուն հայ ժողովուրդի գոյատեւման:

Յաւերժական յարգանք հայրենիքի վերելքին համար նահատակուող բոլոր արիներուն:

Ա.

ԼԻԲԱՆԱՆ

## ԱՍՄՈՒՆՔԻ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅ

*Կիրակի 2 Մայիսի երեկոյեան, Յակոբ Տէր Մելքոնեան Թատերասրահի մէջ, լիբանանահայ ծանօթ ասմունքողուհի Անի Եփրեմեան Հայ ժողովուրդի տառապանքը, պատմութիւնը, վերածնունդը, Արցախի ազատագրական պայքարը, Հայրենիքի գաղափարականին նուիրականութիւնը, Հայ գրականութեան ծաղկաքաղով մը ներկայացուց մշակութային հանրութեան, ուր ներկայ էին դեսպան Արման Նաւասարդեան, Ս.Դ.Հ.Կ.ի նախագահ Վահրիճ Ճէրէճեան, Լիբանանի Հայոց Առաջնորդ Գեղամ Ծ. Վրդ. Խաչերեան, երեսփոխաններ Աբրահամ Տէտէյեան եւ Եղիկ Ճէրէճեան, հոգեւոր հայրեր եւ գրասէր ներկաներ: Անի Եփրեմեան, համադրելով Ե. Չարենցի, Յ. Շիրազի, Ս. Կապուտիկեանի եւ այլոց ստեղծագործութիւնները, Հայ գրականութեան ճոխ հանդէս մը սարքեց սրահէն ներս, գործակցութեամբ իր դուստրին՝ Քրիստինի եւ պարմանի արուեստագէտներու:*

*Սոյն բացառիկ երեկոյին առթիւ, ընկ. Վ. Ճէրէճեան իր գնահատանքի անկեղծ խօսքը ուղղած է շնորհալի ասմունքողուհիին, զոր կը հրատարակենք իր շահեկանութեան համար:*

***ԽՄԲ.***

Ուզեցի հրապարակաւ ուղղել քեզի իմ գնահատանքի խօսքը, որը վստահ եմ, կ՚արտայայտէ բազմահարիւր հանդիսականներու զգացումները, որոնք բախտն ու հաճոյքը ունեցան տեսնելու, լսելու եւ ըմբոշխնելու քու մակարդակով բարձր արուեստի բեմադրուած ասմունքը Կիրակի, 2 Մայիս 1999ի երեկոյեան Յակոբ Տէր Մելքոնեան հանդիսասրահին մէջ:

Նախ կը շնորհաւորեմ քեզ որ անձնական նախաձեռնութեամբ եւ արուեստագէտ գործակիցներով, դուն կրցար ասմունքի արուեստի հասցնել բարձր մակարդակի:

Դուն կրցար քու հայրենասիրական կտակով վարարել ներկաները եւ արուեստիդ ուժով լիցքաւորել յեղափոխական հոգին հայուն:

Դուն կրցար նաեւ ջրել այն տարածուող կարծիքը թէ Հայ ժողովուրդը չի հետաքրքրուիր արուեստով ու մշակոյթով: Ես այդ օրը տեսայ թէ ինչպէս Հայ ժողովուրդը կը սիրէ արուեստն ու մշակոյթը որոնց ծառան ունի եւ որոնք դրական ներգործութիւն ունին ազատատենչ մեր ժողովուրդին հոգիներուն մէջ:

Դուն գիտցար ու կարողացար քու արուեստով ցոյց տալ Հայ ժողովուրդի պայքարի զէնքերը:

Ապրիս Անի: Շնորհաւորելով քեզ, կը մաղթեմ որ դուն շարունակես նուաճել նոր բարձունքներ:

ՎԱՀՐԻՃ ՃԷՐԷՃԵԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱՐՑԱԽԻ ԹԵՄԻ ԱՌԱՋՆՈՐԴԻՆ՝ ԱՐՔՈՒԹԵԱՆ ՀՈԳԵՒՈՐ ԱՍՏԻՃԱՆ

*Ինչպէս յայտնի դարձաւ «Նոյեան Տապան» գործակալութեանը, Յունիսի 6-ին Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Առաջինի որոշմամբ Արցախի թեմի առաջնորդ Պարգեւ Եպիսկոպոս Մարտիրոսեանին Հայ Առաքելական եկեղեցուն մատուցած մեծ ծառայութիւնների համար շնորհուել է Արքեպիսկոպոսի հոգեւոր աստիճան:*

*Նոյն օրը Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնում Պարգեւ Մարտիրոսեանը պատարագ է մատուցել ի նշանաւորումն Արցախի թեմի գործունէութեան վերականգնման 10-ամեակին:*



*Պարգեւ Արք. Մարտիրոսեան*

## ՅՈՅՆԵՐՆ ԱԿՆԿԱԼՈՒՄ ԵՆ, ՈՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՈՐ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԸ Կ'ԸՆԴՈՒՆԻ ՅՈՅՆԵՐԻ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

*1916 թուականի Մայիսի 19-ին, այնուհետեւ յաջորդ տարում Պոնթոսի շրջանում, երիտթուրքական նոյն կառավարութիւնը, որը մէկ տարի առաջ իրագործել էր Հայերի ցեղասպանութիւնը, սկսեց նաեւ յոյների ցեղասպանութիւնը: Այստեղ այդ ժամանակ մօտաւորապէս մէկուկէս միլիոն յոյն էր բնակւում, որոնց մի մասին Թուրքերը կոտորեցին, միւս մասին ծովը լցրեցին, այսպիսով ոչնչացնելով 400-600 հազար մարդու:*

*Յոյների ցեղասպանութեան օրն ընդունուել է Յունաստանի կառավարութեան կողմից, եւ սպասւում է, որ կ'ընդունուի նաեւ Հայաստանի կառավարութեան կողմից:*

*Յունիսի 3-ին այս միտքը քննարկուեց Հայաստան-Յունաստան ընկերութեան նախաձեռնութեամբ կայացած հանդիպման ժամանակ: Հաւաքում հանդէս եկաւ Հայաստանում Յունաստանի արտակարգ եւ լիազօր դեսպան Ջօգրաֆօս Պանայոտիսը, որն անդրադարձաւ Հայերի եւ յոյների աւանդական բարեկամական կապերին, մասնաւորապէս նշելով, որ այսօրուայ պայմաններում կարեւոր խնդիր է դառնում դարասկզբին Հայերի, յոյների եւ Թուրքիայի տարածքում բնակուած այլ քրիստոնեաների ցեղասպանութեան ճանաչման հարցը, առանց որի մարդկութիւնը չի կարող առաջընթաց քայլ կատարել դէպի երրորդ հազարամեակ:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ՄԵԾ ՇՈՒՔՈՎ ՊԻՏԻ ՆՇՈՒԻ ԱՒԵՏԻՔ ԻՍԱՀԱԿԵԱՆԻ ԾՆՆԴԵԱՆ 125-ԱՄԵԱԿԸ

Հայ նշանաւոր բանաստեղծ Աւետիք Իսահակեանի ծննդեան 125ամեակը 2000ին արժանաւորապէս տօնելու նպատակով, այս օրերուն անդուլ աշխատանքի լծուած են Երեւանի Աւետիք Իսահակեանի տուն-թանգարանի աշխատակիցները: Թանգարանի տնօրէն՝ Յասմիկ Մելքոնեան տեղեկացուց որ նախապատրաստական աշխատանքներու շրջագծով պիտի կատարուի թանգարանի շէնքի հիմնական վերանորոգութիւն, պիտի կատարուի թանգարանին նուիրուած գրքոյկներու տպագրութիւն եւլն.: Նշելով որ Աւետիք Իսահակեան իր հաստատուն տեղն ու դերը ունի ո՛չ միայն հայ, այլ նաեւ համաշխարհային գրականութեան մէջ, Տիկին Մելքոնեան յայտնեց որ Ա. Իսահակեանի տուն-թանգարանը միշտ ճակատաբաց ձեւով ընդունած է թէ՛ տեղացի եւ թէ արտասահմանցի հիւրերը:

# ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՀԱՅԱՍՏԱՆ ՊԱՏՐԱՍՏ Է ԴԱՐՄԱՆԵԼՈՒ «ԷՅԾ»ԷՆ ՎԱՐԱԿՈՒԱԾ ԱԶԵՐԻ ՀԻՒԱՆԴՆԵՐԸ

Անցեալ շաբաթավերջին, Երեւանի «ԷՅԾ»ի բուժման կեդրոնի տնօրէն՝ Լեւ Զօհրապեան յայտարարեց, որ հակառակ հայ-ատրպէյճանական քաղաքական տարակարծութիւններուն, իր կեդրոնը պատրաստ է բուժելու «ԷՅԾ»էն վարակուած ազերի հիւանդները: Զօհրապեան, հաստատելով, որ «ԷՅԾ»ը խիստ վտանգաւոր եւ լուրջ հիւանդութիւն մըն է եւ կրնայ մահուան առաջնորդել ենթական, յայտնեց, որ եթէ հայ բժիշկները ձախողին սոյն հիւանդութեամբ տառապող ազերի հիւանդը ազատել, ապա հարցը քաղաքականօրէն կրնայ մեկնաբանուիլ: Ըստ Զօհրապեանին, իր գլխաւորած կեդրոնին մէջ արդէն իսկ դարմանուած է ռուս զինուոր Նիքոլայ Գոլէսնիքովը եւ «ԷՅԾ»էն վարակուած 20 ուրիշներ: Այս առիթով հրապարակուած յայտարարութեան մէջ, Լեւ Զօհրապեան կը տեղեկացնէ, թէ ցարդ կեդրոնին մէջ կը դարմանուին «ԷՅԾ»էն վարակուած 44 հիւանդներ, որոնց մեծամասնութիւնը հայեր են:

Ներկայիս, «Արմենիքում»ով դարմանուող 20 հիւանդներու ո՛չ արեան եւ ոչ ալ բջիջներուն մէջ «ԷՅԾ»ի ժահրեր յայտնաբերուած են: Դեղը մինչեւ այսօր ո՛չ մէկ կողմնակի բարդութիւններ առաջացուցած է:

## ՄՕՏ ԱՊԱԳԱՅԻՆ ՀՐԱՊԱՐԱԿ ՊԻՏԻ ՀԱՆՈՒԻ «ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ՀԱՅ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՆԵՐԸ» ՄԱՏԵՆԱՇԱՐԸ

Հայաստանի Ճարտարապետութեան ազգային թանգարան-կեդրոնի նախաձեռնութեամբ, մօտ օրէն հրապարակ պիտի հանուի «Արտասահմանի հայ ճարտարապետները» մատենաշարը: Թանգարանի տնօրէն՝ Աշոտ Գրիգորեան նշեց որ մատենաշարը պիտի բաղկանայ 30 հատորներէն, իր մէջ ներառնելով հայկական բոլոր գաղթօճախներու, ինչպէս նաեւ զանազան երկիրներու մէջ ապրող եւ ստեղծագործող հայ ճարտարապետներու ստեղծագործական ժառանգութիւնը: Դիտել տուաւ որ իւրաքանչիւր հատոր պիտի նուիրուի որեւէ գաղթօճախի ճարտարապետութեան, սակայն կրնայ ըլլալ որ կարգ մը հատորներ ամբողջութեամբ ներկայացնեն ճարտարապետի մը ստեղծագործութիւնը: Հատորները պիտի հրատարակուին հայերէն եւ անգլերէն ծանօթագրութիւններով, պիտի ունենան հանրագիտարանային եւ տեղեկատուական բնոյթ: Առաջին հատորը, որ պիտի նուիրուի իրանահայ ճարտարապետութեան, պիտի հրատարակուի 2000ի գարնան:

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀԸ ԱՄԵՐԻԿԱՑԻ ԳՈՐԾԱՐԱՐ ՃՈՆ ՀԱՆԹՍՄԱՆԻՆ ՅԱՆՁՆԵՑ ՀՀ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՊԱՐԳԵՒԸ

Յունիսի 8-ին «Հանթսման» գորպորացիայի նախագահ Ճոն Հանթսմանին ընդունեց ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանը:

Հանրապետութեան նախագահը Ճ.Հանթսմանին յանձնեց ՀՀ բարձրագոյն պարգեւը՝ «Սուրբ Մեսրոպ Մաշտոց» շքանշանը, որով պրն. Հանթսմանը 1988թ. Դեկտեմբերի 7-ի երկրաշարժից յետոյ Հայաստանին ցուցաբերած օգնութեան եւ Հայաստանի տնտեսութեան զարգացման գործում ունեցած ➪ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀ ԿԱՐԷՆ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԳԻԾԵՐԸ

Կարէն Տէմիրճեան ծնած է 1932ին, Երեւան: 1954ին շրջանաւարտ եղած է Գարլ Մարքսի անուան Փոլիթէքնիք Ինսթիթիւտէն:

1955ին սկսած է անդամակցիլ Համայնավարական Կուսակցութեան:

1974ի Նոյեմբերէն սկսեալ ստանձնած է Հայաստանի Համայնավարական Կուսակցութեան (ՀՀԿ) Ա. քարտուղարի պաշտօնը:

Պարգեւատրուած է Աշխատանքային Կարմիր դրօշի երկու (1966, 1971) եւ Հոկտեմբերեան յեղափոխութեան (1976) շքանշաններով:

1988ին ազատ արձակուած է ՀՀԿի Ա. Քարտուղարի պաշտօնէն:

1991-1999 թուականներուն եղած է Երեւանի «Հայէլեկտրամեքենայ» գործարանի գլխաւոր տնօրէնը:

1998ին Կարէն Տէմիրճեան որպէս թեկնածու մասնակցեցաւ նախագահական ընտրութիւններուն, անցաւ ընտրութիւններու երկրորդ հանգրուան եւ պարտուեցաւ այժմու նախագահ Ռոպերթ Քոչարեանէն:

1998ին Կ. Տէմիրճեան հիմնեց Հայաստանի Ժողովրդական Կուսակցութիւնը (ՀԺԿ): Հիմնադիր համագումարի ընթացքին ընտրուեցաւ որպէս կուսակցութեան նախագահ:

1999ի Խորհրդարանական ընտրութիւններուն ՀԺԿն եւ Հայաստանի Հանրապետական Կուսակցութիւնը կազմեց «Միասնութիւն» ճակատը:

## ՎԱՐԶԱՊԵՏ ՎԱԶԳԷՆ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԳԻԾԵՐԸ

Վազգէն Սարգսեան ծնած է 1959ին, Արարատ գիւղին մէջ: 20 տարեկանին աւարտած է Երեւանի մարզանքի պետական հիմնարկը, որմէ ետք, 4 տարի ուսուցչութեամբ զբաղած է: 1986-89 տարիներուն, աշխատած է «Գարուն» ամսագրի կազմէն ներս, իբրեւ գրող-հրապարակագիր: 1985 թուականէն սկսեալ անդամակցած է նախկին Խորհրդային Միութեան Գրողներու Միութեան: 1988էն ի վեր աշխոյժ մասնակցութիւն բերած է Ղարաբաղեան շարժումին: 1990-92, եղած է «Երկրապահ» Կամաւորական Միութեան հրամանատար: 1990ին ընտրուած է որպէս Գերագոյն Խորհուրդի անդամ եւ ղեկավարած պաշտպանութեան յանձնաժողովը: 1992ին, իրեն յանձնուած է պաշտպանութեան նախարարի պաշտօնը: 1993-95ական թուականներուն վարած է Պետական նախարարի պաշտօն: 1995ին կրկին անցած է Պաշտպանութեան նախարարի պաշտօնին, զոր կը վարէր մինչեւ այսօր:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀԻ ԽՕՍՆԱԿԸ ՀՐԱՊԱՐԱԿԵՑ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՆՈՐ ԿԱԶՄԸ

### Հայաստանի Կառավարութիւնը Կը Բաղկանայ 25 Նախարարներէ

Երէկ, Հայաստանի Նախագահի խօսնակ՝ Վահէ Գաբրիէլեան, մամլոյ ասուլիս մը սարքելով, հրապարակեց նոր կառավարութեան կազմը, որ կը բաղկանայ 25 նախարարներէ: Նոր Նախարարները հետեւեալներն են.

Վազգէն Սարգսեան - Վարչապետ

1.- Սերժ Սարգսեան- Ազգային Անվտանգութեան նախարար (նախապէս Ներքին Գործոց եւ Ազգային Անվտանգութեան նախարարն էր, սակայն նախարարութեան բաժնուելէ ետք, ստանձնած է Ազգային Անվտանգութեան նախարարի պաշտօնը)

2.- Հայկ Նիկողոսեան- Առողջապահութեան նախարար (նոյնը մնացած է)

3.- Դաւիթ Յարութիւնեան - Արդարադատութեան նախարար (նոյնը մնացած է)

4.- Հայկ Գէորգեան - Արդիւնաբերութեան եւ Առեւտուրի նախարար (նոյնը մնացած է)

5.- Վահան Շիրխանեան - Արտադրական Ենթակառոյցներու Գործունէութիւնը Համակարգող նախարար

6.- Վարդան Ոսկանեան - Արտաքին Գործոց նախարար (նոյնը մնացած է)

7.- Գէորգ Վարդանեան - Բնապահպանութեան նախարար (փոխարինած է Սարգիս Շահպազիզեանին)

8.-Գագիկ Շահպազեան - Գիւղատնտեսութեան նախարար (փոխարինած է Վլատիմիր Մովսիսեանին)

9.-Արմէն Դարբինեան - Տնտեսութեան նախարար (նախկին վարչապետը փոխարինած է Եդուարդ Սանդոյեանին)

10.- Դաւիթ Զադոյեան - Ուժանիւթի նախարար (նոյնը մնացած է)

11.- Շահէն Գարամանուկեան - Կառավարութեան Աշխատակազմի Ղեկավար (նոյնը մնացած է)

12.- Եդուարդ Ղազարեան - Կրթութեան եւ Գիտութեան նախարար (փոխարինած է Լեւոն Մկրտչեանին)

13.- Ռոլանդ Շառոյեան - Մշակոյթի, Երիտասարդութեան հարցերու եւ Մարզանքի (նոյնը մնացած է)

14.- Սուրէն Աբրահամեան - Ներքին Գործոց նախարար (Հայաստանի նախկին Քաղաքապետ)

15.-Վաղարշակ Յարութիւնեան - Պաշտպանութեան նախարար (փոխարինած է Վազգէն Սարգսեանին)

16.- Սմբատ Այվազեան - Պետական Եկամուտներու նախարար

17.- Փաւէլ Ղալթախչեան - Սեփականաշնորհման նախարար (նոյնը մնացած է)

18.-Ռազմիկ Մարտիրոսեան - Ընկերային Ապահովութեան նախարար (փոխարինած է Գագիկ Եգանեանի)

19.- Ստեփան Մնացականեան - Վիճակագրութեան, Պետական կառուցուածքի եւ Վերլուծութեան նախարար

20.-Խոսրով Յարութիւնեան - Տարածքային Կառավարման նախարար (Ազգային Ժողովի նախկին նախագահ):

21.- Երուանդ Զաքարեան - Փոխադրութեան նախարար (նոյնը մնացած է)

22.- Ռուբէն Տօնոյեան - Կապի եւ Հեռահաղորդակցութեան նախարար (փոխարինած է Արտակ Վարդանեանին)

23.-Հրայր Յովհաննիսեան - Քաղաքաշինութեան նախարար (փոխարինած է Ֆէլիքս Փիրումեանին)

24.- Լէոնարդ Պետրոսեան - Գործողական Հարցերու նախարար

25.- Լեւոն Պարխուտարեան - Ելեւմուտքի նախարար (փոխարինած է Եդուարդ Սանդոյեանին)

Ի պատասխան լրագրողներու հարցումներուն, նախագահի մամլոյ քարտուղար՝ Վահէ Գաբրիէլեան նշեց, որ նոր կազմաւորուած պետական եկամուտներու նախարարութիւնը պիտի կատարէ հարկային տեսչութեան եւ մաքսային վարչութեան պարտականութիւնները:

# ՊԱՅԱԶԻՏ

## 1915, ՅՈՒՆԻՍ 15

Կարծես այնտեղ էի ես՝ Պայազիտի բարձունքին,
- Հրապարակ չէր ան, ո՛չ, այլ բարձո՜ւնք մը լուսաւոր-,
Կարծես այնտեղ էի ես այդ առաւօտ, ու լրիւ
Տեսայ ծագի՛լն արեւին՝ մինչ դեռ մո՜ւթ էր ամէն կողմ:

Դեռ հեռուէն լսեցի քայլերն անոնց երկաթէ՝
Ժամանակի ժայռին դէմ յաւերժօրէ՛ն քանդակուող,
Ապա տեսայ թէ ինչպէս անոնք ելան դէպի վեր՝
Հորիզոնին դէմ՝ անբիծ դէմքե՛րն իրենց գծելով:

Կարծես այնտեղ էի ես... Անոնք կանգնած էին մեծ
Բանակի՜ մը պէս անյաղթ՝ զրահուած լոկ ոգիով,
Քսա՞ն էին - ո՛չ հազար, անթի՛ւ էին ու կարծես
Կը բազմանար աններհատ՝ այդ բանա՜կը գրոհող:

Անպատմելի ժպիտ մը կար շրթներուն դէմ անոնց
- Յա՞ւ էր, կարօ՞տ, տառապա՞նք, մնաք բարո՞վ մը վերջին,
Թէ վաղն իր մէջ պարփակող անմեռ երա՜զ մը բոսոր,
Երազի պէս թեւածող՝ յաղթութեան ե՛րգ մը անգիր:

Նայուածքներուն մէջ անոնց՝ նահանջի դող չտեսայ,
Հպարտութիւնը այնտեղ առկայծող բո՜ց էր անշէջ,
Միայն ոմանց կոպերուն տակ կար արցո՛ւնք քարացած,
- Ջահել էին ա՜խ այնքան, ու կեանքը քա՛ղցր էր այնպէս:

Աղջամուղջին մէջ ինծի՝ կախաղանները գուժկան՝
Լոյսէ սիւնե՜ր թուեցան՝ դէպի երկինք խոյացող,
Կախաղաններն այդ պահուն երկնքին դէմ ծառացան,
Դարձան պահա՜նջ հատուցման, ու բռնութեա՛ն դէմ բողոք:

Կարծես այնտեղ էի ես... Այդ ի՛նչ անլուր հրաշքով՝
Արեւն յանկարծ ծագեցաւ, մինչ մթութի՜ւն էր չորս դին,
- Քսան աստղեր լուծուեցան աստղաբոյլի՛ն մէջ Հայոց՝
Ճառագայթեն որպէսզի ամէ՛ն գիշեր վերստին:

Ու ես մինակ մնացի... Դարձեալ մո՜ւթ էր անթափանց,
Դարձեալ ցա՛ւ կար ու արիւն՝ ակօսին մէջ Նայիրեան,
- Այլ դարերով եւ ընդմիշտ մեր հողին մէջ անթեղուած
Հատիկներուն հետ ոսկի՝ բո՛ւռ մը նոր հունտ կար հիմա:

Պայազիտի բարձունքէն՝ ես վաղուան հո՜ւնձքը տեսայ...:

*Պէյրութ, Յունիս 1965* ԳԱՌՆԻԿ ԱԴԴԱՐԵԱՆ




**ՓԱՐԱՄԱԶ**
**ԱՐԱՄ ԱՉԸԳՊԱՇԵԱՆ**
**ՌՈՒԲԷՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ**
**ՏՈՔԹ. ՊԷՆՆԷ**
**ՎԱՆԻԿ**
**ՀՐԱՆԴ ԵԿԱՒԵԱՆ**
**ՄՈՒՐԱՏ ՂԱԶԱՐԵԱՆ**
**ՅՈՎՀ. ՏԷՐ ՂԱԶԱՐԵԱՆ**
**ԹՈՎՄԱՍ ԹՈՎՄԱՍԵԱՆ**
**ԵՐՈՒԱՆԴ ԹՕՓՈՒԶԵԱՆ**
**ՄԻՆԱՍ ՔԷՇԻՇԵԱՆ**
**ՅԱԿՈԲ ՊԱՍՄԱՃԵԱՆ**
**ԱԲՐԱՀԱՄ ՄՈՒՐԱՏԵԱՆ**
**ՄԿՐՏԻՉ ՄՈՒՐԱՏԵԱՆ**
**ՍՄԲԱՏ ԳԼԸՃԵԱՆ**
**ԳԱՐԵԳԻՆ ՊՕՂՈՍԵԱՆ**
**ԱՐՄ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ**
**ԵՐԵՄԻԱ ՄԱՆՈՒԿԵԱՆ**
**ԳԱՌՆԻԿ ՊՕՅԱՃԵԱՆ**
**ՊՕՂՈՍ ՊՕՂՈՍԵԱՆ**

## Փարամազի Պատգամներէն



*ՓԱՐԱՄԱԶ*

**Հայը անգամ մըն ալ պիտի մեռնի, որ Հայը ապատ ապրի:*

**Հոն ուր կախաղաններն են ճօճում, Ազատութիւնն է ման գալիս, հոն՝ ուր մեռելներն են ննջում, Յարութիւնն է մօտալուտ:*

**Մենք թագաւորութեան ցանկացող չենք եղած երբէկ, չենք՝ այսօր, պիտի չցանկանք եւ վաղը: Մեր ցանկութիւնն է՝ ստեղծել Հայաստան մը՝ Սոցիալիստական վարչակարգով, ուր բնակիչները՝ առանց ցեղի եւ դաւանանքի խտրութեան, ապրին սիրով, եղբայրաբար, ապատ՝ քաղաքական եւ տնտեսական ճնշումներէ:*

1915 թուի Յունիս 10-ին Հինգշաբթի օր, կ'արձակուի 20 Հնչակեաններու մահավճիռը, որ գործադրութեան կը դրուի հինգ օր ետք, Երեքշաբթի, Յունիս 15-ին Պոլսոյ Սուլթան Պայազիտի հրապարակին վրայ:

Ինչպէս կեանքի մէջ, նոյնպէս ալ մահուան ճամբուն վրայ, Փարամազ առաջնորդը կ'ըլլայ իր ընկերներուն: Եւ առաջին անգամ վինք կը տանին ու կը կախեն... : Ապա հերթով՝ իր միւս 19 ընկերները:

ՀԱՅԱՍՏԱՆ

## «Պարմանի» Ուսանողական Հիմնադրամի Համահայկական Չորրորդ Վեհաժողով

### Յուլիս 16-22, 1999

**ՍԻՐԵԼԻ ՀԱՅՈՐԴԻ**

«**ՊԱՐՄԱՆԻ**» ուսանողական համազգային բարեգործական հիմնադրամն արդէն երեք անգամ (1996 - 1997 - 1998 թուականներին) հրաւիրել է Երեւանում համահայկական ուսանողական վեհաժողովներ ***«Հայաստանը համայն հայութեան հայրենիքն է»*** նշանաբանով:

Սոյն վեհաժողովները, ինչպէս վկայում են փաստերը, հայ ուսանողութեանը Հայրենիքի շուրջ համախմբելու ամենակարեւոր միջոցառումներն են, որոնց արդիւնքներն առաւել ակնյայտ կը դրսեւորուեն առաջիկայ տարիներին:

Ամփոփելով անցեալ երեք վեհաժողովների դրական արդիւնքը եւ նրանց պարբերականութեան վերաբերեալ վեհաժողովների ընդունած որոշումները, «**ՊԱՐՄԱՆԻ**» հիմնադրամը 1999թ. Յուլիսի 16-22-ը քաղաքամայր Երեւանում հրաւիրում է Համահայկական Ուսանողական Չորրորդ Վեհաժողովը:

Վեհաժողովի ընթացքում կը ներկայացուեն եւ կ'արծարծուեն հետեւեալ հարցադրումներն ու խնդիրները.

1.-Սփիւռք - Հայրենիք - Արցախ կապերը,

2.-Հայ ուսանողութեան ժամանակակից հիմնահարցերն ու խնդիրները,

3.-Ուսանողական համահայկական միասնական խորհրդի վերջնական կազմաւորումը:

Ակնկալւում է խորհել նշուած թեմաների շուրջ եւ հանդէս գալ զեկուցումներով, ինչպէս նաեւ առաջարկութիւններով:

Վեհաժողովի շրջանակներում նախատեսւում են շրջագայութիւններ Հայրենիքում եւ Արցախում, երեւանեան եւ արտազնայ նիստեր, «Կլոր սեղան» հանդիպումներ ՀՀ կառավարութեան անդամների, Ազգային Ժողովի պատգամաւորների, բարձրագոյն ուսումնական հաստատութիւնների ռեկտորների, ինչպէս նաեւ անուանի մարդկանց հետ:

Ճանապարհածախսը վեհաժողովի պատուիրակի հաշուին է, իսկ կեցութեան, սննդի եւ շրջագայութիւնների հոգսը առանձնում է «**ՊԱՐՄԱՆԻ**» հիմնադրամը:

Մինչեւ Յուլիսի 15-ը եւ Յուլիսի 22-ից յետոյ ծախսերը հիւրերի հաշուին են:

Խնդրում ենք մինչեւ ս.թ. Յունիսի 25-ը ներկայացնել վեհաժողովին մասնակցելու Ձեր համաձայնութիւնը ՀՀ դեսպանութիւններին կամ հիւպատոսութիւններին՝ տեղում:

Մեզ կարելի է դիմել 56-04-43 քաղաքային եւ 71-36 կառավարական հեռախօսահամարներով:

**ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՈՒՍԱՆՈՂԱԿԱՆ**
**ՉՈՐՐՈՐԴ ՎԵՀԱԺՈՂՈՎԻ ԿԱԶՄԿՈՄԻՏԷ**

ԳԱՀԻՐԷ

# «ԶՈՒԱՐԹՆՈՑ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ»Ն ՈՒ ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ԳԵՂԵՑԻԿ ՀԱՄԵՐԳԸ

«Պըլըքտանեան» հանդիսասրահի բեմը զարդարուած էր գունագեղ արեւածաղիկներով այդ երեկոյ, ուր բեմեզրի շողշողուն լոյսերուն տակ, գարնանային համերգն էր որ կը սկսէր երաժշտասէր հոծ հասարակութեան մը ներկայութեան:

Կիրակի 9 Մայիսի գիշերը զուարթ են բոլորը, որովհետեւ այդ գարնանային օրը «Զուարթնոց» եռամեայ քառաձայն երգչախումբը իր մենակատարներով, կրկին ելոյթ պիտի ունենար գեղարուեստական վայելքի երեկոյ մը հրամցնելու ներկայ հասարակութեան:

Հանդիսութիւնը կազմակերպութիւնն էր Գահիրէի Ազգ. Իշխանութեան, որ կը հովանաւորէր եգիպտահայոց բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան եւ կը նախագահէին Գահիրէի Թեմական Ժողովի յարգելի ատենապետ Պր. Անդրանիկ Մեսրոպեան եւ իր ազնիւ տիկինը: Բացի օրուան նախագահներէն՝ ներկայ էին Եգիպտոսի մօտ ՀՀ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան, Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեան, հանգամանաւոր ազգայիններ, մամուլի ներկայացուցիչներ:

Նախքան համերգը սկսիլը, յանուն Ազգ. Իշխանութեան, կուռ բացման խօսքով ելոյթ կ'ունենար Քաղաքական Ժողովի անդամ՝ Պր. Գրիգոր Մարգարեան: Ան գովեստով կ'անդրադառնար երգչախումբի տարած գործունէութեան եւ անոր ղեկավար, հայրենի արուեստագէտ, Երեւանի Ալ. Սպենդիարեանի անուան երաժշտական դպրոցի տնօրէն, միջազգային մրցոյթներու դափնեկիր՝ դոցենտ Դաւիթ Զալեանի եւ իր շնորհալի տիկնոջ՝ մանկավարժ դաշնակահարուհի Իրինայի մասին: Ան յայտնեց թէ «Զուարթնոց» երգչախումբը անցնող երեք տարիներու ընթացքին, հանդէս եկած է 12 փայլուն համերգներով, որոնցմէ երկուքը՝ օտար հասարակութեան առջեւ:



*«Զուարթնոց» Երգչախումբը ելոյթի պահուն*

Պր. Մարգարեանի շնորհաւորական խօսքերէն ետք, կը սկսէր յայտագրի առաջին մասը, որ յատկացուած էր խումբի մենակատարներուն: Առանց բացառութեան բոլոր կատարողներն ալ ուշագրաւ ելոյթներ ունեցան, որոնք իսկապէս դրուատանքի արժանի են: Առաջին հերթին ելոյթ կ'ունենար բոլորիս ծանօթ մեներգչուհի Լիզա Քրէտեան: Ան յաջողաբար խոր ապրումով երգեց «Ուռին», «Քելէ քելէ»ն եւ «Անուշի երգը», որոնք մեծապէս գնահատուեցան ներկաներէն: Հոս փակագիծը բանանք եւ յայտնենք, թէ Լ. Քրէտեան ունենալով բեմի հասունութիւն, աչքառու էր իր մուտքն ու ելքը, երգ մը սկսելու եւ վերջացնելու կամ խոնարհելու կենսական կատարումները: Ուստի նորեկ մենակատարներուն կը մնայ սորվիլ այս տարրական ժեստերը, եթէ կ'ուզեն յարատեւել եւ արժեցնել իրենց մեներգիչի կոչումը:

Ապա իր հրապուրիչ ձայնով հանդէս կու գար Սերժ Սէտէֆճեան եւ կը կատարէր «Ինծի համար դուն էիր» հայկական ժողովրդական երգը, խլելով ներկայ հասարակութեան բուռն ծափահարութիւնները: Մարի Օզիրիս՝ նոր դէմք մը մենակատարներու շարքին, որ հաճելի հնչերանգով մեզի հրամցուց «Երազ» ժողովրդական երգը:

Յաջորդ ելոյթ ունեցողը՝ որ գրաւիչ իր ձայնով կը գերէր ներկայ ունկընդիրները՝ Սեդա Ալեքսանեանն էր: Ան երգեց «Սիրոյ երգը» եւ Աշուղ եմ ես» մեծ խանդավառութիւն ստեղծելով ներկաներուն մօտ:

Ապա երգարուեստի հաւատարիմ հետեւողներէն՝ Սիլվա Թէրզիպաշեան առաջ կու գար ծափերու ընդմէջէն եւ իր գեղեցիկ ձայնով կը յաջողէր առաւել եւս ջերմացնել մթնոլորտը: Ան յաջողաբար կը կատարէր «Երբ խանդում ես ինձ», «Ասում են թէ մոռացել ես» եւ «Օջախում» հաճելի երգերը: Ապա Սեդայի հետ միասին, զուգերգով կը գեղգեղէին Հեքիմեանի «Հայոց տառեր» հայրենասիրական երգը, խորապէս ոգեւորելով ներկայ հասարակութիւնը: Հուսկ ուրեմն, Սիլվայի հրամցուած «Սիրոյ ամառ» երգը վերջ կը դնէր առաջին բաժնի հոգեպարար երգերու փունջին, հրահրելով ներկայ հանդիսականները:

Չմոռնանք նշելու որ բոլոր երգերուն դաշնակի նուագակցութեամբ մշտանորոգ սիրով, ելոյթ կ'ունենար Իրինա Հայրապետեան - Զալեան, եւ շատ մը ժողովրդական երգերու թմբուկի համաչափ կատարումով իր մասնակցութիւնը կը բերէր Ռուբէն Թէրզիպաշեան, որոնք առաւել փայլ մը կու տային հայադրոշմ երգերուն:

Կարճ դադարէ մը ետք կը սկսէր երկրորդ բաժինը, որ ամբողջութեամբ կը կատարէին երգչախումբի երկսեռ անդամները: Անոնք ճաշակաւոր տարազներ հագած, նուիրուածութեամբ եւ ինքնավստահութեամբ կ'երգէին: Արդարեւ գեղեցիկ երգեցողութիւն մը յառաջ բերելով, անոնք մեզի պարգեւեցին վայելքի պահեր: Ամէն մի անդամ ճիգ չէր խնայեր իր լաւագոյնը տալու այդ գիշեր: Իրենց խմբավարին առաջնորդութեամբ, անոնք ելոյթ կ'ունենային Պապաջանեանէն, Կոմիտասէն, Յովհաննէսեանէն եւ այլ ժողովրդական սրտագրաւ երգերով, որուն աւարտին ներկայ ունկնդիրները որոտընդոստ ծափահարութիւններով կը յայտնէին իրենց ջերմ գնահատանքը:

Մենք ալ մեր կարգին, կը յայտնենք մեր գոհունակութիւնը, գեղարուեստական ղեկավար՝ Դաւիթ Զալեանին, որ իր ժրաջան ջանքերուն շնորհիւ «Զուարթնոց երգչախումբ»ը կը շարունակէ իր նուաճումները: Գնահատանքի խօսք ունինք նաեւ Տիկ. Զապէլ Տեփոյեանի, բեմի պարզ եւ սակայն պատշաճ ձեւաւորման առիթով:

Շնորհակալ աշխատանք, որուն համար կը մաղթենք նորանոր յաջողութիւններ:

ԱՊԱՀՈՒՆԻ




# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

**TCHAHAKIR**
**Armenian Weekly**
P.O.Box 2111 (Cairo),



Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg



Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1406 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 1 ՅՈՒԼԻՍ 1999 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. عدد رقم ١٤٠٦ — الخميس ١ يوليو ١٩٩٩


# ՀԱՄԱՅՆ ՀԱՅՈՒԹԻՒՆԸ ՍՈՒԳԻ ՄԷՋ

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԵՐԱՆԱՇՆՈՐՀ ԿԱԹՈՂԻԿՈՍ Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա.-Ի ԱՆԺԱՄԱՆԱԿ ԿՈՐՈՒՍՏԸ ՑՆՑԵՑ ԱՇԽԱՐՀԱՍՓԻՒՌ ՀԱՅՈՒԹԻՒՆԸ

### ՀԱՆԳԻՍՏ
### Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ
### Գերագոյն Հոգեւոր Խորհուրդը Քառասնօրեայ Սուգ Յայտարարեց

Խոր վշտով յայտնում ենք, որ Մայր Աթոռ Սբ. Էջմիածնի Վեհարանում Յունիսի 29-ին, Երեքշաբթի, ժամը 17:50-ին, անժամանակ, կեանքի 67-րդ տարում ի Տէր հանգեաւ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսը՝ երկարատեւ և ծանր հիւանդութիւնից յետոյ:



Ամենայն Հայոց 131-րդ Հայրապետը Լուսաւորչի Աթոռին բազմեց 1995թ. Ապրիլի 4-ի ազգային - եկեղեցական արբազումար ժողովի ընտրութեամբ՝ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան 18-ամեայ գահակալի հարուստ փորձառութեամբ: Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսը Մայր Աթոռ Սուրբ Էջմիածնում քառամեայ հովուապետութեան տարիներին իմաստութեամբ ու անսակարկ նուիրումով հովուեց Հայաստանեայց Առաքելական Սբ. Եկեղեցին: Նորին Սրբութիւնը Մայր Հայրենիքի, Արցախի և աշխարհասփիւռ մեր ժողովրդի հոգեւոր վերազարթօնքի, հզօրութեան ու միասնութեան սրբազան առաքելութեանը ծառայեցրեց իր եռանդն ու անխոնջ ջանքերը, խօսքն ու գործը:

«Հարկ ի վրայ մեր կայ» պարտքի կզացումով իր հայեացքը յառած քրիստոնէութիւնը Հայաստանում պետական կրօն հռչակման 1700-ամեայ դարակազմիկ յոբելեանին, Հայոց Հայրապետն արդիւնաւորեց հովուապետութեան կարճատեւ իր շրջանի իւրաքանչիւր օրն ու ժամը: Վերակազմուեցին Հայ Եկեղեցու թեմերը Հայաստանում և ԱՊՀ երկրներում: Ընդարձակուեց եկեղեցաշինութիւնը՝ վերանորոգուեցին և բարեկարգուեցին խոնարհուած եկեղեցիներ ու վանքեր, կառուցուեցին նորերը: Գէորգեան Ճեմարանի նորոգեալ յարկից ներս հասունացաւ հոգեւոր սպասաւորների նոր սերունդ: Աշխուժացաւ և ընդարձակուեց Քրիստոնէական Դաստիարակութեան ու Քարոզչութեան Կենտրոնի գործունէութիւնը: Գործել սկսեց Օշականի «Սբ. Մեսրոպ Մաշտոց» նորաբաց դպրատունը: Արգասաբեր եղաւ Մայր Աթոռի հրատարակչական գործունէութիւնը՝ հրատարակութեամբ աստուածաբանական և հայագիտական աշխատութիւնների, որոնց շարքում՝ Վեհափառ Հայրապետի մեծարժէք գրքեր ու գրուածքներ: 1700-ամեակի շրջագծում Մոսկուայի Գրեմլում, Վատիկանում և աշխարհի այլ քաղաքներում բացուեցին եկեղեցական արուեստի ցուցահանդէսներ, կազմա-

☞ 4

### ՀԱՆԳԻՍՏ

Երանաշնորհ Տ.Տ. Գարեգին Ա.
Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսի
Որ պատահեաց 29 Յունիսի յերեկոյի ժամու
Ի Մայրավանս եւ ի Ս. Աթոռն Էջմիածնի
Յամի Տեառն 1999
Ողորմած Աստուած,
Հանգոյ զհոգի Հայրապետին մերոյ
Ի լոյս փառաց եւ երեսաց Աստուածութեան քո
Եւ միշտ անշարժ պահեա զԱթոռ Հայկազնեայս:

**ԴԻՒԱՆ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

*Ներքոյիշեալ հեռագիրը Գահիրէի Ազգային Իշխանութեանց կողմէ ղրկուեցաւ՝*

**Մայր Աթոռ Ս. Էջմիածին, Գերաշնորհ Տ. Գարեգին Արքեպսկ. Ներսիսեանին**

*Գերաշնորհ Սրբազան Հայր,*

*Ամենախոր ցաւով իմացանք Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոս Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Հայրապետի վախճանման մասին: Հայաստանեայց եկեղեցիին եւ մեր համայն ժողովուրդին կրած սոյն մեծ կորուստին առջեւ, կը յայտնենք մեր վշտակցութիւնը եւ կը մաղթենք որ Հայրապետական Աթոռը անսասան մնայ, Հայց. եկեղեցին ալ պայծառ:*

| | |
|---|---|
| **ԼԵՒՈՆ ԳԱՂԹԱՑԵԱՆ** | **ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ** |
| **Ատենապետ** | **Ատենապետ** |
| **Թեմական Ժողովի** | **Թեմական Ժողովի** |
| **Աղեքսանդրիա** | **Գահիրէ** |

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը խոր վշտով տեղեկացնում է, որ Յունիսի 29-ին կեանքից հեռացաւ Նորին Սուրբ Օծութիւն Տէր Տէր Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսը:*

*Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Վեհափառի յուղարկաւորման արարողութիւնը տեղի կ'ունենայ Հինգշաբթի, Յուլիսի 8-ին, ժամը 10.00-ին, Սուրբ Պատարագի մատուցմամբ, վերջին օծման եւ թաղման արարողութիւններով:*

*Յուլիսի 6-8-ը Հայաստանի Հանրապետութիւնում յայտարարուած է պետական սուգ:*

*Այդ վշտալի առիթով դեսպանութիւնը ցաւակցութիւններ կ'ընդունի Շաբաթ, Յուլիսի 3-ին եւ Կիրակի, Յուլիսի 4-ին, ժամը 10.00-14.00:*

**Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւն**

**ԳԵՐԱՇՆՈՐՀ Տ. ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՉԻՆՉԻՆԵԱՆ ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅՈՑ ԹԵՄԻ ԳԱՀԻՐԷ**

*Սիրելի Սրբազան,*

*Գերագոյն Հոգեւոր Խորհրդի անդամների հետ խորհրդակցելուց յետոյ, համաձայնութիւն ձեռք բերուեց ի յիշատակ Գարեգին Ա. Վեհափառ Հայրապետի ստեղծել հիմնադրամ՝ «ԳԱՐԵԳԻՆ Ա. ՄԱՏԵՆԱՇԱՐ» ընդհանուր խորագրի ներքոյ կրօնական եւ հայագիտական բնոյթի գործեր հրատարակելու նպատակով:*

*Սիրելի Սրբազան, խնդրում ենք Ձեր կողմից մի շրջաբերական գրութիւն յղել Թեմիդ բարեպաշտ հաւատացեալներին՝ փոխան ծաղկեպսակների, իրենց նուիրատուութիւնները փոխանցելու Ձեր կողմից բացուած Վեհափառի յիշատակը յաւերժացնող հիմնադրամի հաշուեհամարին:*

*Եղբայրական սիրոյ ողջունիւ,*

Աղօթակից՝
**ԳԱՐԵԳԻՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՆԵՐՍԻՍԵԱՆ**
**ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՓՈԽԱՆՈՐԴ**

### ՑԱՒԱԿՑԱԿԱՆ ՀԵՌԱԳԻՐ

**ԳԵՐԱՇՆՈՐՀ Տ. ԳԱՐԵԳԻՆ ԱՐՔ. ՆԵՐՍԻՍԵԱՆ**
ՄԱՅՐ ԱԹՈՌ Ս. ԷՋՄԻԱԾԻՆ

Գերաշնորհ Սրբազան Հայր,

Հայկական Ընթերցասրահի վարչական կազմը, Նոր Սերունդ Մշակ. Մարմինը, Հ.Մ.Մ. Երիտ. Մարմինը, «Մարօ» Տիկնանց Յանձնախումբը եւ «Ջահակիր» շաբաթաթերթի խմբագրութիւնը խոր ցաւով կը սգան անդարմանելի կորուստը Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա. Հայրապետի: Վեհափառ Հայրապետը անխոնջ նուիրումով ծառայեց Հայաստանեայց Եկեղեցիին եւ Հայ Ազգին, քաջ հովուի յատուկ անձնուրացութեամբ:

Հանգիստ առաքելաշունչ Հայրապետի յոգնաբեկ աճիւններուն եւ խաղաղութիւն հոգիին:

Ի դիմաց «Ջահակիր» շրջանակին՝

**ՎՐԷԺ ՍԷՖԷՐԵԱՆ**

*Գահիրէ, 30 Յունիս 1999*

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Երանաշնորհ Ամենայն Հայոց Կաթողիկոս, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. արդիւնաշատ Հայրապետին վախճանումը խոր սուգի մատնեց Հայց. եկեղեցին եւ հաւատացեալ հայ ժողովուրդը: Իր հայրենաշունչ քարոզները, իր շինարար աշխատանքները, Աստուծոյ խօսքը պատգամող ու բացատրող գիրքերը պիտի չգրուին այլեւս:*

*Կիրակի, 4 Յուլիսին, Ս. Պատարագի մատուցմամբ, երջանկայիշատակ Հայրապետի հոգւոյ հանգստեան համար, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ պիտի կատարուի յատուկ հոգեհանգստեան արարողութիւն:*

*Թող Ամենակալ Աստուած յաւիտենական երանութեան, լուսէ խորաններուն մէջ հանգչեցնէ, ընդ չարս երանեալ հայրապետաց երջանկայիշատակ Հայրապետին հոգին:*

**ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ- ԳԱՀԻՐԷ**

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
### Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*Յանուն Գերագոյն Հոգեւոր Խորհրդի Մայր Աթոռ Սբ. Էջմիածնի Դիւանը յայտնում է.*

*Երկուշաբթի, 5 Յուլիսի ժամը 10-ին, Վեհափառ Հայրապետի մարմինը կը դրուի Երեւանի Ս. Սարգիս առաջնորդանիստ եկեղեցում, ուր եւ կը կատարուի հոգեհանգիստ ժամը 18-ին:*

*Երեքշաբթի, 6 Յուլիսի ժամը 10:30-ին Հայոց Հայրապետի մարմինը Ս. Սարգիս եկեղեցուց հանդիսաւոր թափորով կը փոխադրուի Մայր Աթոռ Ս. Էջմիածին:*

*Հաւատացեալ ժողովուրդը կարող է հրաժեշտ տալ Հայոց Հայրապետին՝*

*Երեւանի Ս. Սարգիս եկեղեցում, Երկուշաբթի, ժամը 10-20ը, Ս. Էջմիածնի Մայր Տաճարում, Երեքշաբթի, ժամը 12-20-ը, Չորեքշաբթի, ժամը 8-20-ը:*

*Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Վեհափառ Հայրապետի յուղարկաւորութեան արարողութիւնը տեղի կ'ունենայ Հինգշաբթի, 8 Յուլիսի, ժամը 10-ին, Ս. Պատարագի մատուցմամբ, վերջին օծման եւ թաղման արարողութիւններով:*

*Պաշտօնական ցաւակցութիւնները ընդունում են Վեհարանում ամէն օր, ժամը 11-15-ը:*

**ԴԻՒԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌԻ**

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## Գարեգին Ա-ի Յուղարկաւորութեան Պետական Յանձնաժողով Յուլիսի 6-էն Մինչեւ Յուլիսի 8-ը՝ Համազգային Սուգ

*Ինչպէս ԱՐՄԵՆՓՐԷՍԻՆ յայտնեցին ՀՀ նախագահի մամլոյ գրասենեակից, Ամենայն Հայոց Կաթողիկոս, Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Առաջինի յուղարկաւորութիւնը կազմակերպելու համար, Հանրապետութեան նախագահի հրամանագրով ստեղծուել է պետական յանձնաժողով՝ նախագահ Ռոպերթ Քոչարեանի գլխաւորութեամբ:*

*Յանձնաժողովի կազմում են Ազգային Ժողովի նախագահ Կարէն Դեմիրճեանը, վարչապետ Վազգէն Սարգսեանը, Սահմանադրական դատարանի նախագահ Գագիկ Յարութիւնեանը, Ազգային անվտանգութեան նախարար Սերժ Սարգսեանը, Ներքին գործերի նախարար Սուրէն Աբրահամեանը, Արտաքին գործերի նախարար Վարդան Օսկանեանը, Տարածքային կառավարման նախարար Խոսրով Յարութիւնեանը, կառավարութեան աշխատակազմի ղեկավար-նախարար Շահէն Գարամանուկեանը, Առողջապահութեան նախարար Հայկ Նիկողոսեանը, Գիտութիւնների ազգային ակադեմիայի նախագահ Ֆադէյ Սարգսեանը, Կրօնի գործերի պետական խորհրդի նախագահ Լազր Սուջեանը, Մայր Աթոռ Սուրբ Էջմիածինի Գերագոյն Հոգեւոր խորհրդի անդամներ Վլադիմիր Բարխուդարեանը, Գրիգոր Խանջեանը, Պիոն Յակոբեանը եւ Ռաֆայէլ Պապայեանը:*

*Հանրապետութեան նախագահի հրամանագրով, Յուլիսի 6-էն մինչեւ Վեհափառ Հայրապետի յուղարկաւորութեան օրը՝ Յուլիսի 8-ը յայտարարւում է համազգային սուգ:*

---

**ՑԱՒԱԿՑԱԿԱՆ ՀԵՌԱԳԻՐ**

Գերաշնորհ Գարեգին Արք. Ներսիսեան
Մայր Աթոռ Ս. Էջմիածին

Գերաշնորհ Սրբազան Հայր,

Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Եգիպտոսի մարմինները և անդամները, խորապէս կը սգան անժամանակ կորուստը Ամենայն Հայոց Հայրապետ Գարեգին Ա. Կաթողիկոսին:

Հանգիստ իր հոգւոյն եւ յարգանք յիշատակին:

Հ.Բ.Ը.Մ.ի
Եգիպտոսի Շրջանակային Յանձնաժողով

| Ատենադպիր | Ատենապետ |
|---|---|
| ՅԱԿՈԲ ՄԱՐԳԱՐԵԱՆ | ՊԵՐՃ ԹԷՐԶԵԱՆ |

*Գահիրէ, 29 Յունիս 1999*

---

## ԳԱՐԵԳԻՆ Ա. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՎԱԽՃԱՆՄԱՆ ԱՌԹԻՒ

# ՑԱՒԱԿՑԱԿԱՆ ԳԻՐԵՐ

## ԱՇԽԱՐՀԻ ՄԵԾԱՄԵԾՆԵՐԷՆ ՈՒ ՀՈԳԵՒՈՐ ԿԵԴՐՈՆՆԵՐԷՆ

### Ամերիկայի Նախագահ Պիլ Քլինթընի Ցաւակցական Գիրը՝ Ուղղեալ Կաթողիկոսական Ընդհանուր Փոխանորդին

*Սիրելի Ներսիսեան Արքեպիսկոպոս,*

*Ես անակնկալ կերպով տեղեկացայ Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Կաթողիկոսի վախճանման մասին: Նորին Սուրբ Օծութիւնը յարգուած էր Իր խոր գիտելիքներուն, միջ-եկեղեցական հնարաւոր լայնախոհ երկխօսութեան հանդէպ իր անկեղծ նուիրումին եւ Իր զօրաւոր համոզումներուն համար:*

*Յանուն Ամերիկայի ժողովուրդի, կը խնդրեմ Ձեզմէ որ հայ ժողովուրդին փոխանցէք իմ ցաւակցութիւններն ու համակրանքը: Դուք եւ Հայ Առաքելական Եկեղեցւոյ բոլոր անդամները մեր խոհերու եւ աղօթքներու մէջ էք:*

### Ռուսաստանի Նախագահ Պորիս Ելցինի Ցաւակցական Գիրը՝ Ուղղեալ Նախագահ Քոչարեանին

*Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսը մեծ ոյժ ու եռանդ ներդրած էր ի շահ Հայ Առաքելական Եկեղեցւոյ եւ Հայաստանի ժողովուրդի, ինչպէս նաեւ կրօնական միաւորումներու համագործակցութիւնը ամրապնդելու եւ տարբեր դաւանանքներու հետեւորդներու միջեւ փոխըմբռնումը ապահովելու գործին մէջ: Յանուն ռուս ժողովուրդի՝ իմ անկեղծ ցաւակցութիւնները կը յայտնեմ Հայաստանցի հաւատացեալներուն եւ ամբողջ հայ ժողովուրդին:*

### Ֆրանսայի Նախագահ Ժագ Շիրաքի Ցաւակցական Ուղերձը

*Ֆրանսայի Նախագահ Ժագ Շիրաք եւս ցաւակցական ուղերձ մը յղած է Կաթողիկոսական Ընդհանուր Փոխանորդ՝ Գերշ. Տ. Գարեգին Արք. Ներսիսեանին: Ուղերձին մէջ Նախագահ Ժագ Շիրաք Ամենայն Հայոց Կաթողիկոսը բնորոշած է որպէս «բարձր առաքինութեամբ, արիութեամբ եւ հսկայական գիտելիքներով» մարդ, որ ո՛չ միայն մեծ աւանդ ներդրած է Հայ Առաքելական Եկեղեցւոյ գործունէութեան մէջ, այլ նաեւ «ամէն ջանք ի գործ դրած է, որպէսզի ներկայիս անկախ Հայաստանի մէջ հայ եկեղեցին, աւելի քան երբեք, բաց ըլլայ ի դէմս աշխարհի եւ դառնայ աշխարհի հետ երկխօսութիւն ապահովող օղակ»: «Հանդիպումներու ընթացքին, ես անձամբ կրցայ գնահատել Կաթողիկոսի նուիրուածութիւնը Ֆրանսայի եւ Հայաստանի միջեւ բազմադարեան կապերը ամրապնդելու գործին մէջ: Ճիշդ այդ ուղին է որ մենք պարտաւոր ենք այսօր շարունակելու: Իմ խորին ցաւակցութիւնը կը յայտնեմ ամբողջ հայ ժողովուրդին», կ'ըսուի ուղերձի վերջաւորութեան:*

### Մոսկուայի Եւ Համայն Ռուսիոյ Պատրիարք Ալեքսի Բ. Ցաւակցական Գիրը

*Ընդունեցէք մեր խոր եւ անկեղծ ցաւակցութիւնները Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Կաթողիկոսի վախճանման առթիւ: Այս դժուարին պահուն կը բաժնենք ցաւը եղբայրական հայ ժողովուրդին եւ մեր աղօթքը կ'առաքենք առ Աստուած՝ Երանաշնորհ Գարեգին Ա. Կաթողիկոսի հոգին արդարոց դասուն մէջ հանգիստ գտնելու խնդրանքով: Թող Աստուած միշտ վառ պահէ Անոր յիշատակը:*

### Համայն Վրաստանի Իլիա Բ. Պատրիարքի Ցաւակցական Հեռագիրը

*Խոր ցաւով ընդունեցինք Ամենայն Հայոց Կաթողիկոսի վախճանման լուրը: Մեծ է Անոր ծառայութիւնը Հայ Առաքելական Եկեղեցւոյ: Մենք կը գնահատենք Կաթողիկոսի տարած աշխատանքը մեր ժողովուրդներու եւ մեր եկեղեցիներու միջեւ եղբայրական յարաբերութիւնները ամրապնդելու գործին մէջ: Ամբողջ Քրիստոնեայ աշխարհը Ձինքը կը ճանչնար որպէս իմաստուն Առաջնորդ եւ արդարութեան եւ խաղաղութեան պաշտպան: Ընդունեցէք մեր եւ Վրաց Ուղղափառ Եկեղեցւոյ սինոտի, վրաց ժողովուրդի անկեղծ ցաւակցութիւնները: Թող Աստուած հանգիստ պարգեւէ Գարեգին Ա. Կաթողիկոսի հոգւոյն՝ Հայոց արդար Հայրապետաց դասուն մէջ:*

### Աթէնքի եւ Համայն Յունաստանի Արքեպիսկոպոս Խրիստոդուլոսի Ցաւակցական Գիրը

*Խոր վշտով ստացանք եւ ցաւով ընդունեցինք Ն.Ս.Օ.Տ.Տ. Ծայրագոյն Պատրիարք եւ Ամենայն Հայոց Գարեգին Ա. Կաթողիկոսի վախճանման առթիւ Ձեր առաքած գոյժը: Բաժնելով Ձեր վիշտը եւ յղելով մեր եկեղեցւոյ եւ ժողովուրդի ցաւակցութիւնները՝ կ'աղօթենք որ մեր Տէրը հանգիստ պարգեւէ Իր հոգւոյն ի դասս արդարոց եւ արժանի յաջորդ շնորհի Ձեր պատուական եկեղեցւոյ:*

---

# Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ

## ԿԵԱՆՔԸ ԵՒ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

*«21րդ դարուն, երբ բարձրանայ Երեւանի Մայր Տաճարը, ես հոն պիտի չըլլամ, բայց կ'ուզեմ որ Գարեգին Բ. հոն ըլլայ»:*

*ՎԱԶԳԷՆ Ա. ԿԱԹՈՂԻԿՈՍ*
*6 Մայիս 1990 Պրիւքսէլ*

*Ն.Ս.Օ.Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոս, աւազանի անունով՝ Նշան (Սարգիսեան), ծնած էր 27 Օգոստոս 1932ին, Սուրիոյ Քեսապ քաղաքին մէջ: Նախնական կրթութիւնը ստացած էր հայրենի գիւղի Ուսումնասիրաց Միացեալ վարժարանին մէջ, յետոյ 1946ին ընդունուած էր Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան Մայրավանքին մէջ, Անթիլիաս:*

*29 Մայիս 1949ին ձեռնադրուած էր որպէս սարկաւագ եւ 28 Սեպտեմբեր 1952ին ձեռնադրուած էր կուսակրօն քահանայ, Վարագայ Խաչի տօնին՝ Տ. Դերենիկ Եպիսկոպոսի ձեռամբ, եւ ապագայ Կաթողիկոս Տ. Գարեգին Ա. Յովսէփեանի յիշատակին, վերակոչուած էր Գարեգին Աբեղայ: Դպրեվանքին մէջ Գարեգին Աբեղան 1952էն մինչեւ 1956, ստանձնած էր հսկիչի պաշտօն, եւ դասաւանդած էր գրաբար, մատենագրութիւն, ծիսագիտութիւն, ընդհանուր եկեղեցիներու պատմութիւն, վարդապետական աստուածաբանութիւն, եւլն.: Պաշտպանելով վարդապետական աւարտաճառը եւ որպէս նիւթ ունենալով «Հայոց Եկեղեցւոյ աստուածաբանութիւնը ըստ Հայ շարականներու» 5 Յունիս 1955ին ստացած էր վարդապետական աստիճան:*

*Սարկաւագութեան տարիներուն անդամակցած էր Ս. Աթոռի պաշտօնաթերթ՝ «Հասկ»ի խմբագրութեան եւ միաժամանակ դասաւանդած էր Հայ Բարեգործական Ընդհանուր Միութեան Պէյրութի «Յակոբեան» վարժարանի մէջ:*

*1956ին, երջանկայիշատակ Զարեհ Ա. Կաթողիկոսի ընտրութեան փոթորկոտ օրերուն, Գարեգին Աբեղան ստանձնած էր Դպրեվանքի տեսչութեան պաշտօնը: 1957ին յաճախած էր Օքսֆորտի համալսարանի աստուածաբանական բաժինը, պատրաստած էր «Քաղկեդոնի ժողովը եւ Հայ եկեղեցին» թէզը. 1960ին վերադարձած էր Պէյրութ եւ կրկին վարած էր Դպրեվանքի տեսչութիւնը մինչեւ 1967:*

*1962ին Կիլիկիոյ Կաթողիկոսութիւնը անդամ դարձած էր Եկեղեցիներու Համաշխարհային Խորհուրդին եւ այդ շրջանէն սկսեալ յանուն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան, Գարեգին Կաթողիկոս մասնակցած էր նաեւ միջազգային միջ-եկեղեցական ժողովներուն, 1961ին Հնդկաստան, 1968ին Ուփսալա, 1975ին Քենիա, 1976ին Գերմանիա, 1983ին Գանատա, Վատիկան, Լոնտոն, Ատիս Ապապա, Աթէնք, Լիզպոն, Ժընեւ, Վիեննա եւ Վենետիկ, ծանօթացնելով Ս. Աթոռը եւ առհասարակ Հայաստանեայց Եկեղեցին քոյր եկեղեցիներու հոգեւոր իշխանութեանց:*

*16 Յունիս 1963ին Գարեգին Վարդապետ ձեռնադրուած էր Ծայրագոյն Վարդապետ, ձեռամբ՝ Խորէն Ա. Կաթողիկոսի եւ 19 Յունուար 1964ին եպիսկոպոսութեան օծում ստացած էր ձեռամբ՝ Խորէն Ա. Կաթողիկոսի՝ օծակից ունենալով Արտաւազդ Ծ. Վրդ. Թրթռեանը. 1973ին ստացած էր արքութեան տիտղոս:*

*Դասաւանդած էր նաեւ Պէյրութի Նշան Փալանճեան ճեմարանը (հայ մատենագրութիւն եւ հայ եկեղեցւոյ պատմութիւն) եւ Ամերիկեան Համալսարանը ԷՅՈՒՊԻ (AUB) (անգլերէն, Հայոց Պատմութիւն եւ հայկական մշակոյթ):*

*1971-1973ին եղած էր Իրան-Հնդկաստանի թեմի նախ՝ Կաթողիկոսական Պատուիրակ եւ յետոյ՝ Առաջնորդ (Նոր Ջուղա, Սպահան-Պարսկաստան): 1973ին ստացած էր Արքեպիսկոպոսի աստիճան:*

*21 Յունիս 1973ին Գարեգին Արքեպիսկոպոս նշանակուած էր Կաթողիկոսական Փոխանորդ, նոյն տարւոյ մէջ ընտրուած էր Միացեալ Նահանգներու Արեւելեան-Կիլիկեան թեմի Առաջնորդ (Նիւ Եորք): Խորէն Վեհափառը նկատի առնելով իր առողջական վիճակը, առաջարկած էր որ Գարեգին Արք. իրեն որպէս աթոռակից Կաթողիկոս ընտրուի: Կաթողիկոսութեան ազգային ժողովի որոշումով, Գարեգին Արքեպիսկոպոս 22 Մայիս 1977ին ընտրուած էր Մեծի Տանն Կիլիկիոյ Աթոռակից Կաթողիկոս: 29 Մայիսին՝ Անթիլիասի Մայր Տաճարին մէջ կատարուած էր. Գարեգին Բ.ի օծումը, ի ներկայութեան պետական եւ պաշտօնական հոծ բազմութեան մը: Օծումը կատարուած է Խորէն Ա.ի հանդիսապետութեամբ, Աթոռակից-Կաթողիկոսը կատարած էր Կաթողիկոսական օծման իր ուխտ-աղօթքը:*

*Ան խուսացած էր «Առաջի Աստուծոյ, Ս. Խորանի եւ ժողովուրդին» ըլլալ աստուածատիպ օրինակ, հովուելու համար իրեն յանձնուած բանաւոր հօտը, ըլլալու համար արժանաւոր յաջորդը Ս. Առաքեալներ՝ Թադէոսի եւ Բարթողիմէոսի, Ս. Գրիգոր Լուսաւորչի եւ Մեծի Տանն Կիլիկիոյ Հայրապետներուն: Խորէն Կաթողիկոսի վախճանումէն ետք (9 Փետրուար 1983) դարձած էր Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոս:*



*Գարեգին Արքեպիսկոպոս նաեւ փոխ-նախագահն էր Եկեղեցիներու Համաշխարհային Խորհուրդին. մասնակցած էր համաշխարհային եկեղեցական բոլոր ժողովներուն, ուր մեծ վարկ վայելած էր: Խոր զարգացման տէր, հմուտ միտք, Գարեգին Բ. խորհրդանիշն իսկ էր մտաւորական եկեղեցականին: Հեղինակ էր բազմաթիւ հատորներու եւ գրքոյկներու, հայերէն, ֆրանսերէն եւ անգլերէն:*

*2 Նոյմբեր 1984ին, Գարեգին Բ. Կաթողիկոս, դէպի Արեւմտեան Գերմանիա կատարած իր մէկ այցելութեան ընթացքին, հանդիպում մը ունեցած էր Դաշնակցային Գերմանիոյ նախագահ՝ Ռիչարտ ֆոն Վայցէքըրի հետ: Խօսակցութեան գլխաւոր նիւթերը եղած էին Լիբանանի կացութիւնը ու հայ ժողովուրդի վիճակը՝ զանազան երկիրներու մէջ: Գարեգին Կաթողիկոս Հայտըլպէրկի համալսարանին մէջ դասախօսութիւն մը ըրած էր «Հայ ժողովուրդին տեղն ու դերը Միջին Արեւելքի մէջ» նիւթին շուրջ, եւ այցելած էր Համպուրկի հայկական գաղութը:*

*Գարեգին Բ. Վեհափառ Հայրապետը 18 երկար տարիներ գահակալած էր Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսարանին մէջ, եւ այդ շրջանին բազմաթիւ անգամներ այցելած էր թէ՛ Սովետական Հայաստան եւ թէ Անկախ Հայաստան, յաճախ հանդիպումներ ունենալով Երջանկայիշատակ Վազգէն Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսին հետ, ըլլայ Հայաստանի կամ Սփիւռքի մէջ:*

*Հայաստանի Հանրապետութեան նախագահին կողմէ հաստատուած «Հայաստան» Համահայկական Հիմնադրամի Հոգաբարձուներու անդամ էր Գարեգին Ա. Կաթողիկոս:*

*Վազգէն Վեհափառ Հայրապետի վախճանումէն ետք, 4 Ապրիլ 1994ին ժամը 21.00-ին Ս. Էջմիածնի Մայր Տաճարի զանգակները ղօղանջած եւ աւետած էին Ս. Գրիգոր Լուսաւորչի դարաւոր Աթոռի 131րդ գահակալին ընտրութիւնը՝ Գարեգին Բ. Կաթողիկոսի, որպէս Ամենայն Հայոց Կաթողիկոս:*

*Վեհափառ Հայրապետը մշակեց եկեղեցաշէն նոր ծրագիր, վերատեսութեան ենթարկեց Հայաստանի թեմերու կառուցուածքը, ստեղծեց նոր թեմեր, նաեւ Ուքրանիոյ եւ Հարաւային Ռուսաստանի թեմերը, հիմնովին նորոգեց Գէորգեան Հոգեւոր Ճեմարանը, վերաշխուժացաւ Ճեմարանի կեանքը, սաներուն թիւը հասաւ 120ի, իրականացաւ Վազգէն Կաթողիկոսի ցանկութիւնը, Օշականի մէջ՝ Մեսրոպ Մաշտոցի շիրիմին քով, հաստատուեցաւ Ս. Մեսրոպ Մաշտոց Դպրատունը:*

*Վեհափառ Հայրապետը նոր թափ տուաւ էքիւմէնիք կապերու, տուաւ պաշտօնական այցելութիւններ, Հայաստանի Գիտութիւններու Ազգային Ակադեմիոյ պատուակալ անդամ նշանակուեցաւ, զանազան երկիրներու Ակադեմիաներէ ստացաւ «Պատուակալ Տօքթոր»ի տիտղոս:*

*1998ի Ապրիլին Ամերիկայի մէջ նախագահեց Ամերիկայի Հայոց թեմի հիմնարկութեան 100ամեակի յոբելենական հանդիսութեանց, սակայն արդէն անորոք հիւանդութիւնը յայտնուած էր եւ ենթարկուեցաւ բժշկական քննութեանց: Այնուհետեւ ենթարկուեցաւ վիրաբուժական երկու ծանր գործողութիւններու:*

*1999ի 24 Մարտին Վեհափառ Հայրապետը Վատիկանի մէջ Հռոմի Պապին հետ կատարեց «Հռոմ-Հայաստան» ցուցահանդէսի բացումը, նուիրուած Քրիստոնէութեան 1700ամեակին: Ինչ մեղք որ Պապը չկրցաւ փոխադարձել Վեհափառ Հայրապետի այցելութեան:*

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Կիրակի, 27 Յունիս 1999 կ.ե. ժամը 7.30ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ, ի ներկայութեան հոծ թիւով հրաւիրեալներու, տեղի ունեցաւ պսակադրութիւնը համայնիքիս արժանաւոր երիտասարդներէն՝

ՊՐ. ՌՈՒԲԷՆ ՍԻՄՈՆԵԱՆԻ

ԸՆԴ

ՕՐ. ԱՍԻԱ ԿԱՊՐԻԷԼԵԱՆԻ

կնքահայրութեամբ փեսին եղբօր՝ Տէր և Տիկ. Ժորժ Սիմոնեանի:

Արարողութեանց նախագահեց Եգիպտահայ բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան: Ձեռնադրութիւնը կատարեց Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեան: Հարսանեկան երգեցողութիւնները կատարուեցան ղեկավարութեամբ Պր. Նշան Վարդեանի, որուն աւարտին Սրբական Հայրը շնորհաւորեց նորապսակ ամոլը և հայրական իր օրհնութիւններուն ընկերացուց իր յորդորները:

Գիշերը, մեծ թիւով հրաւիրեալներ ներկայ գտնուեցան ճոխ խրախճանքի մը, Հելիոպոլսոյ «Շերաթոն» պանդոկի շքեղ սրահներէն միոյն մէջ: Հարսնեւորները երջանկութեան կենացներ պարպեցին, որուն ընթացքին տեղի ունեցաւ օշարակի սպասարկութիւն: Կէս գիշերին բեմ բարձրացաւ լիբանանահայ սիրուած երգիչ՝ Սիմոն Արթինեան և իր հմայիչ ձայնով երգեց հայ թէ օտար խանդավառ երգեր, եւ երիտասարդութիւնը ոտքի հանեց շուրշպարի, աւելի ջերմացնելով մթնոլորտը:

Հսկայ կարկանդակը կիսելու արարողութեան յաջորդեց համադամ ընթրիքի սպասարկութիւն: Եւ խրախճանքը շարունակուեցաւ մինչեւ առաւօտեան ժամերը:

Պր. Ռուբէն իր հայեցի դաստիարակութիւնը ստացած է Նուպարեան Ազգ. վարժարանին մէջ, ապա շրջանաւարտած է «Էյն Շամս» համալսարանի «Զբօսաշրջիկութեան և պանթոկի» բաժինը: Ան այժմ պատասխանատու պաշտօն կը վարէ «Նուպար» տպագրատան մէջ:

Շնորհալի հայրենի հարսը Ասիան՝ յաճախած է «Մուշեղ Իշխան» անուան դպրոցը և աւարտած՝ ոսկեմետալով: Որմէ յետոյ ան ընդունուած է և գերազանցութեամբ աւարտած ռումանօ-գերմանական լեզուներու ֆաքիլթէթի՝ սպանական բաժինը, համաշխարհային լեզուներու գծով:

Այս բարեբաստիկ առիթով խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ նորապսակ ամոլը և իրենց ծնողները, համայնքիս նուիրեալ հասարակական գործիչ, սիրուած ազգայիններ՝ Տէր և Տիկին Նուպար Սիմոնեաններն ու Տիկին Մարիէտա Կապրիէլեանը, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները, մաղթելով հարսն ու փեսին անանպ և երջանիկ կեանք:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը տեղեկացնում է, որ Նորին Սուրբ Օծութիւն Տէր Տէր Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի մահուան կապակցութեամբ յիտաձգուած տարեկան բարեգործական բազարը կը կայանայ Յուլիսի 11-ին, Կիրակի, ժամը 19.00-ից մինչեւ 23.00:

Նախապէս ձեռք բերուած մուտքի տոմսերը ուժի մէջ են Յուլիսի 11-ի համար:

**Եգիպտոսում Հայաստանի**

**Պանրապետութեան Դեսպանութիւն**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը տեղեկացնում է, որ 1999-2000 ուսումնական տարուայ համար ՀՀ կառավարութեան կողմից պետական պատուէրի շրջանակներում տարբեր մասնագիտութիւնների գծով սփիւռքահայ դիմողներին յատկացուել է 60 համալսարանական եւ 7 ասպիրանտական տեղ:

Սփիւռքահայ դիմորդների ընդունելութիւնը կատարուելու է համաձայն «ՀՀ-ում օտարերկեայ քաղաքացիների ուսուցման մասին» կարգի, ՀՀ կրթութեան նախարարի ստեղծած յանձնաժողովի կողմից, մրցութային կարգով, դիմորդների կողմից ներկայացուած փաստաթղթերի քննարկման միջոցով:

Պահանջուող փաստաթղթերի ցանկը եւ այլ լրացուցիչ տեղեկութիւններ կարելի է ստանալ դեսպանութիւննից:

Հեռախօս՝ 342-41-57, 342-41-59:

**Եգիպտոսում Հայաստանի**

**Հանրապետութեան Դեսպանութիւն**

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Ողբ. Յարութիւն Նաճառեանի կսկծալի մահուան առթիւ, վասն ցաւակցութեան, Պր. Աւետիս Մովսէսեան կը նուիրէ 20

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ողբ. Տիգրան Պօղոսեանի (Միացեալ Նահանգներ) մահուան տխուր առթիւ վասն ցաւակցութեան, Տէր եւ Տիկին Մարտիկ Պալաեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| «Արեւ»ին | 25 |
| «Յուսաբեր»ին | 25 |
| «Ջահակիր»ին | 25 |

## ՀԱՆԳԻՍՏ Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Ա. ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

### Գերագոյն Հոգեւոր Խորհուրդը Քառասնօրեայ Սուգ Յայտարարեց

1 ➪

կերպուեցին գիտաժողովներ և ուխտագնացութիւններ՝ դէպի հայրենի սրբավայրեր: Կեանքի կոչուեցին սոցիալական պարգացման ծրագրեր՝ ուղղուած տնտեսական դժուարութիւնների յաղթահարմանը, Հայաստանում և Արցախում:

Իր բարձր հեղինակութեամբ Վեհափառ Հայրապետն առաւել ամրապնդեց էքումենիք կապերը քոյր եկեղեցիների հետ. հովուապետական յաճախակի այցելութիւններով մխիթարեց և օրհնութիւն բաշխեց հաւատաւոր մեր ժողովրդին ի հայրենիս և սփիւռս:

Նորին Սրբութիւնը ՀՀ Գիտութիւնների Ազգային ակադեմիայի պատուաւոր անդամ էր: Վեհափառ Հայրապետը, որպէս խոշոր մտաւորական արժանացել է աշխարհի մի շարք ակադեմիաների և համալսարանների պատուաւոր դոկտորի կոչմանը:

Մայր Աթոռի ազաւոր միաբանութիւնը՝ խորապգաց հաւատաւոր մեր ժողովրդի և Հայրենի պետութեան՝ առ Վեհափառ Հայրապետը ցուցաբերած որդիական սիրոյ և սրտակցութեան դրսեւորումից, Սուրբ Հոգու մխիթարութիւնն է հայցում համայն հայութեանը: Մայր Աթոռի Միաբանութիւնը և Գերագոյն Հոգեւոր Խորհուրդը յայտարարում են քառասնօրեայ սուգ:

Աղօթք, խունկ և բիւր օրհնութիւն Վեհափառ Հայրապետի անմեռ յիշատակին: Թող Բարին Աստուած Իր Փառաց Պսակին արժանացնի և երկնային երանաւէտ խաղաղութեան մէջ ընդունի սիրեցեալ Հայրապետի լոյս հոգին՝ ընդ դասս աստուածպգեաց Հայոց երանեալ հայրապետաց:

Յիշատակն արդարոց օրհնութեամբ եղիցի:

**ԴԻՒԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌ ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾՆԻ**

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացընելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք ղրկել « M. BALAYAN »ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111 Գահիրէ (11511), Եգիպտոս:

### ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Լուսին Մազլըմեան եւ դուստրը Մարի, Տէր եւ Տիկին Գէորգ Մազլըմեան, Տէր եւ Տիկ. Խաչիկ Մազլըմեան եւ որդին Արշակ եւ համայն սգակիր պարագաները կը ծանուցանեն թէ Կիրակի 18 Յուլիս 1999-ի առաւօտեան, Աղեքսանդրիոյ Սուրբ Գէորգ Մատրան մէջ յաւարտ Սուրբ Պատարագի հոգեհանգստեան արարողութիւն պիտի կատարուի իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, մեծհօր, զարմիկին եւ ազգականին՝

**ՈՂԲ. ՊԵՐՃ ԳԷՈՐԳ ՄԱԶԼԸՄԵԱՆԻ**

մահուան քառասունքին առթիւ: Նաեւ իրենց հօրեղբօր՝

**ՈՂԲ. ՊԱՐԳԵՒ ԳԷՈՐԳ ՄԱԶԼԸՄԵԱՆԻ**

Բ. տարելիցին առթիւ:

Հանգուցեալներուն յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## Հ.Բ.Ը. ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

## Սաքենիկ Ճ. Չագըր Հիմնադրամ

### ՅԵՏԱՁԳՈՒԱԾ

Ամենայն Հայոց Հայրապետ, երջանկայիշատակ Գարեգին Ա. Կաթողիկոսի վախճանումին առթիւ, ի նշան սուգի յետաձգուած է, Կիրակի 4 Յուլիս 1999-ի երեկոյեան ժամը 7.00-ին, «Սաքենիկ Ճ. Չագըր» Հիմնադրամի առողջապահական հոգատարութեան առընչութեամբ, Հելիոպոլսոյ Հ.Մ.Ը.Մ. - ՆՈՒՊԱՐ մարզարանին մէջ տեղի ունենալիք ժողովրդային հաւաքը:

Նշեալ հաւաքը պիտի կայանայ Կիրակի 1 Օգոստոս 1999-ին, նոյն ժամուն եւ նոյն վայրին մէջ:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**




## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐՈՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԳՈՐԾԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Աշխարհի 5 ցամաքամասերէն, 57 քաղաքներէ հայ մարզիկներ պիտի մասնակցին **Համահայկական Առաջին Խաղերուն**՝ որոնք տեղի պիտի ունենան Երեւան, Օգոստոս 28-էն մինչեւ Սեպտեմբեր 5, 1999-ին:

Այս պատմական մարզական փառատօնին ներկայ գտնուելու եւ քաջալերելու համար հայ մարզիկները , **Համահայկական Առաջին Խաղերուն** Եգիպտահայ Գործադիր Յանձնախումբը կազմակերպած է բացառիկ շրջապտոյտ մը, Օգոստոս 27-էն մինչեւ Սեպտեմբեր 6, 1999 (10 օր):

Շրջապտոյտը պիտի կատարուի ուղղակի Գահիրէ-Երեւան-Գահիրէ, հայկական յատուկ ինքնաթիռով, եւ պիտի ընդգրկէ կեցութիւնը՝ Ա. կարգի պանդոկ, նախաճաշն ու ընթրիքը:

**Համահայկական Առաջին Խաղերու** բացման, զտումի մրցումներուն եւ եզրափակիչ հանդիսութեան մուտքի տոմսերը կարելի է ապահովել նախապէս:

Յաւելեալ մանրամասնութիւններ ստանալու եւ արձանագրութեան համար հեռաձայնել՝

Պր. Հրաչ Միքայէլեանին, հեռ. 3928801
Տոքթ. Գէորգ Երզնկացեանին, հեռ. 012-323-9161
Պր. Մարտիկ Պալաեանին, հեռ. 010-1401916
Պր. Պերճ Միսքճեանին, հեռ. 012-216-9814

*Տեղերը շատ սահմանափակ են:*

Եգիպտահայ Պասքէթպոլի եւ Փինկ փոնկի հաւաքական խումբերու գլխաւոր հովանաւոր՝






ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

دار شروشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٧٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1407 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 15 ՅՈՒԼԻՍ 1999 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. — عدد رقم ١٤٠٧ ـ الخميس ١٥ يوليو ١٩٩٩


ԷՋՄԻԱԾԻՆ

## ՎԵՐՋԻՆ ՕԾՈՒՄ ԵՒ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ՝ ԳԱՐԵԳԻՆ Ա. ՀԱՅՐԱՊԵՏԻՆ

Յուլիս 8-ին, առաւօտ Հայաստանի ժամով տասնին, Ս. Էջմիածնի Մայր Տաճարին մէջ սկսաւ Վեհափառ Հայրապետին վերջին օծման ու յուղարկաւորութեան փառաշուք արարողութիւնը, որուն ներկայ էին նախագահ Քոչարեանէ սկսեալ պետական բոլոր բարձրաստիճան անձնաւորութիւնները, օտար եկեղեցական ներկայացուցիչներ ու Հայաստանեայց Եկեղեցւոյ բարձրաստիճան հոգեւորականութիւնը: Երգեցողութիւնները կը կատարուէին հրաշալի ներդաշնակութեան մը մէջ:



Ժամը 11-ին դագաղը զետեղուեցաւ Խորանին վրայ եւ դագաղին քով կանգնած, առաջին յուզիչ դամբանախօսութիւնը ըրաւ Կաթողիկոսական Տեղապահ՝ Ամեն. Տ. Ներսէս Արք. Պօզապալեան, որ խօսեցաւ մօտաւորապէս քառորդ ժամ, վեր առնելով հանգուցեալ Հայրապետին կատարած սքանչելի գործը եւ ընդգծելով թէ Վեհափառը մտած էր կեանքի յաւիտենութեան սահմաններէն ներս:

Ս. Հոգիի շնորհներով օժտուած այս մեծ հոգեւորականը իր այդ շնորհներով բարձրացաւ մինչեւ ամենաբարձր Աթոռ, քարոզեց ու առաջնորդեց իր ժողովուրդը, դարձաւ Աստուածաբանական գիտութիւններու հեղինակաւոր դէմք, Հայաստանեայց եկեղեցին ծանօթացուց ու սիրցուց օտար շրջանակներէ ներս:



*Ձախէն աջ՝ անվտանգութեան նախարար Սերժ Սարգսեան, ՀՀ վարչապետ Վազգէն Սարգսեան, ԱԺ-ի նախագահ Կարէն Դեմիրճեան, ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեան եւ Սահմանադրական դատարանի նախագահ Գագիկ Յարութիւնեան:*

Ամեն. Տ. Ներսէս Տեղապահ Սրբազանէն անմիջապէս վերջ դամբանախօսեց Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոս Արամ Ա., որ իր կուռ ձայնով ու տպաւորիչ շեշտերով ընդգծեց հաւատքի այն առաքելութիւնը, որուն հաւատարիմ ուղեւորը եղած էր Գարեգին Ա. Հայրապետը:

Արամ Ա. Հայրապետին յաջորդեց Երուսաղէմի Հայոց Պատրիարք՝ Ամեն. Տ. Թորգոմ Արք. Մանուկեան, որ Երուսաղէմի Աթոռի ու Միաբանութեան անունով իր ցաւակցական սրտի խօսքը արտասանեց: Ան ընդգծեց Կաթողիկոսին կատարած հսկայ գործը թէ՛ Անթիլիասի, թէ՛ Ս. Էջմիածնի մէջ, մինչեւ անոր հիւանդութեան յայտնաբերումը:

Երուսաղէմի Պատրիարքի դամբանախօսութենէն վերջ ալ դամբանախօսեց Թուրքիոյ Հայոց Պատրիարք Ամեն. Տ. Մեսրոպ Արք. Մութաֆեան, որ նոյնպէս իր կուռ ձայնով վեր առաւ Վեհափառ Հայրապետին փայլուն անձնաւորութիւնն ու կատարած գործը: Աւետարանական մէջբերումներով Ամեն. Ս. Պատրիարք Հայրը դրուատեց Գարեգին Հայրապետին ստանձնած առաքելութիւնը, որ ընթացք էր Աստուծոյ հրաւէրին:

Չորս դամբանախօսութիւններէն վերջ Ս. Պատարագը շարունակուեցաւ փառաշուք մթնոլորտի մէջ: Ժամը 11.45ին կարմիր տարազներ հագած Քահանաներ դագաղը իջեցուցին Խորանէն ու հանդիսաւոր կերպով զետեղեցին Մայր տաճարին կեդրոնը, ուր արարողութիւնը շարունակուեցաւ:

↳ 2

## ԱՅՍՕՐ ՔՈՉԱՐԵԱՆ-ԱԼԻԵՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՊԻՏԻ ԿԱՅԱՆԱ՞Յ ԶՈՒԻՑԵՐԻՈՅ ՄԷՋ

Երէկ Ատրպէյճանի Նախագահի մամլոյ գրասենեակը յայտարարեց, թէ Հայտար Ալիեւ Հինգշաբթի Զուիցերիա պիտի մեկնի, հանդիպում ունենալու համար Հայաստանի իր պաշտօնակից Ռոպերթ Քոչարեանի հետ:

Յայտնենք որ Ալիեւի եւ Քոչարեանի միջեւ վերջին հանդիպումը կայացաւ ՆԱԹՕի գերատեսչութեան ընթացքին, Ուաշինկթընի մէջ, անցեալ Ապրիլին: Երկու ղեկավարները որոշեցին մնայուն կապի մէջ մնալ իրարու հետ: Սակայն անցեալ ամիս, Ալիեւ ջնջեց Լիւքսեմպուրկ իր կատարելիք ճամբորդութիւնը, ուր պիտի տեսակցէր Քոչարեանի հետ: Այդ օրերուն Ալիեւի առողջական վիճակը ցոյց տրուեցաւ որպէս պատճառաբանութիւն այս այցելութեան ջնջումին:

Ատրպէյճան վերջերս բազմիցս յայտարարած է, թէ կը փափաքի որ ՆԱԹՕ աւելի ազդու դերակատարութիւն ունենայ Արցախի հակամարտութեան մէջ:

ԼԵՀԱՍՏԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ՌՈՊԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՇՓՈՒՄՆԵՐԸ ԼԵՀԱՍՏԱՆԻ ՄԷՋ

13 Յուլիսին պաշտօնական այցելութեամբ Վարշաւա մեկնեցաւ Հայաստանի նախագահ՝ Ռոպերթ Քոչարեանի գլխաւորութեամբ պատուիրակութիւն մը:

Երէկ, 14 Յուլիսի առաւօտուն, Լեհաստանի Նախագահի նստավայրին մէջ տեղի ունեցան հայ-լեհական բանակցութիւնները: Առաւօտեան Ռ. Քոչարեան եւ իր Տիկինը դիմաւորուեցան Լեհաստանի նախագահ՝ Ալեքսանտր Քվաշնեւսքիի կողմէ:

Պաշտօնական արարողութենէն ետք, երկու երկիրներու նախագահները գլուխ գլխի հանդիպում մը ունեցան: Միաժամանակ նախագահական նստավայրի այլ սրահի մը մէջ սկսան հայ-լեհական բանակցութիւնները, որոնց աւելի վերջ միացան նաեւ նախագահները:

Բանակցութիւններու աւարտին, տեղի ունեցաւ փաստաթուղթերու ստորագրութեան արարողութիւն: Երկու նախագահները ստորագրեցին «Հայաստանի Հանրապետութեան եւ Լեհաստանի Հանրապետութեան միջեւ բարեկամական յարաբերութիւններու եւ համագործակցութեան մասին» հռչակագիրը:

↳ 4

## ԳԵՐԱԳՈՅՆ ՀՈԳԵՒՈՐ ԽՈՐՀՐԴԻ ՆՍՏԱՇՐՋԱՆ՝ ՄԱՅՐ ԱԹՈՌ ՍԲ. ԷՋՄԻԱԾՆՈՒՄ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ՝ ՀՈԿՏԵՄԲԵՐ 26 - 31-ԻՆ

Յուլիսի 9–12–ը Մայր Աթոռ Սբ. Էջմիածնում Կաթողիկոսական տեղապահ Տ. Ներսէս Արք. Պօզապալեանի նախագահութեամբ, Երուսաղէմի Հայոց Պատրիարք Տ. Թորգոմ Արք. Մանուկեանի եւ Կ. Պոլսոյ Հայոց Պատրիարք Տ. Մեսրոպ Արք. Մութաֆեանի ատենապետութեամբ գումարուեց Գերագոյն Հոգեւոր Խորհրդի նստաշրջան:

Ժողովի ընթացքում քննարկուեցին Ամենայն Հայոց 132–րդ կաթողիկոսի ընտրութիւններին վերաբերող հարցեր:

Գերագոյն Հոգեւոր Խորհրդի որոշմամբ կաթողիկոսական ընտրութիւնները կը կազմակերպուեն Ազգային–եկեղեցական ժողով գումարելու գործող կանոնադրութեան համաձայն (19 Յունիս, 1945թ): Ըստ նախնական որոշման Ազգային–եկեղեցական ժողովը տեղի կ՚ունենայ Հոկտեմբերի 26–31–ը:

Ազգային–եկեղեցական ժողովի նախապատրաստական աշխատանքները կազմակերպելու նպատակով Գերագոյն Հոգեւոր Խորհրդի կողմից ընտրուեց նաեւ ընտրական յանձնախումբ ԱՄՆ Արեւմտեան թեմի առաջնորդ Տ. Վաչէ Արք. Յովսէփեանի նախագահութեամբ: Յանձնախմբի անդամներ ընտրուեցին Հարաւային Ռուսաստանի եւ Ուքրաինայի հայոց թեմերի առաջնորդներ Տ. Եզնիկ Եպս. Պետրոսեանը եւ Տ. Նաթան Եպս. Յովհաննիսեանը:

**ՄԱՄԼՈՅ ԴԻՒԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌԻ**

## ԵՊԻՍԿՈՊՈՍԱԿԱՆ ԺՈՂՈՎ ՄԱՅՐ ԱԹՈՌ ՍԲ. ԷՋՄԻԱԾՆՈՒՄ

Յուլիսի 9–ին Մայր Աթոռ Սբ. Էջմիածնում գումարուեց եպիսկոպոսական ժողովի հերթական նիստ՝ նախագահութեամբ կաթողիկոսական տեղապահ Ամենապատիւ Տ. Ներսէս Արք. Պօզապալեանի, ատենապետութեամբ՝ Երուսաղէմի եւ Կ. Պոլսոյ հայոց պատրիարքների:

Նիստի սկզբում ընտրուեց եպիսկոպոսական ժողովի նոր դիւան: Ի պաշտօնէ դիւանը նախագահում է Ամենայն Հայոց կաթողիկոսը կամ կաթողիկոսական տեղապահը, ատենապետում՝ Երուսաղէմի եւ Կ. Պոլսոյ պատրիարքները: Ատենադպիրներ ընտրուեցին Տ. Եզնիկ Եպս. Պետրոսեանը եւ Տ. Աբրահամ Եպս. Մկրտչեանը:

Ժողովը ընտրեց նաեւ եպիսկոպոսական ժողովի օրակարգը կարգաւորող յանձնաժողով, որի կազմում ընդգրկուեցին Եգիպտոսի հայոց Առաջնորդ Տ. Զաւէն Արք. Չինչինեանը, Գերմանիայի հայոց Առաջնորդ Տ. Գարեգին Արք. Բեքչեանը եւ Լիոնի Եպիսկոպոս Տ. Նորվան Զաքարեանը:

Ժողովը քննարկեց Հայ Եկեղեցու առջեւ դրուած մի շարք հարցեր:

**ՄԱՄԼՈՅ ԴԻՒԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌԻ**

ԳԱՀԻՐԷ

## ՀՀ ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ ՍԵՐԿԷՅ ՄԱՆԱՍԱՐԵԱՆ ՅԱՆՁՆԵՑ ԻՐ ՀԱՒԱՏԱՐՄԱԳԻՐԸ

Յուլիսի 6-ին, Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան նախագահ Հոսնի Մուպարաքի յանձնեց իր հաւատարմագիրը:

Հանդիսաւոր արարողութեան ժամանակ կայացած կարճատեւ զրոյցի ընթացքում նախագահ Մուպարաքը խնդրեց իր ողջոյնները փոխանցել Հայաստանի Հանրապետութեան նախագահ Ռոբերտ Քոչարեանին: ԵԱՀ նախագահը ՀՀ դեսպանին յաջողութիւններ մաղթեց հայ-եգիպտական յարաբերութիւնների զարգացման եւ ամրապնդման գործում:

ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ
ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ

ԱՐՑԱԽ

## ՆԱԽԱԳԱՀ ՌՈՊԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆ՝ ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏԻ ՄԷՋ

Յուլիս 10-ին,միօրեայ աշխատանքային այցելութեամբ Ղարաբաղ այցելեց Հայաստանի նախագահ Ռոպերթ Քոչարեան, որու կ'ընկերանային Հայաստանի Պաշտպանութեան նախարար՝ Վաղարշակ Յարութիւնեան, Ներքին Գործերու նախարար՝ Սուրէն Աբրահամեան եւ այլ պաշտօնական անձեր:

Քոչարեան հանդիպումներ ունեցաւ Ղարաբաղի նախագահ՝ Արքատի Ղուկասեանի, Վարչապետ Անուշաւան Դանիէլեանի, ԱԺի նախագահ՝ Օլէկ Եսաեանի եւ Ղարաբաղի Պաշտպանութեան Բանակի Հրամանատար՝ Սամուէլ Բաբայեանի հետ: Զրոյցներու ընթացքին քննարկուեցան Ղարաբաղի ներքին քաղաքական կացութեան հետ առընչուած խնդիրներ:

Խօսելով իր այցելութեան նպատակին մասին, Հայաստանի նախագահը մտահոգութիւն յայտնեց Արցախի մէջ տիրող վատառողջ քաղաքական մթնոլորտի կապակցութեամբ. նշեց որ այսպիսի լարուածութիւն մը թոյլատրելի չէ, քանի որ անիկա ժխտական ազդեցութիւն կը գործէ նաեւ Ղարաբաղի միջազգային հեղինակութեան վրայ:

Այս հանդիպումներէն ետք, Հայաստանի նախագահը արդիւնաւէտ նկատեց իր շփումները եւ ըսաւ որ կը հաւատայ թէ բոլոր տարաձայնութիւնները կրնան հարթուիլ:

Հանդիպման ընթացքին Ռոպերթ Քոչարեան դարձեալ ընդգծեց թէ Հայաստան կ'աջակցի Լեռնային Ղարաբաղի մէջ օրինաւոր կերպով ընտրուած քաղաքական ղեկավարութեան:

ԼԻԲԱՆԱՆ

## ՀԱՐՑԱԶՐՈՅՑ՝ ԸՆԿ. ՏՈՔԹ. ԵՂԻԿ ՃԵՐԷՃԵԱՆԻ ՀԵՏ

Ծ. Խ.- Լիբանանեան «Ալ Պուհութ» ամսաթերթը, յաջորդական երկրորդ տարին ըլլալով, իր Ապրիլ ամսուան թիւը նուիրած է հայկական Մեծ Եղեռնին եւ ընդհանրապէս Հայ ժողովուրդին: Ամսաթերթին թիւին մէջ աշխատակցութիւններ եւ հարցազրոյցներ ունին Կաթողիկէ Հայոց Պատրիարք Պետրոս ԺԹ. Գասպարեան, Լիբանանահայ թեմի Առաջնորդ Գեղամ Ծ. Վրդ. Խաչերեան, Լիբանանի մօտ Հայաստանի արտակարգ եւ լիազօր դեսպան Արման Նաւասարդեան, նախկին վարչապետ Ռաշիտ Էլ Սոլհ, Նախարար Արթիւր Նազարեան, երեսփոխաններ Ընկ. Տոքթ. Եղիկ Ճերէճեան, Միշել Ֆարաոն, Ղասսան Ալ Աշքար եւ ուրիշներ:

«Ալ Պուհութ»ի այս թիւը, իր ամբողջութեան մէջ վերցուած Հայ Դատին եւ հայ ժողովուրդին նպաստ կատարուած քարոզչութեան տեսակէտէն՝ կը ծառայէ իր նպատակին: Ամսագիրը կու գայ աւելնալու հայանպաստ հրատարակութիւններու երկար շարքին, որ վերջերս յատկապէս ճոխացաւ բազմաթիւ նախաձեռնութիւններու շնորհիւ. հայութիւնը արաբական շրջանակներուն ծանօթացնելու այս ողջունելի թափը, պէտք է շարունակել:

Ստորեւ, թարգմանաբար կու տանք յապաւումներով՝ «Ալ Պուհութ» ամսաթերթի կատարած հարցազրոյցը երեսփոխան Ընկ. Տոքթ. Եղիկ Ճերէճեանին հետ:

ՀԱՐՑՈՒՄ.- *Ձեզի համար ի՞նչ կը նշանակէ Հայկական Ցեղասպանութեան ոգեկոչումը:*

ՊԱՏԱՍԽԱՆ.- Հայկական Ցեղասպանութիւնը, 20-րդ դարու առաջին հաւաքական ցեղասպանութիւնն է, ծրագրուած եւ գործադրուած Օսմանեան Կայսրութեան իշխանութիւններուն կողմէ Ա. Աշխարհամարտի ընթացքին, որուն զոհ գացին մէկ ու կէս միլիոն հայեր: Հոս, տեղին է նշել, որ Հայկական Ցեղասպանութիւնը միայն Ա. Աշխարհամարտի ընթացքով չի սահմանափակուիր. այդ սկսած է շատ աւելի շուտ. Թուրքիոյ մէջ հայկական ջարդեր տեղի ունեցան 1895ին՝ որուն զոհ գացին 300 հազար հայեր, 1909ին Կիլիկիոյ մէջ տեղի ունեցան ջարդեր՝ որուն զոհ գացին 30,000 հայեր, Ա. Աշխարհամարտի աւարտէն ետք, Թուրքիան, Մուսթաֆա Քեմալի ղեկավարութեամբ, շարունակեց իր յարձակումները Հայաստանի անկախ հանրապետութեան դէմ՝ պատճառելով տասնեակ հազարաւոր զոհեր, 1922ին վայրագ սպանդներ տեղի ունեցան Իզմիր քաղաքին մէջ, իսկ 1934ին ջարդեր կազմակերպուեցան Ալեքսանտրեթի նահանգին մէջ: Սակայն, Ապրիլի 24ը կ'ընդունուի որպէս Հայկական Ցեղասպանութեան յիշատակի օր, որովհետեւ 1915 թուականին այդ օրը, Թուրքիոյ Երիտ. թրքական իշխանութիւնները, Օսմանեան Կայսրութեան ամբողջ տարածքին ձերբակալեցին Հայ ժողովուրդին մտաւորականները, ղեկավարներն ու առաջնորդները եւ ապա սպաննեցին զանոնք ամենավայրագ ձեւերով: Ուստի, այդ օրը կ'ընդունուի որպէս բոլոր հայ նահատակներուն յիշատակի օրը: Այդ օր, Հայ ժողովուրդի բոլոր զաւակները, աշխարհի բոլոր անկիւններուն մէջ, տարբեր ձեւերով եւ միջոցներով կը յիշատակեն պատմութեան այս ցաւալի թուականը:

Հ. *Մենք տեղեակ ենք որ հեղինակն էք հայերէն լեզուով գիրքի մը որ կը կոչուի «Փանթուրանիզմը»: Ինչպէ՞ս կը սահմանէք Փանթուրանիզմը:*

Պ.- Փանթուրանիզմը, ցեղապաշտական եւ ծաւալապաշտական գաղափարախօսութիւն մըն է, որ կը նպատակադրէ ստեղծել «Թուրան» անունով մեծ կայսրութիւն մը. այս կայսրութեան սահմանները կ'երկարին Արեւելեան Եւրոպայէն մինչեւ Ճափոն եւ Կեդրոնական Ռուսիայէն մինչեւ Հիւսիսային Ափրիկէ: Այս գաղափարախօսութիւնը իր կարթօնքը ապրեցաւ այս դարու սկիզբին եւ իր տեսական մեկնաբանութիւնները ունեցաւ այդ գաղափարախօսութեան առաջնորդներուն գրութիւններուն մէջ: Յիշարժան է ըսել թէ այդ տեսաբաններէն կարեւոր թիւ մը «տէօնմէ» հրեաներ էին: Միւս կողմէ, եթէ Համաշխարհային Ա. պատերազմի պատմութիւնը ուշադիր ուսումնասիրենք, կը համոզուինք որ, Հայկական Ցեղասպանութիւնը այլ բան չէ, եթէ ոչ Փանթուրանիզմի ճամբայէն Հայ ժողովուրդ կոչուած արգելքը վերացնելու փորձ մը:

Այս գաղափարախօսութեան սկզբունքները մինչեւ օրս առկայ են թուրք պատասխանատուներուն մտածելակերպին մէջ. չմոռնանք 1992ին Թուրքիոյ նախագահ Թուրքութ Էօզալի կողմէ արձակուած նշանաբանը.- «Ատրիադիք Ծովէն մինչեւ Չինական Պարիսպ»:

Հ.- *Որպէս լիբանանահայ, ի՞նչն է որ քեզ կը կապէ հայրենիքիդ՝ Հայաստանին:*

Պ.- Զիս Հայաստանին կապողը արմատներս են, պատմութիւնս է, մշակոյթս է, իմ ժողովուրդիս անցած դժուար ճամբան է եւ անոր ունեցած ձգտումներն են. այս բոլորն են որ զիս կը կապեն Հայաստանին հետ: Անշուշտ, Երեւանի մէջ բարձրագոյն կրթութիւն ստանալու տարիներուս, այս զգացումները խորացան անձնական բարեկամութիւններու: Ներկայիս, որպէս պատասխանատու անձ մը, իմ գործունէութեանս գլխաւոր նպատակներէն մին ըրած եմ Լիբանան-Հայաստան կապերուն ամրապնդումը, անոնց ընդարձակումը տարբեր բնագաւառներէ ներս՝ եւ այս յօգուտ երկու բարեկամ ժողովուրդներուն:

Հ.- *Ինչպէ՞ս կը տեսնէք Հայ Դատին լուծումը:*

Պ.- Մինչեւ օրս, թրքական իշխանութիւնները կը ժխտեն որ իրենց նախնիները Հայկական Ցեղասպանութիւն գործադրած են. անոնք նոյնիսկ կը մերժեն ընդունիլ Հայկական Հարցին գոյութիւնը: Կը խորհիմ թէ Հայ Դատի լուծումը կը սկսի, երբ թրքական իշխանութիւնները կ'ընդունին Հայկական Ցեղասպանութեան իրողութիւնը եւ Հայ ժողովուրդի ներկայացուցիչներուն հետ բանակցութեան սեղան կը նստին:

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

### «ՄԻՍՍ ՀԱՅԱՍՏԱՆ 1999» ՄՐՑՈՒՄԸ ՍԵՊՏԵՄԲԵՐԻՆ

«Միսս Հայաստան» մրցումը, որ վերջին տարիներուն աւանդաբար տեղի կ'ունենայ Հայաստանի մէջ, այս տարի պիտի կազմակերպուի Սեպտեմբերի վերջաւորութեան: 24 գեղուհիներ պիտի մասնակցին մրցումին: Տակաւին Հայաստանի եւ Արցախի զանազան մարզերու մէջ կը կայանան մրցումի սկզբնական հանգրուանները կ'ընտրուին մարզի եւ քաղաքի գեղուհիներ: Մրցումին մասնակցելու նպատակաւ դիմում կատարած են նաեւ Երեւանցի 3000 պարմանուհիներ, որոնցմէ միայն տասն է որ իրաւունք շահած են մասնակցելու մրցումի եզրափակիչ փուլին: Այս անգամ մրցումին պիտի մասնակցի նաեւ Լիբանանի հայկական համայնքի գեղեցկուհին:

Աւանդաբար գեղեցկութեան մրցումը կը կազմակերպուէր Մայիս-Յունիս ամիսներուն, սակայն այս տարի կարգ մը հանգամանքներու բերումով («Միսս Եւրոպա» գեղեցկութեան մրցում, եւլն.) մրցումը յետաձգուեցաւ մինչեւ Սեպտեմբեր:

Ի դէպ, յայտնենք որ «Միսս ԱՊՀ-1999» եւ «Միսս Հայաստան 1998» մրցումներու յաղթող Գոհար Յարութիւնեան, մասնակցեցաւ «Միսս Եւրոպա» մրցումին, որ քանի մը օր առաջ սարքուեցաւ Պէյրութի մէջ: Ուրախութեամբ կը տեղեկանանք որ Հայաստանցի գեղուհին 6րդ հանդիսացաւ, արժանանալով «Միսս Տաղանդ» մրցանակին:

### Նշուելու է Մխիթարեան Միաբանութեան 300-ամեակը

Վենետիկի Մխիթարեան միաբանութիւնը 1999-2000 թուականների ընթացքում նշելու է իր 300-ամեայ յոբելեանը (1700-2000): Միաբանութեան Դիւանի տարածած հաղորդման համաձայն, հանդիսաւոր յիշատակութիւն է արուելու նաեւ Միաբանութեան հիմնադիր Մխիթար Վարդապետ Սեբաստացի Աբբահօր մահուան 250-ամեակը, որը լրանում է այս տարի:

«Հոգեւոր, իմացական եւ մշակութային տեսանկիւնէն դիտուած՝ պիտի նշուին նաեւ դարաւոր Միաբանութեան բեղուն գործունէութիւնը յատկանշող ոգին նուաճումները, որոնք 300 տարիներու տքնաջան աշխատանքով վերարծածեցին հայ ժողովուրդի հոգեկան ու մշակութային արժէքները, նպաստելով անոր հարազատ դիմագիծին, աւանդութիւններուն եւ լեզուի զարգացման, ասուած է հաղորդման մէջ:

### ՎԵՐՋԻՆ ՕԾՈՒՄ ԵՒ ...

1

Տեղի ունեցաւ հողի օրհնութիւն, որմէ յետոյ Վեհափառի մարմինը յանձնուեցաւ հողին եւ սկսաւ գերեզմանի կնքման արարողութիւնը:

Գերեզմանի կնքումը տեւեց 7 օր. ամէն օր գերեզմանը յատուկ արարողութեամբ չերտ առ չերտ կը լեցուէր հողով, իսկ շիրմաքարը կը տեղաւորուի 40 օր ետք:

Երէկ, Չորեքշաբթի, Յուլիս 14-ին, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի մէջ, յատուկ արարողութեամբ նշուեցաւ Երջանկայիշատակ Գարեգին Ա. Ամենայն Հայոց Կաթողիկոսի թաղման եօթնօրեակը:

Եկեղեցւոյ կարգին համաձայն, արարողութենէն ետք, Վեհափառ Հայրապետին գերեզմանը խաչով կնքուեցաւ:

ԳԱՀԻՐԷ

## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

### ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, որ Վարժարանիս 1998-1999 ուսումնական տարեշրջանի Գ. նախակրթարանի, Ե. նախակրթարանի եւ բարձրագոյն պատրաստականի (էտատէյայի) պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ: Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

| Գ. ՆԱԽԱԿՐԹԱԿԱՆ | | 100-էն |
|---|---|---|
| Գարօլին Ժիրայր Շուշանեան | | 100 |
| Ալիս Սարգիս Ժամկոչեան | | 97.5 |
| Ալէն Ժան Ղազարեան | | 97 |
| Մայքըլ Սարգիս Ժամկոչեան | | 95 |
| **Ե. ՆԱԽԱԿՐԹԱԿԱՆ** | **350-էն** | **100-էն** |
| Ժորժ Եագուպ Կիւրիւնլեան | 302 | 86.3 |
| Րաֆֆի Սեպուհ Եսայեան | 275 | 78.5 |
| **ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ** | **280-էն** | **100-էն** |
| Տօրիս Ակոբ Ժան Սոլոմոն | 267.5 | 95.5 |
| Թալին Մարգպետ Արթինեան | 261.5 | 93.3 |
| Տիանա Միլատ Գալտաս | 232.5 | 83 |
| Րուպինա Ֆուատ Արթին | 208 | 74.3 |
| Արամ Սեպուհ Եսայեան | 198.5 | 70.9 |
| Սամուէլ Գառնիկ Պալճեան | 177 | 63.2 |

Տնօրէնութիւնս եւ ուսուցչաց կազմը կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ յաջողած աշակերտները յառաջիկայ նորանոր նուաճումներու մաղթանքներով:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

### ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, որ Վարժարանիս 1998-1999 ուսումնական տարեշրջանի Գ. եւ Ե. նախակրթարան եւ Գ. պատրաստականի պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:-

| Գ. ՆԱԽԱԿՐԹԱԿԱՆ | | 100-էն |
|---|---|---|
| Թալին Սարգիս | | 100 |
| Տարօն Կապէյեան | | 97.5 |
| Վահան Թէրզիպաշեան | | 86 |
| Վան Բյատեան | | 86 |
| Վարդգէս Լիյլոզեան | | 81 |
| **Ե. ՆԱԽԱԿՐԹԱԿԱՆ** | **350-էն** | **100-էն** |
| Կարօ Ասլանեան | 321 | 91.7 |
| Նարինէ Աւետանեան | 312 | 89.1 |
| Գեղամ Թէրզիպաշեան | 305 | 87.1 |
| Նայիրի Յակոբեան | 297 | 84.8 |
| Հրազդան Գայընեան | 295 | 84.2 |
| Անդրանիկ Պէնեան | 293 | 83.7 |
| Հրաչեայ Լիյլոզեան | 292 | 83.4 |
| Թէրէզ Անանեան | 275.5 | 78.7 |
| Արփի Գազազեան | 266 | 76 |
| Ռոպէր Աւետիսեան | 254.5 | 72.7 |
| **Գ. ՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ** | **280-էն** | **100-էն** |
| Լիւսի Գասապեան | 267 | 95.3 |
| Մարալ Պալաեան | 255 | 91 |
| Ալին Ասլանեան | 251 | 89.6 |
| Ալէն Սօնպաթի | 248 | 88.5 |
| Ժանօ Բերլոշեան | 245 | 87.5 |
| Մարկրիդ Պէնեան | 244 | 87.1 |
| Յակոբ Յակոբեան | 240 | 85.7 |
| Մանուէլ Աւետիսեան | 239 | 85.3 |
| Ալէն Գազազեան | 228 | 81.4 |
| Մարալ Յակոբեան | 216 | 77.1 |
| Սիմոն Տեփոյեան | 216 | 77.1 |
| Նաթալի Սիրքէճեան | 207 | 73.9 |

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

* * *

*Խմբագրութիւնս եւս կը շնորհաւորէ վարժարաններու տնօրէնութիւնները՝ ուսուցչական կազմերն ու յաջողած աշակերտները այս փայլուն արդիւնքներուն համար, յաջողութեան մաղթանքներով:*

ԱՐՑԱԽ

## Ղարաբաղի Տագնապը Դեռ Անլոյծ

Հակառակ նախագահ Քոչարեանի անձնական միջամտութեան, Ղարաբաղի տագնապը տակաւին իր լուծումը չէ գտած: Ստեփանակերտէն ստացուած լուրերու համաձայն Ղուկասեան եւ Պապայեան տարակարծիք են Պաշտպանութեան եւ Ներքին նախարարութիւններու շուրջ: Ներքին նախարար նշանակուած է Արթիւր Աղաբէկեան, բայց կ'ըսուի, թէ Պապայեան դէմ է այդ անձին:

Պաշտպանութեան նախարարի աթոռը կը մնայ թափուր: Կարգ մը լուրերու համաձայն, այդ պաշտօնին պիտի նշանակուի զօրավար Արկատի Տէր Թադէոսեան, իսկ զօրավար Պապայեան պիտի ըլլայ բանակի ընդհանուր հրամանատար: Պապայեանի եղբայրը՝ Կարէն, որ Ստեփանակերտի քաղաքապետն է, հերքեց այդ լուրը, ըսելով թէ զօրավար Տէր Թադէոսեան չ'ուզեր նախարար նշանակուիլ:

### Նախորդ Վարչապետ Ժիրայր Պօղոսեան Առժամապէս Ազատ Արձակուած

Ստեփանակերտէն կը հաղորդեն, թէ Ղարաբաղի նախորդ վարչապետ՝ Ժիրայր Պօղոսեան, որ Ուրբաթ 9 Յուլիսին ձերբակալուած էր ապօրինի կերպով զէնք կրած ըլլալու յանցանքով, Երկուշաբթի 12 Յուլիսի ուշ գիշերին առժամապէս ազատ արձակուած է:

ՓԱՐԻԶ

## ՆԱԶԱՐԷԹ ԲՇՏԻԿԵԱՆ՝ ՈԴԻՍԱԿԱՆ ՄԸ

*Ապրիլ 18ին, Փարիզի Հ.Բ.Ը.Մ.ի Ալեք Մանուկեան Կեդրոնին մէջ, պատշաճ ձեռնարկով մը մեծարուած է ֆրանսահայութեան հանրածանօթ դէմք՝ ընկեր Նազարէթ Բշտիկեանը, իր ծննդեան 90 ամեակին առիթով: Շուրջ 200 ֆրանսահայեր, ներկայ գտնուելով այդ ձեռնարկին, իրենց յարգանքն ու երախտագիտութիւնը յայտնած են վեթերան ընկերոջ:*

*Մեծարանքի ձեռնարկին խօսք առած են Եւրոպայի հայոց կաթողիկոսական պատուիրակ, Փարիզի Առաջնորդ Գերշ. Գիւտ Արք. Նագաշեան, յանուն Ս.Դ.Հ.Կ. Ֆրանսայի Վարիչ Մարմինին՝ Խաչիկ Նաճարեան, յանուն «Նազարբէկ» Երիտասարդական Միութեան՝ Յարութիւն Այնէճեան, շնորհաւորական գիրերը ընթերցած են «Մարօ» մասնաճիւղի ժրաջան ընկերուհիներ՝ Լենա Իշխանեան եւ Մարօ Ղազարեան, խօսք առած է նաեւ մեծարեալը՝ ընկ. Ն. Բշտիկեան: Տեղի ունեցած է գեղարուեստական յայտագիր ջութակի, սամուրի եւ դաշնամուրի մասնակցութեամբ, ձեռնարկը եզրափակուած է հիւրասիրութեամբ:*

*Ստորեւ կը ներկայացնենք Նազարէթ Բշտիկեանի, համառօտ կենսագրականը:*

*Նազարէթ Բշտիկեան*

Ն. Բշտիկեան ծնած է 1909 Օգոստոսին, Զէյթունի մէջ: Որբացեր է արդէն հօրմէ ու մօրմէ: Իր առաջին յիշատակը չէ կապուած ո՛չ հօրը, ո՛չ մօրը, այլ իր երկրորդ հօրեղբօրը, ոմն Յարութիւն վերանուանեալ *Շէֆթէլի*, կոչումով՝ *Էշխօ*, որ զէյթունեան բարբառով աղաւաղեալ ձեւն է թրքերէն *Էշքիա* բառին, այսինքն՝ հրոսակ կամ ապստամբ: Համաշխարհային Առաջին Պատերազմը ծայր տուած է արդէն, մինչ Թուրքիոյ սահմաններէն ներս սկսած է գործադրուիլ Եղեռնը. զգայուն մարզեր են նաեւ Զէյթունը, Մարաշը, Այնթապը, ինչպէս հայաբնակ բոլոր շրջանները՝ Թուրքիոյ տարածքին:

Ընկերակցութեամբ իր զարմուհիին՝ առաջին տեղահանութիւն՝ դէպի Մարաշ, ուր կ՛որդեգրուի *Եաղճի* Նազարէթի ընտանիքին կողմէ: Սակայն երկար չի տեւեր խաղաղաճառի երդիքին տակ այս կեցութիւնը: Շուտով ան կը բռնէ աքսորի ճամբան, որ կ՛անցնի Հալէպէն, հասնելու համար Սալամիյէ, ուր մարդիկ գտեր էին հաց ճարելու միջոց մը, - արջառի հաստ ճարպով պատրաստել մոմեր, եւ զանոնք վաճառելով օրապահիկ ապահովել:

Պատերազմը վերջ գտեր է արդէն, զինադադարը կը բերէ նոր վերիվայրումներ: Հասնելով Մարաշ, իր հասակակիցներուն հետ որբանոց կ՛ընդունուի: Քանի մը օր ետք, իր առաջին մտադրութիւնը կ՛ըլլայ՝ վերագտնել իր որդեգիր ընտանիքը: Չի յաջողիր սակայն, որովհետեւ ճիշդ այն օրը, կռիւները կը սկսին քաղաքին մէջ: Չի կրնար նոյնիսկ վերադառնալ իր որբանոցը: Այս անգամ Մարաշի մեծահարուստներէն՝ Խըրլաքեաններու ընտանիքն է, որ ապաստան կու տայ իրեն:

Ամիս մը ետք նոր տեղաշարժ եւ որբերու կարաւանը ճամբայ կ՛ելլէ դէպի Հալէպ: Անոնք ճամբայ ելած են դէպի անորոշը՝ խոյս տալու համար դժոխքէն: Ապա Հալէպէն՝ որբերը շոգեկառքով կը փոխադրուին Պէյրութ:

Պէյրութէն Ճըպէյլ՝ պատմական Բիպլոսը: Նո՛ր կայք, նո՛ր որբանոց: Պատանին դեռ կը յիշէ, կէսօրէ առաջ ձեռային աշխատանք կէսօրէ ետք նախագիտելիքները հայերէն լեզուի:

15 տարեկան պատանին, հոսանքէն տարուած թերեւս, կ՛ուզէ երթալ Երուսաղէմ, եւ հայոց վանքին մէջ ուսում ստանալ: 1924ին, իր ետին ձգելով ծովահայեաց Ճըպէյլ գիւղաքաղաքը, կ՛իջնէ դէպի հարաւ՝ Հայֆա, Եաֆա եւ վերջապէս հոգեկան նաւահանգիստ՝ Երուսաղէմ:

6 տարի ետք, ան կ՛որոշէ հեռանալ Մերձաւոր Արեւելքէն եւ երթալ դէպի Արեւմուտք, Ֆրանսա: 1930ին, Պէյրութէն նաւ կ՛առնէ եւ Մարսէյլ կը հասնի նոր տարուան տօնական օրերուն:

Նազարէթ Բշտիկեան, հիմա ազատութեան երկրին մէջ մտեր է արդէն: Զրկանքներու մէջ թրծուած վճռակամութեամբ՝ ան ասպարէզ կը նետուի սպառիչ, կլանող գործունէութիւն մը ծաւալելով ընկերային-մարզական գետնի վրայ, միեւնոյն ատեն նուիրուելով թատերական կեանքին: Իրմէ խլուած տարիներու կորուստով ինքնուս ըլլալու դատապարտուած երիտասարդը թատերական կեանքին մէջ կը գտնէ հատուցումը կորուստին. թատրոնը նոր դպրոց մըն է, որ ո՛չ միայն կ՛ուսուցանէ կեանքին խորհուրդները, այլ ատոնցմէ առաջ, կարեւորագոյնը՝ իրեն կ՛ընձեռէ լեզու, լեզուներ, լաւագոյն աննիւթական գործիքը՝ ընկերային կեանքի մէջ բարձրանալու: Նախաձեռնարկ կ՛ըլլայ՝ Փարիզի հայահոծ արուարձաններու, մասնաւորաբար Իսի-լէ-Մուլինոյի, Մէօտոնի եւ Գլամարի մէջ, իր շուրջ համախմբելով հայ երիտասարդուհիներ եւ երիտասարդներ, մարզական խումբ եւ թատերախումբ հիմնելու: Իր անունը կ՛երեւի թերթերու մէջ արդէն, Փարիզ ապաստան գտած յայտնի դերասաններու անուններու շարքին,- Գոհար Ազնաւուրեան, Արտաշէս Գմբէթեան, Գոմետի-Ֆրանսէզի անդամ-դերասան՝ Հայկազուն Բագրատունի, նմանապէս Նուրհան Մարգարեան, եւ ուրիշներ:

Թատերական գործունէութիւնը արգելք չ՛ըլլար իրեն՝ կատարելու իր քաղաքացիական աւագ պարտականութիւնը, երբ վրայ կը հասնի Համաշխարհային Բ. Պատերազմը: Ներկայացումներու զուգահեռ՝ ան իր մասնակցութիւնը կը բերէ դիմադրական ընդյատակեայ գործունէութեան: Պատերազմի աւարտէն քանի մը տարի ետք, Դիմադրական Շարժումի Ֆրանք եւ անգլիական Ընկերակցութիւնը, գնահատելով իր ծառայութիւնները, զինք կը պատուէ դիմադրականներու շքանշանով, որուն խորհրդանշական կոճակը կը կրէ իր բաճկոնի լամբակին վրայ, ճիշդ կողքին իր պատկանած կուսակցութեան՝ Ս.Դ. Հնչակեան կուսակցութեան զինանշանի մանրակերտ վերարտադրութեան: Երէկի ընտանեզուրկը արդէն ունի ընտանեկան կեանք: Ինք եւս կարգի կը մտնէ. Ֆրանսա իր հասնելէն երեք տասնամեակ ետք, 51 տարեկանին կը ստանայ ֆրանսական քաղաքացիութիւն...: Ընտանիքի հայր՝ երկու աղջիկ եւ երկու մանչ զաւակներով, գրեթէ դարուս հասակով այս մարդը, այսօր մեծ-հայր է հինգ թոռներու: Ան կը շարունակէ իր անյետաձգելի պարտականութիւնը կատարել, ամէն Կիրակի առաւօտ երթալով Փարիզի Հայոց Եկեղեցիին մէջ անպայման մոմ մը վառելով եւ աղօթք մը մրմնջելով:

Արդարեւ, թէեւ ան ապրած է Մեծ Եղեռնի անբաղձալի օրերը, սակայն հայու անխորտակելի կամքով կարողացած է դիմագրաւել ու յաղթահարել կեանքի բոլոր ելեէջներուն: Դերասանական ծիրէն ներս, իր ձեռք բերած մեծ յաջողութիւնները, մշակոյթի եւ արուեստի կեանքի մէջ ունեցած իր

↳ 4

## Թ.-ԺԹ. ԴԱՐԵՐՈՒ ՀԱՅ ՄԱՆՐԱՆԿԱՐԻՉՆԵՐՈՒ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ

ՏԻԳՐԱՆ ԳԷՈՐԳԵԱՆ

Արդէն չորս տասնամեակէ ի վեր, Հայաստանի Հանրապետութեան Կառավարութեան Առընթեր Մ. Մաշտոցի Անուան Հին Ձեռագրերու Ինստիտուտը՝ դարձած է Հանրապետութեան գիտական միտքի գլխաւոր օճախներէն մէկը:

Հին Ձեռագրերու Ինստիտուտը՝ որ համայն աշխարհին այլեւս ծանօթ դարձած է *ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ* անունով, հայագիտութեան բոլոր ճիւղերը ուսումնասիրելու համար, մէկտեղած է գիտնականներու մնայուն անձնակազմ մը՝ որուն մեղուաջան աշխատակիցներէն է արուեստաբան *Աստղիկ Գէորգեանը*:

Ան՝ իր գիտական ուսումնասիրութիւններուն առարկան դարձուցած է միջնադարեան արուեստի ճիւղերէն՝ *մատենական գեղանկարչութիւնը,* որուն մասին գրած յօդուածները՝ լոյս տեսած են հայագիտական եւ արուեստի պարբերական մամուլին մէջ. ատոնցմէ զատ, հրատարակած է երկու թեմատիկ ալպոմներ(*):

Տարիներու ընթացքին իր ուսումնասիրած բոլոր մանրանկարներուն գիտական դասաւորումով եւ օգտագործած գրականութեան ամփոփումով, Աստղիկ Գէորգեան հրապարակ հանեց *«ՀԱՅ ՄԱՆՐԱՆԿԱՐԻՉՆԵՐ, Մատենագիտութիւն, IX-XIX դդ.»* հատորը, որ լոյս տեսաւ Գահիրէի մէջ, 1998-ի վերջաւորութեան:

822 էջերէ բաղկացած այս փառաւոր հատորը տպագրութեան յանձնուած է Մաշտոցի անուան Մատենադարանի գիտական խորհուրդին որոշումով, եւ տպագրութեան արժանացաւ Գահիրէի ՀԲԸՄ-ի «Սաթենիկ Ճ. Զագըր» Հիմնադրամի միջոցներով:

Ձեռագրագէտ (պատմական գիտութիւններու թեկնածու) Ա. Մաթեւոսեան եւ բանասիրական գիտութիւններու թեկնածու Ա. Տէր-Ստեփանեան եղած են հատորին հրատարակութեան խմբագիրները, իսկ յառաջաբանին խնամուած թարգմանութիւնը կատարած է Ա. Զարխչեան:

*Մատենադարան, Աւետարան, ԺԴ. դ., Ձեռ. թիւ 4456, 73բ:*

Ամենասեղմ տողերու մէջ՝ կը փորձեմ «Ջահակիր»-ի ընթերցողներուն ներկայացնել այս աշխատութեան էական մասերը:

Յառաջաբան՝ էջ 5-11, Préface, 12-18:

Համաշխարհային ճանաչումի արժանացած հայ մանրանկարչութիւնը՝ Աստղիկ Գէորգեանի գնահատումով, իր ամբողջութեան մէջ, անհրաժեշտ ձեւով չէ ուսումնասիրուած տակաւին. շարք մը գրչատուներ՝ բարձրարուեստ եւ ինքնատիպ նկարազարդումներ ունեցող իրենց ձեռագրերով, մասնագէտներու ուշադրութեան չեն արժանացած: Կան ձեռագիրներ՝ որոնց ծաղկողներուն ինքնութիւնը չէ որոշուած. պարզուած չէ նաեւ, թէ այս կամ այն ձեռագիրը մանրանկարչական ո՞ր դպրոցին կը պատկանի: Կը պակսին անհրաժեշտ տեղեկութիւններ բովանդակող աղբիւրներ՝ նկարազարդ ձեռագրերու մատենագիտութիւն, մանրանկարիչներու եւ անոնց ստեղծագործութիւններուն լիակատար ցուցակը, թեմատիկ նկարներու ցանկեր՝ որոնք արուեստաբաններուն հնարաւորութիւն կրնան տալ հիմնաւորապէս զբաղելու իրենց հետաքրքրող հարցին խոր ուսումնասիրութեամբ:

Ահա, ճիշտ այդ թերիները լրացնելու նպատակով, Աստղիկ Գէորգեան կազմած է ներկայացուող «Մատենագիտութիւն»-ը:

Դարերու ընթացքին, ձեռագրերը բազմացուած եւ իրենց գոյութիւնը պահպանած են ընդօրինակումի շնորհիւ. այսպէս, կ'օրինակուէին ոչ միայն նոյն գրչատան մէջ պատրաստուած մատեանները, այլեւ տարբեր գրչատուներէ հայթայթուած բարձրարուեստ գործեր:

*Ծաղկող, նկարող, ոսկող, դեղիչ, գունող, պատկերահան, զուգող* մասնագիտական նեղ կոչումներ տրուած են այն գրչատուներուն մէջ, ուր ձեռագրի պատրաստութեան մասնակցած են մէկէ աւելի մասնագէտներ. *«վարպետաց վարպետ»*-ը կը կատարէր ուրուանկարները, իսկ օգնականները՝ ոսկեզօծումն ու գունազարդումը: Այս նկարիչներուն մեծ մասը ունեցած է մասնագիտական կրթութիւն եւ սորված է գեղանկարչական դպրոցներու մէջ: Ասոնցմէ զատ եղած են նաեւ ինքնուս նկարիչներ ալ:

Նկարչութիւն սորվելու առաջին պայմանը՝ նկատուած է օրինակութիւնը. ձեռագիրներու օրինակութեան համար, որպէս նախագաղափար օրինակ ծառայած են նկարազարդուած լաւագոյն ձեռագրերը եւ յատուկ տետրեր, որոնց մէջ վարպետ ծաղկողին կողմէ՝ ուրուանկարի ձեւով տրուած են զարդանկարներու, զարդագրերու, տէրունական նկարներու բազմաթիւ օրինակներ, աշակերտներուն սորվեցնելու նպատակով: Հայ արուեստի պատմութեան մէջ բացառիկ արժէք կը ներկայացնէ Վենետիկի Մխիթարեաններու Մատենադարանը պահուող Թ. 1434 ձեռագիրը, որ 59 թերթերէ բաղկացած փոքրածաւալ մատեան մըն է. այս ձեռագրին մասին անդրադարձած է Հ. Ղեւոնդ Ալիշան, պայմանականօրէն զայն կոչելով՝ «Պատկերուսոյց գիրք»: Ասոր նման ձեռնարկ մըն է նաեւ Մատենադարանի Թ. 3833 ձեռագիրը: Ուսուցողական այս ձեռնարկներէն զատ, նկարիչներն ալ յաճախ իրենց համար պատրաստած են ուրուանկարներու տետրեր, ինչպէս՝ ԺԹ. դարու մանրանկարիչ Սահակ Ծաղկարարի «Խրատք Ծաղկարարութեան»-ը:

*Մատենադարան, Աւետարան, 1304թ., Ձեռ. թիւ 3722, 12ա:*

Մատենագիտութիւն՝ էջ 19-748:

Այս բաժինը՝ այբբենական շարքով կը պարփակէ Թ.-ԺԹ. դարերու 464 (առաւել կրկնակի համարներ ունեցող 230ա, 234ա, 361ա, 450ա) մանրանկարիչներու շատ համառօտ կենսագրութիւնը, եւ անոնց՝ Մաշտոցի անուան Մատենադարանը պահուած մանրանկարներուն մատենագիտութիւնը, ինչպէս նաեւ համառօտիւ ներկայացուած են կատարուած ուսումնասիրութիւնները՝ նկատի առնելով ճշտումներն ու լրացումները:

Այստեղ կարելի է ուրուագրել գեղանկարչական դպրոցներու գործունէութեան ընթացքը.

Թ.-ԺԲ. դարերէն՝ ծանօթ են ծաղկողներու 13 անուն: Իւրաքանչիւրէն պահպանուած է մէկական ձեռագիր:

ԺԲ. դարէն՝ ծանօթ անուններ են, կիլիկեան մանրանկարիչներ՝ Գրիգոր Մլիճեցին, Գրիգոր Ակոռեցին, Կոզման:

ԺԳ. դարու 39 ծաղկողներու մեծ մասը կրթութիւն ստացած եւ ստեղծագործած է Կիլիկիոյ մէջ. նշանաւոր են՝ Թորոս Ռոսլինը, Թորոս Փիլիսոփան, Կիրակոսը, Սիոնը,Գրիգոր Պիծակը, Ստեփանոսը, Մարգարէն:

ԺԴ. դարուն անուանի դարձած են Վասպուրականի, Սիւնիքի, Արցախի, Բարձր Հայքի, Ղրիմի գրչատուները, ուր ձեռագրեր օրինակած են 67 նկարիչներ՝ Սարգիս Պիծակը, Թորոս Տարօնացին, Մոմիկը, Աւագը, Գրիգոր Տաթեւացին, Զաքարիա Աղթամարցին, Յովհաննէս Խիզանցին, Տերուն ծաղկողը, Մինասը, գրիչ Նատերի որդիներ՝ Աւետիսը եւ Ստեփանոսը, Առաքելը, Կիրակոսը:

ԺԵ. դարուն՝ 95 ծաղկողներ ձեռագրեր նկարազարդած են Վասպուրականի, Սանահին - Հաղբատի, Սիւնիքի, Թիֆլիսի մէջ եւ այլուր. վարպետ նկարիչներ էին՝ Թումա Մինասենցը, Կարապետ Աղթամարցին, Կարապետ Բերկրեցին, Յովհաննէս Սանահնեցին, Օքսենդը, Մանուէլը:

ԺԶ. դարու 54 ծաղկողներէն անուանի են՝ Խաչատուր Խիզանցին, Սարգիս Մոկացին, Առաքել Գեղամեցին:

ԺԷ. դարուն՝ հայ գրչութեան դպրոցները ծաղկում կ'ապրին. 147 ծաղկողներէն նշանաւոր են՝ Հայրապետ Ջուղայեցին, Նիկողայոս Մելանաւորը, Խաչատուր Խասպեկը:

ԺԸ. դարուն՝ ձեռագիր մատեանները իրենց տեղը կը զիջին տպագիր գիրքերուն: Մեզի հասած 40 ծաղկողի անուններէն յիշատակելի են՝ Յովհաննէս Կեսարացին, Գէորգ Թոխաթեցին, Գաբրիէլ ծաղկարարը:

ԺԹ. դարէն հասած են 9 ծաղկողի անուն: Սահակ ծաղկարարը եւ Սիմէոն Դգնունին զարդանկարած են կաթողիկոսական կոնդակներ, եւ ձեւաւորած են տպագիր գիրքեր:

468 ծաղկողներու փաղանգին մէջ՝ ուշագրաւ է հայ իգական սեռին ներկայութիւնն ալ. Արուզ Խաթուն, Գոհարիկ, Մարգարիտ:

Ծաղկողին մասին կենսագրական առկայ տեղեկութիւնները անոնց ծաղկած ձեռագրերը՝ ներկայացուած են հետեւեալ հարցակարգով.

Ձեռագրի համար, Բովանդակութիւն, Ժամանակ, Վայր, Գրիչ, Ձեռագրի նկարազարդում (շատ մանրամասնեալ), Գլխագարդ, Զարդագրութիւն, Դիմանկար (մանրամասնեալ), Գոյն (մանրամասնեալ), Յիշատակարան (մանրամասնեալ), ծանօթագրութիւն (բազմաբնոյթ), Գրականութիւն:

Գիտական մանրակրկիտ հանդերձանքը՝ մեծապէս կը դիւրացնէ այս յոգնասպառ Մատենագիտութեան օգտագործումը. այսպէս, Թեմատիկ նկարներու ցանկը՝ էջ 751-777, Դիմանկարներ՝ (Գրիչներ,

↳ 4

*(*)Աստղիկ Գևորգյան. Արհեստներն ու կենցաղը հայկական մանրանկարներում: «Հայաստան» Հրատարակչություն, Երևան, 1978, 155 էջ:*

*Հայկական Մանրանկարչություն. Դիմանկար: Կազմեց, առաջաբանը գրեց Աստղիկ Գևորգյանը: «Սովետական Գրող» Հրատարակչություն, Երևան, 1982, 246 էջ:*

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, թէ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Ճորճ եւ Թամար Թորոսեաններ, Կիրակի 4 Յուլիսին, բախտաւորուած են առջինեկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Կարէն:

Այս ուրախ առիթով կը շնորհաւորենք նորածինին ծնողքը եւ մեծ ծնողքը՝ Տէր եւ Տիկ. Լեւոն Թորոսեանները ու Տէր եւ Տիկ. Խեչօ Յակոբեանները, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները, մաղթելով նորածին մանկան առողջ եւ երջանիկ կեանք:

* * *

Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Արա եւ Նորա Քէօհնէլեաններ, Հինգշաբթի 8 Յուլիսին, բախտաւորուած են առջինեկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Աշոտ:

Այս բարեբաստիկ առիթով մեր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնենք նորածինին ծնողներուն, եւ մեծ ծնողներուն՝ Տէր եւ Տիկ. Վրէժ Քէօհնէլեաններուն եւ Տէր եւ Տիկ. Տիգրան Գոլոյեաններուն, նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն, մաղթելով արեւշատ եւ երկար կեանք նորածին մանկան:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը տեղեկացնում է, որ 1999-2000 ուսումնական տարուայ համար ՀՀ կառավարութեան կողմից պետական պատուէրի շրջանակներում տարբեր մասնագիտութիւնների գծով սփիւռքահայ դիմորդներին յատկացուել է 60 համալսարանական եւ 7 ասպիրանտական տեղ:

Սփիւռքահայ դիմորդների ընդունելութիւնը կատարուելու է համաձայն «ՀՀ-ում օտարերկեայ քաղաքացիների ուսուցման մասին» կարգի, ՀՀ կրթութեան նախարարի ստեղծած յանձնաժողովի կողմից, մրցութային կարգով, դիմորդների կողմից ներկայացուած փաստաթղթերի քննարկման միջոցով:

Պահանջուող փաստաթղթերի ցանկը եւ այլ լրացուցիչ տեղեկութիւններ կարելի է ստանալ դեսպանութիւնից:

Հեռախօս՝ 342-41-57, 342-41-59:

**Եգիպտոսում Հայաստանի**
**Հանրապետութեան Դեսպանութիւն**

## ՀՄԸՄ-ՆՈՒՊԱՐ ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

**ՊԱՍՔԷԹ ՊՈԼԻ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՄՐՑԱՇԱՐՔ**

Ուրբաթ 23, Շաբաթ 24 եւ Կիրակի 25 Յուլիս 1999

Մանրամասնութիւնները յաջորդիւ

* * *

**ՅԵՏԱՁԳՈՒԱԾ**

Ամենայն Հայոց Ն.Ս.Օ.Ս.Տ. Գարեգին Ա. Կաթողիկոսի վախճանման քառասնօրեայ սուգին առթիւ Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի 24 Յուլիս 1999-ի

**ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է**

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## Թ.-ԺԹ. ԴԱՐԵՐՈՒ ՀԱՅ ՄԱՆՐԱՆԿԱՐԻՉՆԵՐՈՒ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹԻՒՆԸ

3

ծաղկողներ, Պատուիրատուներ եւ ստացողներ, Մշակոյթի գործիչներ, Թագաւորներ, Իշխաններ, Ճգնաւորներ եւ անապատականներ, Նահատակներ, Զօրավարներ, Սուրբեր եւ առաքեալներ, Մարգարէներ) էջ 777-789, Մանրանկարիչներու այբբենական ցանկը՝ էջ 789-798, ժամանակագրական ցանկը՝ էջ 798-806, Տեղանուններ՝ էջ 806-811, օգտագործուած ձեռագրեր՝ էջ 812-814, գունաւոր XXXII տախտակներու ցանկը՝ էջ 815, Գրականութիւն՝ էջ 816-822:

Մատենադարանի հարիւրաւոր ձեռագիրներու ուսումնասիրութեամբ պատրաստուած 468 մանրանկարիչներու Մատենագիտութիւնը՝ վստահելի տեղեկատու մըն է արուեստաբաններուն ձեռքը. մեծ եւ փոքր ձեռագրական հաւաքածոներու ուսումնասիրութեամբ՝ ժամանակի ընթացքին, նոր տուեալներով կարելի է ամբողջացնել եւ համալրել զայն:

Մինչ այդ, այս տքնաջան աշխատութեան հրատարակութենէն ետք, մեզի՝ հիացող ընթերցողներուս, կը մնայ յարատեւութիւն մաղթել, որպէսզի Աստղիկ Գէորգեան կարենայ աւարտին հասցնել իր կազմած *«Անանուն Մանրանկարիչների VI-XIX դդ. Մատենագիտութիւն»*-ն ալ, եւ դարձեալ «Սաթենիկ Ճ. Զագըր» Հիմնադրամի մեկենասութեամբ՝ լոյս տեսնէ Գահիրէի մէջ:

### ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ ՄԸ

Մատենադարանի ղեկավարութիւնը՝ որ մաշտոցեան կամ դասական ուղղագրութեան անաղարտ պահպանումին ջատագով եւ նախանձախնդիր գտնուած է միշտ, այս հատորին «Յառաջաբան»-ին մէջ, զարմանալիօրէն աչքաթող ըրած է ուղղագրական անհեթեթ սխալներ. տողատակի ծանօթագրութիւն՝ 1. տէսութեան, 2. ծօվական, էջ 6 այստէղ, էջ 7 Կ. Պօլիս (2 անգամ), Կիլիկեայում, էջ 8 վարպէտ, մէծ, էջ 9 մէծ, էջ 10 Առաքէլ, էջ 11 չէնք միջամտել: Անշուշտ, այս խոցելի թերիները կարելի էր դիւրութեամբ զանց ընել՝ եթէ գոնէ անգամ մը ուշադրութեամբ կարդացուած ըլլար՝ հոս, Գահիրէի մէջ ...: Նոյնպէս զանց պիտի ըլլային հրատարակչական անփութութեամբ յառաջ եկած թերիներն ալ ...:

Թարգմանական վրէպ մըն է՝ Le long des quatorze sìecles d'existence du scriptorium de Tathev, էջ 12, (բնագիր՝ էջ 5, Տաթեւի 14-րդ դարի գրչատան գոյատեւման ընթացքում):

**Տ. Գ.**

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ողբ. Ժիրայր Թովմասեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան, ընկերներ Պետրոս եւ Աւետիս Մովսէսեան եղբարք կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հայկական Ընթերցասրահին | 15 |
| Հայ Գեղ. Միութեան | 15 |

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԱԽԱԳԱՀ ՌՈՊԷՐԹ ՔՈՉԱՐԵԱՆԻ ՇՓՈՒՄՆԵՐԸ ԼԵՀԱՍՏԱՆԻ ՄԷՋ

1

Փաստաթուղթերու ստորագրութենէն ետք, սարքուեցաւ երկու նախագահներու մամլոյ ասուլիսը: Նախագահ Քվաշնեւսքի բացման խօսքին մէջ նշեց որ հայ-լեհական յարաբերութիւնները կը զարգանան բնականոն կերպով: «Ես կը փափաքիմ նշել որ հաճոյքով ընդունեցի նախագահ Քոչարեանի հրաւէրը՝ Հայաստան այցելելու մասին:

Իր կարգին, նախագահ Քոչարեան կարեւոր նկատեց Լեհաստանի հետ յարաբերութիւնները, նշելով որ Լեհաստան այն երկիրն է, որ մեծ յաջողութիւններ արձանագրած է անցումային շրջանի դժուարութիւնները յաղթահարելու գործընթացին մէջ: Հայաստանի

մամլոյ ասուլիսէն ետք, պաշտօնական այցելութեան շրջագծով, իր աշխատանքներուն ձեռնարկեց հայ-լեհական գործարար համաժողով մը:

Լեհաստանի առեւտուրի պալատին մէջ գործել սկսաւ նաեւ հայկական արտադրութիւններու ցուցահանդէս մը,:

Յետմիջօրէին նախագահ Քոչարեան եւ պատուիրակութեան անդամները այցելեցին Վարշաւիոյ Արեւելեան Ուսումնասիրութիւններու Կեդրոնը, ուր հանգամանալից ելոյթ մը ունեցաւ նախագահ Ռոպերթ Քոչարեան: Յետոյ նախագահը պատասխանեց ներկաներու բազմաթիւ հարցումներուն:

## ՆԱԶԱՐԷԹ ԲՇՏԻԿԵԱՆ՝ ՈԴԻՍԱԿԱՆ ՄԸ

3

արգասաւոր աշխատանքը, ապա ազգային-հասարակական գետնի վրայ իր տարած անգնահատելի զոհողութիւնները ու բեղուն գործունէութիւնը, հանդէպ իր ազգին ու հայրենիքին եւ մանաւանդ Ս.Դ. Հնչակեան կուսակցութեան համար, գաղափարական տեսակէտէ՝ իր յարատեւ ճիգերն ու խոր նուիրումը, ապահոված են իրեն բարի համբաւ, որուն մեծապէս արժանի է ան:

Ողջունելով Ընկեր Բշտիկեանի բեղմնաւոր 90-ամեայ յոբելեանը, կը մաղթենք քաջառողջութիւն ու կորով, որ շարունակէ իրագործել իր մշակած բոլոր ծրագիրները, յանուն իր կուսակցութեան, ազգին եւ Մայր հայրենիքին:

**ԹՂԹԱԿԻՑ**

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացընելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք ղրկել « M. BALAYAN »ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111 Գահիրէ (11511), Եգիպտոս:

## ՏԽՐՈՒՆԻ

Այրի Տիկին Լուսի Գարգուր, Տէր եւ Տիկին Ջաւէն եւ Լիզպէթ Ալաճաճեան եւ դուստրը Նարինէ (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Լիպարիտ եւ Սիւզի Գարգուր եւ զաւակները Արբէն, Կարօ եւ Այէն, Օր. Նաթալի Միննէթեան, Տէր եւ Տիկին Պետրոս եւ Իրիս Պետիկեան եւ զաւակները (Գանատա), Տէր եւ Տիկին Պարոյր եւ Աստրիտ Դենքերեան եւ զաւակները (Գանատա), Տէր եւ Տիկին Լեւոն եւ Շաքէ Դուրեան եւ զաւակները (Գանատա), Տէր եւ Տիկին Պերճ Օրաքեան եւ զաւակը (Գանատա), Պրն. Արա Արարքցեան, Տէր եւ Տիկին Միհրան եւ Վերա Առսլանեան (ԱՄՆ), Տէր եւ Տիկին Ալպէռ եւ Մերի Պագլայեան եւ զաւակունք (Լիբանան), Տէր եւ Տիկին Նուպար եւ Սօնա Գույումճեան, ինչպէս նաեւ Պետիկեան, Դենքերեան, Դուրեան, Օրաքեան եւ Միննէթեան ընտանիքները (Գանատա), Ալաճաճեան, Ալատճեան, Արարքցեան ընտանիքները, Պագլայեան, Միննէթեան, Նեզլի եւ Բրուտեան ընտանիքները (ԱՄՆ), նաեւ Յակոբեան եւ Համայն սգակիր պարագաները կը գուժեն դառնակսկիծ մահը իրենց սիրելի ամուսնոյն, հօր, մեծհօր, մօրեղբօր եւ ազգականին, հանգուցեալ՝

### ԼՕՐԻՍ ԳԱՐԳՈՒՐԻ

որ պատահեցաւ Երկուշաբթի 6 Յուլիս 1999-ի առաւօտեան, յետ կարճատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութեան արարողութիւնը տեղի ունեցաւ Հինգշաբթի 8 Յուլիսի առաւօտեան ժամը 11-ին Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ, ուրկէ հանգուցեալին մարմինը փոխադրուեցաւ Հելիոպոլսոյ Ազգային գերեզմանատուն:

*Այս տխուր առթիւ «Ջահակիր» եւ իր շրջանակը իրենց խորազգաց ցաւակցութիւնները կը յայտնեն հանգուցեալի այրիին՝ Տիկ. Լուսի Գարգուրի եւ զաւակներուն ինչպէս նաեւ սգակիր բոլոր պարագաներուն:*




## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐՈՒ ԵԳԻՊՏԱՀԱՅ ԳՈՐԾԱԴԻՐ ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Աշխարհի 5 ցամաքամասերէն, 57 քաղաքներէ հայ մարզիկներ պիտի մասնակցին **Համահայկական Առաջին Խաղերուն**՝ որոնք տեղի պիտի ունենան Երեւան, Օգոստոս 28-էն մինչեւ Սեպտեմբեր 5, 1999-ին:

Այս պատմական մարզական փառատօնին ներկայ գտնուելու եւ քաջալերելու համար հայ մարզիկները , **Համահայկական Առաջին Խաղերուն** Եգիպտահայ Գործադիր Յանձնախումբը կազմակերպած է բացառիկ շրջապտոյտ մը, Օգոստոս 27-էն մինչեւ Սեպտեմբեր 6, 1999 (10 օր):

Շրջապտոյտը պիտի կատարուի ուղղակի Գահիրէ-Երեւան-Գահիրէ, հայկական յատուկ ինքնաթիռով, եւ պիտի ընդգրկէ կեցութիւնը՝ Ա. կարգի պանդոկ, նախաճաշն ու ընթրիքը:

**Համահայկական Առաջին Խաղերու** բացման, զտումի մրցումներուն եւ եզրափակիչ հանդիսութեան մուտքի տոմսերը կարելի է ապահովել նախապէս:

Յաւելեալ մանրամասնութիւններ ստանալու եւ արձանագրութեան համար հեռաձայնել՝

Դր. Հրաչ Միքայէլեանին, հեռ. 3928801
Տոքթ. Գէորգ Երզնկացեանին, հեռ. 012-323-9161
Պր. Մարտիկ Պալեանին, հեռ. 010-1401916
Պր. Պերճ Միսքճեանին, հեռ. 012-216-9814

*Տեղերը շատ սահմանափակ են:*

Եգիպտահայ Պասքէթպոլի եւ Փինկ փոնկի հաւաքական խումբերու գլխաւոր հովանաւոր՝






ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

دار شرشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1408 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 29 ՅՈՒԼԻՍ 1999 | ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. | عدد رقم ١٤٠٨ — الخميس ٢٩ يوليو ١٩٩٩





## ՍԱՂԱՐԹԱԽԻՏ ԾԱՌԸ ԵՒ ՀԱԼՈՂ ՄՈՄԸ

1999 թուականը, մեր պատմութեան մէջ պիտի բնորոշուի Հայաստան - Սփիւռք խորհրդաժողովի կայացումով, որ տեղի պիտի ունենայ Սեպտեմբեր ամսի 22ին եւ 23ին Երեւանի մէջ, ըստ նախատեսութեանց՝ շուրջ 600 պատուիրակներու մասնակցութեամբ: Համահայկական բնոյթի այս աննախընթաց ու պատմական մէկտեղումը, շատ հաւանաբար նոր ակիզբ մը դառնայ Հայաստան - Սփիւռք - Արցախ համագործակցութեան, միասնական աշխատանքի եւ նպատակայալաց գործունէութեան: Յարդ, բարձիթող լքուած այս հիմնահարցը պիտի դառնայ համազգային քննարկումի նիւթ, նկատի առնելով անոր նկատմամբ լուրջ ու ծանրակշիռ մօտեցումը, որ կը դրսեւորուի պաշտօնական Երեւանի կողմէ: Խորհրդաժողովին յաջող եւ բովանդակալից անցկացման համար, Հայաստանի կառավարութիւնը կեանքի կոչած է կառավարական յանձնախումբ մը գլխաւորութեամբ՝ Հայաստանի արտաքին գործոց եւ պաշտպանութեան նախարարներուն Վարդան Օսկանեան եւ Վազգէն Սարգսեան (այժմ վարչապետ). յանձնախումբին պարտականութիւնն է խորհրդաժողովը համակարգել, կազմակերպել եւ կայն դարձնել բոլոր հայութիւնը ներկայացնող համատեղում. այդ ծիրէն ներս, Հայաստանի արտաքին գործոց նախարարը ցարդ կօրաշարժի ենթարկեց Արեւելեան Եւրոպայի, Արեւմտեան Եւրոպայի եւ Հիւսիսային Ամերիկայի հայագաղութները Պուտափեշտի, Փարիզի եւ Ուաշինկթընի խորհրդակցական ժողովներով: Վերջերս, Պէյրութի մէջ տեղի ունեցաւ մերձաւոր արեւելեան շրջանի հայագաղութներուն խորհրդակցական հանդիպումը շուրջ 250 ներկայացուցիչներու մասնակցութեամբ:

Այս ուշագրաւ եւ պատմական խորհրդակցութեան առիթով բաժնուած թղթապանակներուն, յայտագիրներուն եւ հանդիպման սրահի (Հ.Բ.Ը.Մ.ի Տէմիրճեան Կեդրոն) ճակատին վրայ դրոշմուած էին խորհրդապատկեր մը՝ սաղարթախիտ ծառ մը: Նախարարը մեկնաբանելով այդ խորհրդապատկերը դիտել տուաւ, որ կառավարական յանձնախումբին քննարկումէն ետք, սոյն խորհրդաժողովին համար որդեգրուած է խորհրդանշան մը՝ ծառ մը հաստաբուն, սաղարթաշատ եւ ամրակուռ, որ կը նշանակէ խոր արմատներով հայրենիքը, ուռճացող հայութիւնը՝ ճիւղերով ու ոստերով եւ ունենալով այն հեռանկարը, որ այդ ծառը պիտի մնայ անխորտակ, կօրանայ շնորհիւ համահայկական ջանքերու. փաստօրէն, նշուած կաղնին հայութիւնն է, որ պիտի մնայ կանգուն, կանաչ եւ արմատներուն կառչած:

Ի հարկէ, լաւատեսութիւն ներշնչող պատկեր մը ընտրուած է, որովհետեւ՝ խորհրդաժողովին առաջադրանքներն ու նպատակները կը միտին ամրապնդել Հայաստանը, Արցախը, Հայաստան - Սփիւռք յարաբերութիւնները, սերտացնել հայկական գաղթօճախներուն կապուածութիւնը իրենց մայր հողին՝ Հայաստանին. եւ այդ բոլորը, առանց լաւատեսութեան անհնար է իրագործել:

Շեշտուած յոռետեսութեան, տագնապալից եւ անկումային այս օրերուն, լաւատեսութեան եւ վարդագոյն հորիզոններու փարիլը ոչ թէ ինքնախաբէութիւն է, այլ՝ հաւատքի եւ յանձնառութեան ամրապնդում, գօտեպնդում՝ հանդէպ ազգին ու հայրենիքին գոյատեւման, յարատեւման, եւ անմահութեան: Որքան ալ փոթորիկներ եւ մրրիկներ փչեն աջէն ու ահեակէն, պարտինք որպէս կնձնի մնալ աներեր, որպէս կաղնի՝ անայլայլ: Ահեղ եւ քանդիչ փոթորկաշունչ վտանգներու դիմացած ու տոկուն կանգնած կաղնին, միթէ՞ պիտի թեքի այժմու քամիներուն առաջ: Ուրեմն՝ ըստ խորհրդաժողովի ճարտարապետներուն, մենք ծառ մըն ենք, որ պիտի մնանք դալար եւ ապագային անոր արմատները պիտի խորանան ու ծաւալին. այդ պատմական առաքելութեան կօրակոչն է Սեպտեմբերի խորհրդաժողովը:

Չենք գիտեր, թէ պէյրութեան խորհրդակցութեան մասնակիցները, ինչպէս ընդունեցին այս խորհրդապատկերին գաղափարը, սակայն վստահաբար, անոնք հաւատացած են այդ համազգային մարտահրաւէրին (ի բացառեալ մի քանի կարտուղիներէ):

Բայց, եկէք դուրս գանք համահայկական խորհրդակցութեան եւ լաւատեսութեան վարդագոյն մթնոլորտէն եւ յանդըգ- ↳ 3

ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵԳԻՊՏՈՍԻ ՄՇԱԿՈՅԹԻ ՏՕՆ, ԲԱՐԵԿԱՄՈՒԹԵԱՆ ՏՕՆ՝ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

Անցեալ օրերուն Եգիպտոսի Մշակոյթի օրեր կազմակերպուած էին Հայաստանի մէջ: Այս առիթով Երեւան մեկնած էր Եգիպտոսի մշակոյթի գործիչներու պատուիրակութիւն մը՝ Եգիպտոսի մշակոյթի նախարարի տեղակալ եւ մշակոյթի պալատներու գլխաւոր վարչութեան նախագահ՝ Դոկտ. Մուսթաֆա Ալ-Ռազազի գլխաւորութեամբ:

22 Յուլիսին, «Եգիպտոսի Մշակոյթի օրեր»ու հանդիսաւոր բացումը կատարուեցաւ՝ Ալ. Սպենդիարեանի Օփերայի եւ Պալէի թատրոնին մէջ:

Ելոյթներ ունեցան Հայաստանի Մշակոյթի Նախարար՝ Ռոլանտ Շառոյեան, Հայաստանի մօտ Եգիպտոսի դեսպան՝ Սայիտ Իմամ եւ Դոկտ. Մուսթաֆա Ալ-Ռազազ: Անոնք խօսեցան հողատարածքով մէկզմէկէ հեռու, բայց աւանդական կապերով բարեկամացած երկու ժողովուրդներու մշակութային կապերու մասին, նշելով որ Եգիպտոսի Մշակոյթի Օրերը պիտի դառնան մշակոյթի իսկական տօն մը, բարեկամութեան տօն մը:



Եգիպտոսի Մշակոյթի նախարարի տեղակալ՝ Մուսթաֆա Ալ Ռազազ բացումը կը կատարէ «մշակոյթի օրերու»ն:

Համերգէն ետք, հանդէս եկան Աղեքսանդրիոյ եւ Գահիրէի դերասանները, ցուցադրուեցան Եգիպտոսի ազգային երգն ու պարը:

Միւս կողմէ, «Եգիպտոսի Մշակոյթի Օրեր»ու շրջագծով, 22 Յուլիսին բացուեցաւ եգիպտական շարժանկարներու փառատօնը՝ Երեւանի «Մոսկուա» շարժանկարի կեդրոնին մէջ:

Փառատօնը սկսաւ «Հայերը Եգիպտոսի Մէջ» վաւերագրական ժապաւէնի ցուցադրութեամբ:

*(Սոյն մշակոյթի անմոռնալի օրերուն ելոյթներու մասին կարդալ՝ էջ 3, Հայաստանի մեր յարգելի թղթակիցին՝ Պր. Համօ Մոսկոֆեանի ուղարկած չահեկան նկարագրականով):*

## ՎԱՐՉԱՊԵՏ ՍԱՐԳՍԵԱՆ ԳՈՀ Է ԴԷՊԻ ՄՈՍԿՈՒԱ ԿԱՏԱՐԱԾ ԻՐ ԱՅՑԵԼՈՒԹԵՆԷՆ

22 Յուլիսին, աւարտեցաւ Հայաստանի Վարչապետ Վազգէն Սարգսեանի այցելութիւնը դէպի Ռուսաստան: Մինչեւ իր մեկնումը, Վազգէն Սարգսեան ռուս եւ օտար լրագրողներուն յայտարարեց, թէ գոհ մնացած է Մոսկուա կատարած իր այցելութեան արդիւնքերէն:

Մոսկուայի մօտ Հայաստանի դեսպանատան պատասխանատուները շեշտեցին, թէ այս այցելութիւնը ամրապնդած է ջերմ յարաբերութիւնները Ռուսաստանի Վարչապետ Սէրկէյ Սթէփաշինի հետ:

Յայտնենք, որ Սարգսեանի Մոսկուա այցելութիւնը վերջ գտաւ Չորեքշաբթի օր, ԱՊՀի հարցերով նախարար Լէոնիտ Տրաչեւսքիի հետ հանդիպումով: Սարգսեան հանդիպում ունեցաւ նաեւ Ռուսաստանի Ուժանիւթի նախարար՝ հայազգի Եվկէնի Ատամովի հետ, որ միաժամանակ կը գլխաւորէ տնտեսական գործակցութեան միջ-կառավարական յանձնաժողովը: Վարչապետ Սարգսեան ընդգծեց, որ «Հայաստանի եւ Ռուսաստանի միջեւ յարաբերութիւնները շինիչ կերպով կը զարգանան: Հայ եւ ռուս ժողովուրդներս՝ իսկապէս ռազմավարական գործընկերներ ենք»: Դարձեալ նոյն օրը, Սարգսեան տեսակցութիւն մը ունեցաւ Ռուսաստանի Բանակի Սպայակոյտի պետ՝ Անաթոլի Քվաշնինի, Խորհրդարանի Փոխ-նախագահ Արթիւր Չիլինկարովի, Մոսկուայի Քաղաքապետ՝ Եուրի Լուժքովի, ինչպէս նաեւ «Կազփրոմ» ընկերութեան նախագահ Ռէմ Վիախիրեւի հետ: Այս վերջինին հետ, քննարկուեցան Հայաստանի վրայով Ռուսաստանէն դէպի Թուրքիա բնական կազ արտածելու մասին հարցեր:

Նոյն օրը, Վարչապետ Վազգէն Սարգսեան տեսակցութիւն մը ունեցաւ Ուքրանիոյ իր պաշտօնակից՝ Վալէրի Փուստովոյթէնքոյի հետ: Հանդիպումի ընթացքին քննարկուեցան հայ-ուքրանական տնտեսական կապերուն առնչակից հարցեր: Երկու Վարչապետները կարեւոր նկատեցին համագործակցութիւնը թէ՛ երկկողմանի եւ թէ՛ տարածքաշրջանային ծրագիրներու մէջ:

## Եգիպտոսի Նոր Դեսպան Հայաստանի մէջ՝ ՊՐ. ՊԱՔՐԻ ԷԼ ԱՄՄԱՈՒԻ

*«Էլ Ահրամ» օրաթերթէն կը տեղեկանանք, որ Եգիպտոսի նախագահ Մոհամմէտ Հոսնի Մուպարաքի հրամանագրով, Պր. Պաքրի Էլ Ամմաուի Հայաստանի մէջ, Եգիպտոսի դեսպան նշանակուած է:*

*Նշենք թէ Պր. Ամմաուի կը փոխարինէ Մայիս 1997-էն սկսեալ Հայաստանի մօտ Եգիպտոսի դեսպան՝ Պր. Սաիտ Իմամի: Իսկ Պր. Իմամ իր կարգին փոխարինած էր 1994 տարուէն սկսայ Հայաստանի մօտ Եգիպտոսի դեսպան Դոկտ. Ֆուատ Ռասյանին:*

## ՎԱՐՉԱՊԵՏ ՍԱՐԳՍԵԱՆ ԿԸ ՇԵՇՏԷ ՎՐԱՍՏԱՆԻ ՀԵՏ ԿԱՊԵՐՈՒ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ

«Փրայմ Նիուզ» օրաթերթի հետ ունեցած հարցազրոյցի մը ընթացքին, Հայաստանի Վարչապետ Վազգէն Սարգսեան յայտարարեց որ Հայաստանի արտաքին քաղաքականութեան մէջ առաջնահերթ կարեւորութիւն կը ներկայացնէ Ռուսաստանի, Վրաստանի եւ Ամերիկայի հետ համագործակցութիւնը: Վարչապետը վստահութիւն յայտնեց, որ Վրաստանի հետ յարաբերութիւնները պիտի խորանան մօտիկ ապագային, յատկապէս առեւտուրի, ուժանիւթի եւ փոխադրութեան մարզերէն ներս: Ըստ Վարչապետ Սարգսեանին, Հայաստան, սերտացնելով իր յարաբերութիւնները ԱՊՀի անդամ երկիրներու եւ Արեւմուտքի հետ, կը փորձէ «ուժեղ պետութիւն» մը դառնալ, ինչ որ նպաստաւոր պիտի ըլլայ նաեւ Վրաստանի համար: «Ուժեղ Հայաստանը ուժեղ Վրաստան է եւ փոխադարձաբար», յայտնեց Վարչապետ Սարգսեան:

## Ռ. ՔՈՉԱՐԵԱՆԻ ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Ներքին Գործոց նախարարութեան մօտ, նախագահ Քոչարեան, պատասխանելով լրագրողի մը հարցումին, ըսաւ որ իր կողմէ որեւէ լուրջ կամ կոպիտ միջամըտութիւն պիտի չըլլայ յառաջիկայ Կաթողիկոսական ընտրութիւններու ընթացքին: Իսկ այն հարցումին թէ «Հայաստանի Նախագահը մտադի՞ր է արդեօք սատարել որեւէ թեկնածութեան», Ռոպերթ Քոչարեան պատասխանեց. «Հաւանաբար այո՛, եթէ ընտրըիմ Եկեղեցական Ժողովի պատգամաւոր եւ մասնակցիմ ընտրութիւններուն»: Հայաստանի Նախագահը անթոյլատրելի նկատեց նաեւ որեւէ կերպով Եկեղեցւոյ կարգավիճակը Հայաստանի Սահմանադրութեան մէջ ամրագրելու հարցը, ընդգծելով որ «պետութիւնը կը զարգանայ լրիւ ուրիշ ճամբով մը»:

**ԼԻԲԱՆԱՆ**

## 45 Միլիոն Տոլար Երաշխաւորագին Պահանջուած է Պարսումեանի Ազատ Արձակման Համար

*Ինչպէս որ անդրադարձած էինք ատենին, Լիբանանի Քարիւղի նախկին նախարար՝ Շահէ Պարսումեան չորս ամիսէ ի վեր բանտ կը մնայ՝ պետական սնտուկէն միլիոնաւոր տոլարներ իւրացուցած ըլլալու ամբաստանութեամբ: Հայ նախարարին փաստաբանները բազմիցս դիմեցին Դատախազութեան, որպէսզի կարելի ըլլայ երաշխաւորութեամբ զայն բանտէն արձակել տալ, սպասելով դատաւորութեան: Մինչեւ հիմա դիմումները մերժուեցան: Հարցաքննիչ դատաւորը յառաջիկայ շաբաթ դարձեալ պիտի քննէ Պարսումեանի երաշխաւորութեամբ ազատ արձակուելու խնդրանքը:*

➪ 4

**ԵՐԵՒԱՆ**

## ԵՐԵՒԱՆԻ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԻ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԿԸ ԿԱՂԱՆ



Երեւանի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարի շինարարութիւնը կը շարունակուի, սակայն ներկայիս շինութիւնը կը կաղայ: Ինչպէս ծանօթ է Մայր Տաճարը պատրաստ պէտք է ըլլայ մինչեւ Քրիստոնէութեան 1700ամեակի հանդիսութիւններու պաշտօնական բացումը: Տաճարի շինարարութեան ղեկավար, Մայր Աթոռ Ս. Էջմիածնի ներկայացուցիչ՝ Եդուարդ Բալասանեան, յայտնեց որ դրամական միջոցներու պատճառաւ շինութիւնը կը կաղայ եւ շինարարները չեն կրնար աշխատիլ Տաճարի բոլոր ճակատներուն վրայ: Ան նշեց որ ցարդ իրականացած է շինարարական աշխատանքներու 25 առ հարիւրը: Տաճարը իր վերջնական տեսքին հասցնելու համար տակաւին անհրաժեշտ է 11 միլիոն տոլար:

➪ 4

## ԵՐԵՒԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԱԿԱՆ ՖԱՔԻՒԼԹԷԻ ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԸ

Երեւանի Պետական Համալսարանի (ԵՊՀ) Աստուածաբանութեան Ֆաքիւլթէն այս տարի տուաւ իր առաջին 25 շրջանաւարտները: Վկայականներու բաշխման հանդիսութիւնը տեղի ունեցաւ Օշականի Ս. Մեսրոպ Մաշտոց Դպրատան մէջ, ուր շրջանաւարտներուն վկայականներ յանձնեց Ֆաքիւլթէի հիմնադիր, Աստուածաբանական Գիտութիւններու Փրոֆ.՝ Գերշ. Տ. Շահէ Արք. Անէմեան: Կաթողիկոսական Տեղապահ՝ Ամեն. Տ. Ներսէս Արք. Պօզապալեան, Ակադեմիկոս Վլատիմիր Պարխուտարեան եւ Համալսարանի Վերատեսուչ՝ Ակադեմիկոս Ռադիկ Մարտիրոսեան շնորհաւորեցին շրջանաւարտները:

Շրջանաւարտներուն որպէս նուէր յանձնուեցաւ Երջանկայիշատակ Ամենայն Հայոց Գարեգին Ա. Կաթողիկոսի «Մաշտոցաշունչ» գիրքը:

Նորընծայ աստուածաբանները իրենց մասնագիտութեամբ պիտի զբաղին համալսարաններու եւ ամենօրեայ վարժարաններու մէջ:

## «ԱՐՄԷՆԻՔՈՒՄ»ՈՎ ԴԱՐՄԱՆՈՒՈՂ ՀԻՒԱՆԴՆԵՐԸ ՎՍՏԱՀ ԵՆ ՈՐ ՊԻՏԻ ԱՊԱՔԻՆԻՆ

Հայաստանի «Նոյեան Տապան» գործակալութեան թղթակից՝ Ինկա Զարաֆեան, վերջերս այցելեց ԷՅԾի Հանրապետական կեդրոն: Լրագրողուհին տեղւոյն վրայ տեսակցութիւն ունեցաւ բազմաթիւ հիւանդներու հետ, որոնք կը դարմանուին «Արմէնիքում» դեղի միջոցաւ:

Ստորեւ կը ներկայացնենք այդ հիւանդներու առողջական վիճակի մասին տեղեկութիւններ՝ «Արմէնիքում» դեղամիջոցը ընդունելէ առաջ եւ ընդունելէ ետք:

Հիւանդ Կ. (Վրաստան) - Ես մէկուկէս տարիէ ի վեր կը բնակէի Ամերիկայի մէջ: Հոն էր որ յայտնի դարձաւ որ ես վարակուած եմ ԷՅԾէն: (Հայաստանի գլխաւոր համաճարակաբան՝ Լեւոն Մխիթարեան նշեց, որ հիւանդը Ամերիկայի մէջ կը դարմանուէր յատուկ

➪ 4

**ԹՈՒՐՔԻԱ**

## Յովհաննէս Աֆթանտիլեան Իրաւունք Շահեցաւ Մասնակցելու Սիտնիի Ողիմպիականներուն

Իսթանպուլի Աթագիւղ թաղին մէջ կը շարունակուին ջրային մարզաձեւերու Եւրոպայի ախոյեանութեան մրցումները, որոնց իրենց մասնակցութիւնը կը բերեն 43 երկիրներէ հարիւրաւոր մարզիկներ: Այս մարզիկներու կարգին, ջրացատկի մարզաձեւին մէջ Հայաստանը կը ներկայացնէ Յովհաննէս Աֆթանտիլեան: 10 մեթր բարձրութեամբ աշտարակէն ջրացատկի մէջ, Յ. Աֆթանտիլեան նախնական փուլի մէջ յաջողութիւն արձանագրելով, յաջողած էր հասնիլ աւարտական հանգրուանին: Իսկ Շաբաթ օր կայացած եզրափակիչ մրցումներու մէջ ալ 10րդ հանդիսացաւ 12 մարզիկներու մէջէն: Յովհաննէս Աֆթանտիլեան այս արդիւնքով իրաւունք շահեցաւ մասնակցելու Սիտնիի 2000 թուականի Ողիմպիականներուն:

**ԳԱՀԻՐԷ**

## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԲԱԺՆԻ ՔՆՆՈՒԹԵԱՆՑ

*Հրճուանքով տեղեկացանք, որ Նուպարեան Ազգ. վարժարանի աշակերտուհիներէն՝ ՄԱՐԻ ԳԱՍԱՊԵԱՆ, երկրորդական բաժնի, գրական ճիւղի պետական քննութեանց յաջողած է 97% գերազանց արդիւնքով:*



*Նշենք թէ ջանասէր Մարին նոյնքան փայլուն արդիւնքներ ձեռք բերած է ամէն տարի իր ուսումնական տարեշրջաններուն:*

*Խմբագրութեան ուղղած մէկ հարցումին պատասխանելով, շնորհալի Մարին յայտնեց թէ իր նախասիրած ճիւղը, որուն կը փափաքի հետեւիլ համալսարանական ուսման մէջ՝ օտար լեզուներու տիրապետելն է: Հետեւաբար, ան պիտի դիմէ «Ալսոն» լեզուագիտական համալսարանը մասնագիտանալու համար անգլերէն եւ ֆրանսերէն լեզուներուն:*

*Սրտանց կը շնորհաւորենք զինք եւ իր ծնողքը, մեր շրջանակի գործօն անդամներէն՝ Տոքթ. եւ Տիկին Էտի եւ Աննա Գասապեանները նաեւ Նուպարեան վարժարանի տնօրինութիւնը, մաղթելով նոյնքան պատուաբեր յաջողութիւն, իր համալսարանական ուսմանց մէջ:*

***

*Ուրախութեամբ տեղեկացանք, որ Համայնքիս ազնիւ աշակերտուհիներէն՝ ԷՏՆԱ ԹՐԱՅԵԱՆ, երկրորդական բաժնի, գիտական ճիւղի պետական քննութեանց կարողացած է ձեռք ձգել 94,7% գնահատելի արդիւնք մը:*



*Շնորհալի Էտնան իր հայեցի դաստիարակութիւնը կը ստանայ Գալուստեան Ազգ. վարժարանէն ներս, ապա յաճախելով «Անարատ Յղութիւն» Քոյրերու վարժարանը, ան այս տարի փայլուն յաջողութեամբ կ'աւարտէ երկրորդականի բաժինը, պատիւ բերելով թէ՛ իր ծնողքին եւ թէ՛ իր ազգին:*

*Ջերմօրէն կը շնորհաւորենք զինք եւ իր ծնողքը, համայնքիս ծանօթ ազգայիններ՝ Տէր եւ Տիկին Գեղամ եւ Աննա Թրայեանները, մաղթելով գերազանց յաջողութիւններ համալսարանական ուսմանց մէջ եւս:*



## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

### ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, որ Աղեքսանդրիոյ Պօղոսեան Ազգ. վարժարանի 1998-1999 ուսումնական տարեշրջանի նախակրթարանի (իպթիտաիյա) եւ Գ. Պատրաստականի (Էտատիյա) պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ.-

| | |
|---|---|
| Գ.ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ | 100% |
| Իվան Կարպիս Միսքճեան | 96 |
| Ռաֆֆի Գէորգ Հալաճեան | 95 |
| Քրիսթին Էտուար Մանուկեան | 94 |
| Լեւոն Գէորգ Եսայեան | 93 |
| Արամ Ստեփան Մոմճեան | 92 |
| Ե. ՆԱԽԱԿՐԹԱՐԱՆ | 100% |
| Դալար Վաhէ Պէնօhանեան | 59.1 |
| Յասմիկ Գէորգ Հալաճեան | 94.5 |
| Քրիսթին Լեւոն Փափազեան | 92.2 |
| Ալեն Սքանտար Ժօզէֆ | 92.2 |
| Վաhէ Յարութիւն Արթինեան | 86 |
| Կարի Մկրտիչ Խանճեան | 82.2 |
| Գ. ՊԱՏՐԱՍՏԿԱՆ | 100% |
| Քրիստափոր Արթին Խանճեան | 90.4 |
| Մարի Ռոպէր Պալեան | 89.3 |
| Հուրի Համազասպ Պալքաեան | 87.1 |
| Դանիա Յարութիւն Արթինեան | 58.9 |
| Մայքլ Սարգիս Սումոնճեան | 58.6 |
| Շողիկ Քամալ Եազուպ | 58.2 |

Նոյնպէս ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, որ վարժարանիս 1998-1999 ուսումնական տարեշրջանի Երկրորդականի (Սանաուէյա) պետական քննութիւնները արձանագրած են հետեւեալ արդիւնքները:

| | |
|---|---|
| Գ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ - ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ | 100% |
| Ռիթա Միհրան Եէմէնիճեան | 74 |
| Բ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ - ԳՐԱԿԱՆ ՃԻՒՂ | 100% |
| Անուշ Արթին Միսքճեան | 93.1 |
| ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ | |
| Ջաւէն Ժօրժ Կասեան | 81.7 |

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

### ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, որ Վարժարանիս 1998-1999 ուսումնական տարեշրջանի Բ. եւ Գ. Երկրորդականի պետական քննութեանց արդիւնքները եղած են հարիւր առ հարիւր յաջողութեամբ:

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

| | | |
|---|---|---|
| Գ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ - ԳՐԱԿԱՆ ՃԻՒՂ | 400-էն | 100% |
| Մարի Գասապեան | 388.5 | 97 |
| Նայիրի Գասպարեան | 256.5 | 64.1 |
| Բ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ - ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ | 205-էն | 100% |
| Լորա Գասապեան | 202.5 | 98.7 |
| Սթիվ Սիմոնեան | 198.5 | 96.8 |
| Ռիթա Շահմիրեան | 192.5 | 93.9 |
| Ճեսիքա Երամեան | 189 | 92.2 |
| Ալիս Յակոբեան | 180.5 | 88 |
| Ալէն Էմիրզեան | 174 | 84.8 |
| Թալին Յակոբեան | 173 | 84.4 |

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

***

*Խմբագրութիւնս կը շնորհաւորէ վարժարաններու տնօրէնութիւնները,՝ ուսուցչական կազմերն ու յաջողած աշակերտները այս փայլուն արդիւնքներուն համար, յաջողութեան մաղթանքներով:*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## «ԼԻՆՍԻ» ՀԻՄՆԱՐԿԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԿԸ ՍԿՍԻ 100 ՄԻԼԻՈՆ ՏՈԼԱՐԻ ՎԱՐԿԵՐՈՒ ԾՐԱԳԻՐԸ

«Լինսի» Հիմնարկի Վարիչ-Տնօրէն՝ Յարութ Սասունեան կը տեղեկացնէ թէ «Լինսի» Հիմնարկը 100 միլիոն տոլարի փոխատուութեան ծրագիրը սկսաւ գործադրել՝ Հայաստանի մէջ: Առաջին չորս առեւտրական վարկերը կը ներկայացնեն «Լինսի»ի ծրագրին սկզբնական քայլերը, որոնք կը միտին զարկ տալ Հայաստանի փոքր եւ միջին չափի ձեռնարկութիւններու զարգացման:

Հայաստանի Դրամատուները սովորաբար միայն կարճ ժամկէտով (մէկ տարիէն պակաս) փոխատուութիւններ կը կատարեն, այդ ալ շատ բարձր տոկոսով (տարեկան աւելի քան 50 առ հարիւր): Աշխատատեղիներ ստեղծելու, նոր արտադրութիւն պատրաստելու եւ արտածումի քանակը աւելցնելու համար, հայ գործարարները մեծապէս կարիքն ունին երկարաժամկէտ եւ ցած տոկոսով վարկերու:

1997ի Հոկտեմբերին, Ամերիկացի ծերակուտական Պապ Տոլ, Լինսի Հիմնարկին նախագահ Ճիմ Ալճեան, Յարութ Սասունեան եւ ուրիշներ Հայաստան մեկնեցան, որուն վարչապետ Ռոպերթ Քոչարեանի եւ բարձրաստիճան այլ պաշտօնատարներու հետ խորհրդակցելու համար՝ «Լինսի»ի կողմէ առաջարկուած փոխատուական ծրագրին շուրջ:

«Լինսի»ի կողմէ տրամադրուած այս գումարները նուիրատուութիւն չեն, այլ առանց տոկոսի վարկեր են Հայաստանի Կեդրոնական Դրամատան տրամադրուած, որ իր հերթին փոխ կու տայ տեղական դրամատուներուն՝ տարեկան 3 տոկոսով: Այս դրամատուները ապա այդ գումարները փոխ պիտի տան տեղական ձեռնարկութիւններուն՝ տարեկան ո՛չ աւելի քան 15 տոկոսով: Տրուելիք վարկերը պիտի ըլլան նուազագոյնը 100.000 տոլար եւ առաւելագոյնը մէկ միլիոն տոլար: Վարկերը պիտի տրուին հայկական դրամանիշով (դրամով), որպէսզի ձեռնարկութիւններուն վրայ յաւելեալ բեռ մը չդրուի, եթէ ապագային դրամը, տոլարին դիմաց անկում մը կրէ:

➪ 4

ՀԱՅԱՍՏԱՆ

# ԵԳԻՊՏԱԿԱՆ ՄՇԱԿՈՅԹԻ ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՕՐԵՐ ՔԱՂԱՔԱՄԱՅՐ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

*Հայ - Եգիպտական դարաւոր բարեկամութիւնը ամրապնդող անմոռանալի օրեր տեղի ունեցան քաղաքամայր Երեւանի մէջ՝ Յուլիսի 22-էն՝ 27-ը: Օգտուելով 23 Յուլիս 1952թ.-ի Եգիպտական Յեղափոխութեան 47-րդ տարեդարձի տօնակատարութենէն՝ Հայաստանի մշակոյթի, սփոռի ու երիտասարդութեան նախարարութիւնը կազմակերպած էր պարաւիւաճ եգիպտական մշակոյթի օրեր, համագործակցութեամբ Հայաստանի մօտ Եգիպտոսի դեսպանութեան, եւ Եգիպտոսի մօտ Հայաստանի դեսպանութեան: Այս առիթով, պատուարժան հրաւիրեալներուն մէջ կը գտնուէր Եգիպտոսի մշակոյթի նախարարի տեղակալ, Եգիպտոսի պալատներու գլխաւոր վարչութեան նախագահ՝ Դոկտ. Մուսթաֆա Ալ Ռազազ: Իրեն կ'ընկերակցէին Եգիպտոսի ազգային սինեմայի տնօրէն՝ Դոկտ. Մատքուր Սապէթ: Երեւան ժամանած էր նաեւ թատրոնի հանրայայտ բեմադրիչ եւ մշակոյթի նախարարի տեղակալ՝ Ապտէլ Ռահման էլ Շաֆիի: Եգիպտոսի մանուկներու պարի հիանալի խումբը եւ Աղեքսանդրիոյ ազգագրական պարի համոյթը, նոր փայլ մը կ'աւելցնէին տեղի ունենալիք միջոցառումներուն:*



Եգիպտական ֆիլմերու փառատօն՝ «Մոսկուա» սինեմայի կեդրոնին մէջ:

*22 Յուլիսի յետմիջօրէին, ՀՀ մշակոյթի, սփոռի եւ երիտասարդութեան նախարար Ռոլանտ Շառոյեանի ընկերակցութեամբ՝ Եգիպտոսի դեսպան Սաիտ Իմամ ու իր տիկինը, եգիպտական պատուիրակութեան հետ բացումը կատարեցին եգիպտական ֆիլմերու փառատօնին, «Մոսկուա» չքեղ սինեմայի կեդրոնին մէջ: Ցուցադրուեցաւ նախ Եգիպտահայութեան մասին նկարահանուած ֆիլմ մը, որ կ'աւարտէր հայկական թատերախումբին «Շողոքորթ»ի բեմադրութեամբ...: Ապա, հայազգի դերասանուհի՝ Լեպլեպայի եւ Նուր էլ Շէրիֆի խաղարկութեամբ, ներկաները դիտեցին «Տաք գիշեր» գեղարուեստական ֆիլմը:*

*Նոյն օրը, երեկոյեան ժամը 7-ին, Հայաստանի Օփերայի ու պալէի թատրոնին բեմահարթակին վրայ տեղի ունեցաւ աննախընթաց եգիպտական պարային երեկոյ մը: Հայաստանի եւ Եգիպտոսի դրօշներուն ներքոյ, արաբ մանուկ ու երիտասարդ արուեստագէտները աւելի քան երկուքուկէս ժամ, մատուցեցին ինչպէս մանկապատանեկան, այնպէս ալ ազգային, հարսանեկան, ծիծաղաշարժ ու տխուր պարեր եւ երգեր՝ յատկապէս Երեւան ժամանած եգիպտացի նուագողներու ու երգիչ-երգչուհիներու ընկերակցութեամբ: Երեկոյի աւարտին՝ անվերջանալի ծափերը կարծես ողողեցին հանդիսասրահն ու բեմահարթակը...:*

*Յուլիս 23-ի երեկոյեան ժամը 7-էն սկսեալ, «Հրազդան» հիւրանոցին դահլիճը, սկսաւ ընդունիլ Հայաստանի պետական, քաղաքական, մշակութային դէմքեր, Հայաստանի մօտ հաւատարմագրուած դեսպաններ ու դիւանագիտական անձնակազմեր: Եգիպտոսի դեսպան՝ Սաիտ Իմամն ու իր յարգարժան տիկինը ընդունեցին շնորհաւորանքները ՀՀ Ազգային Ժողովի նախագահ Կարէն Դեմիրճեանի, ՀՀ արտաքին գործոց նախարար Վարդան Օսկանեանի, ԱՄՆ-ի դեսպան Մայքըլ Լեմընի, Ֆրանսայի դեսպան Միշէլ Լեգրայի, Սուրիոյ դեսպան Համէտ Հասանի, Լիբանանի դեսպան Թօնի Պատաուիի, Գերմանիոյ դեսպան Տիկ. Գարոլա - Միւլլեր Հօլթքեմփերի եւ այլ բարձրաստիճան անձնաւորութիւններու: Եգիպտոսի եւ Հայաստանի օրհներգներէն ետք, դեսպան Սաիտ Իմամ, ողջոյնի խօսքով հանդէս եկաւ, վեր առնելով 23 Յուլիս 1952թ.-ի Յեղափոխութեան դերը, արդի Եգիպտոսի կառուցման մէջ:*



23 Յուլիսի Յեղափոխութեան տօնին, Եգիպտոսի դեսպան Ս. Իմամ, կ'ընդունի ՀՀ Ազգային Ժողովի նախագահ՝ Կարէն Դեմիրճեանը:

*Ապա ծափողջոյններու ներքոյ, կտրուեցաւ ու բաժնուեցաւ Եգիպտոսի դրօշի ազգային գոյներով պատրաստուած կարկանդակը, մինչ հրաւիրեալներու սեղաններուն շուրջ ծայր տուած էր օգտաշատ եւ հետաքրքրական զրոյց:*

*24 Յուլիսի երեկոյեան ժամը 8-ին, Երեւանի Օփերայի եւ պալէի թատրոնի արուեստագէտները, յատուկ համերգ մը կը նուիրէին Եգիպտոսի 23 Յուլիսի Յեղափոխութեան տօներուն: Ապա նոյն երեկոյեան ժամը 8-ին, Յակոբ Պարոնեանի անուան երաժշտական գոմէտիայի թատրոնին մէջ, դարձեալ ելոյթ կ'ունենային Եգիպտոսի մանուկներու ազգային համոյթը եւ Աղեքսանդրիոյ ազգագրական պարի խումբը: Նոյնպիսի ելոյթ տեղի ունեցաւ 25 Յուլիսի երեկոյեան, մինչ պատուիրակութեան անդամները առիթը ունեցան մինչեւ Եգիպտոս վերադառնալը այցելել Երեւանի ու Հայաստանի տեսարժան վայրերը, ինչպէս Մատենադարան, Ծիծեռնակաբերդ եւ Յեղասպանութեան Թարգարանը:*



Եգիպտական ֆիլմերու փառատօնի բացման հանդիսութեան ՀՀ մշակոյթի, սփոռի եւ երիտասարդութեան նախարար Ռ. Շառոյեան եւ Եգիպտոսի դեսպան Սաիտ Իմամ:

*Այսպիսով, նոր կամուրջ մը եւս հաստատուեցաւ բուրգերու եւ Սֆինքսի, հինաւուրց հայկական հպարտ գաղթօճախով Եգիպտոսի՝ ու Հայաստանի միջեւ:*

*Մեր սիրելի հիւրերուն բարի ճանապարհ մաղթեցինք, դարձեալ հանդիպելու խոստումով:*

*Երեւան* **ՀԱՄՕ ՄՈՍԿՈՖԵԱՆ**

---

## ՍԱՂԱՐԹԱԽԻՏ ԾԱՌԸ ԵՒ ՀԱԼՈՂ ՄՈՄԸ

1

նութիւնը ունենանք իրատեսօրէն նայելու մեր շուրջ. ի՞նչ պիտի գտնէք. արդեօ՞ք սաղարթախիտ ծառ, թէ՞ հալող մոմ, որ սփիւռքահայ ձուլուող հոծ զանգուածներն են: Այո, մոմ, որ կը հալի օրէ օր հայ դպրոցին նահանջով, հայ մամուլին նսեմացումով, խառն ամուսնութեան խլրդային վարակով, հայութեամբ իրենք զիրենք նուաստացած զգացող լիրբերով, քաղքենի եւ նիւթամոլ ստահակներով, օտար վարժարաններ կերակրող ապգուրաց ծնողներով, հայախօսութեան նահանջով, հայ գիրքի վարկաբեկումով, հայոց լեզուի եւ հայոց պատմութեան ուսուցիչներուն արհամարհումով: Ո՞վքեր պիտի ջուր եւ սնունդ տան սաղարթախիտ այն ծառին, որ կը նմանի մեր պատմութեան եւ ճակատագրին. ծառը (ազգը) որ չխոնարհեցաւ գեհենամռունչ եւ վիշապաձայն (եղեռն) մրրիկներուն դիմաց, պիտի մնա՞յ շքեղ՝ երբ մոմի նման կը հալի Սփիւռքը:

Ի՛նչ հակասական պատկեր, հատուած մը ամէն ջանք պիտի թափէ նշեալ կաղնիին մէկ ճիւղը պինդ բռնելու, մի գուցէ կաղնիին իր ճիգերով յենակ դառնալու, բայց կռիւներով անվկանդ մնալու, սակայն անդին շա՛տ աւելի մեծ հատուած մը, իր անտարբերութեամբ, եսամոլութեամբ Սփիւռքը պիտի հալեցնէ մոմի մը նման կծկուելով:

Ամէն հայատրոփ սիրտ պիտի ուզէր հայութիւնն ու Հայաստանը տեսնել նշեալ ծառին նման, սակայն, ափսո՛ս, որ մոմի նման կը հալին մեր շուրջ գտնուող հայկական կառոյցները եւ անշուշտ՝ հայատրոփ սիրտերը, որովհետեւ... այս է դառն եւ բիրտ իրականութիւնը:

Այս տարեշրջանի աւարտին, քանի՞ աշակերտներ պիտի լքեն հայկական վարժարաններ եւ փոխադրուին օտար դպրոցներ: Այս տարի, քանի՞ խառն ամուսնութեանց ներկայ գտնուեցանք. քանի՞ հայուհիներ խլամացան:

Կը ներէք, բայց ծառը պիտի մնայ կանգուն, կը հաւատանք:

*«ԱՐԱՐԱՏ»* **ԱՒԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**

---

ՖՐԱՆՍԱ

# ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շաբաթ 19 Յունիս 1999ին, ՀՄՄ Ֆրանս եւ ԿԱՅԾ Նոր Սերունդ Մշակութային Միութիւնները միանալով, օժանդակութեամբ Տիկնանց ՄԱՐՕ մասնաճիւղին, կազմակերպեցին Ճաշկերոյթ-Պարահանդէս, Իսի Լէ Մուլինոյի քաղաքի (Փարիզեան շրջան), Palais des Arts et des Congres PACI-ի մէջ:

Այս պարահանդէսը հովանաւորուած էր Հայաստանի Հանրապետութեան, Փարիզի Դեսպան՝ Դր. Եդուարդ Նալպանտեանի եւ իր տիկնոջ, ինչպէս նաեւ Իսի լէ Մուլինոյի Երեսփոխան-Քաղաքապետ, հանրածանօթ հայասէր Պր. Անտրէ Սանթինիի կողմէ:

Տիկին Յասմիկ Մեխարեանի բացման եւ «բարի եկաք»ի խօսքէն ետք, բեմ հրաւիրուեցաւ Տիկին Վիգի Սվաճեանը, որ հայերէնով արտայայտուեցաւ: Ան իր խօսքին մէջ անդրադարձաւ միութեան աշխատանքներուն, քաղաքական, մշակութային, գեղարուեստական եւ ընկերային մարզերու մէջ: Յիշեց թէ հայեր գաղթօճախներուն մէջ կարողացած են ապրիլ առանց ձուլուելու: Պահած են իրենց մշակոյթը, համակերպելով հիւրընկալ երկրի կենցաղին ու բարքերուն: Ան խոստացաւ միութեան անունով, ինչպէս միշտ, զօրավիգ կանգնիլ դեսպանին ու դեսպանութեան, որ Հայաստանի ու անոր պետականութեան ներկայացուցիչն է:

Ապա Տիկին Ժագլին Տուզեան արտայայտուեցաւ ֆրանսերէնով: Ան շեշտեց ներկաներուն եւ մանաւանդ Քաղաքապետին, թէ միութիւնը իր անդամներով միշտ աշխատած է Ֆրանսայի անունը բարձր պահել, ծանօթացնելով անոր մշակոյթը Ֆրանսա գտնուող հայութեան, ուղղահայեացներ ընելով Ֆրանսայի եւրոպական եւ հայկական մշակոյթներուն միջեւ: Ներկայացուց ժողովրդավարութիւնը, (democratie-ն), որպէս անխուսափելի հանգրուան Հայաստանին, հասնելու համար յառաջադէմ երկիրներու մակարդակին:

Ան ըսաւ թէ Հայաստանի խորհրդարանական վերջին ընտրութիւնները ցոյց կու տան թէ ան կը գտնուի ժողովրդավարութեան ուղիին վրայ: Եւ թէ միութիւնը պիտի հսկէ անոր կերտման:

Պարոն Անտրէ Սանթինի, իր խօսքին մէջ զգուշացուց հայերը, Թուրքիոյ վարած քաղաքականութենէն, ուր տնտեսական եւ առեւտրական համաձայնութիւնները կը գերազանցեն մարդկային իրաւանց հարցերուն:

Դր. Եդ. Նալպանտեան, շեշտեց Հայաստանի ընտրութեանց արդիւնքները եւ արտայայտուեցաւ Հայաստանի արտաքին քաղաքականութեան մասին: Անդրադարձաւ Հայաստան, Սփիւռք, Արցախ համաժողովին եւ անոր անհրաժեշտութեանը, Հայաստանի յառաջխաղացքին նպաստաւորման:

Ապա Ատիս Հարմանտեան, որ մասնաւոր ժամանած էր Քալիֆորնիայէն իր խումբով, ճոխացուց երեկոն, ուր տեւեց մինչեւ առաւօտեան ժամերը:

Պարահանդէսի ընթացքին եղան նուիրատուութիւններ, որոնք անխտիր յատկացուեցան Ակումբի Ֆոնտին:

*Փարիզ, 22 Յունիս 1999* *ԹՂԹԱԿԻՑ*

---

ԳԱՀԻՐԷ

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Այսու կը հաղորդենք Գահիրէի մեր ժողովուրդին, թէ Գահիրէի Թեմական ամբողջական ընտրութիւնները տեղի պիտի ունենան Կիրակի, 28 Նոյեմբեր 1999-ին: Առ այդ կը հրաւիրենք մեր Համայնքին երկսեռ անդամներէն բոլոր անոնք որ.-*

*Ա.- Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ զաւակ են.*

*Բ.- Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան հպատակ են անձամբ կամ հօր հպատակութեամբ եւ ունին այս պարագան հաստատող վկայագիր (կինսիյէ).*

*Գ.- Ընտրութեան թուականին 21 տարիքը լրացուցած կ'ըլլան.*

*Դ.- Առնուազն երկու տարիէ ի վեր կը բնակին Գահիրէ կամ Գահիրէի շրջանին պատկանող վայրերու մէջ.*

*Ե.- Անուանարկիչ դատապարտութիւն չեն կրած.*

*Զ.- Սնանկացած կամ արգելումի չեն ենթարկուած. ներկայանան Գահիրէի Ազգային Առաջնորդարանը, յեցնելու համար իրենց յայտարարագրերը միասին բերելով իրենց հպատակութեան վկայագիրը եւ ծննդեան վկայականը.*

*Վերջին պայմանաժամ 13 Սեպտեմբեր 1999.*

*Անոնք որ նախկին ընտրութիւններուն առթիւ լեցուցած են իրենց ընտրական յայտարարագրերը, պէտք չունին նորերը լեցնելու.*

*Ըստ Կազմական կանոնագրի 12-րդ յօդուածի տրամադրութեան, ընտրելու իրաւունք ունեցող ազգայիններու անուանացանկը, ընտրութեան թուականէն երկու ամիս առաջ, պիտի կախուի Ազգային Առաջնորդարանին մէջ եւ Եկեղեցւոյ բակը, ի տես ժողովրդեան եւ ստուգումի համար:*

**ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍԿ. ՉԻՆՉԻՆԵԱՆ**
**ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ**

---

## ՀԱՅԱՍՏԱՆ ՀԱՒԱՆԱԲԱՐ «GENERAL MOTORS»Ի ՄԵՆԱՇՆՈՐՀԵԱԼ ԱՐՏԱԴՐՈՂԸ ԴԱՌՆԱՅ ԱՊՀ-Ի ՄԷՋ

Երեքշաբթի, 27 Յուլիսին Հայաստանի մէջ ինքնաշարժի ճարտարարուեստի զարգացման մասին՝ խորհրդաժողովի մը ընթացքին, «ԱՏԱ Մոթորզ» ինքնաշարժի գործարանի տնօրէն՝ Լեւոն Հայրապետեան յայտարարեց, որ արդէն իսկ առաջին քայլերը առնուած են Հայաստանի մէջ ամերիկեան «Ճէնէրըլ Մոթորզ» «GM» ինքնաշարժներ արտադրելու ուղղութեամբ: Հայրապետեան ըսաւ, որ երկու տարիէ ի վեր կը քննարկուի գործարանի այն առաջարկը, որով կարելի պիտի դառնայ ամերիկեան ինքնաշարժներու կտորները Հայաստան փոխադրել եւ տեղւոյն վրայ կատարել անոնց մոնթաժը: Զոյգ ընկերութիւններու միացեալ ձեռնարկութիւնը կը նախատեսուի գործնականացնել Երեւանի ինքնաշարժի գործարանի արդէն իսկ գոյութիւն ունեցող կառոյցէն ներս, որ պիտի վերանորոգուի եւ արդիական արհեստագիտութեամբ օժտուի: Ըստ Հայրապետեանի, առաջին ինքնաշարժերը պիտի արտադրուին յառաջիկայ տարի եւ երկու տարիէն կարելի պիտի ըլլայ ներքին շուկան գոհացնել:

Եթէ ծրագիրը իրականանայ, ուրեմն Հայաստան պիտի դառնայ ԱՊՀ-ի մէջ «Ճէնէրըլ Մոթորզ» ինքնաշարժի մենաշնորհեալ արտադրիչը:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

**Օր. Քրիստին Վարձպետեան**

**եւ**

**Պր. Լեւոն Քիւրքճեան**

ԱՂԵՔՍ.-ԳԱՀԻՐԷ 10 /7/1999

*«Ջահակիր» իր շնորհաւորութիւնները կը յայտնէ խօսեցեալ զոյգին, մաղթելով անամպ եւ երջանիկ կեանք: Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք նաեւ անոնց ծնողաց եւ ընտանեկան բոլոր պարագաներուն:*

## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Կարօ եւ Ամալ Գումրուեաններ, Կիրակի, 18 Յուլիսին, բախտաւորուած են առջինեկ դստրիկով մը, զոր անուանակոչած են Մոնիքա:

Այս ուրախ առիթով կը շնորհաւորենք նորածինին ծնողքը եւ մեծ ծնողքը՝ Տէր եւ Տիկին Աբրահամ Գումրուեաններն ու Տէր եւ Տիկին Լուիզ Քալտասները մաղթելով նորածին մանկան առողջ եւ երջանիկ կեանք:

***

Ուրախութեամբ տեղեկացանք, թէ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Րաֆֆի եւ Մարինա Փարթամեաններ, Երեքշաբթի 20 Յուլիս 1999-ին, բախտաւորուած են առջինեկ դեստրիկով մը, զոր անուանակոչած են Մելանի:

Այս բարեբաստիկ առիթով մեր ջերմագին շնորհաւորութիւնները կը յայտնենք նորածինին ծնողներուն եւ մեծ ծնողներուն, Տէր եւ Տիկ. Գրիգոր Փարթամեաններուն եւ Տէր եւ Տիկ. Ժորժ Նէյմաններուն, մաղթելով արեւշատ եւ երկար կեանք նորածին մանկան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Լուսին Մազլըմեան եւ դուստրը Մարի, Տէր եւ Տիկ. Գէորգ Մազլըմեան, Տէր եւ Տիկին Խաչիկ Մազլըմեան եւ որդին Արշակ եւ համայն սգակիր պարագաները այսու կու գան իրենց խորին շնորհակալութիւնները յայտնել ազգային, մշակութային, բարեսիրական զանազան միութիւններուն եւ բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագիրով, հեռաձայնով, նամակով, ծաղկեպսակ ղրկելով եւ կամ բարեսիրական հաստատութեանց նուիրատուութիւններ կատարելով, ցաւակցութիւններ յայտնեցին իրենց սիրելի ամուսնոյն, հօր, մեծհօր, զարմիկին եւ ազգականին՝

**ՈՂԲ. ՊԵՐՃ ՄԱԶԼԸՄԵԱՆԻ**

մահուան եւ քառասունքին առթիւ:

## Կ՚ՈՒԶՈՒԻ

Գահիրէի Ազգային Առաջնորդարանը կարիքը ունի միջին տարիքի վարիչ Տնօրէնի մը:

Աշխատանքի ժամերն են առաւօտեան ժամը 8.30-էն մինչեւ յ.մ. ժամը 2:

Թեկնածուն պարտի տիրապետել հայերէն, արաբերէն եւ ֆրանսերէն լեզուներուն:

Վճարելի ամսականը պիտի ճշդուի ըստ թեկնածուի փորձառութեան եւ կարողութեան: Յարմարագոյն թեկնածուին պիտի վճարուի շատ լաւ ամսաթոշակ:

**ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ-ԳԱՀԻՐԷ**

## «ԱՐՄԷՆԻՔՈՒՄ»ՈՎ ԴԱՐՄԱՆՈՒՈՂ ՀԻՒԱՆԴՆԵՐԸ ՎՍՏԱՀ ԵՆ ՈՐ ՊԻՏԻ ԱՊԱՔԻՆԻՆ

2

դեղահատերով): Դեղահատերը կը գործածէի ամէն օր, բայց առողջական վիճակս չէր բարելաւեր: Յետոյ սկսայ գանգատիլ լեարդի սուր ցաւերէ, փորլուծութիւն ունեցայ: Այս կեդրոնին մէջ ես ինքզինքս լաւ զգացի. անմիջապէս երրորդ ներարկումէն յետոյ ծանրութիւնս 3 քկ. աւելցաւ: Առայժմ դարմանումս կը շարունակուի, բայց իմ կարծիքով, ես առողջութիւնս պիտի վերագտնեմ:

Հիւանդ Գ. (Ուքրանիա) – Ես կը գտնուէի ԷՅԾի վերջին փուլին մէջ: 25 Մայիսին Երեւան եկայ, Հայրենիքիս մէջ մեռնելու: Երկու տարի առաջ, երբ իմացայ իմ հիւանդութեան մասին, այդ օրուընէ դարմանումի ո՛չ մէկ միջոց ընդունեցի: Նախ դրամ չունէի, յետոյ չէի հաւատար, որ ԷՅԾը կարելի է դարմանել: Երեւանցի բժիշկները տեսան իմ վիճակը. ես չէի կրնար քալել, կը շնչէի ընդհատումներով, ամբողջ մարմինս խոցապատ էր: Բժիշկները թերահաւատութեամբ մօտեցան ինծի, սակայն բժիշկ Լեւոն Գէորգեանի կարգադրութեամբ զիս ընդունեցին կեդրոն: Երկրորդ ներարկումէն ետք ես գացի հեռատեսիլ դիտելու, ծանրութիւնս 12 քկ. աւելցաւ: Երբ դարմանումս աւարտի, հիւրաբար Ուքրանիա պիտի երթամ:

Դրական արդիւնքներ արձանագրուած են նաեւ բազմաթիւ այլ հիւանդներուն մօտ, որոնք կը դարմանուին «Արմէնիքում»ով:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց աղջկան՝ Օր. Էտնա Թրայեանի երկրորդական բաժինը փայլուն յաջողութեամբ աւարտած ըլլալուն ուրախ առթիւ, Տէր եւ Տիկին Գեղամ Թրայեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| «Արեւ»ին | 25 |
| «Յուսաբեր»ին | 25 |
| «Ջահակիր»ին | 25 |

(Ստանալ «Ջահակիր»էն)

## «ԼԻՆՍԻ» ՀԻՄՆԱՐԿԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ ԿԸ ՍԿՍԻ 100 ՄԻԼԻՈՆ ՏՈԼԱՐԻ ՎԱՐԿԵՐՈՒ ԾՐԱԳԻՐԸ

2

Ծրագրի պայմաններէն մէկն է, որ ձեռնարկութեան մը նուազագոյնը 51 առ հարիւրը սեփականութիւնն ըլլայ Հայաստանաբնակի մը եւ ոչ աւելի քան 20 առ հարիւրը պատկանի Հայաստանի կառավարութեան:

Այս ծրագրի առաջին չորս վարկային յատկացումները, որոնց միացեալ գումարը կը հասնի 1.3 միլիոն տոլարի, կատարուած են հետեւեալ ձեռնարկութիւններուն՝

1) Ձեռնարկութիւն մը որ ծաղիկ, միրգ եւ բանջարեղէն կ'աճեցնէ,

2) Ձեռնարկութիւն մը, որ կը ծրագրէ հիւրանոց մը եւ յարակից շինութիւններ կառուցել,

3) Ձեռնարկութիւն մը, որ կը զբաղի կահ կարասիներու արտադրութեամբ,

4) Ձեռնարկութիւն մը որ ապակեայ շիշեր կ'արտադրէ:

«Լինսի»ի փոխատուութեան ծրագիրին նպատակն է աշխատատեղիներ հայթայթել, աղքատութիւնը մեղմացնել, եւ զարկ տալ Հայաստանի տնտեսութեան զարգացման: Այս չորս ընկերութիւնները կը ծրագրեն աւելի քան 200 նոր աշխատակիցներ գործի ընդունիլ, իբրեւ ուղղակի արդիւնք այս վարկերուն: Բազմաթիւ այլ փոխատուութիւններ ընթացքի մէջ են:

## ԵՐԵՒԱՆԻ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԻ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԿԸ ԿԱՂԱՆ

2

Հայաստանի կառավարութիւնը խոստացած էր տրամադրել երեք միլիոն տոլար, սակայն մինչեւ այսօր չէ տրամադրած այդ գումարը: Ըստ Բալասանեանին, եթէ կառավարութիւնը մօտ օրէն տրամադրէ յիշեալ գումարի գոնէ մէկ երրորդը, այն ատեն Տաճարի կառուցումը կը շարունակուի նոյն թափով: Այլապէս այն մտավախութիւնը կը տիրէ, որ Տաճարը պատրաստ պիտի չըլլայ 2001ին:

Ինչպէս ծանօթ է Մայր Տաճարի կառուցման ամենամեծ հովանաւորն է Հայ Բարեգործական Ընդհանուր Միութիւնը:

### 45 Միլիոն Տոլար Երաշխաւորագին Պահանջուած է Պարսումեանի Ազատ Արձակման Համար

2

*Լիբանանեան թերթերու համաձայն, Քարիւղի նախարարութիւնը 45 միլիոն տոլարի երաշխաւորագին պահանջած է Պարսումեանը առժամապէս ազատ արձակելու համար: Ինչո՞ւ 45 միլիոն: Որովհետեւ Նախարարութիւնը հաշիւ ըրած է, որ Շահէ Պարսումեան այդքան գումար գրպանած է նախարար եղած ատեն: Պարսումեան չէ կրցած այդքան գումարով երաշխաւորագին գոյացնել ու իր բոլոր կալուածները դրած է դատարանի տրամադրութեան տակ:*

*Հինգշաբթի օր, դատաւորը մէկ միլիոն տոլար երաշխաւորութեամբ, ազատ արձակած է Քարիւղի նախարարութեան նախկին ընդհանուր տնօրէն եւ Պարսումեանի մեղսակից Նիքոլա Ազարը:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Երանաշնորհ Տ.Տ. Գարեգին Ա. Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսի վախճանումը խոր վիշտով համակեց Հայաստանեայց եկեղեցին եւ համայն հայ ժողովուրդը: Վաթսունեօթը տարեկան հասակին, Աստուածատուր իր կարողութիւններու լիութեան մէջ անվերադարձ մեկնեցաւ սիրեցեալ Վեհափառը:*

*Բազմահազար գիրքերու հեղինակ, աստուածաբան, դաստիարակ, հմուտ քարոզիչ, քաջ եւ բարի հովուապետ. գահակալութեան չորս տարիներուն յծուեցաւ հայրենաշէն գործի: Կառուցեց ու նորոգել տուաւ վանքեր, եկեղեցիներ ու մատուռներ: Միջ-եկեղեցական յարաբերութիւններով, միջազգային ճանաչմամբ, Հայ եկեղեցւոյ հմայքը բարձրացուց: Քրիստոնէական դաստիարակութեան զարկ տուաւ, հոգեւոր արժէքներ ստեղծելու ի Հայաստան եւ ամենուրեք:*

*Երջանկայիշատակ Հայրապետին կանխահաս վախճանման քառասնօրեակի լրման առիթով Եգիպտահայ Թեմի մեր եկեղեցիներուն մէջ, Կիրակի 8 Օգոստոսին, Ս. Պատարագի մատուցմամբ կը կատարուի յատուկ Հոգեհանգստեան արարողութիւն:*

*Արարողութենէն ետք, հաւատացեալները կը հրաւիրուին Ազգային Առաջնորդարաններուն դահլիճները, ուր սուրճ պիտի մատուցուի:*

*Աղօթք, խունկ եւ օրհնութիւն Երանաշնորհ Հայրապետի քաղցր յիշատակին: Ողորմած Աստուած, եռամեծ Հայրապետներու շարքին թող դասէ իր բարի հոգին, յաւիտենական երանութեան մէջ:*

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**






## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐ

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք մեր յարգոյ հասարակութեան, թէ 8 - 19 Յուլիս 1999-ի ընթացքին, 20 Եգիպտահայ մարզիկներ մասնակցեցան Փինկ-Փոնկի հաւաքականի զտումի մրցումներուն: Առ այդ, մրցումներուն արդիւնքներուն հիման վրայ, Համահայկական Առաջին Խաղերու Եգիպտահայ Գործադիր Յանձնախումբը կազմեց Եգիպտահայ Փինկ-Փոնկի հաւաքականը հետեւեալ մարզիկներով.-՝

1.- Պասմաճեան Յակոբ
2.- Չամքէրթէնեան Սիմոն
3.- Աւանեան Գէորգ
4.- Սիմոնեան Ռուբէն



Փինկ-Փոնկի խումբին պատասխանատու՝ Պր. Մարտիրոս Պալաեան:

.....................

*Եգիպտահայ Պասքէթպոլի եւ Փինկ-Փոնկի հաւաքական խումբերու գլխաւոր հովանաւոր՝*




## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ - ԳԱՀԻՐԷ

### ՍԱԹԵՆԻԿ Ճ. ԶԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ ԿՐԹԱԿԱՆ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ 1999-2000 ՏԱՐԵՇՐՋԱՆ

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի Սաթենիկ Ճ. Զագըր Հիմնադրամը 1999-2000 տարեշրջանին եւս կրթաթոշակ պիտի յատկացնէ արժանաւոր ուսանողներու, որոնք կրնան անձամբ ներկայանալ Հ.Բ.Ը.Մ.ի Գահիրէի գրասենեակը, լեցնելու համար յատուկ հարցաթերթիկը, իրենց հետ ունենալով 2 լուսանկար, ծննդեան վկայականի պատճէն, դիմումնագիր մը եւ վերջին տարիներու իրենց վիճակացոյցները:

Աղեքսանդրիոյ թեկնածուները, կրնան իրենց դիմումնագրերը ներկայացնել Աղեքսանդրիոյ Հ.Բ.Ը.Մ.ի վարչութեան:

Սաթենիկ Ճ. Զագըր Հիմնադրամէն արդէն իսկ կրթաթոշակ ստացողները պարտին ղրկել նախորդ տարեշրջանի ա. եւ բ. կիսամեայի կամ տարեվերջի քննութեանց արդիւնքները, անմիջապէս որ զանոնք ստանան իրենց յաճախած կրթական հաստատութիւններէն:

Բոլոր տեսակի դիմումնագրերը (նոր եւ վերանորոգելի) ընդունելու վերջին պայմանաժամն է, Աղեքսանդրիոյ համար 6 Սեպտեմբեր 1999 եւ Գահիրէի համար 8 Սեպտեմբեր 1999:

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax: (202) 4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1409 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 5 ՕԳՈՍՏՈՍ 1999 | ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 50 Եգ. Դhկ. | عدد رقم ١٤٠٩ ـــ الخميس ٥ أغسطس ١٩٩٩


## ԴԷՊԻ 21-ՐԴ ԴԱՐ՝ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒԱԾ ՈՒԽՏՈՎ

Մարդկութիւնը շուտով պիտի թեւակոխէ երրորդ հազարամեակ: Պետութիւններ, ազգեր, հզօր կազմակերպութիւններ կը նախապատրաստուին հաշուեյարդարի, հաշուեփակի և կը պատրաստեն նոր, 21րդ դարուն համապատասխանող, ժամանակի ու արդիականութեան հետ քայլ պահող ծրագիրներ, նախատեսութիւններ: Քանզի, ովքեր որոնք ետ պիտի մնան նոր ժամանակներու վազքէն, պիտի չկարենան քայլ պահել արդիականութեան կամ 21րդ դարու ոգիին հետ, անողոք ժամանակը ինքը՝ լուսանցքի վրայ պիտի փոխադրէ այդպիսիները:

Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը եւս, որպէս հնամեայ ու պատմական կազմակերպութիւն, կը նախապատրաստուի մուտք գործել 21րդ դար: Մեծ է վաստակը յեղափոխական այս կուսակցութեան: «Յեղափոխական» մակդիրը այս օրերուն թէեւ քիչ մը «խորթ» կը հնչէ, սակայն մենք շեշտը պիտի դնենք Հնչակեան Կուսակցութեան յեղափոխական ոգիին վրայ. փոյթ չէ, թէ որոշ տեսաբաններ յեղափոխականութեան մէջ «արկածախնդրական կամ «ահաբեկչական» միտում կը տեսնեն: Յեղափոխականութիւնը ամենէն առաջ կեանքի փիլիսոփայութիւն է, մեզ շրջապատող բարդ խնդիրները լուծելու իւրայատուկ բանալի, վճռականութիւն, խիզախութիւն և կոհողութիւն: Իսկական յեղափոխութիւնը արկածախնդրութիւն չէ այլ՝ «մարդկութեան պատմութիւնը իր ետեւէն տանող վայրաշարժ (լոքոմոթիւ)»: Ինչ որ տեղ՝ անխուսափելի անհրաժեշտութիւն:

Մեծ Եղեռնէն յետոյ, Սփիւռքի պայմաններուն մէջ, Հնչակեան Կուսակցութիւնը շարունակեց մնալ պատնէշի վրայ: Բոլոր հայաշատ գաղութներու մէջ ան կարեւոր ներկայութիւն եղաւ (և է), եղաւ հայապահպանման կռուաններէն մէկը, իր սկզբունքներէն մեկնելով տարբեր երկիրներու մէջ հետամուտ եղաւ քաղաքականութեան: 1920ին, Հայաստանի խորհրդայնացումէն ետք Հնչակեան Կուսակցութիւնը անվերապահօրէն կանգնեցաւ հայրենի նոր իշխանութիւններու կողքին եւ իր բոլոր միջոցներով պաշտպանեց զայն: Այսօր, 78-79 տարիներ ետք, թէեւ գոյութիւն չունի խորհրդային իշխանութիւնը, կամուրջի տակէն շատ ջուրեր անցան, սակայն Հնչակեանը հաւատացած ու համոզուած է, որ 1920ին, իր կուսակցութիւնը ճիշդ կողմնորոշում ունեցաւ: Այդ տարիներուն, խորհրդայնացումը պատմականօրէն միակ ելքն էր: Հնչակեան Կուսակցութեան կողմնորոշումը՝ արեւելումը ազգային - հայրենասիրական տեսանկիւնէն ճիշդ ըլլալով հանդերձ ժամանակն ու պայմանները ցոյց տուին, թէ հնչակեանութիւնը, որպէս կազմակերպութիւն պիտի տուժէր, ոչ միայն խորհրդայիններուն թշնամացած երկիրներուն մէջ, նաե՛ւ (որքան ալ փարատոքս թուայ) նոյնինքն Խորհրդային Հայաստանի մէջ: Խորհրդային Հայաստանը մինչեւ իր վերջին շունչը... չճանչցաւ Հնչակեան Կուսակցութիւնը՝ պաշտօնապէս: Նուիրեալներու այս կազմակերպութիւնը որակուեցաւ «մանր պուրժուական», անարգական իմաստով, և անտեսուեցաւ տարիներ շարունակ: Սակայն, իր հայրենասիրական ու անշահախնդիր դիրքորոշումով հնչակեանութիւնը, այսօր պատմութեան առջեւ կանգնած է ճակատաբաց, հպարտ, բայց և այնպէս իր հայրենասիրութեան համար տուժեց ան, հալածուեցաւ բազմաթիւ ճակատներու վրայ, որուն հետեւանքները զգալի են այսօր: Մինչ ուրիշներ, իրենց ծաւալած ծանօթ պայքարին և ուրացման համար լիովին «վարձատրուեցան»... երանելի՜ ժամանակներու մէջ:

Յամենայնդէպս, պատմութեան, քաղաքականութեան և պայմաններու բոլոր հետեւանքներով հանդերձ Հնչակեան Կուսակցութիւնը կը նախապատրաստուի մուտք գործել 21րդ դար: Սպասելի է, որ նոր ժամանակները եւս ծառանան այս կուսակցութեան դէմ, սակայն բոլոր պայմաններու տակ կազմակերպութիւնը պարտի վերադասաւորել իր ուժերը, իր գաղափարախօսութենէն մեկնելով յստակացնէ նպատակակէտերը Սփիւռքի և հայրենիքի մէջ: Այդ նպատակակէտերը թէեւ բոլորովին նորութիւններ պիտի չըլլան, սակայն համահնչիւն պէտք է դառնան Հայ ժողովուրդի արդի, ինչպէս նաեւ 21րդ դարու պահանջներուն:

Ինչպէս բոլոր կազմակերպութիւններուն, այնպէս ալ Հնչակեան Կուսակցութեան համար կարեւորագոյն խնդիր է սերնդափոխութեան ճիշդ կազմակերպումը, յատկապէս միջին և բարձր մակարդակներու վրայ: Առանց ճիշդ կազմակերպուած սերնդափոխութեան հնարաւոր չէ պետութիւններու կամ կուսակցութիւններու համար անհրաժեշտ քարտեր պատրաստել: Միջին և երիտասարդ սերունդը աստիճանաբար պէտք է ➪ 2

**ՀԱՅԱՍՏԱՆ**

### Համահայկական Խաղերի Նախապատրաստութեանը Նուիրուած Հերթական Խորհրդակցութիւն

*Օգոստոսի 3-ին ՀՀ տարածքային կառավարման նախարար Խոսրով Յարութիւնեանի մօտ տեղի ունեցաւ Համահայկական խաղերի նախապատրաստման հետ կապուած աշխատանքային խորհրդակցութիւն, որին մասնակցեցին խաղերի անցկացման հետ առընչուող ոլորտների բարձրաստիճան ղեկավարները:*

*Խօսուեց մարզական կառոյցներում ընթացող վերանորոգման աշխատանքների եւ դրանց ֆինանսաւորման մասին: ՀՀ մշակոյթի, երիտասարդութեան հարցերի եւ սպորտի նախարար Ռոլանտ Շառոյեանը, փոխնախարար Իշխան Զաքարեանը տեղեկացրին, որ այսօր՝ Օգոստոսի 5-ին Ֆրանսիայից Երեւան կը բերուի եւ մարզադահլիճներում կը տեղադրուի նոր մարզագոյք: Քննարկուեցին պետութեան կողմից խաղերի անցկացման համար նախատեսուած յատկացումների (19 մլն. դրամ), մրցումների լուսաբանման հետ կապուած հարցեր:*

*ՀՀ ներքին գործերի եւ դրանսբորդի փոխնախարարներ պարոնայք Վարեանը եւ Գրիգորեանը տեղեկացրին խաղերի մասնակիցների (մօտ 1200 մարդ) անվտանգութեան ապահովման եւ փոխադրման հետ կապուած իրենց առաջարկների մասին: Մասնաւորապէս, նախատեսւում է թիմերին ապահովել փոխադրամիջոցներով, ոչ միայն մարզական մրցումների, այլեւ շրջագայութիւնների համար:*

*Խորհրդակցութիւնն ամփոփեց Խ. Յարութիւնեանը, նշելով, որ նախապատրաստական աշխատանքը պէտք է ընդհանուր առմամբ աւարտուի մինչեւ Օգոստոսի 21-23-ը: Յաջորդ նիստը տեղի կ'ունենայ Օգոստոսի 10-ին:*

### ԸՍՏ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ՝ ԱՐՑԱԽԻ ՀԱՐՑՈՎ «ԳԱՂՏՆԻ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐ» ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԵՏ

Ատրպէյճանի Արտաքին Գործոց նախարարութիւնը «Փրայմ Նիուզ» գործակալութեան յայտնեց, որ «գաղտնի» բանակցութիւններ տեղի կ'ունենան Հայաստանի հետ, եւ երկու կողմերը փոխ-զիջումի իրենց սեփական նախագիծերը կը պատրաստեն Ղարաբաղի հարցով: Լուրը կը հաղորդէ «Նոյեան Տապան»:

Ազերի աղբիւրներուն համաձայն, փաստաթուղթերու պատրաստութիւնը եւ երկու երկիրներու ղեկավարներուն միջեւ մնայուն խորհրդակցութիւնները «խիստ գաղտնի» ձեւով կ'ընթանան: Միշտ ազերի կողմին համաձայն, Ատրպէյճանի հողային ամբողջականութեան սկզբունքը պիտի յարգուի, իսկ Ղարաբաղի հայութիւնը պիտի ստանայ ապահովութեան միջազգային երաշխիքներ...:

Իր կարգին, Ատրպէյճանի նախագահի արտաքին քաղաքականութեան խորհրդական Վէֆա Կուլիզատէ ըսաւ, որ Ղարաբաղի կարգավիճակի ճշդուելու պարագային, պետականութեան բոլոր ստորոգելիները հնարաւոր են, հաշուի առնելով երկու սկզբունքներ՝ Ատրպէյճանի հողային ամբողջականութիւնը եւ Ղարաբաղի հայութեան ապահովութիւնը:

Միւս կողմէ, Հայաստանի պաշտօնական աղբիւրներէն այս մասին մեկնաբանութիւն, կարծիք, կամ ի հարկին հերքում չէ ստացուած:

### Ղարաբաղի Հարցում «Ազադլիկը» Մռայլուել է

*Ըստ Պաքւում լոյս տեսնող «Ազադլիկ» թերթի, Ատրպէյճանի նախագահը պատրաստւում է փոխզիջման գնալ Ղարաբաղի հարցում: Ինչու՞, հարց է տալիս թերթը եւ պատասխանում. նախ, որովհետեւ Ալիեւի վրայ միջազգային ճնշում է գործադրւում, ապա՝ Ալիեւը ցանկանում է այնպէս անել, որ երբ նա իշխանութիւնը փոխանցի որդուն, հարցը արդէն կարգաւորուած լինի: Այդ դէպքում ներդրումները կը հոսեն Ատրպէյճան, կեանքը կը բարելաւուի, ու մարդիկ ինչ-որ չափով կը համակերպուեն դաւր կորստի հետ:*

*Յօդուածի վերնագիրն էլ է բաւականին մռայլ. «Կարծէք թէ, մենք Ղարաբաղը կը կորցնենք առյաւետ»:*

### Հայաստանի եւ Իտալիոյ Կառավարութիւններու Միջեւ Ինքնաշարժերով Փոխադրութիւն

Այս օրերուն պաշտօնական այցելութեամբ Հայաստան կը գտնուի Իտալիոյ Փոխադրութեան նախարար Տիզիանօ Թրէուի գլխաւորութեամբ պատուիրակութիւն մը, որ տեղւոյն վրայ շփումներ կը հաստատէ իշխանութեան զանազան մակարդակներու վրայ:

Հայաստանի եւ Իտալիոյ Փոխադրութեան նախարարները «Հայաստանի եւ Իտալիոյ կառավարութիւններու միջեւ ինքնաշարժերով փոխադրութեան մասին» միջ-կառավարական համաձայնագիր մը ստորագրեցին՝ Հայաստանի Կառավարութիւններու Ընդունելութիւններու Տան մէջ:

Արարողութենէն ետք սարքուած մամլոյ ասուլիսի ընթացքին, նախարարները այս համաձայնագիրը կարեւոր նկատեցին թէ՛ երկուստեք տնտեսական շփումներու եւ թէ Եւրոպայի հետ տնտեսական ամբողջացման տեսակէտէ, մասնաւորաբար ԹՐԱՍԷԿԱի շրջագծով:

Ինչպէս ծանօթ է, Իտալիա ներկայիս համակարգող այն երկիրն ➪ 4

### ԵԹԷ ԿԱՍՊԵԱՆ ՔԱՐԻՒՂԱՏԱՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԱՆՑՆԻ...

Հայաստանի Ուժանիւթի փոխնախարար Կարէն Գալստեան յայտարարեց, որ եթէ Կասպեան քարիւղատարը Հայաստանէն անցնի, այդ պարագային ներդնողները 500 միլիոն տոլար նուազ պիտի ծախսեն: Գալստեան իր գնահատականը կատարած էր, հիմնուելով հայ մասնագէտներու կատարած հաշուարկումներուն վրայ: Ան ըսաւ, որ Հայաստանի հիւսիսէն անցնելիք քարիւղատարը թէ՛ տնտեսապէս եւ թէ՛ թէքնիք առումով աւելի գրաւիչ է:

Յիշեալ քարիւղատարի կառուցումը, Պաքուէն մինչեւ Ճէյհան, կը գնահատուի 2.4-3.7 միլիառ տոլարի միջեւ: Գալստեան ըսաւ նաեւ, թէ Եւրոմիութեան ԻՆՕԿԷՅԹ ծրագիրը, իր նախագիծերուն մէջ, առաջին անգամ ըլլալով Հայաստանէն անցնելիք երկու ուղիներ նկատի ունեցաւ այս քարիւղատարին համար: Ան ըսաւ. «Ձենք ըսեր, թէ Հայաստանի ընտրութիւնը պիտի որոշուի: Թող ներդնողները իրե՛նք կշռեն քաղաքական եւ տնտեսական բոլոր ազդակները»:

### Իտալիայի Նոր Դեսպանը ՀՀ Նախագահին Յանձնեց Իր Հաւատարմագիրը

*Նախագահ Ռոպերթ Քոչարեանին իր հաւատարմագիրը յանձնեց Հայաստանում Իտալիայի Հանրապետութեան նոր նշանակուած արտակարգ եւ լիազօր դեսպան Ջիանգարլօ Արագոնան (Նստավայրը՝ Մոսկուա):*

*Ինչպէս ԱՐՄԵՆՓՐԵՍԻՆ յայտնեցին ՀՀ Նախագահի մամլոյ գրասենեակից, դեսպանը հաւաստել է իր երկրի պատրաստակամութիւնը՝ ընդլայնելու երկկողմ համագործակցութեան շրջանակները: Կարեւորելով անդրկովկասեան պետութիւնների եւ Եւրամիութեան միջեւ ստորագրուած գործընկերութեան ու համագործակցութեան համաձայնագիրը, նա ասել է. «Իտալիան կողմնակից է, որ Հայաստանը լիարժէք մասնակցութիւն ունենայ Եւրամիութեան ու Եւրախորհրդի աշխատանքներին եւ պատրաստ է ըստ ամենայնի օժանդակել»:*

*Շնորհաւորելով դիւանագէտին պաշտօնը ստանձնելու առթիւ, Ռոպերթ Քոչարեանը նշել է, որ Հայաստանն առանձնայատուկ կարեւորութիւն է տալիս եւրոպական երկրների հետ երկկողմ ու բազմակողմ յարաբերութիւնների զարգացմանը: Նրա խօսքերով, Հայաստանը կարողացել է գտնել իր տեղն ու դերը եւ դառնալ տարածաշրջանի ամենակայուն ու կազմակերպուած երկիրը:*

*Հաւատարմագրի յանձնման արարողութեանը հետեւած զրոյցի ընթացքում քննարկուել են հայ-իտալական համագործակցութեան հեռանկարները:*

**ԼԻԲԱՆԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ ԱՐՄԱՆ ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆ ԲԱՑՈՒՄԸ ԿԱՏԱՐԵՑ Հ.Կ.Բ.Մ.Ի ԴԱՐՄԱՆԱՏԱՆ ԱԿՆԱԲՈՒԺԱԿԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԻՆ

*Լիբանանի մօտ Հայաստանի Հանրապետութեան արտակարգ եւ լիազօր դեսպան Պրն. Արման Նաւասարդեան եւ Տիկինը՝ ընկերակցութեամբ դեսպանատան առաջին քարտուղար Պրն. Արշակ Յարութիւնեանի, անցեալ Երկուշաբթի երեկոյեան այցելեցին Հ.Կ.Բ.Մ.ի Բժշկական եւ Ընկերային Ծառայութեան Կեդրոնը, ուր դիմաւորուեցան Միութեան եւ Դարմանատան պատասխանատուներուն, ու բժշկական անձնակազմին կողմէ: Բարեդէպ զուգադիպութեամբ մը այս այցելութիւնը տեղի ունեցած ըլլալով Դարմանատան Ակնաբուժական Բաժանմունքի հաստատման վաղորդայնին, Հայաստանի դեսպանը բացումը կատարեց այդ բաժանմունքին, ի ներկայութեան պետական երեսփոխան ընկ. Տք. Եղիկ Ճէրէճեանի, Ակնաբուժարանի բժիշկներուն, Հայկական Աւիատուղիներու Տնօրէն Պրն. Վազգէն Խանճեանին, Հ.Կ.Բ.Մ.ի Լիբանանի Շրջանային Վարչութեան ատենապետ Պրն. Փարամազ Տօնիկեանին եւ բազմաթիւ հրաւիրեալներու:*

*Ակնաբուժարանին բացումը կատարելէ ետք, Հայաստանի դեսպանն ու ազնիւ տիկինը, ինչպէս նաեւ օտար հրաւիրեալները շրջեցան Դարմանատան զանազան բաժանմունքները, ծանօթացան անոնց գործունէութեան եւ բժիշկներուն որոնք կամաւորաբար կը ծառայեն Դարմանատունէն ներս:*

*Այնուհետեւ, Դարմանատան սրահին մէջ խօսք առնելով, Հ.Կ.Բ.Մ.ի Դարմանատուներու վարիչ - պատասխանատու, Պր. Սարգիս Նաճարեան ողջունեց դեսպան Պր. Նաւասարդեանին այցելութիւնը, վստահեցնելով որ Դեսպանին ներկայութիւնը ու հետաքրքրութիւնը ոչ միայն ուրախութիւն է ու պատիւ, այլ յաւելեալ խթան ու քաջալերանք Դարմանատան ձգտումներուն ու գործունէութիւններուն,*

*Իր կարգին խօսք առնելով, Հայաստանի Հանրապետութեան դեսպանը իր ուրախութիւնն ու գնահատանքը յայտնեց այն իրողութեան համար, որ լիբանանահայ համայնքը գիտցած է յաւալէս հոգատարել ինքզինք, կազմակերպուելով բոլոր մարզերէն ներս: Այս իրողութեան մէկ փաստը նկատեց Հ.Կ.Բ.Մ.ի եւ անոր Դարմանատան գոյութիւնն ու գործունէութիւնը յօգուտ համայնքին եւ ընդհանրապէս լիբանանցի ժողովուրդի համեստ ու աշխատաւոր դասակարգերուն, ինչ որ չատ բնական նկատեց այս Միութիւնը հովանաւորող Կազմակերպութեան համար:*

*Իր խօսքը շարունակելով նաեւ ֆրանսերէնով, դեսպան Նաւասարդեան գնահատեց գործակցութիւնը որ հաստատուած է Դարմանատան չուրջ հայ լիբանանեան տարբեր շրջանակներուն միջեւ, ասոր մէջ տեսնելով հայ եւ լիբանանցի ժողովուրդներուն միջեւ եղբայրական կապերու գոյութեան ապացոյցը:*

*Այնուհետեւ տեղի ունեցաւ հիւրասիրութիւն:*

**ԹՂԹԱԿԻՑ**

---

## Սեպտեմբերին «Կրանտ Հօթել Անին» Կը Բացի Իր Դռները, Իսկ Նրա Աշխատակազմի 197 Անդամներ Համալրել Են Գործազուրկների Բանակը

Երեւանի «ԱՆի» հիւրանոցը Մայիսի 1-ից չի գործում վերանորոգման պատճառով:

Ինչպէս ԱՐՄԵՆՓՐԵՍԻ թղթակցին ասաց «GRAND HOTEL ANI»-ին (այս անունն է կրելու հիւրանոցը վերաբացուելուց յետոյ) ընկերութեան տնօրէն Յովհաննէս Աչիկգոյզեանը, «Անի» հիւրանոցը փոփոխութիւնների կ'ենթարկուի 80 տոկոսով: Կարճ ժամանակամիջոցում վերանորոգուել են հիւրանոցի 8 յարկերը, կատարուել է սենեակների ձեւափոխութիւն, վերակառուցուել է ջեռուցման համակարգը, կառուցուել են լողաւազաններ եւ այլն:

Կը ձեւափոխուի նաեւ հիւրանոցի չքամուտքը:

Տնօրէնը յայտնեց, որ հիւրանոցի նախկին 212 աշխատակիցներից միայն 15-ն են շարունակելու աշխատել, մնացածները երկու տարի հիւրանոցի կողմից կը ստանան նպաստ՝ նախկին աշխատավարձի 50 տոկոսի չափով եւ պէտք է մտածեն աշխատանք գտնելու մասին:

---

## ԴԷՊԻ 21-ՐԴ ԴԱՐ՝ ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒԱԾ ՈՒԽՏՈՎ

1 ➪

փոխարինէ երէց սերունդը, անշուշտ այս վերջինին վերապահելով անհրաժեշտ յարգանքը, ճշդելով հանդերձ անոր խորհուրդներէն օգտուելու կարելիութիւնները: Հնչակեան Կուսակցութեան աւանդութիւններուն մէջ անհատի պաշտամունք չէ եղած և այսօր ալ չկայ: Այդ երեւոյթը խորթ է ժողովրդավարութեամբ, դեմոկրատիայով առաջնորդուող կուսակցութեան մը համար: Սակայն չենք կրնար անտեսել ղեկավարի բարձր արժանիքներով օժտուած անհատը, անհատականութիւնը: Չախաւեր ու համբակ ղեկավարներ կրնան մշուշապատել ամբողջ երկրի, պետութեան, կազմակերպութեան ճանապարհը: Իսկական ղեկավարը անհրաժեշտ է, որ իր անձին մէջ խտացնէ դէպքերը կանխատեսողի, իր ստորադասներուն հանդէպ անկողմնակալի, խիզախութեան, նուիրեալի, գիտելիքներու մասնագիտական հարուստ պաշար ունեցողի, օրէնքի ու օրինականութեան հանդէպ յարգանք ունեցողի, վճռական մարդու յատկանիշներ: Ապագայ ղեկավարներու մէջ պէտք է փնտռել վերոյիշեալ և այլ դրական յատկանիշներու կարելիութիւնները, երբ կը ծրագրենք կարեւոր պարտականութիւններ ու պատասխանատուութիւններ վստահիլ անոնց: ՈՐԱԿ և կրկին ՈՐԱ՛Կ... ահա 21րդ դարու անփոխարինելի չափանիշը, որուն համար ալ պատրաստ պէտք է ըլլալ:

Հնչակեան Կուսակցութեան մեծ ընտանիքը կը նախապատրաստուի իր հերթական համագումարին՝ Հայրենիքին մէջ: Լարելով բոլոր ուժերը, ի մի բերելով բոլոր կարելիութիւններն ու տրամադրելի մարդուժը, մանաւանդ առաջ մղելով բարձր յատկանիշներով օժտուած երիտասարդութիւնը, անհրաժեշտ է քայլ պահել ժամանակին հետ և այդպէս մուտք գործել 21րդ դար: Եւ վերջապէս, պարտինք վերանորոգուած ուխտով նո՛ր անհատականութիւններու յայտնութիւնը կատարել:

**ՄԱՆՈՒԷԼ ԱԴԱՄԵԱՆ**

---

## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԲԱԺՆԻ ՔՆՆՈՒԹԵԱՆ



*Ուրախութեամբ տեղեկացանք, որ համայնքիս ջանասէր աշակերտներէն՝ ՎԱՉԷ ԱՐԹԻՆԵԱՆ երկրորդական բաժնի, գիտական (Թուաբանութեան) ճիւղի պետական քննութեանց յաջողած է 96,5 պատուաբեր արդիւնքով:*

*Առաքինի Վաչէն իր հայեցի դաստիարակութիւնը կը ստանայ Գալուստեան Ազգ. վարժարանէն, մինչեւ Ա. երկրորդական, ապա յաճախելով «Պի. Պի. Ս.ի» վարժարանը՝ այս տարի գերազանցելի արդիւնքով կ'աւարտէ երկրորդականի բաժինը, ջերմ գնահատանքի արժանանալով:*

*Երբ հարցուցինք, թէ ան ի՞նչ ճիւղի կը ձգտի հետեւիլ, Վաչէն պատասխանեց, թէ իր նախասիրած ճիւղը ճարտարագիտութիւնն է:*

*Սրտագինս կը շնորհաւորենք զինք եւ իր ծնողքը՝ մեր բարեկամներէն Տէր եւ Տիկ. Մարգպետ եւ Անի Արթինեանները, մաղթելով նոյնքան փայլուն յաջողութիւններ համալսարանական ուսմանց մէջ:*

---

**ՍՈՒՐԻԱ**

## Տաղերու Հաւաքածոյ Արաբերէնով

*Լաթաքիոյ մէջ (Սուրիա) լոյս տեսած է 16-րդ դարու մեր նշանաւոր տաղերգուներէն՝ Նահապետ Քուչակի քերթողութիւնները ամփոփող արաբերէն գեղատիպ հատոր մը, որպէս չորրորդ հրատարակութիւնը 1994-ին հաստատուած «Հայ Գրականութեան Գոհարներ» արաբերէն մատենաշարին: Հատորին վերնագիրն է «Նռան հատիկը, սիրոյ հայկական հարիւր տաղերը»:*

*Թարգմանութիւնը կատարած է հայէպաբնակ երիտասարդ բանաստեղծ՝ Միհրան Մինասեան, որ շրջանաւարտ է Քարէն Եփփէ Ճեմարանէն եւ կ'աշխատակցի սփիւռքի հայագիտական մամուլին: Հատորը կը բաղկանայ 128 էջերէ, յառաջաբանը գրած է սուրիացի վիպագիր եւ բանաստեղծ Իպրահիմ Ալ Խալիլ: Թարգմանիչը քանի մը տարի առաջ լոյս ընծայած էր իր առաջին հատորը Պարոյր Սեւակի քերթուածներէն արաբերէն ժողովածու մը:*

---

**ՖՐԱՆՍԱ**

## Մարսէյլի Հայ Մշակոյթի Տան 23-րդ Տարեդարձի Նշում

*Մարսէյլում մեծ հանդիսութեամբ նշուեց քաղաքի Հայ մշակոյթի տան 23-րդ տարեդարձը:*

*Հանդիսութեանը հրաւիրուած պատուաւոր հիւրերի թւումն են եղել Ֆրանսիայում ՀՀ դեսպան Էդուարդ Նալպանդեանը, որը նախագահել է երեկոն, Ֆրանսիայի պառլամենտի անդամներ, Եւրախորհրդի նախկին պատգամաւորներ, աշխարհիկ եւ հոգեւոր բարձրաստիճան այրեր:*

*Իր ելոյթում դեսպան Նալպանդեանը դրուատանքով է խօսել Ֆրանսիայի հայ գաղութի արմատների՝ մարսէյլահայերի մասին, անդրադարձել Հայաստանի* ➪ 4

---

**ԳԱՀԻՐԷ**

## ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք յարգոյ հասարակութեան եւ ազնիւ ծնողներուն, Վարժարանիս 1998-1999 ուսումնական տարեշրջանի Բ. եւ Գ. Երկրորդականի (Սանաուէյա) պետական քննութեանց արդիւնքները :

Ստորեւ կու տանք ցանկը համապատասխան նիշերով:

| | | |
|---|---|---|
| Գ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ - ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ | 400-էն | 100% |
| Նայիրի Լեւոն Հեղինեան | 277.5 | 69.4 |
| Քրիստին Յակոբ Ժան Սոլոմոն | 268 | 67 |
| Բ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ - ԳՐԱԿԱՆ ՃԻՒՂ | 205-էն | 100% |
| Անժէլ Ուանիս Գազանճեան | 194 | 94.6 |
| Բ. ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ - ԳԻՏԱԿԱՆ ՃԻՒՂ | | |
| Աբրահամ Վարուժան Թահիքապրունեան | 169 | 82.4 |

Տնօրէնութիւնն եւ ուսուցչաց կազմը կը շնորհաւորեն յարգելի ծնողները եւ յաջողած աշակերտները յառաջիկայ նորանոր նուաճումներու մաղթանքերով:

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

***

*Խմբագրութիւնս եւս կը շնորհաւորէ յաջողած աշակերտները, վարժարանի տնօրէնութիւնն եւ ուսուցչական կազմը, նորանոր յաջողութիւններու մաղթանքներով:*

---

## Առաջարկում Է Հայաստանում Կառուցել Նոյեան Տապանի Նմանօրինակ

*Հայաստանի երեք կազմակերպութիւններ՝ «Նոր Նորք» բարեգործական հիմնադրամը, Գիւմրիի մտաւորականների միութիւնը, «Փրկութեան օր» հասարակական կազմակերպութիւնը բաց նամակ են յղել ՀՀ նախագահին, ԱԺ նախագահին, վարչապետին, ինչպէս նաեւ «բոլոր բարի կամքի տէր մարդկանց»:*

*Նամակի հեղինակները առաջ են քաշում Հայաստանում «Նոյեան Տապանի նմանօրինակ» յուշակոթող-խորհրդանիշի կառուցման հարցը, Արարատի ստորոտին՝ «իբրեւ քաղաքակրթութեան եւ մշակոյթի թանգարան, մարդկութեան միասնութեան խորհրդանիշ»: Նամակում Աստուածաշնչեան եւ պատմական փաստերով հիմնաւորւում է նման կոթողը յատկապէս Հայաստանում կառուցելու անհրաժեշտութիւնը:*

*Բաց նամակի հեղինակները մանրամասն նկարագրում են նաեւ իրենց պատկերացումը՝ այս նախագիծը կեանքի կոչելու վերաբերեալ,* ➪ 4

---

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ
## ԵՂԻԱՅԵԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿ
## 1999 - 2000 ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆ

Եղիայեան Կրթաթոշակի Յանձնաժողովը 1999 - 2000 ուսումնական տարեշրջանի համար, վերանորոգելի կրթաթաթոշակներէն զատ, պատրաստ է յատկացնել նաեւ նոր կրթաթոշակներ, արժանաւոր ուսանողներու.-

Սիրելի ուսանող ուսանողուհի,

Եթէ աւարտած ես երկրորդական ուսումդ եւ ստացած եգիպտական երկրորդական ուսման վկայական «ՍԱՆԱՈՒԷՅԱ ԱՄՄԱ» **ԳՐԻԳՈՐ ԵՂԻԱՅԵԱՆ** պիտի փափաքէր որ դուն ստանայիր նաեւ համալսարանական կամ հիմնարկային կրթութիւն: Ճիշդ այդ պատճառաւ ան հաստատեց իր հիմնադրամը, այն ժամանակ երբ համալսարանական ուսումը անվճար չէր, ինչպէս է Եգիպտոսի մէջ 1952-ի Յեղափոխութենէն ետք:

Ուրեմն, եթէ կը փափաքիս շարունակել մասնագիտական ուսումդ Եգիպտական Պետական կամ ոչ-Պետական համալսարաններու, հիմնարկներու մէջ, եւ կը կարօտիս աջակցութեան կրնաս դիմել:

Նոյնպէս կրնաս դիմել եթէ կը փափաքիս Հայաստանի Հանրապետութեան համալսարաններէն կամ հիմնարկներէն մէկը յաճախել Հայագիտական նիւթեր ուսանելու եւ կամ Կրօնական ուսում ստանալու Հայկական դպրեվանքերէն մէկուն մէջ:

Մանրամասնութեան համար անձամբ ներկայանալ մեր հասցէին.-

**Եղիայեան Համալսարանական Կրթաթոշակի Յանձնաժողով**
**Առաջնորդարան Հայոց,**
**179 Ռամսէս պողոտայ, Գահիրէ**

Հանդիպման Օր.-Ուրբաթ առաւօտեան ժամը 11-1

Ուր քեզ հետ պիտի հանդիպի Յանձնաժողովի անդամներէն մին: Ան պէտք եղած լուսաբանութիւնը հաղորդելէ ետք, պիտի յանձնէ քեզի յատուկ դիմումնագիր-հարցաթուղթը APPLICATION FORM, զոր լեցնելէ ետք կը վերադարձնես մեզի ինքնութեան թուղթի եւ վերջին վիճակացոյցի պատճէններու եւ երկու անձնական լուսանկարներու հետ միատեղ:

1999-2000 Ուսումնական տարեշրջանի դիմումնագրերու ստացման վերջին պայմանաժամ՝ Ուրբաթ, Օգոստոս 13, 1999:

Այդ թուականէն շաբաթ մը ետք Յանձնախումբս պիտի ընտրէ արժանաւոր նոր կրթաթոշակառուները, վերանորոգելի կրթաթոշակառուներէն զատ, համաձայն հիմնադրամի կանոնագրին:

ԿԱՐԵՒՈՐ

1.- Նոյն ընտանիքէն երկու եղբայրներ կամ քոյրեր չեն կրնար արձանագրուիլ Եղիայեան Կրթաթոշակի միաժամանակ:

2.- Նախընտրութիւն կը տրուի անոնց, որոնք հայկական վարժարաններէ շրջանաւարտ են:

3.- Եղիայեան Կրթաթոշակի վճարումները կ'ըլլան փոխգիրով «չէք»ով, ուղղուած տուեալ համալսարանի կամ հիմնարկի անունին:

4.- Թեկնածուն անձնապէս կը ներկայանայ Առաջնորդարան Ուրբաթ օր մը եւ Յանձնաժողովի անդամներէն կը ստանայ դիմումնագիրը եւ լեցնելէ ետք անձամբ կը յանձնէ Առաջնորդարանի դիւանապետին:

5.- Դիմումներու վերջին թուականն է 13 Օգոստոս 1999:

Յաջողութեան մաղթանքներով՝

**ԵՂԻԱՅԵԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿԻ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎ**

# ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ ԿԸ ԿԱՅԱՆԱՆ 1999-ԻՆ, ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԽԱՂԵՐՈՒ ՊԱՏՄԱԿԱՆԸ

Հայաստանի Հանրապետութեան Անկախութեան վերականգնումը մեծ հնարաւորութիւն ստեղծեց համընդհանուր համահայկական մարզական խաղեր կայացնելու: Այս ուղղութեամբ, Հայաստանի - Սփիւռքի բոլոր հայկական կազմակերպութիւններու մասնակցութեամբ համընդհանուր մարզական խաղեր կայացնելու գաղափարը առաջին անգամ հրապարակային յայտարարութեամբ ներկայացուեցաւ ՀԲԸ Միութեան 15-րդ նաւասարդեան խաղերու աւարտին կազմակերպուած ճաշկերոյթին (Փարիզ, Յուլիս 16, 1995):

Գաղափարը գործնականի վերածուեցաւ երբ 1996 Ապրիլ 5-ին Երեւանի մէջ ստեղծուեցաւ Համահայկական խաղերու նախաձեռնող կոմիտէ՝ մասնակցութեամբ Հայաստանի հասարակական, մշակութային, երիտասարդական եւ մարզական կազմակերպութիւններու ներկայացուցիչներուն: Այս Յանձնախումբը՝ իր 1996 Յուլիս 27-ի կոչով հայկական մարզական ընկերութիւնները համաշխարհային ժողովի հրաւիրեց Երեւան:

1997 Ապրիլ 29-30ին տեղի ունեցաւ աշխարհի հայկական մարզական կազմակերպութիւններու հիմնադիր համաժողով, որուն ընթացքին ընդունուեցաւ Հռչակագիրը, ստեղծուեցաւ Համահայկական Խաղերու Համաշխարհային Կոմիտէ (ՀԽՀԿ), որուն անդամները դարձան Երեւանի, Լոս Անճելըսի, Թորոնթոյի, Թեհրանի, եւ այլ քաղաքներու ներկայացուցիչները:

## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԽԱՂԵՐՈՒ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՄԻՏԷԻ ԿԱԶՄԸ

Համաշխարհային Կոմիտէն կազմուած է 27 անդամներէ, որոնք կը ներկայացնեն վեց կառոյց, կազմուած համահայկական մարզական շարժումներէ:

Երկրորդ Համահայկական Խաղերը կը կայանան 2001 թուականին, որ կը համընկնի Հայաստանի մէջ Քրիստոնէութեան պետական կրօն ընդունման 1700 ամեակին: Յետագային, կը նախատեսուի խաղերը կայացնել չորս տարին անգամ մը Աշխարհի Ողիմպիական խաղերէն անմիջապէս ետք:

**Նախագահ՝** Աշոտ Մելիք-Շահնազարեան

*(Հինգ Տարուան ժամկէտով)*

**Հայաստան-Լեռնային Ղարաբաղ**
Աւետիսեան Ալեքսան (Երեւան) (*), Զաքարեան Իշխան (Երեւան)(*), Գէորգեան Արթուր (Երեւան), Բալայեան Կարիկ (Ստեփանակերտ), Եաւրաեան Յարութիւն (Երեւան), Սարգսեան Վաղինակ (Երեւան)

**Հայկական Բարեգործական Ընդհ. Միութիւն (ՀԲԸՄ)**
Պարտաքճեան Հրանդ (Թորոնթօ)(*), Պօյաճեան Ալպէռ (Լոս Անճելըս), Մանուկեան Հրաչ (Նիկոսիա), Գնաճեան Վարդգէս (Երեւան)

**Հայ Մարմնամարզական Ընդհանուր Միութիւն (ՀՄԸՄ)**
Սիսեռեան Հրաչ (Փարիզ) (*), Էսկիպաչեան Վարդգէս (Պէյրութ), Մարսէլեան Մանուէլ (Լոս Անճելըս), Տէր Սարգիսեան Հրաչ (Մոնթրէալ)

**Հայ Մարմնամարզական Միութիւն (ՀՄՄ)**
Սարաֆեան Տիգրան (Պէյրութ) (*), Գոճապապեան Վարդան (Լոս Անճելըս), Հայրապետեան Ժաք (Փարիզ), Սարգիսեան Սարգիս (Պէյրութ)

**ԱՊՀ – Արեւելեան Եւրոպա**
Տէր - Յովաննիսեան Իկոր (Մոսկուա) (*), Գրմզեան Յակոբ (Պուխարեստ)

**Անհատ անդամներ (Իմֆորօ)**
Մաքսեան Յակոբ (Հոնկ Քոնկ) Պետրոսեան Վանիկ (Թեհրան)

*(*)Աստղանիշ կրողները անդամ են Գործադիր Մարմինին:*

# ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՒ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԽԱՂԵՐՈՒ ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԻՒՆԸ

23 Յուլիսին Հայաստանի Մարզանքի վարչութեան սրահին մէջ տեղի ունեցաւ Համահայկական Խաղերու խմբային մարզաձեւերու (ֆութպոլ, պասքէթպոլ, վոլէյպոլ) մրցումներու վիճակահանութիւնը: Բացման խօսքով հանդէս եկաւ Մշակոյթի եւ մարզանքի փոխ-նախարար Իշխան Զաքարեան:

**ՖՈՒԹՊՈԼ**

Ֆութպոլի մարզաձեւի մէջ մասնակցելու համար դիմում կատարած են 16 քաղաքներու ֆութպոլային խումբեր, որոնք բաժնուեցան չորս ենթախումբերու, ըստ հետեւեալի..-

| Ա. Ենթախումբ | Բ. Ենթախումբ | Գ. Ենթախումբ | Դ. Ենթախումբ |
|---|---|---|---|
| Երեւան | Ստեփանակերտ | Կիւմրի | Թեհրան (Իրան) |
| Ալմէլօ(Հոլանտա) | Իսթանպուլ (Թուրքիա) | Ս. Ֆրանսիսքօ (ԱՄՆ) | Փարիզ (Ֆրանսա) |
| Սպահան (Իրան) | Պրիւքսէլ (Պելժիքա) | Սիտնի (Աւստրալիա) | Նիկոսիա (Կիպրոս) |
| Լոս Անճելըս (ԱՄՆ) | Պուէնոս Այրէսի (Արժանթին) | Քէօլն (Գերմանիա) | Թորոնթօ (Գանատա) |
| *Երեւանի «Հրազդան» մարզադաշտ* | *Երեւանի «Նայիրի» մարզադաշտ* | *Արտաշատի մարզադաշտ* | *Աբովեանի մարզադաշտ* |

Կիսաաւարտական եւ եզրափակիչ մրցումները տեղի պիտի ունենան «Հրազդան» մարզադաշտին վրայ

**ՊԱՍՔԷԹՊՈԼ**

Պասքէթպոլի մարզաձեւի այրերու մրցաշարքին մասնակցելու համար դիմում կատարած են 20 քաղաքներ: Կազմուեցան չորս ենթախումբեր՝ 5-ական խումբերով:

| Ա. Ենթախումբ | Բ. Ենթախումբ | Գ. Ենթախումբ | Դ. Ենթախումբ |
|---|---|---|---|
| Թորոնթօ | Կլէնտէյլ (ԱՄՆ) | Լոս Անճէլըս | Մոնրէալ (Գանատա) |
| Երեւան, | Սիտնի | Պէյրութ(Լիբանան) | Մեծամօր |
| Ստեփանակերտ | Իսթանպուլ | Կիւմրի | Թեհրան |
| Պուէնոս Այրէս | Մ. Ֆրանքֆուրթ (Գերմ.) | Նիս (Ֆրանսա) | Արարատ |
| Սան Ֆրանսիսքօ | Գահիրէ (Եգիպտոս) | Սոչի (Ռուսաստան) | Աթէնք (Յունաստան) |

Կանանց մրցաշարին համար կազմուեցան երկու ենթախումբեր, 4-ական խումբով:

| Ա. Ենթախումբ | Բ. Ենթախումբ |
|---|---|
| Հալէպ (Սուրիա) | Պէյրութ |
| Թեհրան | Երեւան |
| Արարատ | Լոս Անճէլըս |
| Կիւմրի | Սիտնի |

Պասքէթ պոլի եզրափակիչ մրցումները տեղի պիտի ունենան Երեւանի Մարզա - Համերգային Համալիրին մէջ, մնացեալ խաղերը՝ Երեւանեան ուրիշ մարզասրահներու մէջ:

**ՎՈԼԷՅՊՈԼ**

Վոլէյպոլի մրցումներու մէջ՝

Այրեր

| Ա. Ենթախումբ | Բ. Ենթախումբ |
|---|---|
| Երեւան | Լոս Անճէլըս |
| Իսթանպուլ | Նոր Հաճըն |
| Վանաձոր | Պուէնոս Այրէս |
| Փարիզ | Արմաւիր |

Կիներ

| Ա. Ենթախումբ | Բ. Ենթախումբ |
|---|---|
| Երեւան | Լոս Անճէլըս |
| Սան Ֆրանսիսքօ | Փարիզ |
| Սիսիան | Տոնի Ռոսթով |
| Իսթանպուլ | Արթիկ |
| Պուէնոս Այրէս | Ստեփանակերտ |

## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐՈՒ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԻՐԵՆՑ ԱՒԱՐՏԻՆ ԿԸ ՄՕՏԵՆԱՆ

### Դր. Վարդ Ալեքսանեան 33 Հազար Տոլար Կը Նուիրէ

Համայն հայ ժողովուրդը մեծ հետաքրքրութեամբ կը սպասէ այն օրուան, երբ առաջին անգամ ըլլալով Հայաստանի մէջ պիտի կազմակերպուին Համահայկական Խաղերը: Խաղերը պիտի սկսին 28 Օգոստոսին եւ պիտի աւարտին 4 Սեպտեմբերին: Արդէն իսկ իրենց աւարտին կը մօտենան Խաղերու նախապատրաստական աշխատանքները:

Այս մասին, լրագրողներուն տեղեկութիւններ փոխանցեց Համահայկական Խաղերու Կազմակերպիչ Կոմիտէի նախագահ՝ Աշոտ Մելիք-Շահնազարեան: Ան լրագրողներուն առաջին հերթին յայտարարեց, թէ մրցաշարքի նախապատրաստական աշխատանքները արդէն իսկ իրենց աւարտին կը մօտենան: Մրցումներու հանդիսաւոր բացումը տեղի պիտի ունենայ 28 Օգոստոսին Աշտարակի մէջ, իսկ փակումը՝ Երեւանի մէջ: Մրցումները (ֆութպոլ, պասքէթպոլ, ճատրակ, սեղանի թէնիս, թեթեւ աթլէթ, վոլէյպոլ, թէնիս), տեղի պիտի ունենան Երեւանի, Արտաշատի (թեթեւ աթլէթ) եւ Աշտարակի (ֆութպոլ) մարզադաշտերու եւ մարզասրահներու մէջ: Այս առումով, Ա. Մելիք-Շահնազարեան մասնաւորաբար նշեց որ Հայաստանի Վարչապետ Վազգէն Սարգսեանի հրահանգով կառավարութիւնը մեծապէս կ'աջակցի Կազմակերպչական Կոմիտէին: Այժմ ամբողջութեամբ վերանորոգուած եւ գործածութեան պատրաստ են բոլոր մարզադաշտերն ու դահլիճները: Մարզախաղերուն համար, կառավարութիւնը յատկացուցած է 72 հազար տոլար, ինչպէս նաեւ ստանձնած է անոնց բացման եւ փակման արարողութիւններու բոլոր ծախսերը: Կազմակերպիչ Կոմիտէին նուիրատուութիւններ կատարած են **Գահիրէէն՝ Վարդ Ալեքսանեան՝ 30 հազար տոլար, կան նաեւ այլ հովանաւորներ: Վ. Ալեքսանեան յաւելեալ 3 հազար տոլար յատկացուցած է Աշտարակի մէջ առաջին հայ ողիմպիական ախոյեաններ՝ Տիգրան եւ Վարազդատ թագաւորներու արձաններու պատրաստութեան համար: Այս արձաններու համար յաւելեալ գումարներ յատկա-**

4





## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք թէ Համահայկական Առաջին Խաղերու Եգիպտահայ Գործադիր Յանձնախումբի որոշումով, Գահիրէի Պասքէթպոլի հաւաքականի անդամներն են.-

1.- Լէյլէկեան Արմէն
2.- Միքրճեան Հրաչ
3.- Շահպազեան Դրօ
4.- Գարակէօզեան Յակոբ
5.- Վարժապետեան Կարօ
6.- Սիմոնեան Քրիս
7.- Ասատուրեան Կարօ
8.- Մխտիքեան Նորայր
9.- Թոսունեան Կարօ
10.- Կորտեան Յակոբ
11.- Միքայէլեան Ժորժ
12.- Շատի Աբքարա
13.- Լէյլէկեան Զաւէն

Պասքէթպոլի խումբին պատասխանատու՝ Դր. Հրաչ Միքայէլեան:

*Եգիպտահայ Պասքէթպոլի եւ Փինկ-Փոնկի հաւաքական խումբերու գլխաւոր հովանաւոր՝*








## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք մեր յարգոյ հասարակութեան, թէ 8 - 19 Յուլիս 1999-ի ընթացքին, 20 Եգիպտահայ մարզիկներ մասնակցեցան Փինկ-Փոնկի հաւաքականի զտումի մրցումներուն: Առ այդ, մրցումներուն արդիւնքներուն հիման վրայ, Համահայկական Առաջին Խաղերու Եգիպտահայ Գործադիր Յանձնախումբը կազմեց Եգիպտահայ Փինկ-Փոնկի հաւաքականը հետեւեալ մարզիկներով.-՝

1.- Պասմաճեան Յակոբ
2.- Չամքէրթէնեան Սիմոն
3.- Աւանեան Գէորգ
4.- Սիմոնեան Ռուբէն

Փինկ-Փոնկի խումբին պատասխանատու՝ Դր. Մարտիրոս Պալաեան:

*Եգիպտահայ Պասքէթպոլի եւ Փինկ-Փոնկի հաւաքական խումբերու գլխաւոր հովանաւոր՝*



# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948



چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202) 4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg



ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1410 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 26 ՕԳՈՍՏՈՍ 1999 ՀԱՏԸ ԶԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. عدد رقم ١٤١٠ — الخميس ٢٦ أغسطس ١٩٩٩


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ**

## ՎԱՌ ՊԻՏԻ ՄՆԱՅ ՄԵԾԱՐԺԷՔ ՀԱՅՐԱՊԵՏ ԵՐԱՆԱՇՆՈՐՀ ԳԱՐԵԳԻՆ Ա.-Ի ՅԱՒԵՐԺ ՅԻՇԱՏԱԿԸ

Անցեալ 29 Յունիսին Հայաստանեայց Առաքելական Եկեղեցին մեծ կորուստ մը կրեց արժանաւոր Հոգեւոր Առաջնորդ, Երանաշնորհ Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Ա.-ի վախճանումով:



Երջանկայիշատակ Վեհափառը Լուսաւորչի Աթոռին բազմեցաւ 1995-ի Ապրիլին, Մեծի Տանն Կիլիկիոյ կաթողիկոսութեան 18-ամեայ գահակալի հարուստ փորձառութեամբ: Այս երկրորդ դէպքն էր, որ Կիլիկիոյ կաթողիկոս մը ընտրուի Ամենայն Հայոց կաթողիկոս (17-րդ դարու Եղիազար Այնթապցի Հայրապետը նոյն ձեւով ընտրուած է Ս. Էջմիածնի կաթողիկոս):

Արդարեւ Գարեգին Ա., որ միայն չորս տարի գահակալեց Մայր Աթոռին, իմաստութեամբ և յատուկ անձնուրացութեամբ հովուեց Հայաստանեայց Առաքելական Ս. Եկեղեցիին: Այդ կարճատեւ շրջանը եղաւ եռանդուն և արդիւնաւէտ: Եկեղեցասիրական և հայրենասիրական աշխատանք տանելով հանգուցեալ Կաթողիկոսը ձեռնարկեց Գէորգեան Հոգեւոր Ճեմարանի շէնքի արմատական նորոգման, Էջմիածնի տպարանի արդիականացման, աւելի քան 300 գիրքերու հրատարակման, քրիստոնէական դաստիարակութեան և քարոզչութեան կեդրոնի գործունէութեան: Վերատեսութեան ենթարկեց Հայաստանի թեմերու կառուցուածքը, ստեղծելով նոր թեմեր: Որպէս էքիւմէնիք շարժման տարիներու վաստակ ունեցող, նոր թափ տուաւ էքիւմէնիք կապերու:

Վերանորոգուեցան և բարեկարգուեցան խոնարհուած շատ մը եկեղեցիներ ու վանքեր և կառուցուեցան նորեր: Գործել սկսաւ Օշականի «Ս. Մեսրոպ Մաշտոց» նորաբաց դպրատունը: Եւ շուրջ 40 եկեղեցի ու վանք ծրագրուած է նորոգել քրիստոնէութիւնը պետական կրօն ընդունելու 1700-ամեակին առթիւ: Նոյն առթիւ, 1997 Ապրիլին, Երեւանի մէջ տեղի ունեցաւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Եկեղեցիի հիմնարկէքը, ձեռամբ ողբացեալ Հայրապետին, որ նախատեսուած է աւարտիլ 2001 թուականին: Եւ 1999-ի Ապրիլին Իր բազում երազանքներու մէկուն ականատեսը ըլլալով, նորոգուած տեսաւ Նորավանքը և օծեց զայն:

Հանգուցեալ Կաթողիկոսը կարողացաւ այցելել Հայաստանի և Սփիւռքի գրեթէ բոլոր թեմերը, մխիթարելով մեր հաւատացեալ ժողովուրդը, Ս. Էջմիածնի սէրն ու յարգանքը տածելով անոնց սրտերուն մէջ: 1998-ի Յունուարին Ան տասնօրեայ հովուապետական այցելութիւն մը տուաւ նաեւ Եգիպտահայ թեմին, անջնջելի յիշատակներ թողելով անոնց սրտերուն մէջ:

Երջանկայիշատակ Գարեգին Ա. Կաթողիկոս խոհուն քարոզիչ մըն էր, կարող ուսուցիչ, բարձր մտաւորական, շրջահայեաց քաղաքագէտ, իմաստուն հոգեւոր հայր, որ հայոց պատմութեան մէջ պիտի մնայ որպէս առաքելաշունչ առաջնորդ մը: Աւաղ, որքան շատ շնորհաբեր ծրագիրներ դեռ ունէր իրագործելու ի փառս մեր Հայց. Առաքելական եկեղեցւոյն, անոնցմէ՝ Էջմիածնական և Անթիլիասական թեմերու միացումն էր: Այս կապակցութեամբ անցեալ Մայիս ամսուան ընթացքին տեղեկացանք և իր ատենին հրատարակեցինք, թէ Ամերիկայի Հայոց Արեւելեան թեմի Առաջնորդարանի անունով գործող՝ «Միութիւն Յանձնախումբ»ը յուսալքուած, իր հրաժարականը տուած է, երկու թեմերու միջեւ ճակատումը հարթելու և միասնութիւն մը ստեղծելու նպատակը չկարողանալ յաջողցնելու պատճառով, մինչ հայրապետին առողջական վիճակը օրէ օր աւելի կը վատթարանար այդ շրջանին:

Հետեւաբար յառաջիկայ 26 Հոկտեմբերին, կաթողիկոսական ընտրութեան ընթացքին, հայ ժողովուրդին կը մնայ ընտրել ճարտար, և իմաստուն վեհափառ հայրապետ մը, որ յաջողի առաւել եւս պայծառացնել Հայց. Եկեղեցին և շարունակէ իրականացնել բոլոր կիսատ թողուած աշխատանքները, մանաւանդ՝ լուծում մը գտնէ և հարթէ երկու թեմերու թնճուկ հարցին:

Վառ պահենք մեր յիշողութեան մէջ, մեծարժէք հայրապետ՝ Երանաշնորհ Գարեգին Ա.-ի յաւերժ յիշատակը:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ԱՏՐՊԷՅՃԱՆԻ ՆԱԽԱԳԱՀՆԵՐՈՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ՝ ԺԸՆԵՒԻ ՄԷՋ

### Ղարաբաղեան Հիմնահարցը Պէտք Է Լուծուի Թէ՛ Մինսքեան Խմբակի Շրջագծով Եւ Թէ՛ Այլ Մակարդակներու Վրայ Հրադուլը Պէտք Է Շարունակուի Յաջորդ Հանդիպումը՝ Սեպտեմբերին

Հայաստանի եւ Ատրպէյճանի Նախագահներու հանդիպումը կայացաւ 22 Օգոստոսին, Ժընեւի մէջ: Ասիկա երկու Նախագահներու միջեւ գլուխ-գլխի երկրորդ հանդիպումն էր, որ կայացաւ Ժընեւի արուարձանային առանձնատան մը մէջ: Նախագահներու առաջին հանդիպումը



Ռոպերթ Քոչարեան



Հէյտար Ալիեւ

կայացած էր ամիս մը առաջ, 16 Յուլիսին: Այս անգամ երկու Նախագահներու առանձնազրոյցը սկսաւ Ժընեւի ժամով ժամը 12.00ին եւ տեւեց 2 ժամ 35 վայրկեան: Այնուհետեւ 15-20 վայրկեանի ընդմիջումէ մը ետք, անոնց միացան նաեւ երկու երկիրները ներկայացնող պատուիրակութիւններու անդամները: Բանակցութիւններու աւարտին, Հայաստանի Նախագահ՝ Ռոպերթ Քոչարեան եւ Ատրպէյճանի Նախագահ՝ Հէյտար Ալիեւ հանդէս եկան համատեղ յայտարարութեամբ: Հայաստանի Ազգային Հեռատեսիլը կը հաղորդէ որ այս հանդիպումի ընթացքին երկու Նախագահները վերահաստատեցին իրենց պատրաստակամութիւնը, որպէսզի Ղարաբաղեան հիմնահարցը լուծուի թէ՛ Մինսքեան Խմբակի շրջագծով եւ թէ՛ այլ մակարդակներու վրայ: Նախագահները յայտարարեցին նաեւ որ պէտք է շարունակեն պաշտպանել հրադուլը, որ 12 Մայիս 1994ին հաստատուած էր երկու երկիրներու միջեւ: Հրադուլը պահպանելու եւ զայն ամրապնդելու նպատակաւ, կողմերը համաձայն գտնուեցան որ հանդիպում մը կազմակերպուի երկու երկիրներու Պաշտպանութեան Նախարարներու միջեւ: Ատրպէյճանի Նախագահ՝ Հէյտար Ալիեւ, որ եղաւ առաջին խօսողը, ռուսերէն երկար յայտարարութիւն մը ընելով յայտարարեց որ Կովկասեան երկիրները շատ փայլուն ապագայ մը պիտի ունենան, եթէ լուծում մը գտնուի Ղարաբաղեան հակամարտութեան: Ալիեւ այս անգամ նախկինէն ալ աւելի մեղմ լեզու մը գործածեց եւ, օրինակ,

↪ 4

## ՎԱՐԴԱՆ ՕՍԿԱՆԵԱՆ ԱՐՑԱԽ ԱՅՑԵԼՈՒԹԵԱՆ ԸՆԹԱՑՔԻՆ ԿԸ ՅԱՅՏԱՐԱՐԷ՝ «ԼԵՌՆԱՅԻՆ ՂԱՐԱԲԱՂԸ ՈՒՂՂԱՀԱՅԵԱՑ ԵՆԹԱԿԱՅՈՒԹԻՒՆ ՉԻ ԿԱՐՈՂ ՈՒՆԵՆԱԼ»

Օգոստոսի 17-ին Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան նախագահ Արկադի Ղուկասեան ընդունած է նոյն օրը կարճատեւ աշխատանքային այցով Ստեփանակերտ ժամանած ՀՀ արտաքին գործոց նախարարութեան պատուիրակութիւնը՝ նախարար Վարդան Օսկանեանի գլխաւորութեամբ:

Այցի նպատակը, ինչպէս յայտնեց Օսկանեան, յառաջիկայ համահայկական համաժողովի նախապատրաստման եւ կայացման հետ կապուած կազմակերպչական հարցերու, ինչպէս նաեւ ՀՀ եւ ԼՂՀ արտաքին գործոց նախարարութիւններու միջեւ համագործակցութեան հարցերու քննարկումն էր:

Հանդիպման ընթացքին ծաւալուեցաւ մտքերու լայն փոխանակութիւն ԼՂՀ ներքին քաղաքական եւ սոցիալ-տնտեսական կացութեան

↪ 4

## ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԽԱՂԵՐԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

### Եգիպտահայ Պատուիրակութիւնը Վաղը Առաւօտ Կը Մեկնի Հայաստան

Ընդառաջելով Համահայկական Խաղերու Համաշխարհային Կոմիտէի կոչին, որ պիտի կայանայ յառաջիկայ 28 Օգոստոսէն 5 Սեպտեմբեր Երեւանի մէջ , եգիպտահայ համայնքի (Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ) մարզական եւ կարգ մը մշակութային միութիւններ եւս իրենց մասնակցութիւնը կը բերեն Առաջին Համահայկական Խաղերուն, պասքէթ պոլի եւ փինկ փոնկի մարզաձեւերով:

Այս առթիւ, քանի մը ամիսներ առաջ կազմուեցաւ Եգիպտահայ Գործադիր Յանձնախումբ մը, որ հերթական ժողովներով, կարողացաւ կազմել հաւաքական խումբերը, պասքէթ պոլի 13 եւ փինկ փոնկի 4 մարզիկներով:

Նիւթական իրենց աջակցութիւնը կը բերեն եւ կը հովանաւորեն Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Լուսաւորչական Եկեղեցւոյ Եգիպտոսի թեմի Ազգային Առաջնորդարանները, հայ Կաթողիկէ Ազգային Առաջնորդարանը, Հ.Բ.Ը. Միութիւնը, մարզական եւ մշակութային միութիւններ եւ գլխաւոր հովանաւորող՝ «Ֆիլիփ Ֆօրօ Թրէյտ» հաստատութիւնը:

Եգիպտահայ պասքէթ պոլի հաւաքականը կազմուելէն ետք անցաւ հերթական փորձերու Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ մէջ, որոնց անդամներն են՝ Արմէն Լէյլէկեան, Հրաչ Միսքճեան, Դրօ Շահպազեան, Յակոբ Գարակէօզեան, Կարօ Վարժապետեան, Քրիս Սիմոնեան, Կարօ Ասատուրեան, Նորայր Մըխտիկեան Կարօ Թոսունեան, Յակոբ Կորտեան, Ժորժ

↪ 4

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԵՐԵՒԱՆ ՎԵՐԱԴԱՐՁԱՒ

Երէկ Նախագահ Քոչարեան Երեւան վերադարձաւ: «Զուարթնոց» օդակայանին մէջ Նախագահն ու պատուիրակութեան անդամները դիմաւորուեցան Վարչապետ՝ Վազգէն Սարգսեանի, Ներքին Նախարար՝ Սուրէն Աբրահամեանի եւ պաշտօնական այլ անձերու կողմէ: Քոչարեան, զինքը շրջապատող լրագրողներուն համառօտ կերպով ներկայացուց այն հարցերը, որոնք օրակարգի բերուեցան հանդիպումի ընթացքին եւ պատասխանեց անոնց հարցումներուն: Նախագահ Քոչարեան մասնաւորաբար նշեց որ մօտ ապագային պիտի կայանայ երկու երկիրներու Պաշտպանութեան Նախարարներու հանդիպումը: Յայտնեց որ համաձայնութիւն ձեռք բերուեցաւ, որպէսզի Հայաստանի եւ Ատրպէյճանի Արտաքին Նախարարները աշխոյժ աշխատանք տանին, Մինսքեան Խմբակի շրջագծով Ղարաբաղեան հիմնահարցի լուծման բանակցութիւնները վերսկսելու ուղղութեամբ: Նախագահը աւելցուց որ այդ բանակցութիւններուն, որպէս հակամարտող կողմ, պիտի մասնակցին նաեւ Ղարաբաղի ներկայացուցիչները: «Սակայն Ղարաբաղեան հարցը բարդ հարց է եւ ճիշդ չէ ակնկալել որ զայն կարելի է լուծել մէկ կամ երկու հանդիպումով», դիտել տուաւ Քոչարեան, նշելով որ նմանօրինակ ամէն մէկ հանդիպում ենթահող կը պատրաստէ Ղարաբաղեան հիմնահարցի վերջնական լուծման:

## ԳՈՒԼՈՒԶԱՏԷՆ ՈՒԶՈՒՄ Է ՈՐ ՂԱՐԱԲԱՂԸ ՉՈՒՆԵՆԱՅ ՈՉ ԲԱՆԱԿ, ՈՉ ԷԼ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Ատրպէյճանը վաղուց ի վեր էր պատրաստ Ղարաբաղին տալ կարգավիճակ Թաթարստանի մոտելով, սակայն հայերը դա չեն ընդունում, ասել է Ալիեւի խորհրդական Վաֆա Գուլուզադէն: (Դա նշանակում է օրհներգ, զինանշան, դրօշ, խորհրդարան ունենալ, սակայն չունենալ դատական կազմ, բանակ, արտաքին քաղաքականութիւն մշակելու իրաւունք):

Ըստ Պաքւում լոյս տեսնող «Զաման» թերթի, չորս տարի առաջ, երբ դեռ շատ հեռու էր Ղարաբաղի հիմնախնդրի լուծումը, Ատրպէյաճնի միլլի մեճլիսի անձնակազմի ղեկավար Սաֆա Միրզաեւին հարց էին տուել, թէ կարելի՞ է արդեօք սպասել, որ Ղարաբաղի խնդիրը Ատրպէյճանին ստիպի վերածուել դաշնութեան: Նա այն ժամանակ խնդրել է իր խօսքերը չհրապարակել, ապա պատասխանել. «Մենք դրանից չպիտի վախենանք»:

Այսօր Ալիեւի խորհրդական Գուլուզադէն ասում է, թէ Ատրպէյճանը Ղարաբաղին Թաթարստանի չափ ինքնավարութիւն է առաջար-

↪ 4

**ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍ**

# ԸՆԿ. ՏԻԳՐԱՆ ՍԱՐԱՖԵԱՆԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ 50-ԱՄԵԱԿԸ ՆՇՈՒԵՑԱՒ ՄԵԾ ՇՈՒՔՈՎ

Ուրբաթ Յուլիս 30-ի երեկոյեան ժամը 8:30-ին, բազմութիւն մը փութացած էր Փասատինայի ՀՄՄ-ի Կարօ Սողանալեան սրահը; ներկայ ըլլալու մեծարանքի հանդիսութեան մը, նուիրուած Ընկ. Տիգրան Սարաֆեանի ծննդեան 70 եւ մարզական-հասարակական գործունէութեան 50-ամեակին:

Վաստակաշատ ընկերոջ յոբելինական սոյն հանդիսութիւնը կազմակերպուած էր ՀՄՄ-ի Վարչութեան եւ Վեթերաններու մարմնին կողմէ, որոնք իրենց կարելին ըրած էին արժանավայել շուքով նշելու այս յիշարժան իրադրութիւնը:

Արդարեւ հրաւիրեալներու մէջ կը նշմարուէին Արեւմտեան Թեմի Առաջնորդ Գերշ. Տ. Վաչէ Արք. Յովսէփեան, Հայաստանի Հանրապետութեան Լոս Անճելըսի Աւագ Հիւպատոս Տիար Արմէն Մելքոնեան, Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան անդամ Ընկերներ Սեդրակ Աճէմեան եւ Տէր եւ Տիկին Ընկեր Պետրոս Մուշեան (յատկապէս ժամանած Գանատայէն), Լոսանճելըսահայ մամուլի եւ քոյր կազմակերպութեանց ներկայացուցիչներ, ՍԴՀԿ-ի Վարիչ Մարմնի եւ ՀՄՄ-ի ղեկավարներ եւ բազմահարիւր համակիրներ: Լեփ-լեցուն սրահը նեղ կու գար որով տասնեակ մը ներկաներ ոտքի վրայ հետեւեցան յայտագրին:

Կազմակերպիչ Մարմնի անունով Մարզական Դիւանի պատասխանատու Ընկեր Վարդան Քէօրօղլեան ներկաները ողջունելէ ետք՝ հրաւիրեց հանդիսականները մէկ վայրկեան յոտնկայս լռութեամբ յարգելու յիշատակը նորոգ հանգուցեալ Ամենայն Հայոց Հայրապետի Ն.Ս.Օ.Ս.Տ. Գարեգին Ա.-ի: Այնուհետեւ ունկնդրուեցան Ամերիկայի Միացեալ Նահանգներու, Հայաստանի եւ ՀՄՄ-ի քայլերգները: Ապա բեմը յանձնուեցաւ ՀՄՄ-ի նախկին Ֆութպոլիստ հանդիսավար Յարութ Տէր Դաւիթեանին: Ան՝ իր բացման խօսքին մէջ դրուատեց յոբելեարի բարեմասնութիւնները որպէս բազմապիսի արժանիքներով օժտուած անձնուրաց ու նուիրեալ գործիչ:

Օրուան առաջին բանախօսն էր Տիար Յովհաննէս Հաննէսեան որ իրայատուկ մօտեցումով մը դրուատեց Տիգրան Սարաֆեանի նուիրուածութիւնն ու վարչական ու կազմակերպչական կարողութիւնները Հալէպէն մինչեւ Պէյրութ, սկաուտութենէն մինչեւ մարզական կեանք եւ ապա՝ տասնեակ տարիներու ատենապետի դժուարին պաշտօնը վարելը: Արդարեւ հեշտ չէ խիրաքանչիւր մարզիկի առանձին հոգերն ստանձնելը եւ ապա զանոնք առաջնորդելը դէպի Լիբանանի ախոյեանական խաղերը: Այս բոլորէն վեր՝ ան եղաւ առաջին կամուրջը Հայրենիք-Սփիւռք կապին:

Ընկ. Գաբրիէլ Մոլոյեան իր ելոյթին մէջ բարձր գնահատեց Ընկ. Տիգրան Սարաֆեանի ազգային-կուսակցական եւ հասարակական գործունէութիւնը: Մեծարեալը՝ տարիներ շարունակ եղած է նաեւ Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Լիբանանի Վարիչ Մարմնի եւ որոշ շրջան մըն ալ Կեդրոնական Վարչութեան անդամ: Ընկ. Գ. Մոլոյեան առանձնապէս շեշտեց Լիբանանի քաղաքացիական պատերազմի դժուարին տարիներուն դրական չէզոքութիւն յայտարարած հայ գաղութին անկայուն վիճակին եւ Տիգրան Սարաֆեանի մատուցած անգնահատելի ծառայութեանց մասին: Արդարեւ, այդ ծանր օրերուն որպէս «Համակարգիչ Մարմին»ի ատենապետ՝ ցոյց տուաւ նաեւ այլ արժանիքներ, որպէս խոհուն, յանդուգն եւ հաւասարակշռուած գործիչ:

ՀՄՄ-ի Վեթերաններու Մարմնի անունով խօսք առնելով սպորտի վաստակաւոր գործիչ Յովսէփ Ասատրեան ընդգծեց՝ «Ընկեր Տիգրան Սարաֆեան աւելի քան քառասուն տարիներ առաջ Հայաստանի եւ Սփիւռքի միջեւ մարզական կամուրջներ նետելու քայլն առաւ, երիտասարդական շրջանակները խանդավառելով ու մղելով այդ ուղղութեամբ թէ հայրենիքի եւ թէ սփիւռքի մէջ»: Ապա՝ պատուոյ յուշատախտակ մը յանձնեց Ընկ. Տիգրան Սարաֆեանին:

Սահակեան Վարժարանի Օժանդակ Մարմնի անունով Յակոբ Չիլինկիրեան շնորհաւորեց յոբելեարը եւ ոսկեայ մետալ մը նուիրեց իրեն:

Ողջոյնի ջերմ խօսքերով հանդէս եկաւ նաեւ Հալէպի Կիլիկեան Վարժարանի նախկին սաներուն անունով Կարպիս Պալըգճեան եւ իր հերթին յուշանուէր մը տուաւ մեծարեալին:

Հալէպի ՀՄՄ-ի մասնաճիւղերուն անունով ողջոյնի դրուատալից ելոյթով հանդէս եկաւ Ընկերուհի Էօժէնի Պարսումեան-Պետրոսեան:

Ընկ. Տիգրան Սարաֆեանի մարզական եւ հասարակական գործունէութեան 50-ամեակը ջերմօրէն շնորհաւորելով ՀՄՄ-ի ոսկէ մետալը յոբելեարին փոխանցեց Մարզական Դիւանի պատասխանատու Ընկ. Վարդան Քէօրօղլեան:

Ընտանիքին անունով անկեղծ, յուզախառն եւ անպաճոյճ ելոյթ մը ունեցաւ յոբելեարի որդին՝ Տոքթ. Համբիկ Սարաֆեան եւ իր երախտագիտական զգացումները յայտնեց հանդէպ իր սիրելի հօր եւ մօր, որոնք ճիգ եւ ջանք չեն խնայած տոհմիկ դաստիարակութիւն մը ջամբելով իրեն եւ իր երկու քոյրերուն:

Լոս Անճելըսի Հայաստանի Հանրապետութեան գլխաւոր Հիւպատոս Տիար Արմէն Մելքոնեան իր բարեմաղթութիւնները յայտնելէ ետք Հայրենի պետութեան շնորհաւորութիւնները փոխանցեց մեծարեալ ընկերոջ, նշելով միաժամանակ որ Ընկ. Տիգրան Սարաֆեան մաս կը կազմէ նաեւ յառաջիկայ շաբաթներուն Հայաստանի մէջ կայանալիք Համահայկական Խաղերու Գործադիր Վարչութեան: Ապա՝ Հիւպատոսութեան գնահատանքի գիրը յանձնեց օրուան յոբելեարին, որուն մէջ՝ բարձր կը գնահատուին Ընկ. Տ. Սարաֆեանի ծառայութիւնները Հնչակեան Կուսակցութեան եւ ՀՄՄ-ին:

Արեւմտեան Թեմի Բարեջան Առաջնորդ Գերշ. Տ. Վաչէ Արք. Յովսէփեան խօսք առնելով յետադարձ հայեացք մը նետեց դէպի Միջին Արեւելքի հայահոծ գաղութները, առանձնապէս Պէյրութ-Հալէպ, ուր տասնամեակներ շարունակ նոր սերունդներուն մարզական ու հայրենասիրական խիստ շնորհակալ աշխատանք կատարած են Տիգրան Սարաֆեանի նման նուիրեալ ու հաւատաւոր անձեր: Ան եւս շնորհաւորեց յոբելեարը քաջառողջութիւն եւ շարունակական կորով մաղթելով վաստակաշատ ընկերոջ:

Հանդիսութեան ընթացքին գործադրուեցաւ գեղարուեստական պատշաճ յայտագիր մը, որուն իրենց մասնակցութիւնը բերին ծանօթ արուեստագէտներ՝ երգչուհի Անահիտ Ներսիսեան, դաշնակահար Լեւոն Աբրահամեան, ասմունքող Գրիգոր Օզարեան, ջութակահար Սահակ Կարապետեան, ժողովրդային երգիչ Լեւոն Գաբրճեան եւ Վաչիկ Սարգսեան (դաշնակ):

Այս առթիւ կարդացուեցան Ընկ. Տիգրան Սարաֆեանին ուղղուած բազմաթիւ շնորհաւորական հեռագրեր եւ գրութիւններ Մայր Աթոռ Ս. Էջմիածնէն, ինչպէս նաեւ Հայաստանի եւ արտասահմանի ↳ 4

# ԸՆՏՐԱՆԻ ԽՕՍՔԵՐ ՎԵՀԱՓԱՌ ՀԱՅՐԱՊԵՏԻ ՊԱՏԳԱՄՆԵՐԷՆ

*Նայինք պատմութեան, իմաստութեան այդ յաւերժացոյց հայելիին: Դարերու ընթացքին շատ բան կորսնցուցինք մեր կեանքի մէջ, բայց անկորուստ եւ աննուաղ պահեցինք քրիստոնէական աղբիւրին բխումը:*

* * *

*Չենք կրնար Լոյս-Աստծուն հետ հաղորդ ըլլալ առանց այդ հաղորդութիւնը արտայայտելու մեր նմաններուն հետ, խաղաղութեան, հանութեան, եղբայրութեան, միութեան, գործակցութեան քրիստոսաբեր ու աւետաբեր սկզբունքներուն կիրարկութեամբը, իրագումովը, գործնականացումովը մեր հաւաքական կեանքի անդաստանին մէջ:*

* * *

*Հաւատք, այն ներքին զգացողութիւնն է մեր մէջ, որ վստահութեան, ապահովութեան զգացումը, գաղափարը եւ հոգեկան մթնոլորտը կը կազմաւորէ եւ որ մեզի ոյժ կը ներշնչէ: Չկայ անհաւատ մարդ: Անհաւատը կը հաւատայ իր անհաւատութեան այլ խօսքով, անհաւատութիւնն է իր աստուածը: Առանց հաւատալու մարդ չի կրնար շնչել: Հետեւաբար, եկէ՛ք մենք շնչենք մաքրամաքուր քրիստոնէական հաւատքը, ինչպէս շնչեցին ու այդ շունչով զօրացան մեր հայրերը:*

* * *

*Հայ ժողովուրդը իր կեանքի բոլոր տեւակի վերիվայրումներու յուսալքիչ վայրկեաններուն, տառապանքի եւ աւերածութեան ամենէն դժխեմ պայմաններուն տակ միշտ կենդանի պահեց իր հաւատքը յարութեան վրայ, յարութեան գիտակցութեամբ, յոյսով եւ հաւատքով կշռոյթ եւ սնունդ տուաւ իր կեանքին:*

* * *

*1700-ամեակի տօնակատարութիւնը ամբողջ հայութեան համար ի մայր Հայաստան եւ ի սփիւռս աշխարհի պէտք է դառնայ տեւակ մը նո՛ր մկրտութիւն, քրիստոնէական հաւատքին գիտակցական խորազդեցիկ անդրադարձումը մեր կեանքին, ներթափանցումը մեր հոգեկան աշխարհին, կեանքը ապրելու մեր եղանակներուն մէջ:*

* * *

*Փուշի դարչողը միս ու ոսկորն է, իսկ մարդը միս ու ոսկոր ունեցող, բայց միս ու ոսկոր չեղող այն էակն է, որ ունի հոգեկան ապրումներ, գաղափարներ, ունի իտեալներ եւ մնայուն կեանքի մէջ ստեղծագործութեան եւ յառաջադիմութեան անյագ տենչ եւ անսանձ թռիչք: Եւ մեռելներն են, որ մեզի կը յիշեցնեն, թէ իրենք կ՚անցնին, իրենց անցնելիք միս ու ոսկորով, բայց կ՚ապրի՛ն, որովհետեւ իրենց հաւատքը, գաղափարը, ստեղծագործութիւնը վեր կը մնան հողայնութեան օրէնքներէն:*

* * *

*Աղօթքը մարդու հոգեկան շնչառութիւնն է: Ինչպէս մեր ֆիզիքական մարմինը շնչառութեան պէտք ունի ապրելու համար, այնպէս ալ մեր հոգին աղօթքի պէտք ունի առողջ մնալու եւ յաւերժօրէն ապրելու համար:*

* * *

*Աղօթքը բառ եւ խօսք չէ, մարդ կարող է շատ բան խօսել, բայց չաղօթել, կարող է եւ ոչ մէկ բառ արտասանել, սակայն աղօթել զգացումով...:*

*Աղօթքը Աստուծոյ մեզի տուածին արժեւորումն է, մեր կեանքով եւ գործով:*

* * *

*Մենք հարուստ պատմութիւն ենք ունեցել, բայց մեր ազգը չպիտի սահմանափակուի պատմութեամբ: Մենք միայն թանգարաններ ունեցող ազգ չենք, այլ՝ առաջ, դէպի ապագան ընթացող ազգ: Եւ որքա՜ն խորիմաստ ու ճշմարիտ են մեծ պատմաբանի եւ փիլիսոփայի հետեւեալ խօսքերը, «Քաղաքակրթութիւնը ճամբորդութիւն է եւ ոչ թէ նաւահանգիստ»: Մեր պատմութիւնը նաւահանգիստ չէ, այլ՝ շարժում, առաջ դէպի ապագան:*

# ՎԱՄՆ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ, ՊԵՏՈՒԹԵԱՆ ԵՒ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ



*Երանաշնորհ Գարեգին Ա. ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանի հետ*



*ՀՀ նախորդ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի հետ*



*Վատիկանի Յովհաննէս-Պօղոս Բ. Պապի հետ*



*Հայրապետը իր մօր հետ*

**ԳԱՀԻՐԷ**

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Սոսկ քառասուն օրեր առաջ անվերադարձ բաժնուեցաւ այս աշխարհէն յուսամիտ Հոգեւորական, պայծառամիտ ղեկավար, Հմուտ Աստուածաբան, Ամենայն Հայոց Երանաշնորհ Հայրապետ Գարեգին Ա. Կաթողիկոս:*

*Կիրակի 8 Օգոստոս 1999-ի առաւօտեան, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ, Երջանկայիշատակ Հայրապետին վախճանման քառասնօրեակի լրման առիթով, Հոգեհանգստեան յատուկ պաշտօն կատարուեցաւ, ի ներկայութեան Հաւատացեալ Հասարակութեան մը:*

*Հանդիսաւոր Ս. Պատարագ մատուցանեց Գահիրէի Հոգեւոր Հովիւ Հոգշ. Տ. Գայուստ Վրդ. Դարբինեան. ան յուզիչ քարոզ մը խօսեցաւ, դրուատելով վախճանեալ Հայրապետին բարեմասնութիւնները:*

*Յետ Հոգեհանգստեան արարողութեան, սգաւոր հաւատացեալներէն շատեր հաւաքուեցան Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ, գլխաւորութեամբ Թեմական Ժողովի ատենապետ Տիար Անդրանիկ Մեսրոպեանի եւ զանազան միութեանց ներկայացուցիչներու, ուր հաւատացեալներուն սուրճ մատուցուեցաւ, ի յիշատակ Հայց. Եկեղեցւոյ Մեծ Վեհափառի հոգւոյն:*

*Խօսք առնելու հրաւիրուեցաւ Թեմական Ժողովի ատենադպիր Տոքթ. Սուրէն Պայրամեան: Ան ընդգծեց հանգուցեալ Կաթողիկոսի բազմավաստակ գործունէութիւնը, շեշտը դնելով Անոր Աստուածաշնորհ կարողութիւններուն:*

*Հուսկ ուրեմն ներկաները ցաւակցութիւն յայտնեցին Հոգշ. Հայր Սուրբին եւ Տիար Անդրանիկ Մեսրոպեանի ու մեկնեցան, իրենց վերջին տուրքը մատուցանելու գոհունակութեամբ:*

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՄՆԱՐԻ ՄՕՏ ՀԱՅՐԱՊԵՏԻ

Ներքին աշխարհս է ալեկոծ,
Փոթորիկն է, որ քայլ առ քայլ
Հավաքւում է մեր գլխի շուրջ,
Եւ ուր որ է, պիտի պայթի...

Օրըստօրէ ահագնանում,
Ալիք-ալիք է կուտակւում,
Մի օր յանկարծ պիտի պայթի
Աւեր լուրը աշխարհացունց:

Մենք միաբան աղօթասաց,
Բժշկութեան Աւետարան
Ու Նարեկ ենք կարդում անձայն,
Որ փոթորիկը խաղաղուի:

Խռովեալ հոգով, շփոթ մտօք,
Հիւծեալ մարմնով աղօթում ենք՝
Տէ՛ր, ընդունիր մեր խօսքն անկեղծ,
Ինչ որ հաճոյ է Քեզ համար:

**ՆԵՐՍԷՍ ՎԱՆԱԿԱՆ**

26.06. 1999 թ.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax: (202) 4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1411 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 16 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1999 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. عدد رقم ١٤١١ — الخميس ١٦ سبتمبر ١٩٩٩


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ**

## ԻՆՉ՞ՈՒ ՊԷՏՔ Է ՎԵՐԸՆՏՐՈՒԻ ՆԱԽԱԳԱՀ ՄՈՀԱՄՄԷՏ ՀՈՍՆԻ ՄՈՒՊԱՐԱՔ

*Հանուր Եգիպտոսի ժողովուրդը յառաջիկայ 26 Սեպտեմբերին, պիտի ներկայանայ քուէատուփ վերընտրելու համար կորովի նախագահ՝ յանձին Մոհամմէտ Հոսնի Մուպարաքի, յառաջիկայ վեց տարիներուն համար:*

*Մեծ բաւարարութեամբ կ'ակընկալենք որ ընտրութիւնները պիտի կայանան դեմոկրատական եւ ժողովրդավարական մթնոլորտի մէջ, ապա ժողովուրդին մեծամասնութեան ձայներու ապահովումով, բոլորիս սիրելի նախագահը չորրորդ շրջանի մը համար պիտի վերահռչակուի Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան արժանաւոր նախագահը:*



*Թէ ինչո՞ւ պէտք է վերընտրուի ան:*

*Որովհետեւ Մուպարաքի օրով Եգիպտոս ունեցաւ անհատական յատկանիշ քաղաքականութիւն մը արաբ աշխարհի առջեւ: Եւ կը շարունակէ բարգաւաճման վերընթաց ուղին հանգամանօրէն:*

*Շնորհիւ արի ղեկավարին լրջախոհ քաղաքականութեան, Եգիպտոսի ճանաչումն ու կշիռը ծաւալած է միջազգային ատեաններու մօտ:*

*Ո՞վ կ'ենթադրէր որ Ապրիլ 1975-ին, երբ Հոսնի Մուպարաք Եգիպտոսի փոխ-նախագահ կը նշանակուէր, ապա ան պիտի ցուցաբերէ այսքա՛ն իմաստուն եւ ներհուն դիւանագիտական հմտութիւն: Շնորհիւ քաղաքական եւ դիւանագիտական իր տարած աշխուժութեան, ան շահած է աշխարհի բոլոր ժողովուրդներու եւ ղեկավարներու յարգանքն ու պատիւը: Ան յաջողած է յատկապէս արաբական աշխարհի եւ Ափրիկէի մէջ խոհուն ղեկավարի դեր կատարել: Մշտական այցելութիւններ տալով, հանդիպումներ ունենալով, բանակցելով անոնց ղեկավարներուն հետ, կը ջանայ թիւրիմացութիւններ հարթել եւ հարցեր լուծել: Այս գծով, անմիջապէս յիշենք Իրաքի տագնապը, Լիպիոյ խնդրոյնդիրը, Սուրիոյ եւ Թուրքիոյ միջեւ միջադէպեր կանխելը եւ այլ կենսական ու բարդ հարցեր:*

*Գալով Միջին Արեւելքի մէջ խաղաղութեան հաստատման հարցին, Մուպարաքի տարած միջնորդական հսկայական համբերատար ջանքերը, կ'արժանանան միջազգային մամուլի լայն արձագանգին: Անոր հովանաւորութեամբ եւ դերակատարութեամբ, ակնէ քանի օրեր առաջ, կարելի եղաւ Շարմ Էլ Շէյխի մէջ Պաղեստին-իսրայէլեան հակամարտութեան կապակցութեամբ համաձայնագիր մը ստորագրել տալ երկու երկիրներուն միջեւ, որուն պիտի յաջորդէ գրաւեալ հողերու ազատագրում եւ օրինական իրաւունքներու վերականգնում: Նախագահը խոստացած է շարունակել աշխատիլ ամրապնդելու բոլոր կողմերու մասնակցութեամբ, մշտական եւ արդար խաղաղութեան իրագործումը շրջանին մէջ:*

*Անցնող 18 տարիներու ընթացքին գոհունակութեամբ եւ դրուատանքով պէտք է նշենք Եգիպտոսի ունեցած վերելքը կանայան բնագաւառներէ ներս, որոնք սատարեցին եգիպտացի ժողովուրդին ընկերային եւ տնտեսական բարելաւման: Վստահաբար Սինայի վերջնական ազատագրութենէն, ետք, որոշապէս աշխուժացաւ առեւտուրն ու արդիւնաբերութեան ծաւալման աճը: Բացուեցան մեծ թիւով գործարաններ, վարկ տալով նոր քաղաքներու կառուցման: Հիմնապէս կարգացաւ երկրին «թեքնոլոժին»: Այս առընչութեամբ կզալիօրէն յառաջդիմութիւն արձանագրեց փոխադրութեանց եւ տեղեկատուութեանց մարզերը: Շինարար նախագահին տարած անհամար իրագործումներուն վրայ փաստօրէն պէտք է աւելցնենք հսկօր գործը որ կը կատարուի Թոշքիի մէջ: Չնայած գրաւական գործընթացները՝ մշակութային, ընկերային, կրթական, գիտական, ճարտարարուեստական, երկրագործական առողջապական, կբօսաշրջիկային եւ այլ ասպարէզներու մէջ, որոնք կը դրուին աւելի ամուր հիմքերու վրայ:*

*Արդարեւ եգիպտացի գիտակից ժողովուրդը եւ մենք՝ հայ քաղաքացիներս, նոր դարաշրջանի մուտքին՝ կը հաստատենք որ եօթանասունամեայ հմուտ նախագահի խոհեմ ղեկավարութիւնը յառաջիկայ տարիներուն, պիտի պահպանէ երկրի կայունութիւնը եւ ներքին ապահովութեան ամրացումը: Պիտի շարունակուի երթը շինարարութեան գործընթացի, լուսաւորուած առաջացեալ գիտութեամբ, ի խնդիր տնտեսական ինքնաբաւութեան: Նոր թափ պիտի ստանայ Մ. Արեւելքի սրբազան պայքարը, դրսեւորելով արդար խաղաղութիւն:*

*Ուրեմն բոլորս, անմիջականօրէն մեր «այ'ո»ն ներկայացնենք այդ ճակատագրական օրը, վասն համաշխարհային խաղաղութեան:*

*Յարգելի Նախագահ Հոսնի Մուպարաք,*

*Ի բոլոր սրտէ կը մաղթենք, որ Աստուած Ձեզի պարգեւէ քաջառողջ կեանք, որպէսզի կարենաք վերանորոգ յանձնառութեամբ շարունակել Ձեր այնքան դժուարին եւ նուիրական առաքելութիւնը՝ ի խնդիր Եգիպտոսի Հանրապետութեան բարգաւաճման եւ վերածաղկման:*

## ՔՈՉԱՐԵԱՆ-ԱԼԻԵՒ ՀԱՆԴԻՊՈՒՄ՝ ԵԱԼԹԱՅԻ ԳԱԳԱԹԱԺՈՂՈՎԻ ՕՐԵՐՈՒՆ

10 Սեպտեմբերին, Ուքրանիոյ Եալթա քաղաքին մէջ, այս տարուայ ընթացքին իրենց երրորդ տեսակցութիւնը ունեցան Հայաստանի եւ Ատրպէյճանի նախագահներ՝ Ռոպերթ Քոչարեան եւ Հայտար Ալիեւ, որոնք քննարկեցին զինադուլը ամրապնդելու միջոցներն ու Լեռնային Ղարաբաղի կարգավիճակը: Նոյն օրն իսկ, մամլոյ ասուլիս մը սարքելով Քոչարեան ըսաւ, թէ իր պաշտօնակցին հետ 40 վայրկեան տեւողութեամբ հանդիպում մը ունեցած է, սակայն մանրամասնութիւններ չհաղորդեց: Նախագահը աւելցուց, որ Ալիեւի հետ յաջորդ հանդիպումը պիտի կայանայ յառաջիկայ ամիս, ԱՊՀի գերատեսչութեան ընթացքին:

Ուքրանիոյ նախագահ Լէոնիտ Գուչմա, որ հանդիպումին ներկայ գտնուած էր, իր կարգին յայտնեց, թէ խօսակցութիւնը «շատ բարեկամական եւ ընկերային մթնոլորտի մէջ կայացաւ՝ բնականոն տրամադրութեամբ»:

Երեւան վերադարձին, «Զուարթնոց» օդակայանին մէջ Նախագահ Քոչարեան բաւարարուեցաւ ըսելով, թէ ինք կը գնահատէ Ալիեւի հետ իր հանդիպումը, բայց դարձեալ չուզեց մանրամասնութիւններ նշել: Շրջանային գործակցութեանց համար, ըսաւ ան, կարեւոր է հակամարտութիւններու արագ լուծումը: Նախագահը դիտել տուաւ նաեւ որ թերեւս համաձայնութիւններ ձեռք պիտի ձգուին կարգ մը հարցերու շուրջ:

**ՊԱՇՏՕՆԱԿԱՆՔ**

**ՀԵՌԱԳԻՐ ԵՐԿՐԻՍ ԻՄԱՍՏՈՒՆ ՆԱԽԱԳԱՀԻՆ**

Մեծայարգ
Տիար Մոհամմէտ Հոսնի Մուպարաք
Նախագահ Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան
Նախագահական Պալատ

Գահիրէ

*Եգիպտոսի Արաբական հանրապետութեան մէջ, Հայ ծագումով բոլոր Եգիպտացիներս եւ Հայ Օրթոտոքս եկեղեցւոյ մեր Մակլիս Միլլիներու բոլոր անդամները եւ անձնապէս, ջերմօրէն կը շնորհաւորենք Ձեզ, Ի Բոր Սայիտ Ձեր դէմ վատ յարձակման ընթացքին անվնաս ըլլալու առիթով: Թող Ամենակալ Աստուած Ձեզ պահէ անփորձ եւ պահպանէ ամէն տեսակի փորձանքներէ իբրեւ Առաջնորդն ու ղեկավարը սիրելի հայրենիքին, որուն յառաջդիմութեան եւ ժողովուրդի բարօրութեան համար անխոնջ կերպով կ'աշխատիք:*

**ԴԻՒԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**



## ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ Ա. ԽԱՂԵՐՈՒ ՄԱՐԶԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆԸ ՀԱՍԱՒ ԻՐ ԱՒԱՐՏԻՆ




Ոչ միայն եգիպտահայութիւնը՝ այլ համայն աշխարհացրիւ հայութեան համար խիստ ոգեւորիչ եւ բացառիկ երեւոյթ մը պէտք է նկատուի այս Համահայկական Առաջին Խաղերը, որ իր կանոնաւորութեամբ, մեզի կը յիշեցնէր Միջազգային Ողիմպիականներու կարգապահութիւնը, փառաւորութիւնն ու շքեղութիւնը:

Իրաւա՛մբ, մեր հայրենիքի հողին վրայ՝ մարզական ու գեղարուեստական ապրումներու յաղթանակ մըն էր, որ կը ցոլացնէր հայ ժողովուրդին մարզական, երիտասարդական ու ազգասիրական արժանիքները:

Սեպտեմբերի 5-ին Երեւանի մարզահամերգային համալիրէն ներս տեղի ունեցաւ Համահայկական առաջին խաղերու փակումը: Լեփ-լեցուն եւ գեղեցիկ զարդարուած դահլիճէն ներս խաղերու կազմակերպիչները, մարզիկները եւ հիւրերը մասնակցեցան փակման հանդիսաւոր արարողութեան:



*Համահայկական առաջին խաղերու փակման արարողութիւնը*

Հայաստանի Հանրապետութեան կառավարութեան եւ Խաղերու կազմակերպիչ կոմիտէի անունով ելոյթ ունեցաւ, ՀՀ տարածքային կառավարման նախարար Խոսրով Յարութիւնեան: Կարեւորելով Համահայկական խաղերու նշանակութիւնը, անոնց շնորհիւ ստեղծուած սերտ կապերը Հայաստանի եւ Սփիւռքի միջեւ, Յարութիւնեան յայտնեց, որ պատշաճ

3

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ ԵՐԵՒԱՆ ԿԸ ՄԵԿՆԻ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

*Կը տեղեկացնենք թէ Հայաստան-Սփիւռք Համագումարին, որ տեղի պիտի ունենայ ամսոյս 22-23-ին Երեւանի մէջ, «Ճահակիր»ի շրջանակէն իր մասնակցութիւնը կը բերէ ընկեր Վրէժ Սէֆէրեան: Նոյնպէս Հայաստան կը մեկնին մասնակցելու համար սոյն Համագումարին եգիպտահայութեան կողմէ՝ ՊՊ. Վարդ Ալեքսանեան, Լեւոն Գաղթացեան, Նորայր Տէօվլէթեան, Վարուժան Գազանճեան, Պերճ Թէրզեան եւ Տոքթ. Սուրէն Պայրամեան:*

*Որպէս մամուլի ներկայացուցիչներ՝ «Յուսաբեր» օրաթերթի խմբագիր Պր. Զաւէն Լիպարեան եւ «Արեւ» օրաթերթէն՝ Պր. Շահէն Մաղլումեան:*

*Բարի ճանապարհ եւ յաջողութիւն կը մաղթենք բոլորին:*

## ՀԱՅԱՍՏԱՆ - ՍՓԻՒՌՔ ԺՈՂՈՎԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԱՒԱՐՏԱԾ ԵՆ

Հայաստան-Սփիւռք համահայկական խորհրդաժողովի նախապատրաստման աշխատանքների ընթացքն ամփոփուեց նախագահ Ռոպերթ Քոչարեանի մօտ տեղի ունեցած աշխատանքային խորհրդակցութեան ժամանակ, որին հրաւիրուած էին նաեւ Անվտանգութեան խորհրդի անդամները:

Ինչպէս ԱՐՄԷՆՓՐԵՍԻՆ յայտնեցին ՀՀ նախագահի մամլոյ գրասենեակից, խորհրդաժողովը նախապատրաստող կառավարական յանձնաժողովի նախագահ, արտաքին գործերի նախարար

4

**ԳԱՀԻՐԷ**

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

*Չորեքշաբթի 1 Սեպտ.ի իրիկուան, հաճոյքն ունեցանք ընդունելու նախկին եգիպտահայ, այժմ Լոս Անճելըսաբնակ, յայտնի լրագրող՝ Պր. Ուիլիէմ (Նուպար) Ղազարեանի այցելութիւնը: Ան սեփականատէրն ու խմբագիրն է «Փանորամա Արապէյա» ամսաթերթին, զոր լոյս կը տեսնէ Միաց. Նահանգներու մէջ արաբերէն լեզուով: Ան նաեւ հիմնադիրն է «Միջին Արեւելքի արաբական թերթերու եւ պարբերաթերթերու կեդրոնատեղի»-ին, ուրկէ կը ցրուուի արաբական մամուլը Ամերիկայի Արեւմտեան շրջանին մէջ 1980 տարուէն ի վեր:*

*Պր. Ղազարեան 1985 թուին հիմնողներէն մին եղած է արաբ-ամերիկեան լրագրողներու «սենտիքա»-ին եւ անոր ատենապետն է այժմ անցեալ Ապրիլ ամսէն*

2



# ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՂԵՐՈՒ ՄԱՐԶԱԿԱՆ ՓԱՌԱՏՕՆԸ ՀԱՍԱՒ ԻՐ ԱՒԱՐՏԻՆ




1 Էջ մակարդակով անցած այս մրցումները լաւ հիմք դրին հետագայ խաղերու անցկացման համար:

Այնուհետեւ ելոյթ ունեցաւ ՀՀ մշակոյթի, երիտասարդութեան հարցերու եւ սպորտի փոխնախարար Իշխան Զաքարեան: Ան հրապարակեց մարզական արդիւնքները, որմէ ետք պարգեւատրման համար բեմ հրաւիրուեցան մրցանակակիր խումբերու ներկայացուցիչները:

Ընդգծելով խաղերու ողիմպիական ուղղուածութիւնը, յանձնուեցան նաեւ «Արդար խաղ» յատուկ մրցանակներ, ապա կայացաւ «Խաղերու գեղեցկուհի»ն՝ հալէպահայ Ալին Մարկոսեան: Պարգեւները մարզիկներուն յանձնեցին Խ. Յարութիւնեան, Խաղերու համաշխարհային կոմիտէի նախագահ Աշոտ Մելիք-Շահնազարեան եւ այլ պաշտօնատար անձինք:



*«Խաղերու գեղեցկուհի»ն՝ Ալին Մարկոսեան:*

Սփիւռքի անունով հանդէս եկան Համահայկական խաղերու համաշխարհային կոմիտէի գործադիր կոմիտէի անդամ, Հայ Բարեգործական Ընդհանուր Միութեան պատասխանատուներէն Ալպէռ Պոյաճեան (Լոս Անճելըս), Պոլսոյ պատուիրակութեան անդամ Վարուժան Արսլանեան, մարզիկներ եւ մարզիկուհիներ, որոնք շնորհակալութեան ջերմ խօսքեր ուղղեցին Խաղերու կազմակերպիչներուն, ընդգծելով այս մրցումներու ինչպէս զուտ մարզական, այնպէս ալ ազգային, հոգեբանական մեծ կարեւորութիւն եւ իրենց հպարտութիւնը խաղերու մասնակցելու առթիւ:

Ելոյթներէն ետք սկսաւ փակման արարողութեան գեղարուեստական մասը, որու ընթացքին ելոյթ ունեցան աշխահարհռչակ թենոր Գեղամ Գրիգորեան, երգչուհի Սիլվա Մարգարեան իր դուստր՝ Սիրանոյշի հետ, Երեւանի, Վանաձորի, Գիւմրիի երգի, պարի անսամբլները, ազգային կրկէսի արուեստագէտներ եւ էստրադային երգիչներ:

Տօնակատարութեան վերջին մասը տեղի ունեցաւ մարզահամերգային համալիրի դահլիճէն դուրս, երբ հրավառութեան բազմագոյն լոյսերը զարդարեցին Երեւանի գիշերային երկինքը:



*Գառնիի Մեհեանին առջեւ Ողիմպիական Ջահի բոցավառութիւնը:*

Յիշենք թէ Օգոստոս 28-ին Երեւանի «Հրազդան» մարզադաշտէն ներս տօնական մթնոլորտի եւ բազմահազար հանդիսականներու ներկայութեամբ տեղի ունեցաւ Համահայկական առաջին խաղերու հանդիսաւոր բացումը: Մարզադաշտին վրայ կայացաւ այս եզակի մրցումներու մասնակից 26 երկիրներու 58 քաղաքներու խումբերուն շքերթը, որոնց ջերմօրէն ողջունեցին եւ շնորհաւորեցին հանդիսատեսները, որմէ ետք բեմահարթակ հրաւիրուեցան Համահայկական խաղերու կազմկոմիտէի նախագահ եւ ՀՀ տարածքային կառավարման նախարար Խոսրով Յարութիւնեան, Երեւանի քաղաքապետ Ալբերտ Բազէեան եւ Խաղերու համաշխարհային կոմիտէի նախագահ Աշոտ Մելիք-Շահնազարեան:

Այնուհետեւ «Հրազդանի» հիւսիսային մուտքէն մարզադաշտ բերուեցաւ Գառնիի տաճարէն ներս վառուած ջահը եւ Խաղերու կրակը վառելու պատիւը տրուեցաւ կրկնակի օլիմպիական ախոյեան, աշխարհի եւ Եւրոպայի բազմակի չեմպիոն, մարմնամարզիկ, «Օղակներու Արքայ» Ալպերտ Ազարեանին: Բարձրանալով արեւելեան տրիբունայի վերնամասը, Ա. Ազարեան վառեց Համահայկականի կրակը: Այնուհետեւ ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեան Համահայկական առաջին խաղերը յայտարարեց բացուած:

ՀՀ նախագահի ելոյթէն յետոյ տեղի ունեցաւ արարողութեան գեղարուեստական մասը, ուր հանդէս եկան Հայաստանի երգի-պարի լաւագոյն խումբերը:

Համահայկական առաջին խաղերու առթիւ Միջազգային օլիմպիական կոմիտէի նախագահ Խուան Անթոնիօ Սամարանչ շնորհաւորական նամակ յղած է նախագահ Ռոպերթ Քոչարեանին: «Համոզուած եմ, որ Համահայկական խաղերը, միաւորելով հայկական ծագում ունեցող մարզիկները Հայաստանէն եւ Սփիւռքէն կը նպաստեն համերաշխութեան՝ ձեր երկրէն ներս եւ կը զարգացնեն սպորտի ոգին» մասնաւորապէս ըսուած է Սամարանչի նամակին մէջ:

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՄԱՐԶԻԿՆԵՐՈՒ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ Ա. ԽԱՂԵՐՈՒՆ



*Պասքէթպոլի կազմը. ձախէն աջ կանգնած՝ մարզիչ Մ. Ըլէյշ, Վարժապետեան Կարօ, Լէյլէկեան Արմէն, Սիմոնեան Քրիս, Միքաէլեան Հրաչ, Թուռնեան Կարօ, Լէյլէկեան Զաւէն, Կորպեան Յակոբ, խումբին պատասխանատու՝ Հրաչ Միքայէլեան, նստած՝ Շափի Աթթարա, Միքայէլեան Ժորժ, Շահպազեան Դ-րօ, Միսրիկեան Նորայր, եւ Ասատուրեան Կարօ:*




*Փինկ փոնկի կազմը. ձախէն աջ՝ Պասմաճեան Յակոբ, Չամքէրթէնեան Սիմոն, Սիմոնեան Ռուբէն, խումբին պատասխանատու՝ Մարտիկ Պալեան եւ Աւանեան Գէորգ:*



*Եգիպտահայ պատուիրակութեան այցը Ծիծեռնակաբերդ, գլխաւորութեամբ ընդհանուր պատասխանատու՝ Լեւոն Տէր Յակոբեանի:*

***Ինչպէս նախորդ թիւով անդրադարձած էինք, եգիպտահայ համայնքի (Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ) մարզական եւ կարգ մը մշակութային միութիւններ իրենց մարզիկներով մասնակցութիւնը բերին պասքէթպոլի եւ փինկ փոնկի մարզաձեւերով:***

***Հաւաքականները կազմուելէն ետք, անոնք անմիջապէս անցան կանոնաւոր փորձերու: Ապա մեկնեցան Երեւան եւ խաղերու մրցաշարքներու ժամանակ ցուցաբերեցին մարզական մաքուր ոգի եւ լաւ խաղարկութիւն: Իսկապէս բոլոր մրցումներուն անոնք ճիգ չէին խնայեր իրենց լաւագոյնը ներկայացնելու:***

***Խաղերուն արդիւնքները պիտի տանք յառաջիկային:***

**Մ. Պ.**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
ԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԻ՝
8-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ
Բարձր Հովանաւորութեամբ
ՀՀ ԱՐՏԱԿԱՐԳ ԵՒ ԼԻԱԶՕՐ ԴԵՍՊԱՆ
**Ն.Գ. ՍԵՐԿԷՅ ՄԱՆԱՍԱՐԵԱՆԻ**
**ԵՒ ԱԶՆՈՒԱՓԱՅԼ ՏԻԿՆՈՋ**
Հովանաւորութեամբ
**ԵԳԻՊՏԱՀԱՅ ՀՈԳԵՒՈՐ ՊԵՏԵՐՈՒՆ**
Նախաձեռնութեամբ
**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ**
Մասնակցութեամբ
**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲՈԼՈՐ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ**
Շաբաթ, 18 Սեպտեմբեր 1999, երեկոյեան ժամը 9.00-ին
ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ «ՊԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ
Հանդիսութեան ընթացքին
**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ**
Յատուկ հրաւէրով ելոյթ կ'ունենայ
Հայաստանի Ազգային Օփերայի Մեներգչուհի
Միջազգային մրցոյթներու դափնեկիր
**ԱՆԱՀԻՏ ՄԽԻԹԱՐԵԱՆ**
Դաշնամուրի նուագակցութեամբ՝
**ՎԱՍԻԼԻ ՌՈԼԻՉԻ**
ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Կիրակի, 19 Սեպտեմբեր 1999, երեկոյեան ժամը 7.30-ին
ՊՕՂՈՍԵԱՆ ԱԶԳ. ՎՐԺ-Ի «ԿՈՄԻՏԱՍ ՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ
Հանդիսութեան ընթացքին
**ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ**
Յատուկ հրաւէրով ելոյթ կ'ունենայ
Հայաստանի Ազգային Օփերայի Մեներգչուհի
Միջազգային մրցոյթներու դափնեկիր
**ԱՆԱՀԻՏ ՄԽԻԹԱՐԵԱՆ**
Դաշնամուրի նուագակցութեամբ՝
**ՎԱՍԻԼԻ ՌՈԼԻՉԻ**
ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

## ՏԻԳՐԱՆ ՉՈՒՀԱՃԵԱՆԻ «ՍՈՒՐԲ, ՍՈՒՐԲ»-Ը ԵՒ «ՀԱՅՐ ՄԵՐ»-Ը ՀՐԱՏԱՐԱԿՈՒԱԾ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Անցեալ ամիս Գահիրէի մէջ լոյս տեսաւ արժէքաւոր երաժշտական հատոր մը՝ որ կ'ընդգրկէ անմահ երաժիշտ Տիգրան Չուհաճեանի երկու ստեղծագործութիւն: Առաջին՝ «Սուրբ, սուրբ», մենակատար սոփրանոյի, թենորի, պարիթոնի եւ պասի համար, նուագակցութեամբ ֆլիւթի, դաշնակի, ջութակի եւ թաւ ջութակի, երկրորդը՝ «Հայր մեր», մենակատար սոփրանոյի, եւ ալթօյի ու եռաձայն երգչախումբի համար, նուագակցութեամբ ֆլիւթի, դաշնակի, Ա. եւ Բ. ջութակի, վիոլայի եւ թաւ ջութակի: Երկուքն ալ անտիպ են եւ կը հրատարկուին առաջին անգամ:

ՏԻԳՐԱՆ ՉՈՒՀԱՃԵԱՆ
ՍՈՒՐԲ, ՍՈՒՐԲ
եւ
ՀԱՅՐ ՄԵՐ
ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ
Գահիրէ
1999

Հատորին երաժշտական խմբագրութիւնը ստանձնած է ծանօթ երաժիշտ Հայկ Աւագեան, որ գրած է նաեւ ներածութիւնը եւ ծանօթագրութիւնները: Ներածութեան մէջ (9 էջ) խմբագիրը մանրամասն տեղեկութիւններ կը հաղորդէ երկու գործերուն մասին, տալով անոնց պատմականը եւ երաժշտական վերլուծութիւնը: Ծանօթագրութիւններու մէջ (5 էջ) կը նկարագրէ ձեռագիրներուն վայրն ու վիճակը, ուրկէ կ'իմանանք՝ թէ անոնք կը գտնուին Երեւանի Գրականութեան եւ Արուեստի թանգարանին մէջ: Իսկ գիրքին գլխաւոր մասը կը կազմէ բնագիրները (43 էջ):

Հատորը տպագրուած է Գահիրէի Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան «Սաթենիկ Ճ. Չագըր» հիմնադրամին մեկենասութեամբ: Տպագրութիւնն է Գահիրէի «Նուպար» տպարանին:

Յարգելի խմբագիրը այս աշխատութիւնը ձօնած է իր հօր՝ Եդուարդ Աւագեանին, որուն մահուան երկրորդ տարելիցը լրացաւ սոյն Սեպտեմբեր 5-ին: Այս առիթով նշենք, որ ընկեր Ե. Աւագեան եղած է բազմամեայ Հնչակեան կուսակցական գործիչ, Հայկական Ընթերցասրահի ատենապետ, Թեմական ժողովի անդամ եւ Գահիրէի Առաջնորդարանի երկարամեայ դիւանապետ: Ան նաեւ եգիպտական-պետական մակարդակով տիրացած էր բարձր պաշտօնի, հանդիսանալով Եգիպտոսի ամենամեծ գիրքերու կազմակերպութեան (General Book Organization) ընդհանուր տնօրէն: Թող հայկական պատարագի այս երկու հատուածները՝ «Սուրբ, սուրբ»-ը եւ «Հայր մեր»-ը, խնկաբոյր աղօթքներ հանդիսանան իր հոգիին:

Կը շնորհաւորենք երաժեշտ Հայկ Աւագեանը, մաղթելով նորանոր յաջողութիւններ, երաժշտական գծով իր տարած շահեկան աշխատասիրութիւններուն մէջ:

Ա. Մ.

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

**TCHAHAKIR**
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax: (202) 4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1412 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 7 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1999 | ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 50 Եգ. Ղրկ. | عدد رقم ١٤١٢ — الخميس ٧ أكتوبر ١٩٩٩


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՄԻԱՍՆԱԲԱՐ ՊԱՀՊԱՆԵՆՔ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ

Խորհրդային վարչակարգի տակ, շուրջ եօթանասուն տարի մնալէ վերջ, Հայաստան ունեցաւ իր անկախութիւնը 21 Սեպտեմբեր 1991-ին, և այդ համարեց Հայաստանի Հանրապետութեան մեծագոյն տօնը:

Ահաւասիկ համայն հայութիւնը տօնեց իր հայրենիքի անկախութեան 8-րդ տարեդարձը կլանուած ազգային հպարտութեամբ, որ իր դարաւոր երազը իրականութիւն դարձած է այսօր և մեր երկիրը իր արժանի տեղը գտած է միջազգային բեմին վրայ: Հայ ժողովուրդը եկաւ արդարօրէն նշելու իր անկախութեան 8-րդ տարեդարձը, աւելի նայելով ապագային, քան անցեալին: Ապագայի նկատմամբ հաւատքն է որ կրնայ դառնալ գրաւականը ամրակուռ անկախութեան. շէնցնել իր օճախը, ապահովելով հայրենիքին անվտանգութիւնն ու ապահովութիւնը:

Սեպտեմբեր 21-ին խորհրդանշական հանրաքուէով մը հայ ժողովուրդը արտայայտեց ազատ ու անկախ իր պետականութիւնը կառուցելու կամքը: Արդարեւ, այսօր Հայաստանի ազգային, պետական ու քաղաքական անկախութիւնը դրուած է ամուր հիմերու վրայ: Վերջին տասնամեակի գլխաւոր իրագործումը կը համարուի ժողովրդավարութիւնը, որ իր հետ բերաւ մամուլի, խղճի արտայայտութիւն և քաղաքական ազատութիւններ: Կարճ ժամանակուայ ընթացքին ստեղծուեցան և պայմաններու համապատասխան կարգացան պետական կառոյցները. օրէնսդիր մարմին, Սահմանադրութիւն եւ դատական համակարգ: Նոյնպէս, անկախութեան առաջին տարիներէն Հայաստանը օժտուեցաւ ազգային բանակով մը, որ ի վիճակի եղաւ պաշտպանել մեր սահմանները և օգնութեան ձեռք մեկնել Արցախի մեր ժողովուրդին, երբ ան իր ազգային ազատագրական պայքարը կը մղէր ու իր հսկողութեան տակ կ'առնէր իր պապենական հողերը:

Այս բոլորը հանրաքուէով չեն ապահովուիր, այլ մնայուն գործընթացներ են, որոնց ամբողջական կերտման յանձնառու են այսօրուայ հայրենի ղեկավարները:

Դրական այս երեւոյթներու իրագործումներու կողքին, այսօր Հայաստանի Հանրապետութիւնը կը գտնուի անկայուն տնտեսութեան մը առջեւ, ուր մեծ մասամբ կանգ առած է արդիւնաբերութիւնը: Թէեւ բաղդատմամբ նախորդ տարիներուն, որոշ չափով բարելաւուած է հայ ժողովուրդի ընկերային և տնտեսական վիճակը, սակայն ցարդ քայքայուած տնտեսական կացութիւնը, ժողովուրդի միջին խաւը կը մատնէ նիւթական անել վիճակի: Բնականաբար տնտեսական տագնապները իրենց հետ կը բերեն նաեւ նահանջ մշակոյթի, գիտութեան ու արուեստի բնագաւառներէն ներս:

Յուսանք որ այսօրուայ դժուարութիւնները ժամանակաւոր բնոյթ ունենան և պետական իշխանութիւնները կարողանան շրջանցել զանոնք: Դարերու պատմութիւն ունեցող ու բազում դժուարութիւններ տեսած մեր ժողովուրդը իր մէջ ունի բաւարար կամք, կորով ու կազմակերպչական և ստեղծագործական կարողութիւններ դիմակալելու համար այսօրուայ իրավիճակները եւս:

Ապագան ինչ կը խոստանայ մեր հայրենիքին, կը դժուարանանք գուշակութիւններ կատարել, սակայն շատ բան կախուած է հայ ժողովուրդի միասնական կեցուածքէն՝ հայրենիքի թէ սփիւռքի մէջ: Անցեալին մեր ճակատագիրը յանձնած էինք ուրիշներուն բայց հիմա ան մեր ձեռքերուն մէջն է, միասնականութեամբ՝ Հայաստանի ու Սփիւռքի ներդաշնակ աշխատանքով պիտի պահպանենք այն, որ մեծ դժուարութեամբ ունեցանք:

Այս կապակցութեամբ գնահատելի է հայրենի իշխանութիւններու Հայաստան - Սփիւռք յարաբերութիւններու մերձեցման աշխատանքները: Հետեւաբար անցեալ ամսուն հայրենիքին մէջ կայացաւ Համահայկական Առաջին Խաղերը, որ բացառիկ նշանակութիւն ունեցաւ աշխարհացրիւ հայ երիտասարդին համար: Իսկ այս օրերուն տեղի ունեցաւ Հայաստան - Սփիւռք Համաժողովը Երեւանի մէջ, նպատակ ունենալով ի մի բերել աշխարհով մէկ սփռուած ողջ հայ ժողովուրդի ստեղծագործ ուժերն ու կարողութիւնները: Հայ ժողովուրդը, հայրենիքի և Սփիւռքի մէջ իսկապէս ունի լայն կարողութիւններ և հնարաւորութիւններ, որոնք պիտի օգտագործուին ծրագրուած, կազմակերպուած և համերաշխութեան պայմաններու տակ:

Թէ՛ Հայաստանի և թէ՛ Սփիւռքի մէջ բնակող իւրաքանչիւր հայ, անկախ իր ըմբռնումներէն, գաղափարական ու քաղաքական իր հայեցողութիւններէն, պարտի համախմբուիլ Հայաստանի շուրջ, յօգուտ հայ պետութեան բարոյական թէ տնտեսական կարգացման, յօգուտ Արցախի ազատագրման և Հայ Դատի յաղթանակին:

Հայրենի ժողովուրդին բարգաւաճութիւնը ապահովող միակ ճշմարիտ հայրենասիրութեան ուղին, ներկայիս միասնական և

➪ 2

ՎԵՐՋԻՆ ԺԱՄ

## ՏԱՆՆ ԿԻԼԻԿԻՈՅ ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ-ՊԱՏՐԻԱՐՔ ԸՆՏՐՈՒԱԾ Է ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՄԱՅՆՔԻ ՎԻՃԱԿԱՒՈՐ ԳԵՐՊ. Տ. ՊԵՏՐՈՍ ԵՊՍ. ԹԱՐՄՈՒՆԻ

*Թերթս երբ մամուլի տակ էր, հեռաձայնային հաղորդակցութենէ մը կը տեղեկանանք, թէ անցեալ Շաբաթ 2 Հոկտեմբեր 1999-ին, Լիբանանի Կաթողիկոսական Աթոռին մօտ՝ Զմմառու Տիրամօր Վանքին մէջ, Եպիսկոպոսաց Սինոդոսի գումարման ընթացքին, գրխաւորութեամբ Հայ Կաթողիկէ Եկեղեցւոյ Արհի. Տեղապահ Մանուէլ Եպս. Պաթագեանի, Տանն Կիլիկիոյ Կաթողիկէ Հայոց Կաթողիկոս-Պատրիարք ընտրած են Եգիպտոսի Հայ Կաթողիկէ Համայնքի Վիճակաւոր Գերպ. Տ. Պետրոս Եպս. Թասմունի:*

*Կը նախատեսուի որ ամսոյս 24-ին հանդիսաւոր օծումը կատարուի Լիբանանի մէջ:*

*Նշենք թէ անցեալ թիւով տեղեկացուցած էինք, որ Ամեն. Տ.Տ. Յովհաննէս-Պետրոս ԺԸ. Կաթողիկոս-Պատրիարքը իր հրաժարականը ներկայացուցած եւ ի զօրու դարձած էր 3 Սեպտեմբեր 1999-էն սկսեալ:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐԸ ԵԼՈՅԹ ՄԸ ՈՒՆԵՑԱՒ ՄԱԿ-Ի ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻՆ ԱՌՋԵՒ

Հայաստանի Արտաքին Գործոց Նախարար Վարդան Օսկանեան, ելոյթ մը ունեցաւ ՄԱԿի ընդհանուր ժողովին, ներկայացնելով Հայաստանի դիրքորոշումներն ու մտահոգութիւնները միջազգային ու շրջանային զանազան հարցերու շուրջ: Նախարար Օսկանեան մասնաւորապէս նշեց, որ Հայաստան պէտք է երաշխաւորէ Լեռնային Ղարաբաղի հայ բնակչութեան ապահովութիւնը եւ որ «Հայաստան աշխոյժ աշխատանք կը տանի բոլոր հնարաւոր ատեաններէ ներս, հասնելու Ատրպէյճանի հետ հակամարտութեան այնպիսի լուծման, որ խաղաղութիւն պիտի հաստատէ տարածքաշրջանէ ներս», առանց վտանգելու Արցախի բնակչութեան խաղաղ գոյութեան օրինական իրաւունքը, որ դժուարութեամբ ապահովուած է:

➪ 4

## Հայաստան - Սփիւռք Համաժողովը Վերջ Գտաւ Ապագայի Վառ Յոյսերով

**ՍԵՓԱԿԱՆ ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ «ՃԱՀԱԿԻՐ»Ի.-** *Աշխարհի չորս ծագերէն Մայր Հայրենիք ժամանած շուրջ 800 պատուիրակներ՝ հաւաքուած էին քաղաքամայր Երեւանի մարզահամերգային համալիրին մէջ, գումարելու Հայաստան - Սփիւռք առաջին համաժողովը: Հայ ժողովուրդի արդի պատմութեան մէջ 22 Սեպտեմբեր 1999թ.-ը անմոռանալի պիտի մնայ: Հայաստանի կառավարութեան յղացած այս գաղափարը, գործադրուած հայրենի արտաքին գործոց նախարարութեան կողմէ՝ մեծ խանդավառութեամբ ընդունուելով լայն հատուածի մը կողմէ,*



*Երեւանի մարզահամերգային համալիրին մէջ, Համաժողովի ընթացքին*

*թերահաւատութեամբ դիմաւորուեցաւ որոշ շրջանակներու կողմէ: Պէտք է ըսել, որ խորհրդաժողովը թէեւ յստակ արդիւնքներու եւ լուծումներու չհասաւ, սակայն առաջին անգամ Մեծ Եղեռնէն ետք, հայութեան ղեկավար ու մարտնչող, մտաւորական ու գործարար, հայրենասէր շրջանակները առիթը ունեցան հանդիպելու իրարու, քննարկելու հրատապ շատ-շատ հարցեր:*

*Հայաստանի կառավարութիւնը, որ խիստ մտահոգուած էր ինչպէս երկրին տնտեսական «ճեղքուածներ»«ով, այնպէս ալ սրուող ռազմաքաղաքական կացութեամբ. Կովկասի մէջ հրաւիրած էր նաեւ Արցախը, որպէսզի իր մասնակցութիւնը բերէ այս խորհրդաժողովին: Լեռ. Ղարաբաղի հանրապետութեան նախագահն ու վարչապետը, պաշտպանութեան նախարարն ու կառավարութեան անդամներ մասնակցեցան ինչպէս բացման հանդիսութեան, այնպէս ալ օրակարգի հարցերու քննարկման:*

*Սփիւռքը միշտ ալ իր լայն օգնութիւնը բերած էր նորանկախ Լեռնաշխարհին, սակայն տեղի ունեցած ֆինանսական որոշ գայթակղութիւններ, ինչպէս «Հայաստան» հիմնադրամի ծանօթ հարցերով, պահանջքը ներկայացուցած էին վերահսկողութեան մասին մտածելու ու գործելու համար...:*

➪ 4

## ՔՈՉԱՐԵԱՆ-ԱԼԻԵՒ ԴԱՐՁԵԱԼ ՀԱՆԴԻՊՈՒՄ

*Մամլոյ գործակալութիւններու համաձայն, նախագահներ Ռոպերթ Քոչարեան եւ Հէյտար Ալիեւ յառաջիկայ Երկուշաբթի 11 Հոկտեմբերին հանդիպում պիտի ունենան Սատարակ սահմանային գիւղին մօտերը: Միացեալ Նահանգներու պետական քարտուղար Մատլէն Օլպրայթ կը ստիպէ, որ կողմերը համաձայնին բանակցութեանց ձեւի մը շուրջ:*

*Յիշենք թէ երկու նախագահներու չորրորդ հանդիպումն է որ տեղի կ'ունենայ անցեալ Մայիս ամսէն ի վեր (Ժընեւ, Յուլիս 16 եւ Օգոստոս 22, Եալթա, Սեպտեմբեր 10):*

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԿԸ ՇԵՇՏԷ ԱՐՏԵՐԿՐԻ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ ՍՓԻՒՌՔ - ՀԱՅԱՍՏԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԷՋ

*Հայաստանի նախագահութեան մամուլի սպասարկութիւնը տեղեկացուց որ նախագահ Ռոպերթ Քոչարեան Ուրբաթ 25 Սեպտ.ին հանդիպում մը ունեցած է արտերկրի Հայաստանի դիւանագիտական առաքելութեանց ղեկավարներուն հետ: Հանդիպման ընթացքին քննարկուած են հայկական դեսպանատուներուն առջեւ դրուած հիմնական խնդիրները:*

*Անդրադառնալով Սփիւռք-Հայաստան փոխ-յարաբերութիւններուն, Քոչարեան նշած է որ համահայկական խորհրդաժողովէն*

➪ 2

## ՀՀ ՎԱՐՉԱՊԵՏԸ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ ԿՐԿՆԵՑ ԹԷ Կ'ՈՒԶԷ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՍՏԱՏԵԼ ԹՈՒՐՔԻՈՅ ՀԵՏ

Անատոլու Գործակալութիւնը Նիւ Եորքէն տեղեկութիւններ քաղելով կը հաղորդէ թէ Հայաստանի Վարչապետ Վազգէն Սարգսեան Ամերիկայի մէջ գանգատեցաւ Հայաստանի դէմ Թուրքիոյ կողմէ գործադրուող շրջափակումէն ու Ամերիկայի Միացեալ Նահանգներէն խնդրեց որ միջամտէ, որպէսզի Թուրքիա վերջ տայ շրջափակման:

Հայաստանի վարչապետը որ Ամերիկա կը գտնուի, յայտնեց հետեւեալը. «Մենք Թուրքիոյ հետ առեւտրական յարաբերութիւններ հաստատելու

➪ 3

## ԱՐՄԱՆ ԿԻՐԱԿՈՍԵԱՆ՝ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄՕՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴԵՍՊԱՆ

Հայաստանի Արտաքին Գործոց Նախարարութեան բանբեր Արա Պապեան 1 Հոկտեմբերին յայտարարեց, թէ Ամերիկայի Միացեալ Նահանգներու մօտ Հայաստանի դեսպան նշանակուած է Արման Կիրակոսեան, որ պիտի փոխարինէ Ռուբէն Շուգարեանը:

Յայտնենք որ Արման Կիրակոսեան ցարդ Յունաստանի մօտ Հայաստանի դեսպանն էր:

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ
## ԱՐՏԱՔՍՈՒՄ

*Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը հայաստանաբնակ Էրնէստ Սողոմոնեանի առընչութեամբ առած է հետեւեալ որոշումը՝ իր հակաօրինական եւ հակակուսակցական ընթացքին համար:*

*1.- Դադրեցնել զինք Կեդրոնական Վարչութեան անդամութենէն:*

*2.- Արտաքսել զինք կուսակցութեան շարքերէն: Ուստի Էրնէստ Սողոմոնեանը եւ իր գրխաւորած խմբակը իրաւունք չունին Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան անունով խօսելու, կարգադրութիւններ ընելու եւ ոչ ալ դաշինքներ ստորագրելու:*

*Սոյն որոշումը կը հաղորդենք առ ի գիտութիւն հանրային կարծիքին:*

***Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւն***

***1 Հոկտեմբեր, 1999***

**ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍ**

### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԵՒ «ԿԱՅԾ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ ՈՒԹԸ ՀԱԶԱՐ ԼՈՍ ԱՆՃԸԼԸՍԱՀԱՅԵՐ ՆԵՐԿԱՅ ԵՂԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՅ ՇՔԵՂ ՓԱՌԱՏՕՆԻՆ

Կիրակի Սեպտեմբեր 19-ին աւելի քան ութը հազար հայեր ներկայ եղան Կլէնտէյլի «Վերտուկօ Փարք» ընդարձակ զբօսայգին, նշելու համար Հայաստանի Անկախութեան 8-րդ տարեդարձը:

Արդարեւ Նոր Սերունդ Մշակութային Միութեան եւ Ս.Դ.Հ.Կ. «Կայծ» Երիտասարդաց Միութեան կողմէ կազմակերպուած իր տեսակին մէջ եզակի այս հաւաքին, իր մասնակցութիւնը բերած էր մեր ընկերա-համակրական լայն շրջանակը, իրենց ուրախութիւնը եւ զօրակցութիւնը յայտնելու ի տես մեր ժողովուրդի պատմական այս մեծ օրուան տարեդարձին:

Հայկական համադամ ճաշերու մատակարարումէն ետք գործադրուեցաւ օրուան պատշաճ յայտագիր մը:

Հայաստանի եւ Ամերիկեան դրօշակներով զարդարուած բեմին վրայ բազմաթիւ հայկական էստրադային նուագախումբեր իրենց երգիչներով խանդավառեցին մթնոլորտը: Արդարեւ ժամեր տեւող ազգային եւ հայրենասիրական երգերն ու պարերը ոգեւորեցին ներկաները ստեղծելով իսկական փառատօնեան մթնոլորտ մը:

Կազմակերպիչ միութիւններու անունով բացման խօսք կատարեց ու օրուան խորհուրդին անդրադարձաւ Ընկեր Ստեփան Յովակիմեան եւ ապա ձեռնհասօրէն վարեց օրուան յայտագիրը:

Այս առթիւ Հայաստանի անկախութեան 8-րդ տարեդարձը շնորհաւորող ջերմ ելոյթներով հանդէս եկան Կլէնտէյլ քաղաքի քաղաքապետ Տիկին Ճինճըր Պրէնըլըրկ, Պրն. Պօղ Եուսուֆեան, «Քաջ Նազար» երգիծաթերթի տնօրէն Յովհաննէս Բալայեան:

Գոնկրէսմէն Ճէյմս Ռոկընի անունով ելոյթ ունեցաւ Լենա Կանիմեան որ այս առթիւ պաշտօնական յայտարարագիր մը յանձնեց Փառատօնի կազմակերպիչներուն:

Ողջոյնի խանդավառ ելոյթներով հանդէս եկան նաեւ Հայաստանի Հանրապետութեան Լոս Անճելըսի Աւագ Հիւպատոսի տեղակալ՝ հիւպատոս Պր. Նորայր Ղալումեան, Հայաստան Ազգային Ողիմպիական Կոմիտէի քարտուղար եւ բռնցքամարտի աշխարհի ախոյեան Նշան Մունչեան:

Ամբողջ օրը, ժողովուրդը առիթ ունեցաւ այցելելու բազմաթիւ կրպակներ, ուր կը ցուցադրուէին եւ կը վաճառուէին հայկական գիրքեր, քոմփիութըրներ, անուշեղէններ, զարդեղէններ եւ այլ իրեր:

Հերթաբար բեմ բարձրացան փոքրիկն Մելինէ Համբարձումեան եւ Լոս Անճելըսահայ յայտնի արուեստագէտներ՝ Էմմա Թովմասեան, Արմոնտ, Անտրէ Դանիք, Յարութ Փամպուքճեան, Արարատ եւ միջազգային աստղ Էնտի: Ժողովուրդը պարով, երգով ու ծափողջոյններով ընկերակցեցաւ բոլոր ելոյթներուն:

**ՓԱՐԻԶ**

### «ԿԱՅԾ» ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 8-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

*Հայաստանի անկախութեան 8րդ տարեդարձը արժանավայել շուքով նշուեցաւ Շաբաթ, 11 Սեպտեմբեր 1999ի երեկոյեան ժամը 8ին, Փարիզի Հ.Բ.Ը.Մ.ի Ալեք Մանուկեան սրահին մէջ՝ ի ներկայութեան սրահը լեցնող ընտրանի բազմութեան մը, որ կը ներկայացնէր հայութեան տարբեր խաւերը:*

*Ֆրանսայի եւ Հայաստանի քայլերգներու ունկնդրութենէն ետք, կազմակերպիչ «Կայծ» Նոր Սերունդ Մշակութային Միութեան կողմէ բացման խօսքը կատարելով հանդիսավարութիւնը բրաւ Տիկ. Վիգի Սվաճեան:*

*Ապա, ներկայացուց տօնակատարութեան բանախօս՝ Պէպօ Սիմոնեանը, որ իր տիկնոջ հետ կը գտնուէր Փարիզ: Ծանօթացման գծով հանդիսավարուհին նշեց, որ ծանօթ գրագէտ, դաստիարակ եւ հանրային գործիչ Պէպօ Սիմոնեանը աւելի քան 40 տարիներու լիբանանահայ կրթական, մշակութային եւ մտաւորական կեանքի մէջ բեղուն վաստակի տէր մտաւորական հեղինակութիւն մըն է:*

*Բեմ բարձրանալով, աւելի քան կէս ժամ իր կուռ եւ պերճախօս բանախօսութեամբ, Պէպօ Սիմոնեան ներկայ հանդիսականները հաղորդակից դարձուց Անկախութեան խորհուրդին, ընելով անոր պատմական հոլովոյթը՝ վերլուծական մօտեցումով:*

*Յետ բանախօսութեան տեղի ունեցաւ գեղարուեստական կոկիկ յայտագիր մը:*

*Հանդիսութեան աւարտէն ետք տեղի ունեցաւ ընդունելութիւն – հիւրասիրութիւն:*

1☞ **ՄԻԱՍՆԱԲԱՐ ՊԱՀՊԱՆԵՆՔ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ**

ներդաշնակուած աշխատանքով Մայր հայրենիքը հզօրացնելն է, ապահովելու համար մեր ապատութիւնը:

Հայրենիք և Սփիւռք որեւէ ժամանակէ աւելի իրարու պէտք ունին, հայ ժողովուրդի ճգնաժամային այս հանգրուանին կարենալ դիմագրաւելու համար այն բոլոր մարտահրաւէրները որոնց դէմ յանդիման կը գտնուինք այսօր, Հայաստանի Գ. Հանրապետութեան 9-րդ տարեդարձի սեմին:

Լաւատեսութեամբ նայելով ապագային, կը խորհինք թէ այսօր Հայաստանի Հանրապետութիւնը ինքզինք ամրապնդած, առաւել զօտեպնդուած կ'ընթանայ ինքնահաստատման ուղիով:

### ԵՐԵՍՓՈԽԱՆ ԿԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ ԿԸ ՄԵՂԱԴՐԷ ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ՀԱՐՑԷՆ ՆԵՐՍ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԻՋԱՄՏՈՒԹԻՒՆԸ

Կաթողիկոսական ընտրութեան նիւթին Հայաստանի իշխանութիւնները կը միջամտե՞ն, թէ ոչ, այս հարցը լայն արձագանգ գտնել սկսաւ նաեւ Հայաստանեան մամուլի եւ քաղաքական կուսակցութիւններու կեանքէն ներս:

Ազգային Ժողովի երեսփոխան՝ Կիմ Բալայեան յայտնեց թէ ինք լսած է որ Հայաստանի Անվտանգութեան Խորհուրդի նիստի ընթացքին իշխանութիւնները քննած են այս հարցը եւ որոշած են պաշտպանել Գերշ. Տ. Գարեգին Արք. Ներսիսեանի թեկնածութիւնը:

«Նոյեան Տապան» գործակալութեան թղթակցին համաձայն, Կիմ Բալայեան յայտնած է թէ ինք որպէս իրաւաբան չի կրնար ընդունիլ պետական միջամտութիւն մը եկեղեցական գործերէ ներս, ուստի կը սիրէ յուսալ որ այդ լուրը սխալ է: Պետութիւնը, ըստ Սահմանադրութեան, կրնայ կատարել միայն Սահմանադրութեան կողմէ ճշդուած գործողութիւններ: «Եթէ իշխանութիւնները այսպիսի միջամըտութիւններ կատարեն, ատիկա իբր հիմ կը ծառայէ ուրիշ միջամըտութիւններու ալ, ինչ որ վտանգաւոր է», ըսած է Կիմ Բալայեան: Ան անուններ ալ թուելով, պնդած է թէ զրոյց կը շրջի թէ արտասահմանի մեծահարուստներ մեծ գումարներ խոստանալով, կ'ուզեն ընտրելի դարձնել թեկնածուներէն մէկը: Նոյնիսկ կը պնդուի որ վեց միլիոն տոլար տրուած է Հայաստանի իշխանութիւններուն եւ 20 միլիոն ալ խոստացուած է պաշտպանուած թեկնածուն ընտրուելու պարագային:

Դաշնակցական երեսփոխան Կիմ Բալայեանի այս պնդումներուն փոխարէն, «Նոյեան Տապան»ի թղթակիցը դիմեց Նախագահի մամլոյ քարտուղար՝ Վահէ Գաբրիէլեանին, որ յայտնեց թէ Նախագահը արդէն յայտարարած է որ նմանօրինակ միջամտութիւն չէ կատարուած: Գալով Անվտանգութեան Խորհուրդի նիստին, այդ նիստը կը կատարուի մեծ գաղտնապահութեամբ եւ ո՛չ Կիմ Բալայեան եւ ոչ ալ ուրիշ մէկը չի՛ կրնար տեղեկութիւն ունենալ թէ ի՞նչեր խօսուած են ներսը:

### ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԿԸ ՇԵՇՏԷ ԱՐՏԵՐԿՐԻ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ...

1☞ *ետք յառաջացած տրամադրութիւնները լաւ հնարաւորութիւն կ'ընծայեն չարունակելու աշխատանքները արդիւնաւէտ ձեւով:*

*Նախ. Քոչարեան ընդգծած է որ Սփիւռքի բազմազանութիւնը ուժ եւ հարստութիւն է եւ պէտք է գտնել համագործակցութեան ճիշդ եզրեր: Ան շեշտած է որ՝ «Դեսպանութիւնները պարտաւոր են հաւասար յարաբերութիւններ հաստատել Սփիւռքի բոլոր կազմակերպութիւններուն հետ»:*

*Որպէս առաջնահերթ լուծման կարօտող խնդիր, Քոչարեան կարեւորած է միասնական տեղեկատուական մարզի ձեւաւորումը, ըսելով որ այս ուղղութեամբ առնուելիք առաջին քայլը պէտք է ըլլայ համազգային պատկերասփիւռի ստեղծումը: Ան առաջնահերթ նկատած է նաեւ մշտապէս գործող երիտասարդական կեդրոնին հիմնումը, ինչպէս նաեւ զարգացման գործակալութեան ստեղծումը, որ սփիւռքահայութիւնը պէտք է աքթիւօրէն ներգրաւէ Հայաստանի տնտեսութեան մէջ:*

*Որպէս Դեսպանատուներու գործունէութեան առանցքային ուղղութիւն, Քոչարեան առանձնացուցած է տնտեսական յարաբերութիւններու զարգացման խնդիրը: Ան մեծ նշանակութիւն տուած է արտերկրի մէջ Հայաստանի տնտեսական հնարաւորութիւններուն պատշաճօրէն ներկայացումին եւ օտարերկրեայ ներդրումներու ներգրաւումին ուղղուած աշխատանքներուն:*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

### ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՅ ԱՌԹԻՒ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ՇՔԵՐԹ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Սեպտեմբերի 21-ին, Հայաստանի Հանրապետութեան Անկախութեան 8-րդ տարեդարձի օրը, Երեւանի Հանրապետութեան հրապարակին վրայ տեղի ունեցաւ զօրահանդէս: Հրապարակ եկած էին Հայաստանի եւ ԼՂՀ հազարաւոր քաղաքացիներ, բարձրաստիճան հիւրեր տարբեր երկիրներէ, Հայաստան-Սփիւռք խորհրդաժողովի մասնակից արտերկրի հայրենակիցները:



*Հայկական յաղթող զօրամասերու շքերթը*



*Հայոց երկիրը անխոցելի է շնորհիւ «ՍԱՄ»-երուն*

*Լուսանկարներ՝ ՀԱՄՕ ՄՈՍԿՈՖԵԱՆԻ*

Ներկայ էին ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանը, ԱԺ նախագահ Կարէն Դեմիրճեանը, վարչապետ Վազգէն Սարգսեանը, ԼՂՀ նախագահ Արկադի Ղուկասեանը, ՀՀ եւ ԼՂՀ բարձրաստիճան պաշտօնեաներ, Հայ Առաքելական եկեղեցւոյ հոգեւոր դասի ներկայացուցիչներ՝ կաթողիկոսական տեղապահ Ներսէս Արքեպիսկոպոս Պոզապալեանի գլխաւորութեամբ:

**ՄՈՆԹՐԷԱԼ**

### 1500 Հոգի Մասնակցեցան Եգիպտահայ Վարժարաններու Աշակերտներու Համաշխարհային Հաւաքին

*Խմբագրութեանս ուղարկուած հաղորդագրութենէ մը կը տեղեկանանք, թէ 29 Յուլիսէն 1 Օգոստոս 1999-ին Մոնթրէալը ժամադրավայրը եղաւ շուրջ 1500 նախկին եգիպտահայ վարժարաններու աշակերտներու, որոնք հաւաքուեցան աշխարհի չորս ծագերէն: Հաւաքը նախաձեռնուած էր Մոնթրէալի Եգիպտահայերու Ընկերակցութեան կողմէ, նախագահութեամբ Եգիպտահայոց Առաջնորդ՝ Բարձր. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի:*




*Հաւաքին չորս օր տեւող պաշտօնական յայտագիրներուն կեդրոնավայրը հանդիսացաւ Մոնթրէալի Sheraton Center պանդոկը, ուր առաջին օրուան երեկոյեան կայացած բարիգալստեան քոքթէյլ ընդունելութեան ներկայ էին 1450 մասնակիցներ: Յաջորդ օր Մոնթրէալի Claude Champagne հանդիսասրահին մէջ տեղի ունեցաւ մշակութային յայտագիր, գլխաւոր դերակատարութեամբ Նորա Արմանի եւ Ժիրայր Բաբազեան արուեստագէտ զոյգին, ինչպէս նաեւ հայկական պար եւ նուագ մասնակցութեամբ «Գառնի» պարախումբին:*

*Շաբաթ օր, յետ միջօրէին, նոյն պանդոկին մէջ կազմակերպուած էր եգիպտահայ 21 ժամանակակից արուեստագէտներու ստեղծագործութիւններու ցուցահանդէս, իսկ երեկոյեան մասնակցեցան հանդիսաւոր ճաշկերոյթ պարահանդէսին: Կազմակերպիչ Մարմնի ատենապետ Կարօ Նշանեան, բարի գալուստի խօսքերէն ետք կարդաց Հայաստանի Կրթական Նախարարին ողջոյնի գիրը, ուր շնորհակալութիւն կը յայտնուէր, որ Հաւաքէն գոյացած հասոյթը պիտի տրամադրուի Հայաստանի կրթական ծրագիրներու:*

*Յաջորդաբար պաշտօնական հրաւիրեալներէն հակիրճ ելոյթներ ունեցան Հաւաքին նախագահ՝ Բարձր. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, Եգիպտոսի դեսպան Համտի Նատա, Հայաստանի Դեսպանատան Հաւատարմատար Վայերի Մկրտումեան եւ Մոնթրէալի քաղաքապետ Փիէռ Պուրք: Կատարուեցաւ աւելի քան 60 ներկայ ուսուցիչներու եւ ուսուցչուհիներու պատուագրերու յանձնում եւ երախտիքի հաւաքական արտայայտութիւն:*

*Կիրակի առաւօտ, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Առաջնորդանիստ եկեղեցւոյ մէջ Ս. Պատարագ մատուցեց եւ քարոզեց Բարձր. Տ. Զաւէն Արք. Չինչինեան եւ հոգեհանգստեան պաշտօն կատարուեցաւ Եգիպտահայ վարժարաններու բարերարներու, անդարձ բաժնուած ուսուցիչներու եւ աշակերտներու հոգիներու խաղաղութեան. Եկեղեցւոյ արարողութեան աւարտին, Գանատահայոց Առաջնորդ Բարձր. Տ. Յովնան Արք. Տէրտէրեան Առաջնորդարանի դահլիճին մէջ ընդունելութիւն մը տուաւ: Ապա Մոնթրէալի կեդրոնը գտնուող լերան բարձունքին վրայ կատարուեցաւ հրաժեշտի խրախճանքը:*

*Հաւաքի չորս օրերուն եւ անոր յաջորդող երկու օրերու ընթացքին կազմակերպուեցան խմբային շրջապտոյտներ դէպի մայրաքաղաք Օթաուա եւ այցելութիւն Հայաստանի դեսպանատուն, եւ Մոնթրէալ քաղաքի տեսարժան վայրերը:*

*Հաւաքին առիթով հրատարակուեցաւ գեղեցիկ յուշամատեան մը:*

**ԳԱՀԻՐԷ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՏՕՆԸ ՆՇՈՒԵՑ ԵԳԻՊՏՈՍԻ ԱՐԱԲԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆՈՒՄ

Սեպտեմբեր 21-ի առաւօտեան Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութեան այցելեց Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան նախագահի անձնական ներկայացուցիչ, նախագահութեան չեմբէռլէն Խալէտ Անտիլը: Շնորհաւորելով Եգիպտոսում ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերգէյ Մանասարեանին Հայաստանի Հանրապետութեան Ազգային տօնի առթիւ, նա խնդրեց Հայաստանի անկախութեան 8-րդ տարեդարձի կապակցութեամբ ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանին եւ բարեկամ հայ ժողովրդին փոխանցել Եգիպտոսի նախագահ Հոսնի Մուպարաքի ջերմ շնորհաւորանքներն ու բարեմաղթութիւնները:

Նախորդ օրերին Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութեան նախաձեռնութեամբ եւ եգիպտահայ համայնքի համագործակցութեամբ Հայաստանի Անկախութեան օրուան նուիրուած հանդիսութիւններ տեղի ունեցան Աղեքսանդրիայում եւ Գահիրէում: Յոբելեանական միջոցառումներին ակտիւօրէն մասնակցեցին Եգիպտահայ հասարակայնութիւնը, համայնքի հոգեւոր, մշակութային եւ հասարակական գործիչները:

Հանդիսութիւնների ընթացքում ներկաներին ողջոյնի խօսքով դիմեց Եգիպտոսում ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Ս. Մանասարեանը: Իր խօսքում նա անդրադարձաւ անկախութեան համար հայ ժողովրդի մղած դարաւոր պայքարին՝ նշելով անկախ պետականութեան ձեռք բերման եւ ամրապնդման կարեւորութիւնը համայն հայութեան գոյատեւման եւ բարգաւաճման խնդրում: Դեսպանը շեշտեց, որ Հայաստան - Սփիւռք համախմբուածութիւնը հզօր պետութիւն ունենալու հիմնական գրաւականն է՝ համոզմունք յայտնելով, որ միասնական ջանքերով Հայաստանի անցումային շրջանի դժուարութիւնները կը յաղթահարուեն՝ տեղի տալով ձեռքբերումներին եւ նուաճումներին:

Գահիրէում եւ Աղեքսանդրիայում կայացած տօնակատարութիւններին մեծ յաջողութեամբ ելոյթ ունեցաւ այդ առիթով Եգիպտոս հրաւիրուած Հայաստանի ազգային օփերայի մեներգչուհի, միջազգային մրցոյթների դափնեկիր Անահիտ Մխիթարեանը՝ իր բարձրարուեստ տաղանդով հիացնելով եգիպտահայ հասարակայնութեանը:

Հանդիսութիւնների շարքը եզրափակուեց Սեպտեմբեր 20-ի երեկոյեան՝ Եգիպտոսում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութեան կողմից Ազգային տօնի առթիւ կազմակերպած պաշտօնական ընդունելութիւնը, որին ներկայ էին Եգիպտոսի կառավարութեան անդամներ, հասարակական եւ մշակութային գործիչներ, Գահիրէում հաւատարմագրուած օտարերկրեայ դեսպաններ, եգիպտահայ համայնքի անդամներ եւ զանգուածային լրատուամիջոցների ներկայացուցիչներ:

**ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

## ԳՈՀԱԲԱՆԱԿԱՆ ՄԱՂԹԱՆՔ Ս. ՊՕՂՈՍ-ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ

*Հայաստանի Հանրապետութեան Ազգային Տօնի՝ Անկախութեան 8-րդ տարեդարձին առթիւ, Կիրակի, 19-9-1999-ի առաւօտեան, Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցիին մէջ, Ս. Պատարագի ընթացքին, տեղի ունեցաւ Գոհաբանական Մաղթանք, Մայր Հայրենիքի խաղաղութեան, անսասանութեան եւ բարգաւաճման համար:*

*Ս. Պատարագէն վերջ, ժողովուրդը բարձրացաւ դահլիճ, ուր պատշաճ հիւրասիրութենէ մը ետք, Ազգային Իշխանութեան կողմէ խօսք առաւ Պօղոսեան Ազգային վարժարանի Հայերէն լեզուի եւ Հայագիտական նիւթեր դասաւանդող սուրիահայ երիտասարդ ուսուցիչ՝ Պր. Հայրապետ Կարապետեան, որ իր խօսքին մէջ ներկայացուց հայ ազգի գոյատեւման ողջամտութիւնը, հաւատքի եւ վճռականութեան դերը, անկախ պետականութեան վերականգնման գծով, քաղաքական, ընկերային եւ հասարակական ծանր պայմաններու մէջ: Պր. Հայրապետ Կարապետեան փակեց իր խօսքը, ջերմապէս շնորհաւորելով փառաւոր Հայրենիքին անկախութեան 8-րդ տարեդարձը, յարատեւութեան, կամքի եւ յաղթանակի մաղթանքներով:*

*Ապա խօսք առաւ Աղեքսանդրիոյ Հովիւ՝ Արժանապատիւ Տէր Գրիգոր Քհնյ. Մուրատեան յիշեցնելով, որ ներկայ իրադարձութիւններուն մէջ, որպէս Հայ, միշտ ի մտի ունենալով յիշատակը մեր նահատակներուն, մեզի կը մնայ պաշտպան կանգնիլ մեր Հայրենիքի վերելքին, սատարելով բարոյապէս եւ նիւթապէս անոր բարգաւաճման:*

*Իր խօսքէն վերջ, Արժ. Տ. Գրիգոր Քհնյ. Մուրատեան պահպանիչով փակեց Հայաստանի Հանրապետութեան Անկախութեան տօնին նուիրուած հաւաքոյթը:*

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՆՇՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 8-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ

### «ՊԼԸՔՏԱՆԵԱՆ» ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ

*Գահիրէաբնակ Հայութիւնը զանազան ձեռնարկներով տօնեց Հայաստանի Հանրապետութեան Ազգային տօնն ու անկախութեան 8-րդ տարեդարձը պատշաճօրէն:*

*Շաբաթ 18 Սեպտեմբերի երեկոյեան, Հելիոպոլսոյ «Պլըքտանեան» հանդիսասրահին մէջ, ի ներկայութեան համայնքիս ներկայացուցչական դէմքերու եւ հայրենասէր հասարակութեան մը, տեղի ունեցաւ Հայաստանի Հանրապետութեան 8-րդ տարեդարձի տօնակատարութիւն, բարձր հովանաւորութեամբ Եգիպտոսի մօտ ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեանի եւ իր ազնիւ տիկնոջ, հովանաւորութեամբ Եգիպտահայ Հոգեւոր Պետերուն, նախաձեռնութեամբ Գահիրէի Ազգային Իշխանութեան եւ անուանական մասնակցութեամբ Գահիրէի Հայկական բոլոր միութիւններուն:*

*Եգիպտոսի եւ Հայաստանի հանրապետութիւններու օրհներգներու նուագածութենէն ետք, յանուն Ազգային Իշխանութեան պատշաճ բացման խօսքով հանդէս եկաւ Պր. Գրիգոր Մարգարեան, ապա բեմ հրաւիրեց մեծարգոյ դեսպան Ս. Մանասարեանը: Յարգելի դեսպանը ողջունելէ ետք ՀՀ անկախութեան 8-րդ տարեդարձը, շեշտը դրաւ անկախ պետականութեան ամրապնդման անհրաժեշտութեան: Շահեկան իր ելոյթին մէջ յարգելի դեսպանը ընդգծեց, թէ «Հայաստան-Սփիւռք» համաժողովը կրնայ ունենալ իր դրական դերը, եթէ Հայաստանի դժուարութիւնները յաղթահարուին միասնական ջանքերով: Լաւատեսութիւն յայտնեց որ յաջորդող տարիներուն կարելի պիտի ըլլայ տնտեսական իրավիճակը բարելաւել:*

*Գեղարուեստական բաժնին անցնելով, բեմ հրաւիրուեցան Հայաստանի Ազգային Օփերայի շնորհալի մեներգչուհի, միջազգային մրցոյթներու դափնեկիր Անահիտ Մխիթարեան եւ հմուտ դաշնակահար Վասիլի Ռոլիչ, որոնք Եգիպտոս ժամանած էին յատուկ հրաւէրով Գահիրէի Հ.Բ.Ը.Մ. Միութեան վարչութեան:*

*(Սոյն սքանչելի ելոյթի մասին կարդալ երաժիշտ Հայկ Աւագեանի քննադատական նկարագրականը, զոր հրատարակած ենք նոյն էջին վրայ: Ունենալով հանդերձ որոշ վերապահութիւններ կարգ մը քննադատութիւններու մասին, Հայկի մասնագիտական եւ արդար մօտեցումը հրատարակած ենք նոյնութեամբ, որուն համար կը յայտնենք մեր շնորհակալութիւնները: Կ'արժէ յառաջիկային անդրադառնալ նչեալ գրութեան մասին, տրուած ըլլալով որ յօդուածագիրը տարբեր հարցեր արծարծելով, զանազան ծալքեր կը բանայ մեր առջեւ):*

*Ելոյթի աւարտին փակման խօսք կատարելու հրաւիրուեցաւ Թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, որ իմաստալից արտայայտութիւններով շեշտեց հայ ժողովուրդի ազատատենչութեան ոգին: Ապա եզրափակեց իր խօսքը կարդալով Անդրանիկ Ծառուկեանի մէկ ազատաշունչ բանաստեղծութիւնը, խորապէս ոգեւորելով ներկայ հանդիսականները:*

### Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ

*Կիրակի 19 Սեպտեմբերի առաւօտեան, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ, ընթացս Ս. Պատարագի տեղի ունեցաւ Գոհաբանական Մաղթանք Հայրենիքի խաղաղութեան եւ բարգաւաճման համար, ի ներկայութեան համայնքիս պատասխանատու անձնաւորութիւններու, ազգային վարժարաններու աշակերտութեանց եւ հաւատացեալ հասարակութեան մը, գլխաւորութեամբ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեանի:*

*Ս.Պատարագը մատուցեց Թեմիս բարեխնամ առաջնորդ Սրբազան Հայրը, որ աւուր պատշաճի հայրենաշունչ քարոզ մը տուաւ ներկայ հաւատացեալ հասարակութեան:*

*Ապա Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ, ներկաներէն շատեր մասնակցեցան ընդունելութեան, ուր Սրբազան Հօր Տէրունական աղօթքէն ետք, եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան անդամուհիները հիւրասիրեցին ներկաները:*

### ՀԻՒՐԱՍԻՐՈՒԹԻՒՆ ՀՀ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄԷՋ

*Երկուշաբթի 20 Սեպտ.ի երեկոյեան ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան յատուկ քօքթէյլ-հիւրասիրութիւն մը կազմակերպած էր Գահիրէի ՀՀ դեսպանատան գեղատեսիլ պարտէզին մէջ, որուն մասին կարդալ դեսպանութեան կողմէ ղրկուած հաղորդագրութիւնը՝ նոյն էջին վրայ:*

*«Ջ.»*

## ՀՀ ՎԱՐՉԱՊԵՏԸ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ ԿՐԿՆԵՑ ԹԷ Կ'ՈՒԶԷ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆ ՀԱՍՏԱՏԵԼ ԹՈՒՐՔԻՈՅ ՀԵՏ

1

պատրաստ ենք: Միայն թէ դիմացի կողմը չի փափաքիր: Թուրքիա սահմանին վրայ կը շարունակէ գործադրել իր կարծր շրջափակումը»:

Անատոլու Գործակալութիւնը դիտել կուտայ որ Հայաստանի թերթերուն համաձայն, Վարչապետին այս յայտարարութիւնը դրական շրջափոխութիւն մը պէտք է նկատուի, քանի որ Վարչապետը ծանօթ է իր կարծր ազգայնապաշտութեամբ:

## ԱՆԱՀԻՏ ՄԽԻԹԱՐԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԻՆ ԱՌԻԹՈՎ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Սեպտեմբեր 18-ին, Հելիոպոլսոյ «Պլըքտանեան» սրահին մէջ տեղի ունեցաւ Հայաստանի Հանրապետութեան անկախութեան ութերորդ տարեդարձին նուիրուած տօնակատարութիւն, որուն գլխաւոր մասը կը կազմէր երիտասարդ սոփրանօ Անահիտ Մխիթարեանի բացառիկ երգահանդէսը:



Անահիտ Մխիթարեան

Ասիկա Մխիթարեանի երկրորդ ելոյթն է Գահիրէի մէջ: Ան մեներգով մը մասնակցած էր 1998 Յունուար 11-ին, Գահիրէի օփերայի մեծ դահլիճին մէջ տեղի ունեցած հայկական մշակութային փառատօնին: Ներկայ երգահանդէսին առիթով, մեր յիշողութեան մէջ վերակենդանացաւ անցեալ տարուայ հանդիսութիւնը՝ բորբոքելով բազում մտորումներ: Հետեւաբար, ընթերցողներուն քոյլտուութիւնը կը հայցենք ժամանակաւորապէս շեղուելով բուն նիւթէն՝ մեր ուշացած տպաւորութիւնները արձանագրել այդ փառատօնի երաժշտական ելոյթներուն մասին:

1998 Յունուարի հանդիսութեան երաժշտական մասը կ'ընդգրկէր հայկական եւ եւրոպական դասական, ժողովրդական եւ էսթրատային երգերաժշտութիւն: Ըստ եգիպտահայ մամուլին՝ փառատօնը արձանագրեց աննախադէպ յաջողութիւն: Ըստ երաժշտասէր հասարակութեան՝ ան կատարեալ ձախողութիւն մըն էր: Անպաշտօնօրէն դժգոհ էին նաեւ նոյն եգիպտահայ մամուլի ներկայացուցիչները: Սակայն ինչո՞ւ ոչ ոք համարձակեցաւ հրապարակայնօրէն թէկուզ կողմնակի նկատողութիւն մը ակնարկել: Պատճառը, մեր կարծիքով, վերջին երեք-չորս տասնամեակներու երաժշտական անկողմնակալ ու գիտական քննադատութեան իսպառ բացակայութիւնն է եւ ընդհանրապէս քննադատական առողջ հոգեբանութեան չգոյութիւնը: Եթէ թերթենք վերջին տասնամեակներու եգիպտահայ մամուլին հաղորդագրութիւնները՝ կը տեսնենք, որ գաղութային երաժշտութիւնը Եգիպտոսի մէջ նուաճած է նախանձելի բարձունքներ: Բնականաբար, աւանդական փառաբանութիւններու այս հեղեղին մէջ, քննադատութիւն մը պիտի մնար անընդունելի: Իսկ ողջամիտ քննադատութեան պակասը, անշուշտ, գաղութային լճացումի արդիւնքն է:

1998 Յունուար 11-ի երեկոյթի երաժշտական բաժինը շատ հեռու էր պատշաճ մակարդակ ունենալէ: Տիգրան Լեւոնեան՝ որ երեկոյթին գեղարուեստական պատասխանատուն էր, երգեց նափոլիթէն «Catari» մեներգը: Լարուած ու երգայնութենէ զուրկ ձայն մը, ձայնակապումի (լեկաթոյի) բացակայութիւն: Շնչառութեան կարճատեւութեան պատճառով ստիպուած էր անընդհատ կտրատել նախադասութիւնները:

Անհասկնալի էր Գոհար Գասպարեանին ելոյթը: Օփերայի արուեստի երբեմնի աստղը, աշխարհի մեծ բեմերու սքանչելի գոհարը, աննման Վիոլէթթան, Ռոզինան, Լաքմէն, բեմ բարձրացաւ՝ դժուարութեամբ երգելու Ֆ. Օպէռի «Մանոն Լեսքօ» օփերայէն արիա մը եւ Բ. Կանաչեանի «Օրօր»-ը: Ինչո՞ւ անպատասխանատու ելոյթով մը քողարկել տարիներու յամառ աշխատանքով ձեռք բերուած արդար համբաւը:

Վալէրի Յարութիւնեան (պաս), որուն 15 տարի առաջ խորապէս գնահատած էինք (տե՛ս մեր յօդուածը Բացառիկ երգիչ մը՝ Վալերի Յարութիւնեան, «Արեւ», օրաթերթ, Գահիրէ, 13-15 Օգոստոս 1984), կորսնցուցած է իր ձայնին թարմութիւնը: Ան մեկնաբանեց «Դաւիթ Բէկ» օփերայի աշուղի արիան:

Կոստանտին Սիմոնեան ունի հզօր պարիթոն ձայն մը, ուր կը պակսի երաժշտականութիւնը, ձայնարտաբերումի յստակութիւնը, արհեստավարժութեան (թեքնիքի) յղկուածութիւնը: «Սեւիլի սափրիչ» օփերայի Ֆիկարոյի քաւաթինան այլաբանօրէն ստացաւ ռազմաշունչ բնոյթ:

Յասմիկ Հացագործեան ընտրած էր սոփրանոյի ամենաբարդ արիաներէն մէկը՝ «Լա Թրաւիաթա»-յի «E strano»-ն, որ կը պահանջէ արհեստավարժական փայլք ու ճկունութիւն, երաժշտա-արտայայտչական խոր յուզականութիւն, որոնցմէ զուրկ էր երգչուհին: Ան՝ առանց նուագակցութեան, երգեց նաեւ «Հաւուն, հաւուն» տաղը: Մեր կարծիքով, երբ հայկական միջնադարի հոգեւոր թէ աշխարհիկ երգ-երաժշտութիւնը կը հրամցուի միաձայն եւ առանց նուագակցութեան, անհրաժեշտ է զայն կատարել ոչ հաւասարեցուած ձայնաշարով, ազատ կշռոյթով ու ելեւէջումով եւ հարազատ նրբերանգութեամբ: Կաղապարուած մեկնաբանութիւնը՝ ինչպէս տեղի ունեցաւ այդ երեկոյ, անհարիր է միջնադարի աւանդոյթներուն: Ուրիշ հարց, եթէ նոյն տաղը մշակուի դաշնակի, երգեհոնի կամ նուագարանային կազմի նուագակցութեան համար՝ ուր մեկնաբանական պահանջները բոլորովին այլ հարթութեան վրայ կանգնած պիտի ըլլան:

Տուտուկի պարզունակ, անհրապոյր ելոյթ մը ունեցաւ Գէորգ Ղաքաղեան:

Յայտագիրին մէջ գրուած էր՝ թէ Սայեաթ-Նովայի յօրինած հայկական ժողովրդական երգերէն պիտի կատարէ Մարինէ Միհրանեան: Նշենք, որ Սայեաթ-Նովայի երգերը աշուղական են եւ զայն ժողովրդական բնութագրելը հակագիտական է: Բաց աստի, ի զարմանս մեզի, հրամցուած երգերը Սայեաթ-Նովայի ստեղծագործութիւններուն ժամանակակից, էսթրատային մշակումներ էին: Եթէ կազմակերպիչներուն նպատակն էր ցոյց տալ Հայաստանի էսթրատային երաժշտութեան մակարդակը, նախընտրելի պիտի չըլլա՞ր արդեօք ներկայացնել մեր լաւագոյն էսթրատային երաժշտահաններու յօրինումները, ինչպէս՝ Ռ. Ամիրխանեան, Ա. Բաբաջանեան, Ա. Հէքիմեան եւ այլն, փոխանակ որակապէս կասկածելի փոխադրութիւններու:

Յիշենք, որ այս հանդիսութիւնը կատարուեցաւ Տիկ. Սուզան Մուպարաքի եւ մշակոյթի նախարար Ֆարուք Հոսնիի ներկայութեան:

Այս ընդհանուր միջակութեան մէջ, սակայն, իրենց բարձրարուեստ ելոյթներով փայլեցան երկու տաղանդաշատ արուեստագիտուհիներ: Մէկը՝ հանրայայտ, քաջահմուտ դաշնակահարուհի Սվետլանա Նաւասարդեանն էր, որ մերթ տենդոտ ու կրքոտ, մերթ նրբաքնքուշ ու թափանցիկ՝ բայց միշտ խորաթափանց մեկնաբանութեամբ նուագեց Շումանէն մանրանուագ մը եւ Խաչատրեանի «Գայեանէ» պալէէն երկու փոխադրութիւն՝ Անտանթէ եւ Սուսերով Պար: Ի դէպ, Նաւասարդեան միակն էր՝ որ ժամանած էր Եգիպտոսի մէջ Հայաստանի դեսպանին յատուկ հրաւէրով եւ դուրս էր Տ. Լեւոնեանի ընտրութեան ծիրէն:

Երկրորդը՝ սոփրանօ Անահիտ Մխիթարեանն էր, որ հրաշալիօրէն երգեց Լինտայի քաւաթինան «Լինտա տի Շամունի» օփերայէն: Ահա այս երգչուհին էր՝ որ 1999 Սեպտեմբեր 18-ին դարձեալ կը հիացնէր «Պլըքտանեան»-ի կիսալեցուն սրահը: Ամրակուռ արհեստավարժութիւն,

4

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք թէ Սեպտեմբեր 24-ին, մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկ. Վահան եւ Մարալ Ոսկեանններ (Լոս Անճելըս) բախտաւորուած են երկրորդ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Վան:

Այս ուրախ առթիւ ջերմօրէն կը շնորհաւորենք նորածինին ծնողքը, մեծ ծնողները՝ Տէր եւ Տիկ. Մկրտիչ եւ Անժէլ Ոսկեաններն ու Տէր եւ Տիկ. Նորայր եւ Արաքսի Տէօվլէթեանները, մաղթելով երջանիկ եւ երկար կեանք նորածին մանկան:

## ՁԵԿՈՅՑ

**ՀԱՅԱՍՏԱՆ-ԱՐՑԱԽ-ՍՓԻՒՌՔ**

**Համահայկական Խորհրդաժողովի Մասին**

Խօսք կ'առնեն

**Ն.Գ. ՍԵՐԿԷՅ ՄԱՆԱՍԱՐԵԱՆ**

ՀՀ Արտակարգ եւ Լիազօր Դեսպան

**ԵՒ ՀԱՄԱԺՈՂՈՎԻ ՄԱՍՆԱԿՑՈՂ ՊԱՏՈՒԻՐԱԿՆԵՐ**

Տեղի կ'ունենայ

Շաբաթ, 16 Հոկտեմբեր 1999-ին, երեկոյեան ժամը 9-ին

Հելիոպոլսոյ «Պըլըքտանեան» Հանդիսասրահին Մէջ

Ձեկոյցէն ետք ներկաներուն կը հրամցուի

Թէյ եւ Քաղցրաւենիներ

Սիրալիր Հրաւէր Բոլորին

## ԱՆԱՀԻՏ ՄԽԻԹԱՐԵԱՆԻ ԵՐԳԱՀԱՆԴԷՍԻՆ ԱՌԻԹՈՎ

3 ☞

զգայուն, խոհուն երաժշտականութիւն, յստակ առոգանութիւն, վարակիչ անհատականութիւն, կայուն բեմական կեցուածք, ահա երգչուհին յատկորոշող քանի մը բնութագիր:

Այս ամսուայ յայտագիրին առաջին մասին մէջ, Ա. Մխիթարեան յոխորտ հնչիւններով վեր հանեց «Կիլիկիա»-յի ներքին հմայքը, արագասահ ու ճկուն ոլորումներով գեղերգեց Մոցարթի «Ալելուիա»-ն, դիւրագլոր, հեշտալուր ելեւէջումներով շղարշեց Եոհան Շթրաուսի «One day when we were young» եւ «Ջղջիկը» օփերէթէն «Mein herr Marquis» երգերը, նրբութեամբ հմայեց Ա. Պարթեւեանի «Մայր եւ կոյս»-ը, եւ ինքնավստահ վիրթիւոզականութեամբ հրահրեց Լինտայի քաւաթինան «Լինտա տի Շամունի» օփերայէն: Երկրորդ մասը յատկացուած էր միայն հայ երաժշտահաններու ստեղծագործութիւններուն: Եկմալեանի պատարագէն քաղուած «Ամէն հայր սուրբ»-ը Մխիթարեան երգեց առանց նուագակցութեան, յարուցանելով նոյն հարցերը՝ զոր նշեցինք Յ. Հացագործեանի «Հաւուն, հաւուն» տաղին առնչութեամբ: Ասիկա երգահանդէսին միակ խոցելի կողմն էր: Կոմիտաս վարդապետի «Կռունկ»-ը յորդուն էր ներքնայոյզ ողբերգականութեամբ, Սայեաթ-Նովայի «Քանի վուր ջան իմ»-ը՝ թաւշային զգայականութեամբ, Կոմիտաս վարդապետի «Կաքաւիկ»-ը, թափանցիկութեամբ ու քնքշութեամբ: Վերջին երկն էր Ա. Այվազեանի «Երեւան»-ը՝ բովանդակութեամբ ոչ խոր ստեղծագործութիւն մը, որ սակայն իր արտաքին շքեղութեամբ եւ մանաւանդ երգչուհիին ինքնաբուխ ու անկեղծ մեկնաբանութեամբ ունկնդիրներուն խանդավառութիւնը հասցուց իր բարձրակէտին: Յայտագիրէն դուրս հրամցուց Բ. Կանաչեանի «Օրօր»-ը:

Դաշնակով կը նուագակցէր Վասիլի Ռոլիչ: Անոր սահուն, ճկուն նուագածութիւնը լաւ յենարան ստեղծեց երգչուհիին: Սակայն Մոցարթի «Ալելուիա»-յին մէջ աւելորդ էր ոտնակի (փետալ) առատ գործածութիւնը՝ որ քողարկեց հաճճարեղ դասականի ոճին բնորոշ յստակ հնչողականութիւնը: Ե. Շթրաուսի «Mein herr Marquis»-ը վիեննական վալսի գեղեցիկ նմոյշ մըն է, ուր փափաքելի էր լսել այդ դպրոցին յատուկ վալսի կշռոյթը, որուն երկրորդ քառորդը ընդունուած է բուն բախումէն առաջ նուագել: Ռոլիչ մենանուագեց Պախէն «Սիցիլիանա»՝ ուր դարձեալ ոտնակի շռայլ գործածութիւնը խախտեց հնչողութեան պարզորոշութիւնը, եւ Խաչատրեանի «Դիմակահանդէս»-էն քաղուած վալսը՝ ուր կը պակսէր երանգաւորումը:

Հարկ է նշել, որ Մխիթարեանի նման երգչուհիի մը համար «Պըլըքտանեան»-ին կամարները նեղ էին: Փափաքելի պիտի ըլլար՝ որ նման արժէքներ ելոյթ ունենային նաեւ եգիպտական մակարդակով, օտար հասարակութեան առջեւ: Երկու տարի առաջ, նոյն սրահին մէջ ելոյթ ունեցած հռչակաւոր սոփրանօ Էմմա Պապիկեանէն ետք, ասիկա երկրորդ երգահանդէսն է՝ որ չի շրջանցեր գաղութային սահմանները: Նշենք նաեւ, որ Հայաստանի Հանրապետութեան անկախութեան վերջին երեք տարելիցներուն, յաջորդաբար «Պըլըքտանեան»-ին մէջ հրաւիրուեցան հայրենի երեք սոփրանոներ՝ Է. Պապիկեան (1997), Յ. Հացագործեան (1998) եւ Ա. Մխիթարեան (1999): Արդեօք միայն սոփրանոներո՞ւն կոչումն է անկախութիւն ոգեկոչել: Բաց աստի, անկախութեան տարեդարձը համահայկական ուրախութեան եւ հպարտութեան շարժառիթ մըն է եւ ոչ միայն արեւելահայութեան: Հետեւաբար, չկա՞յ արդեօք արեւմտահայ երաժիշտ մը՝ որ յանձն առնէ այս առիթով հրամցնել իր արուեստը եւ ոգենշել տարեդարձը: Ի վերջոյ, ո՞ւր է եգիպտահայութեան մասնակցութիւնը այս տօնակատարութեան՝ թէկուզ մէկ արտասանութեամբ մը, երգով մը կամ նուագով մը:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Ողբ. Լիոնի Ղազարեանի (ԱՄՆ) մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան, Պր. Աւետիս Մովսէսեան կը նուիրէ 20

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

*Իրենց Հոգեհատորներուն՝ Ողբք. Անի եւ Ռիչմոն Սուլթանեաններու անմեռ եւ քաղցր յիշատակին, Տիկ. Աստղիկ Արապեան, Տէր եւ Տիկ. Պերճ Օտապաշեան կը նուիրեն.*

| | |
|---|---|
| *Եկեղեցւոյ Պայծառութեան* | *200* |
| *Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան* | *200* |
| *Գերեզմանատանց բարեզարդման* | *200* |
| *Գահիրէի Աղքատախնամին* | *200* |
| *Այծեմնիկ Հանգստեան Տան* | *200* |
| *«Արեւ»ին* | *200* |
| *«Յուսաբեր»ին* | *200* |
| *«Ջահակիր»ին* | *200* |

(Ստանալ Գահիրէի Ազգ. Առաջնորդարանէն)

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆԻ ՃԱՇԻ ՍԵՂԱՆԻՆ

Գալուստեան Ազգ. Վարժարանի տնօրէնութիւնն ու ուսուցչական կազմը կը սգան իրենց վաստակաշատ պաշտօնակցուհիին՝ Տիկին Լիոնի Ղազարեանի մահը (Մ.Ն.):

Այս տխուր առթիւ, վարժարանի պաշտօնէութիւնը 40 Ե.Ո. կը նուիրէ:

## ՍՏԱՑԱՆՔ

*Շնորհակալութեամբ ստացանք Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն, Տիրան Արք. Ներսոյեանի՝ «ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑԻ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՈՒՂՂԱՓԱՌ ԵԿԵՂԵՑՒՈՅ» գիրքը, որ անգլերէնէ թարգմանած է Հերմինէ Գ. Աճառեան: Մատենաշար՝ «1700-ամեակ Հայկական Քրիստոնէութեան» Փարիզ: Մաքուր տպագրութիւն՝ 40 էջ:*

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**1998–1999 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ**

Կիրակի, 21 Նոյեմբեր 1999

Կը խնդրուի նկատի ունենալ ու չխաչաձեւել

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

**ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ**

Ուրբաթ, 3 Դեկտեմբեր 1999

**1998–1999 ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ**

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ՅԱՋՈՐԴ ԹԻՒՈՎ

*Տեղի սղութեան պատճառաւ, յաջորդ թիւով պիտի փակենք աշակերտ Արփինէ Շապոյեանի շարադրութիւնը՝ «Երեւանն Իմ Քաղաքն է»:*

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ՆԱԽԱՐԱՐԸ ԵԼՈՅԹ ՄԸ ՈՒՆԵՑԱՒ ՄԱԿ-Ի ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻՆ ԱՌՋԵՒ

1 ☞

Նախընթաց օր, հանդիպում մը կայացաւ Հայաստանի եւ Ատրպէյճանի, ինչպէս նաեւ Ամերիկայի Արտաքին Նախարարներուն միջեւ, վերջինիս Նախարար՝ Մատլէն Օլպրայթի նախաձեռնութեամբ: Տեսակցութեան ընթացքին կողմերը իրենց գնահատանքն ու դիրքորոշումները ներկայացուցին առկայ իրավիճակի մասին:

Երէկ կայացաւ Ոսկանեան-Զուլֆիքարով երկրորդ հանդիպումը, որու ընթացքին տեղի ունեցաւ գործնական հարցերու քննարկում՝ կողմերու համար ընդունելի բանակցային հիմերը յստակացնելու ուղղութեամբ:

## ՄԱՀԱԶԴ

*Արհիապատիւ Ռաֆայէլ Եպս. Պայեան, վաստակաւոր առաջնորդ Աղեքսանդրիոյ Թեմի Կաթողիկէ Հայոց, իր մահկանացուն կնքեց անցեալ Երկուշաբթի 20 Սեպտեմբեր 1999, Լիբանանի մէջ:*

*Ս. Պատարագ եւ պաշտօն հանգստեան կատարուեցան իր հոգիին յաւիտենական հանգիստին համար Կիրակի, 26 Սեպտեմբերին:*

*Հանգուցեալ հայրապետը ծնած է Զղորդա, Լիբանան, 1914-ին: Զմմառեան Կաթողիկոսական Միաբանութեան անդամակցած է եւ քահանայ ձեռնադրուած 1937-ին: 12 Դեկտեմբեր 1958-ին, Կաթողիկոսական Սինհոդոսին կողմէ ընտրուած է օգնական եպիսկոպոս յաջորդութեան իրաւունքով երջանկայիշատակ Յակոբ Արքեպս. Նէսիմեանի, որուն յաջորդած է 1960-ին, եւ առաջնորդի պաշտօնը կատարած է մինչեւ իր հրաժարումը տարիքի եւ հիւանդութեան պատճառով 9 Մարտ 1989-ին: Անկէ ետք քաշուած է Լիբանան, Զմմառի Միաբանութեան վանքին իր յարկին տակ: Ծանր անհանգստութեան հետեւանքով փոխադրուած է Քրիստոս Թագաւոր կղերի հանգստեան տան մէջ, Պէյրութ, ուր յետ երկար հիւանդութեան իր աչքերը փակեց առ Աստուած լի հոգեւոր մխիթարութիւններով:*

*Աղօթեցէք իրեն հոգւոյն յաւիտենական հանգիստին համար:*

**ԴԻՒԱՆ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ**

## ՏՕՆ ՍՐԲԱԶԱՆ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻՆ

Յովհաննէս Պօղոս Բ. Սրբազան Քահանայապետին ԻԱ-րդ տարեդարձին առթիւ, Արհիապատիւ Տէր Պետրոս Եպիսկոպոս Թարմունին, Առաջնորդ Աղեքսանդրիոյ Կաթողիկէ Հայոց, Գոհաբանական Հայրապետական Ս. Պատարագ պիտի մատուցանէ Կիրակի 27 Հոկտեմբեր 1999, երեկոյեան ժամը 7-ին, Աթոռանիստ եկեղեցւոյ մէջ, թիւ 36, Սապրի Ապու Ալամ փողոց - Ապտին - Գահիրէ:

Ամէն հայ սիրով հրաւիրուած է մասնակցելու սոյն արարողութեան:

**ԴԻՒԱՆ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆԻ**

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ի գիտութիւն Աղեքսանդրիոյ մեր հաւատացեալ ժողովուրդին կը տեղեկացնենք թէ տեղւոյս Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ Հոգաբարձութեան եւ Ազգային Իշխանութեան տնօրինութեամբ, կարգադրուած է որ յառաջիկայ Կիրակի 17 Հոկտ. 1999-ի առաւօտեան, Ս. պատարագի մատուցման մասնաւոր հոգեհանգստեան արարողութիւն կատարուի, նորոգ վախճանեալ Ս. եկեղեցւոյս նախկին Հոգեւոր Հովիւ, Արժանապատիւ

**Տ. ԳՐԻԳՈՐ ՔՀՆՅ. ՕՀԱՆԵԱՆԻ**

վախճանման քառասնօրեայ լրման առթիւ:

Թող Տէրը լուսաւորէ իր պաշտօնէի հոգին:

**ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**
**Ս. ՊՕՂՈՍ-ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ**

## Հայաստան - Սփիւռք Համաժողովը Վերջ Գտաւ Ապագայի Վառ Յոյսերով

1 ☞

*Քննարկուած կարեւոր հարցերէն էր նաեւ երկ-քաղաքացիութեան օրէնքին ընդունումը, որը բաւականին դժուար իրագործելի ծրագիր մնալով հանդերձ, անյետաձգելի նպատակ էր տնտեսութեան զարգացման համար: Համագումարին մասնակից գործարար մարդոցմէն շատեր, պատրաստակամութիւն յայտնեցին աշխատանքային բազմաթիւ տեղեր ապահովել՝ եթէ կրկնակի քաղաքացիութեան օրէնքը թոյլատրուի Հայաստանի մէջ: Սակայն եւ այնպէս, դրական որոշ արտայայտութիւններէ զատ, Հայաստանի պետութեան ղեկավարները, ոչ մէկ յստակ պատասխան տուին երկ-քաղաքացիութեան օրէնքի ընդունման մասին, առնուազն մօտիկ ապագային...:*

*Հայաստան - Սփիւռք խորհրդաժողովին ելոյթները, որոնք սկսած էին ՀՀ նախագահ Ռոպերթ Քոչարեանի, ՀՀ վարչապետ Վազգէն Սարգսեանի, Ազգային Ժողովի նախագահ Կարէն Դեմիրճեանի, ՀՀ արտաքին գործերու նախարար Վարդան Օսկանեանի, Ղարաբաղի Հանրապետութեան նախագահ Արկադի Ղուկասեանի կողմէ, շարունակուեցան ամէն գաղթօճախի պատասխանատու դէմքերու «պաշտօնական» պատգամաւոր առանձին ելոյթներով: Տեղի ունեցան նաեւ քննարկումներ, նիստերու հետ առընթեր՝ քաղաքական, հաղորդակցական - լրատուական, մշակութային եւ տնտեսական ծրագիրներով: Խորհրդաժողովի նիստերէն դուրս, կազմակերպուեցան այցելութիւններ, գեղարուեստի եւ արուեստի խումբերու համերգներ, ճաշկերոյթներ, ընդունելութիւններ՝ որոնք սերտացուցին շփումները համագումարի ընթացքին:*

*Սոցեալ-Դեմոկրատ Հնչակեան կուսակցութիւնը կը մասնակցէր այս համաժողովին, միաժամանակ հանդիպումներ ունենալով, կուսակցութեան վարկն ու դիրքը վերականգնելու համար Մայր հայրենիքի մէջ: Եգիպտոսէն՝ կուսակցութիւնը կը ներկայացնէր ընկ. Վրէժ Սէֆէրեան, որ ներկայացուց նաեւ «Ջահակիր»ի շրջանակին կարծիքն ու խօսքը խորհրդաժողովին ընթացքին եւ միաբանութիւնը վերականգնելու հանդիպում - քննարկումներով: Այսպիսով, ՀՀ արտաքին գործոց նախարար Վարդան Օսկանեանի յուսադրիչ գործերով՝ Հայաստան - Սփիւռք համաժողովը վերջ գտաւ վառ յոյսերով, դարձեալ գումարելու համար 2000 թուականին:*

**ԵՐԵՒԱՆ** **ՀԱՄՕ ՄՈՍԿՈՖԵԱՆ**

## «ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ» ՀԱՄԱԺՈՂՈՎԻՆ Ս.Դ. ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿԵՐ ՎԱՀՐԻՃ ՃԵՐԷՃԵԱՆԻ ԽՕՍՔԵՐԷՆ



*չարունակեն գործել: Ուստի պէտք է վերաբացուին այդ գործարանները եւ սկսին արտադրել եկամուտ ապահովելով երկրին եւ գործ հայթայթելով անգործ բանուորութեան: Այս պարագային կառավարութիւն եւ Աժ շատ վճռական որոշում կայացնելու հարկադրանքին տակ կը գտնուին:*

** Տնտեսական հարցերու մասին մենք ունինք տեսակէտներ որոնք կը փոխանցենք այս հարցով նկատի առնուած յանձնաժողովին: Յարդ եղած joint venture կամ անձնական ներդրումներու շատ կարեւոր մէկ տոկոսին ձախողութեանց պատճառը այն է որ արտասահմանցի գործարար մարդը որ ներդրում կատարեց չունեցաւ ազնիւ գործակից կամ կարող գործի ընկեր: Ձախողած գործերը մեծ անվստահութիւն առաջ բերին:*

**ԵՐԿՔԱՂԱՔԱՑԻՈՒԹԵԱՆ ՀԱՐՑ**

** Մենք համաձայն ենք որ սփիւռքահայը ունենայ իրաւունք նաեւ Հայաստանի քաղաքացի ըլլալու: Սակայն այս շատ նուրբ եւ բարդ հարց է որ պէտք է յուրջ ուսումնասիրուի:*

**ԼՐԱՏՈՒԱԿԱՆ ԵՒ ԲՐՈԲԱԿԱՆՏԻ ՀԱՐՑԵՐ**

** Անհրաժեշտ է զօրացնել լրատուական միջոցները.*

*ա- Զօրացնել Երեւանի եւ Ղարաբաղի ռատիօ կայանները որպէսզի սփռումը հասնի սփիւռք:*

*բ- Հայաստանի հեռուստատեսութիւնը որ եկաւ եթեր եւ կը դիտուի սփիւռքի մէջ, շատ տկար է որպէս փրոկրամ եւ անհետաքրքիր: Զայն պէտք է դարձնել հետաքրքիր:*

*գ- Լրատու յատուկ մարմին մը օրը օրին սփիւռքի մամուլին պէտք է հասցնէ հայաստանեան թարմ հետաքրքրական լուրեր՝ քաղաքական,, գիտական, մշակութային մարզերը ընդգրկող:*

*դ- Հայաստանի եւ Լեռնային Ղարաբաղի հարցերն ու տեսակէտները պարզող պարբերաթերթի մը հրատարակութիւնը բազմաթիւ լեզուներով եւ գրաւիչ տպագրութեամբ պէտք է հրատարակուի կանոնաւորաբար եւ ձրի բաժնուի օդանուներու օտար ճամբորդներուն եւ հայ մամուլին:*



*Համաժողովին՝ Հնչակեան կուսակցութեան պատուիրակութեան անդամներէն, ձախէն աջ ընկերներ՝ Վրէժ Սէֆէրեան (Եգիպտոս), Ճորճ Յակոբեան (Հայաստան), Սեդրակ Աճէմեան (Լոս Անճելըս) եւ այլ անդամներ:*

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈԲԲԻԶՄ**

** Մեծ եւ ազդու զէնք է լոպպիզմը: Անհրաժեշտ է լրջօրէն կազմակերպել այս մարզը: արտասահմանի մէջ մենք ունինք հայ նախարարներ, երեսփոխաններ, դեսպաններ եւ պետական բարձր պաշտօնեաներ: Խորհրդաժողովի հրաւիրել այդ հայրենակիցները, ինչ որ կ'ընեն ուրիշ երկիրներ: Այս գործը պէտք է նախաձեռնէ Հայաստանի Արտաքին Գործերու նախարարութիւնը չուտափոյթ եւ ծրագրուած կերպով:*

**ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ**

** Մենք կ'առաջարկենք այս հարցը քննել ու ծրագրել Հ.Բ.Ը.Մ.-ի, ՀՕՄ-ի եւ նման այլ բարեսիրական միութիւններու հետ: Իսկ Հայաստան Համահայկական Հիմնադրամը պէտք է չարունակէ իր ազգօգուտ գործը: Հոգաբարձուներու խորհուրդը եւ գործադիր վարչութիւնը աշխատանքային նոր, արդիական սկզբունքներով յառաջ տանին իրենց վստահուած գործը:*

**ՀՈՎԱՆՈՑԱՅԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆ**

** Մենք կ'առաջարկենք «հովանոցային կազմակերպութիւն» նշանակելէ առաջ, պատրաստուի անոր կազմական կանոնագիրը, ճշդուին անոր իրաւասութեանց սահմանները եւ այլն: Ուստի մենք դէմ ենք որ հոս ձայներու մեծամասնութեամբ որոշուի նման մարմին: Այս հարցը յուրջ ուսումնասիրութեան կը կարօտի: Այդ մարմինը պէտք է կազմել ներկայացուցիչներէ: Հոն պէտք է նկատի ունենալ մասնագէտներ:*

** Շատ ու շատ զգոյշ պէտք է ըլլանք այս խորհրդաժողովին tradition-ը պահելու: Եթէ ձախողի ան, յառաջիկային դժուար կ'ըլլայ դարձեալ կազմակերպել նման խորհրդաժողով:*

**ԵԶՐԱԿԱՑՈՒԹԻՒՆ**

** Անհրաժեշտ է որ սփիւռքի մէջ գործող կազմակերպութիւններու միջեւ սկսին իրարհասկացողութիւն, համագործակցութիւն, ազգային, կրօնական, կրթական կառոյցներու եւ գործերու չուրջ:*

** Միւս կողմէ շատ կարեւոր է որ 1956-ին ծայր տուած ու ցարդ չարունակուող տագնապը՝ Էջմիածնայ Կաթողիկոսութեան եւ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան միջեւ, որուն խորքը քաղաքական էր, իր լուծումը գտնէ իրարհասկացողութեամբ, որպէսզի կարգ մը արգելքներ ու տարաձայնութիւններ վերանան համագործակցութեան ճամբուն վրայ: Եկեղեցին պէտք է ըլլայ անկախ եւ կատարէ իր հոգեւոր միսիան:*

** Լաւագոյն տրամադրութեամբ յաջողութիւն կը մաղթենք ազգովին նախաձեռնուած եւ սկսուած այս մեծ գործին:*

## ՇԱՐԱԴՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՄՐՑԱՆՔ



իրենց ծնողներին: Եւ այդ զարմանալի զգացումը Երեւան դարձրեց ինձ համար հեքեաթային քաղաք:

Ես հպարտ զգացի ինձ, որ ես հայ եմ եւ կարող եմ ասել, որ Երեւանը նաեւ իմ քաղաքն է, չնայած, որ ես ապրում եմ հեռու իմ ծննդավայրից, իմ հայրենիքից: Այնքան սիրեցի Երեւանը, որ չէի ուզում հեռանալ նրանից:

Երեւանից հեռու, ես յիշում էի թէ ինչպէս ամէն առաւօտ պատուհանից դիտում էի երազային Արարատը ու հպարտանում, որ ես հայ եմ:

Շատ դժուար է գտնուել հեռու հայրենիքից յիշել, սիրել ու կարօտել նրան: Երեւանը բոլոր հայերի համար սուրբ քաղաք է: Մենք պիտի չմոռանանք նրան, որքան էլ հեռու գտնուենք, քանի որ մենք հայ ազգի զաւակներ ենք եւ որովհետեւ Երեւանի պէս չքնաղ մայրաքաղաքը արժանի է իր ազգի սիրուն, հպարտութեան ու կարօտին:

**ԱՐՓԻՆԷ ԱՐՄԷՆ ՇԱՊՈՅԵԱՆ**
Ա. Երկրորդական
16 Տարեկան

*Գահիրէ, 20 Մայիս 1999*

# ԻՒՐՕՐԻՆԱԿ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ

**ՏԻԳՐԱՆ ԳԷՈՐԳԵԱՆ**

*Խաղողը՝ պտուղներու թագուհին:*

Երեւանի «Ամարաս» տպագրական հաստատութեան կողմէ, 1997 թ. լոյս տեսած է Միքայէլ Զաքարի Մարգարեանի *«Վայելչական Գինեբանեայ. Գիրք Գինեմեծար եւ Խորհրդապու Առաքինութեանց»* պատկերազարդ եւ գունատիպ հատորը, որուն հրատարակութիւնը իրականացած է Վեդիի Գինիի Գործարան Բաժնետիրական Ընկերութեան մեկենասութեամբ:

Հայերէն եւ ռուսերէն լեզուներով գրուած, այս հետաքրքրքրական գիրքին հայերէն բաժինները միայն, կ'արժէ որ համառօտ ներկայացնեմ «Ջահակիր»-ի ընթերցողներուն ուշադրութեան:

Էջ 7-13-ի՝ Վասն գինեւէտ խաղողի, եւ Վասն գինու վայելչական «Առասացութիւններ»-ը ներկայացնելէ առաջ, հարկ կը նկատեմ բացատրել գիրքին խորագրին իմաստը՝ *Վայելչական Գինեբանեայ*. պատշաճօրէն՝ ինչ որ խօսուած է գինիի մասին: Անմիջապէս յայտնեմ՝ որ *գինեբանեայ* բառը, նորաբանութիւն է, եւ հեղինակին բառակերտումն է, հատորին բովանդակութեան պատշաճող:

Հնէաբուսաբաններուն կատարած պեղումներուն նիւթական վկայութիւններով՝ հաստատուած է, որ Հայկական Լեռնաշխարհին մէջ՝ գինեգործութիւնը եղած է գրեթէ նոյնքան հին, որքան՝ խաղողագործութիւնը:

Սկսելով նայիրեան եւ ուրարտական ժամանակաշրջաններէն, հասած են խաղողի ածխացած սերմեր, խաղողագործական գործիքներ, հնձաններ, գինեգործական կարասիք, սկիհ եւ ըմպանակ, փարչեր, գաւեր, մառաններ. ինչպէս նաեւ ճարտարապետական կառոյցներու վրայ՝ քանդակագործական կերպաւորումներ, եւ ժողովրդական բանահիւսութեան մէջ ալ՝ յիշատակութիւններ:

Գինին՝ իբրեւ սննդամթերք եւ կենցաղի անհրաժեշտ պարագայ, իսկապէս յարգի եղած է ուրարտացիներու կեանքին մէջ. այս իրողութիւնը կը փաստեն Թեյշեբաինի քաղաքին եօթը գինեպահոց մառանները՝ որոնցմէ մէկուն մէջ գտած են 480 տակառներ, 37000 տեքալիթր ընդհանուր տարողութեամբ:

Նոյնքան հետաքրքրական են Թեյշեբաինի ամրոցին բարձրադիր մասին վրայ, 100 արեւահայեաց հարթակները, ուր կարասներ տեղադրելով, արեւահարութեամբ հարըստացուցած են իրենց պատրաստած գինիներուն համը եւ բոյրը, կայունացուցած՝ անոնց որակական բարեմասնութիւնները, եւ տեւականացուցած՝ գործածութեան ժամկէտը:

Հերոդոտոս պատմիչն ալ կը հաւաստէ, թէ Արածանիի հոսանքն ի վար, գետանաւերով կը փոխադրուէին հայաստանեան գինիները՝ վաճառահանելու համար Բաբելոնի եւ Միջագետքի դրացի երկիրներու մէջ:

Նախնադարեան եւ հնադարեան Հայաստանի մէջ, ներքին եւ արտաքին շուկայի պահանջարկով, կը բարգաւաճի գինեգործութիւնը. այսպէս, Ստրաբոն աշխարհագիրն ալ կը հաղորդէ, թէ Արաքսենի մէջ, խաղողենիի մէկ որթաթուփին բերքը՝ բաւարար է չորս տասնեակ լիթր գինի պատրաստելու համար:

Իբրեւ հայրենական մշակոյթի անբաժանելի մաս, հայաստանեան խաղողագործութիւնն ու գինեգործութիւնը՝ պատմութեան նոր ժամանակներու ընթացքին, տնայնագործական եղանակները փոխարինած է բազմակիօրէն նոր եղանակներով, բազմապատկելով իր արտադրական ծաւալները եւ եկամուտը. ատիկա տեղի ունեցած է յատկապէս ԺԹ. դարու վերջին քառորդին ընթացքին, երբ դրամատիրական յարաբերութիւնները սկսած են զարգանալ:

Ներսէս Թաիրեանցի գործարանը, ապա՝ Դաւիթ Սարաջեանի, Կարապետ Աֆրիկեանի, Գեոզալեան եղբայրներու, Համբարձում Սողոմոնեանի գինեգործական ձեռնարկութիւնները հիմք հանդիսացած են հայկական արդիւնաբերական գինեգործութեան: 1920 թ., արտադրական այլ ձեռնարկութիւններու շարքին՝ ազգայնացուած են նաեւ գինեգործարանները:

Սովետական իշխանութեան տարիներուն, մինչեւ իսկ եղած են աստեղային ժամանակներ՝ երբ ամբողջ աշխարհի մէջ փառաւորուած է հայկական գինեգործութիւնը եւ գոնեակագործութիւնը:

Իրաւական եւ տնտեսավարումի նորօրեայ յարաբերութիւններու մէջ, երբ՝ մէկ կողմէ սեփական ձեռներէցութիւն դրսեւորելու հնարաւորութիւններ տրուած են, իսկ միւս կողմէ՝ շուկայական մրցակցութեան բերումով, արտադրութեան այս ճիւղը գոյատեւելու համար՝ անհրաժեշտ է տեսականիի բազմազանութիւն եւ հանրօրէն ընդունելի որակ ապահովել:

Հարբե՞լ, թէ արբենալ, էջ 23-24: Գեղեցիկ, քնքուշ, նրբին զգացողութիւններու բնութագրական արտայայտութիւնն է *արբենալը*, իսկ *հարբիլը*՝ հոգեկան եւ ֆիզիքական վիճակի խեղդուածութիւնն է,.ալգոլի ներգործութեամբ:

Ալգոլամոլութիւնը՝ հիւանդութիւն է, որ յառաջ կու գայ ոգելից ըմպելիներու յաճախական, ոչ-չափաւոր գործածութեան հետեւանքով, կը բնութագրուի առանց նկատմամբ դրսեւորուող հակումներով, եւ կը յանգի հոգեկան ու մարմնական խաթարումներու եւ խախտումներու:

1849 թ., ալգոլամոլութեան մասին առաջին անգամ անդրադարձած է շուէտացի գիտնական բժիշկ Մ. Հուսսը:

Հին ու նոր այսպիսի գինեզեղուն պատումներ, էջ 25-54: Ներկայացուող պատումները կը կարդացուին հետաքրքրութեամբ, կ'արժէ կանգ առնել հայ ժողովուրդի պատմողական արուեստի՝ *թամադայական խօսքի* մասին, անգուգական թամադա՝ Միքայէլ Խանոյեանի գնահատումով. *«Իսկական թամադան՝ քայլող հանրագիտարան է, եւ իր իմացութեամբ համեմում է իր բաժակաճառը՝ տեղին աւելիքով: Եթէ հարկաւոր է այս կամ այն արտայայտութիւնը, միտքը կամ գաղափարը յարմարցնել որոշակի նպատակի, նա իրեն իրաւունք է վերապահում այդ էլ անել՝ մարդկանց լաւ տրամադրութիւն, պահի գեղեցկութեանն ի շահ եւ բարի վայելումի համար»*:

Ասոր կարելի է կցել՝ էջ 84-92, Եւ թամադան ասաց, իմաստախօսութիւններու պսականին:

Հպանցիկ տեղեկութիւններ զանազան ալկոհոլային խմիչների մասին, որ առաւել գործածական են արդի աշխարհում, էջ 55-61: Շատ հպանցիկ եւ հետաքրքրական տեղեկութիւններ կը տրուին, արդի աշխարհին մէջ գործածական՝ Մատէյրա, Լիքէօր, Խերէս, Օղի, Ուիսքի, Ճին, Գոնեակ, Փորթուէյն, Ռոմ, Շամփանեը, Սիտր ոգելից ըմպելիներուն մասին:

Խաղողի եւ Գինու Միջազգային Կազմակերպութիւն, էջ 60-61: 1874 թ., Ֆրանսայի, Իտալիոյ, Զուիցերիոյ, Աւստրիոյ եւ Գերմանիոյ մասնակցութեամբ տեղի ունեցած է խաղողագործութեան առաջին համագումարը:

1924 թ. կը կազմակերպուի Խաղողի եւ Գինիի Միջազգային Կազմակերպութիւնը, որուն գլխաւոր նպատակներն են՝ խաղողագործութեան եւ գինեգործութեան բնագաւառին մէջ՝ համաշխարհային փորձի կուտակում, փորձի փոխանակում, միահամուռ պայքար խաղողի վնասատուների դէմ, եւ այլն:

Գինեզեղուն չափածոյ. Քաղուածքների Ընտրանի. էջ 62-83: Անակրէոն, Յ. Թումանեան, Ե. Չարենց, Դ. Վարուժան, Մ. Մեծարենց, Սարմէն, Գ. Սարեան, Պ. Սեւակ, Հ. Յովհաննիսեան, Վ. Դաւթեան, Շէյքսփիր, Ա. Փուշքին, Կ. Ափոլինէր, Շ. Պոտլէր, Ռուդաքի, Բաբա Թահէր Օրիանի, Խաքանի, Հաֆէզ, Ճելալէտտին

4




## ԻՒՐՕՐԻՆԱԿ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ

3

Ռումի, Ազարիա Ջուղայեցի, Գալուստ Ամասիացի, կը կազմեն գինին մեծարող չափածոյին պսականին:

Այստեղ կարելի է ներկայացնել նաեւ էջ 111-119-ի Խայյամական Գինեբանեայ բաժինն ալ: Հեղինակը՝ Միքայէլ Մարգարեան, խայեամական գինեմեծար քառեակներէն՝ հայերէն կերպաւորուած յիսուն քառեակ ընտրած է, *որ բարեհնչիւնութեան շահերէն թելադրուած, ոչ թէ բնագրին անաղարտ նոյնականն է, այլ անոր իմաստային համարժէքը՝ նորովի ոճաւորուած: Ներկայացուող խայեամական քառեակները պէտք է ընկալել՝ ոչ իբրեւ թարգմանութիւն, որքան՝ փոխադրութիւն:*

Ինչ ուտեստների հետ եւ ինչպէս ներդաշնակել ոգելից ըմպելիների ճաշակումը, էջ 93-96:

Մարդկութիւնը՝ գինիին մէջ տեսած է ոյժ, առոյգարարութիւն եւ խնդութիւն. գինին՝ բարձրակարգ եւ հարուստ սննդամթերք է:

Գինին կը յանձնարարուի վայելել՝ դանդաղօրէն, անշտապ, ոչ մեծ ումպերով՝ անոր զգայաբանական արժանիքները ըմբոշխնելու եւ անով ալ հիանալու համար: Այս կերպով պէտք է վարուիլ յատկապէս աղանդերային եւ լիքէօրային գինիներ ճաշակելու ժամանակ. եւ ճաշակել՝ միայն թափանցիկ սկահակով, գոյնին երանգը եւ փայլը նշմարելով:

Խորոված եւ իւղոտ մսեղէն կերակուրներուն հետ յարմար են՝ սպիտակ կամ կարմիր, սակաւաթունդ, շաքարազուրկ գինիները:

Սպիտակ՝ սակաւաթունդ, շաքարազուրկ գինիները յարմար են ձկնեղէն կերակրատեսակներուն, նաեւ՝ պանիրներու հետ:

Մարսալան՝ արգանակային ճաշատեսակներու հետ: Կարմիր՝ սակաւաթունդ, շաքարազուրկ գինիները՝ մսեղէն երկրորդ ճաշատեսակներու հետ:

Կիսաքաղցր գինիները կանոնակարգուած են որսեղէն ճաշատեսակներու, տապկած թռչնամիսի եւ պաղ խորտիկներու հետ լաւագոյն ներդաշնակուող ըմպելի:

Մուսքաթ գինին՝ քաղցրաւենիներու եւ անուշոյթի հետ յաջողակի կը զուգորդուի, իսկ սակաւաթունդ՝ շաքարազուրկ շամփայն գինիները եւ անոնց քաղցր կամ կիսաքաղցր տարբերակները երաշխաւորուած են իբրեւ լաւագոյն ու սազական՝ պաղպաղակի, խմորեղէններու եւ միրգերու հետ:

Խերէս եւ Մատերա թունդ գինիները՝ լաւագոյն կը ներդաշնակուին ճարպոտ արգանակային ապուրներուն, տաւարենի եւ խոզենի մսեղէնով պատրաստուած ուտելիքին:

Մինչեւ ճաշկերոյթի սեղանին պատրաստ ըլլալը, ախորժաբերութեան համար՝ կարելի է մէկ-երկու ումպ Փորթուէյն կամ Մատերա ճաշակել:

Խնճոյքի կամ ճաշկերոյթի ընթացքին, եթէ նախատեսուած է տարբեր տեսակի գինիներ հրամցնել սեղանակիցներուն, սահմանակարգուած է՝ որ գինեխումը սկսին սակաւ թնդութիւն պարունակող գինիներով, սակաւ առ սակաւ ըմպեն աւելի թունդ գինիները, ամրապնդուելով՝ ուտելիքով: Ինչ կը վերաբերի քաղցրութեան պարունակութեան, նախ կը խմեն շաքարազուրկ գինիներ, հետզհետէ՝ քաղցր գինիները(*):

Ճաշին կամ ընթրիքին, եթէ մէկ ճաշատեսակ պիտի մատուցուի՝ ընտանի թռչնամիս կամ տապկած խոզի միս, ապա անոր հետ վայելչական է կարմիր սակաւաթունդ շաքարազուրկ գինին:

Սուրճի կամ թէյի հետ՝ երբ կը մատուցուին քաղցրաւենիներ, զանազան խմորեղէն թխուածքներ, պտուղներ, ապա այդ բոլորին հետ յարիր է՝ լիքէօրներու, աղանդերային գինիներու, գոնեագներու կամ շամփայն գինիի վայելումը:

Էջ 97-98, Արտաշատի Գինու Գործարանը: Իբրեւ արդիւնաբերական գինեգործութեան մայր օճախ, գործարկուած է 1905 թ., եւ առկէ ի վեր դարձած հանրապետութեան առաջատարներէն մէկը, անցնելով պատուաբեր ճանապարհ, մարդոց հրամցնելով գովարժան ըմպելիներ: Միջազգային համտես-ստուգատեսներուն՝ յատկապէս *Այգեշատ* բարձրակարգ գինին պարգեւատրուած է վեց ոսկեայ եւ հինգ արծաթեայ մրցանակային մետալներով, իսկ *Գետաշէն* աղանդերային գինին՝ երեք ոսկեայ եւ երկու արծաթեայ մրցապարգեւներով:

Էջ 193-206, Տեղեկութիւններ Վեդիի Գինու Գործարան Բաժնետիրական Ընկերութեան Գինեգործական արտադրատեսականու վերաբերեալ:

Էջ 166-176, Ժողովրդական բժշկութեան դեղատոմսեր՝ գինու, սպիրտի օղու, կաղնեփայտի կոնեակի եւ գինեքացախի կիրառութեամբ:

Էջ 176-188, Ընդհէմ հարբածութեան, հարբեցողութեան եւ քրոնիկական գինեմոլութեան:

Էջ 189-191, Խաղողի եւ ոգելից ըմպելիների վերաբերեալ տեղեկութիւնների հատընտիր Գիննեսի ռեկորդների գրքում:

Եզրակացնելու համար, կարելի է ըսել՝ թէ քաղաքակրթութեան դարաւոր ձեռքբերումին արդիւնքը կը հանդիսանան՝ *Այգեշատ, Անահիտ, Աշտարակ, Անուշ, Ասպրիկ, Արաքս, Արենի, Արփենի, Արեւաբոյր, Արեւիկ, Բերդ, Բիւրական, Գայանէ, Գառնի, Գետաշէն, Գետափ, Ջուարթնոց, Էջմիածին, Կացոր, Կարմրահիւթ, Հայրիսի, Հոկտեմբերեան, Մաղերա, Մեղրաբոյր, Մեղրաչոր, Մուսալեռ, Մուսկատ, Շամպայն Արարատեան, Ուրարտու, Պորվեյն Երեվանեան, Վեդի-Սպումանտէ, Տիգրանի* սակաւաթունդ, թունդ եւ թնդեցուած, դիւրըմպելի եւ նրբազդու, աղանդերային, լիքէօրային, քաղցր եւ կիսաքաղցր հայկական գինիները(**):

---

(*) Մեր նախնեաց մօտ, գինարբուքի սովորութեան մասին՝ կը յանձնարարուի կարդալ. Ճաշեր եւ Խնճոյք Հին Հայաստանի Մէջ: Գրեց Հ. Վարդան Վ. Հացունի. Վենետիկ-Ս. Ղազար, ՌՅԿԲ–1912, էջ 195–197:

(**) «Ամէնուն Տարեցոյցը»-ի հետաքրքիր ընթերցողներուն ծանօթացնելու նպատակով, բուսաբանական, մշակական, պատմական, գինեգործական տեղեկութիւններով, մասնագիտական բառերու սահմանումներով, որթաբերքին վրայ հիւսուած՝ հին եւ նոր ներբողեաններով չահեկան ուսումնասիրութիւն մը պատրաստած է Թէոդիկ: Անխոնջ հետազօտողը՝ այդ աշխատութեան ձեռնարկած է 1922 Թ. Յունուարին, Սկիւտար՝ Պաղլար Պաշիի մօտ, Վանքին Պաղը, եւ աւարտին հասցուցած է 1925 Թ., Գորփուի այգեւէտ Կասթուրի գիւղը: Տես՝ Որթն Ու Իր Բերքը. Այգեբանական եւ Մատենագրական Ուսումնասիրութիւն Թէոդիկէ: Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը, 1926, 20-րդ Տարի, Վենետիկ, Ս. Ղազար, Տպ. Մխիթարեան, էջ 24–170:

## ԽՕՍՆԵՑԵԱԼՔ

**ՊՐ. ԳԷՈՐԳ Հ. ԻՐԱՏԵԱՆ**
**ընդ**
**ՕՐ. ԱՆԻ Մ. ԳԱՍՊԱՐԵԱՆԻ**

Գահիրէ, 14 Հոկտեմբեր 1999

*Այս բարեբաստիկ առթիւ խմբագրութիւնս իր ջերմ շնորհաւորութիւնները կը յայտնէ խօսնեցեալ զոյգին, ինչպէս նաեւ անոնց ծնողաց՝ Տէր եւ Տիկին Հայկ Իրատեանի եւ Տէր եւ Տիկին Մանուէլ Գասպարեաններուն, մաղթելով երջանիկ կեանք խօսնեցեալ զոյգին:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մուտքի սանդուխներուն վրայ երկաթեայ բազրիքներ չինել տալու հարցը, անհրաժեշտութիւն դարձած էր, յառաջացած տարիքով հաւատացեալներուն համար: Ատենէ մը ի վեր այս խնդիրը Ս. Եկեղեցւոյ Հոգաբարձութեան օրակարգի վրայ կը գտնուէր:*

*Հայկական ոճով, սիրուն խաչեր պարունակող, երկաթեայ բազրիքները, վրան կաղնեփայտով, կառուցուեցան եւ ագուցուեցան, ազնիւ Տեարք Մարտիկ եւ Ռուբէն Թէրզիպաշեան եղբայրներու նուիրատուութեամբ, ի յուշ իրենց յաւէտ ողբացեալ հօր, բարեպաշտ Յակոբ Թէրզիպաշեանի:*

*Ի դիմաց հաւատացեալներու, եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը, Թէրզիպաշեան եղբայրներուն կը յայտնէ շնորհակալութիւն:*

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

**ՍԱՐԳԻՍ ՍԱՐԳԻՍԵԱՆ**

1

**Կը Մասնակցի Եգիպտոսի Թենիսի Միջազգային**

վրայ:

Ան քանի մը մրցումներ յաղթելով, յաջողած է մտնել գտման 8-րդ բաժնին, եւ վաղը՝ Ուրբաթ յետմիջօրէին պիտի մրցի սպանացի Ալպերթօ Փարիսթիկոյի դէմ:

Յայտնենք թէ Ս. Սարգիսեան (ծնեալ Երեւան 1974-ին) այժմ աշխարհի թենիսի լաւագոյն մարզիկներէն մին կը նկատուի եւ մարզական բարձր նկարագրով իր տարած խաղարկութիւնը հմայած է եգիպտացի մարզասէր հասարակութիւնը:

## «ՎԱՆ» ԳՈՐԾՈՂՈՒԹԵԱՆ 18-ԱՄԵԱԿԸ ...

2

քաղաքական ու զինուորական դէմքերով: Մանաւանդ ջերմ խօսքերով հանդէս եկան Էջմիածնի քաղաքապետը եւ պատմութեան ու գիտութեան արուեստի գործիչներ:

Գեղարուեստական յայտագրէն ետք, անդադրում ծափողջոյններու տակ բեմ հրաւիրուեցան «Վան» գործողութեան հերոսներ՝ Գէորգ Կիւզէլեանը, Վազգէն Սիսլեանը, Յակոբ Ճուլֆայեանը: Թերեւս ֆրանսական բանտին մէջ ինքնասպան եղած Արամ Պասմաճեանի հոգին կը սաւառնէր այստեղ, մինչ հերոս նահատակ Եղիա Քէշիշեանի լուսապատկերի առաջ պատուոյ պահակ կը կանգնէին մատաղ սերունդի ներկայացուցիչներ:

Հայաստանի ու Անդրկովկասի համար այս ռազմաքաղաքական դժուարին այս օրերուն, «Վան» արարքի 18-ամեակի նշումը կը յիշեցնէ, թէ հայ ժողովուրդին զաւակները կը մնան միշտ հաւատարիմ իրենց հայրենասիրական ուխտին:

***Երեւան*** ***ՀԱՄՕ ՄՈՍԿՈՖԵԱՆ***

## ՏԽՐՈՒՆԻ

Շաբաթ 16 Հոկտեմբերի առաւօտեան Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսարանի դիւանատունէն խոր ցաւով, ստացանք բարձրաշնորհ Տ. Արտակ Սրբազան Արք. Մանուկեանի վախճանման գոյժը: Սրբազանը հեղինակն էր բազմաթիւ հատորներու եւ Հայց. Եկեղեցւոյ զարգացած, առաջաւոր հոգեւորականներէն մին, որ ինքզինք նշանաւորած էր բոլորանուէր ծառայութեամբ մեր ժողովուրդին ընդմէջէն, Հայց. Եկեղեցւոյ եւ Աստուծոյ:

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

**ՀԱՆԳԻՍՏ**
**Տ. ԱՐՏԱԿ ԱՐՔ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ**
**(1930–1999)**

*Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոսութեան Վեհափառ Հայրապետը եւ Կիլիկեան Ս. Աթոռոյս Միաբանութիւնը խոր վշտով կը հաղորդեն իրենց սիրեցեալ Միաբանին եւ Թեհրանի Հայոց Թեմի Առաջնորդ՝*

**Տ. ԱՐՏԱԿ ԱՐՔ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ**

*վախճանումը, որ տեղի ունեցաւ Ուրբաթ, 15 Հոկտեմբերին, Թեհրանի մէջ, յետ կարճատեւ հիւանդութեան:*

*Հոգելոյս Սրբազանին վերջին օծման արարողութիւնը կատարուեցաւ Երեքշաբթի, 19 Հոկտեմբերին, Թեհրանի Ս. Սարգիս եկեղեցւոյ մէջ: Ապա Սրբազանին մարմինը ամփոփուեցաւ Թեհրանի Մայր եկեղեցւոյ կողքին:*

*ԴԻՒԱՆ*
*ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ ՄԵԾԻ ՏԱՆՆ ԿԻԼԻԿԻՈՅ*

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԵԱՆՑ ՇԱՐՔ

**Մասնակցութեամբ Բոլոր Եգիպտահայ Մշակութային Միութիւններուն**

Կը դասախօսէ պոլսահայ մտաւորական

**ՓՐՈՖ. ԲԱՐՍԵՂ ԹՈՒՂԼԱՃԵԱՆ**

Յատկապէս հրաւիրուած Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի կողմէ

**ԳԱՀԻՐԷ**

**Ա- Հ.Բ.Ը.Մ. - Գահիրէ**

Կիրակի, 24 Հոկտեմբեր 1999, երեկոյեան ժամը 7.30-ին
Հելիոպոլսոյ «Պըրքտանեան Հանդիսասրահ»ին մէջ
Նիւթ՝
**ՊԱԼԵԱՆ ԸՆՏԱՆԻՔԻՆ ԴԵՐԸ ՕՍՄԱՆԵԱՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ**

**Բ- Գահիրէի Ամերիկեան Համալսարան**

Չորեքշաբթի, 27 Հոկտեմբեր 1999, կ.վ. ժամը 4.30-ին
Նիւթ՝
**THE ROLE OF THE BALIAN FAMILY IN OTTOMAN ARCHITECTURE**
Հասցէ: Rare Book Library - AUC
22, Sheikh Rihan Street, Bab-el-Louk

**Գ- Յուսաբեր Ակումբ - Հելիոպոլիս**

Հինգշաբթի, 28 Հոկտեմբեր 1999, երեկոյեան ժամը 9.00-ին
«Ա. Մէօթէմէտեան Սրահ»-ին մէջ
Նիւթ՝
**ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊ ՈՐՊԷՍ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾԻՉ**

**Դ- Հայ Գեղարուեստասիրաց Միութիւն - Գահիրէ**

Կիրակի, 31 Հոկտեմբեր 1999, երեկոյեան ժամը 8.00-ին
Հ.Գ.Մ.-ի «Թէքէեան Սրահ»-ին մէջ
Նիւթ
**ա- ՀԱՅԿԱԿԱՆ ՕՓԵՐԱՅԻ ՀԻՄՆԱԴԻՐ ՏԻԳՐԱՆ ՉՈՒՀԱՃԵԱՆԻ ԿԵԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ**
**բ- ՅՈՒՇԵՐ ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐԵԱՆԷ**

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ**

**Ե- Հ.Բ.Ը.Մ.- Աղեքսանդրիա**

Հինգշաբթի, 4 Նոյեմբեր 1999, երեկոյեան ժամը 8.30-ին
«Տիգրան - Երկաթ» Մշակ. Միութեան Սրահին մէջ
Նիւթ՝
**ՊԱԼԵԱՆ ԸՆՏԱՆԻՔԻՆ ԴԵՐԸ ՕՍՄԱՆԵԱՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԷՋ**

**Զ- Յառաջդիմասէր Ակումբ - Աղեքսանդրիա**

Կիրակի, 7 Նոյեմբեր 1999, կ.վ. ժամը 4.30-ին
«Ս. Լէյլէկեան Սրահ»-ին մէջ
Նիւթ՝
**ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊ ՈՐՊԷՍ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԳՈՐԾԻՉ**

*Միրաքիր հրաւէր բոլորին*



دار شركة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1414 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 4 ՆՈՅԵՄԲԵՐ 1999 | ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 50 Եգ. Դիկ. | عدد رقم ١٤١٤ — الخميس ٤ نوفمبر ١٩٩٩


**Ս.ԷՋՄԻԱԾԻՆ**

## ԳԱՐԵԳԻՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՆԵՐՍԻՍԵԱՆ ԸՆՏՐՈՒԵՑԱՒ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՅՍ ԱՌԱՒՕՏ ՕԾՈՒԵՑԱՒ ՍՐԲԱԼՈՅՍ ՄԻՒՌՈՆՈՎ

Ազգային-եկեղեցական ժողովի պատգամաւորներու ձայներու 263-170 յարաբերակցութեամբ Հոկտեմբեր 27-ին Ամենայն Հայոց 132-րդ Կաթողիկոս ընտրուեցաւ Արարատեան Հայրապետական թեմի առաջնորդական փոխանորդ Գարեգին Արքեպիսկոպոս Ներսիսեանը, որ այսուհետեւ պիտի կրէ Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոս անունը: Հայոց նոր կաթողիկոսի մրցակիցն էր Ամենայն Հայոց կաթողիկոսական տեղապահ Ներսէս Արքեպիսկոպոս Պօզապալեան: Ընտրութիւնը տեղի ունեցաւ Սբ. Էջմիածնի Մայր Տաճարէն ներս:



*Նորընտիր Գարեգին Բ. Ամենայն Հայոց Կաթողիկոս*

Այսօր, երբ այս տողերը գրի կ'առնէինք, Ս. Էջմիածնի Մայր Տաճարին մէջ կը շարունակուէր Առաջին Հայրապետական Սուրբ Պատարագը, որու ընթացքին կը կատարուէր ընտրեալ Ամենայն Հայոց Կաթողիկոս Գարեգին Բ. Ներսիսեանի օծման արարողութիւնը, ձեռամբ Մեծի Տանն Կիլիկիոյ Կաթողիկոս Արամ Ա. Հայրապետի:

Պատարագը սկսաւ Երեւանի ժամով 10.30-ին: Պատկառազդու թափորով եկեղեցի առաջնորդուեցաւ Ընտրեալ կաթողիկոսը, որ այս արարողութենէն վերջ այլեւս պաշտօնապէս պիտի կոչուէր «Եպիսկոպոսապետն մերոյ եւ պատուական Հայրապետ Ամենայն Հայոց Տեառն Տեառն Գարեգին Բ. Սրբազնագոյն Կաթողիկոս»: Եկեղեցին կանուխէն լեցուած էր զանազան եկեղեցիներու ներկայացուցիչներով:

Ժամը 11-ին մօտ, երբ արդէն Պատարագը սկսած էր, Մայր Տաճար ժամանեցին Հայաստանի Նախագահ Ռոպերթ Քոչարեանն ու Տիկինը, որուն կ'ընկերակցէին Հայաստանի նորընտիր Վարչապետ Արամ Սարգըսեանն ու բարձրաստիճան պաշտօնավարներու լայն պատուիրակութիւն մը:

Ժամը 11.30-ին Խորան բարձրացան Թեմական Առաջնորդ բարձաստիճան հոգեւորականներ, որոնք սկսան ընթերցումներ ընել յուզիչ ձայնով: Յետոյ Պատարագը շարունակուեցաւ մինչեւ ժամը 12: Ապա սկսաւ օծման արարողութիւնը: Արարողութիւնը այսպէս կը շարունակուէր երբ թերթս սկսանք պատրաստել տպագրութեան:

*«ՋԱՀԱԿԻՐ» եւ իր շրջանակը, իր խորին յարգանքով կը շնորհաւորէ Ն. Ս. Օ. Տ. Տ. Գարեգին Բ. Վեհափառ Հայրապետի ընտրութիւնը, օծումն ու գահակալութիւնը, մաղթելով որ Տէրը դիւրացնէ այն դժուարին պարտականութիւնը, որ դրուած է նորընտիր Ամենայն Հայոց Կաթողիկոսի ուսերուն վրայ:*

*Վեհափառ Տէր, հովուապետական գաւազանը միշտ ծաղկեալ մնայ ձեր ձեռքին մէջ:*

**Ն.Ս.Օ. Տէր Տէր Գարեգին Բ. Ներսէսեան**
**Կաթողիկոս Ամենայն Հայոց**

**<u>Ի Էջմիածին</u>**

Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը, սփիւռքի եւ Հայաստանի իր բոլոր Շրջաններու, կառոյցներու եւ միութիւններու անունով սրտանց կը շնորհաւորէ Ձերդ Սրբութեան ընտրութեան եւ օծման առիթով մաղթելով Ձեզի երկար ու քաջառողջ կեանք, հայ եկեղեցւոյ պայծառութեան համար Ձեր աշխատանքներուն յաջողութիւն:

Կը մաղթենք որ Ձեր գահակալութեան օրով Սրբ. Էջմիածնայ եւ Մեծի Տանն Կիլիկիոյ Աթոռներուն միջեւ վերահաստատուի եղբայրական գործակցութեան նոր դարաշրջան ի շահ հայ ժողովուրդի գերագոյն շահերուն:

**Ի Դիմաց Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան**
**ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

**ՀԱՅԱՍՏԱՆ**

### Հայաստանի Ներքին Քաղաքական Կեանքին Մէջ Մեծ Անակնկալ

## ՎԱՐՉԱՊԵՏ ՆՇԱՆԱԿՈՒԵՑԱՒ ՆԱՀԱՏԱԿՈՒԱԾ ՎԱՐՉԱՊԵՏ ՎԱԶԳԷՆ ՍԱՐԳՍԵԱՆԻ ԿՐՏՍԵՐ ԵՂԲԱՅՐԸ ԱՐԱՄ ՍԱՐԳՍԵԱՆ

Երէկ, 3 Նոյեմբերին, Հայաստանի Նախագահ Ռոպէրթ Քոչարեան յատուկ հրամանագրով մը Վարչապետ նշանակեց «Արարատ-Ցէմէնթ» Պետական Փակ Բաժնետիրական Ընկերութեան գործադիր տնօրէն՝ Արամ Սարգսեանը, որ կրտսեր եղբայրն է նահատակուած Վարչապետ Վազգէն Սարգսեանի:

Երէկ, «Միասնութիւն» դաշինքի անդամները խորհրդակցութիւն մը ունեցան, ներկայացնելու համար Վարչապետի թեկնածուները, սակայն ի վերջոյ Դաշինքը որոշեց պաշտպանել Վազգէն Սարգսեանի եղբօր՝ Արամ Սարգսեանի թեկնածութիւնը:



*Վարչապետ Արամ Սարգսեան*

Ազգային Ժողովի փոխ-նախագահ Գագիկ Ասլանեանի կարծիքով, դրական արդիւնք պիտի չարձանագրուի, եթէ կառավարութեան կազմը ամբողջութեամբ փոփոխութեան ենթարկուի: Ըստ իրեն, նոր նշանակուած Վարչապետ՝ Արամ Սարգսեան պէտք է շարունակէ աշխատիլ նախկին կառավարութեան հետ, քանի որ կառավարութիւնը միայն քանի մը ամիսէ ի վեր է որ աշխատանքի լծուած էր: Գագիկ Ասլանեան նշեց սակայն որ այն Նախարարները, որոնք հրաժարական ներկայացուցած էին (Ազգային Անվտանգութեան եւ Ներքին Գործոց Նախարարները), մաս պիտի չկազմեն նոր կառավարութեան:

*(Նորընտիր վարչապետի կենսագրական գիծերը կարդալ էջ 4)*

**Մեծայարգ Տիար Արամ Սարգսեան**
**Վարչապետ Հայաստանի Հանրապետութեան**

**<u>Երեւան</u>**

Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը, իր բոլոր շրջաններու, կառոյցներու եւ միութիւններու անունով կը շնորհաւորէ Ձեզ ՀՀ Վարչապետ նշանակուելու առիթով:

Այս առիթով մենք, նաեւ կը յայտնենք մեր ցաւակցութիւնները Ձեզի Ձեր՝ Ազգային Հերոս եղբօր եւ իր գործակիցներու սպաննութեան համար եւ անգամ մը եւս կը պահանջենք դաւաճան ոճրագործներու եւ անոնց մեղսակիցներու խստօրէն պատժուիլը:

Կը մաղթենք որ դուք եւ Ձեր գործակից նախարարները Ձեր ազգանուէր գործունէութեամբ եւ ամբողջ ազգի աջակցութեամբ կ'իրագործէք ազգային մեծ ծրագիրներ:

**Ի Դիմաց Սոցեալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան**
**ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

### ՑԱՒԱԿՑԱԳԻՐ

**ՆՈՐԻՆ ՎՍԵՄՈՒԹԻՒՆ ՏԻԱՐ ՌՈՊԵՐԹ ՔՈՉԱՐԵԱՆ**
**Նախագահ Հայաստանի Հանրապետութեան**

**<u>ԵՐԵՒԱՆ</u>**

Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութեան ու իմ անունով այսու գամ իմ խորազգաց ցաւակցութիւնները յայտնելու Չորեքշաբթի, 27 Հոկտեմբեր 1999ին ԱԺ.ի դահլիճին մէջ անարգ դաւադրութեան զոհ գացած հայ պետութեան կարկառուն դէմքերու կորստեան համար:

Սեպտ. 22-24 Երեւանի մէջ գումարուած այնքան յաջող, խոստմնալից խորհրդաժողովի ստեղծած խանդավառութեան յաջորդող այս մեծ դժբախտութիւնը որքան ալ ցնցած է մեր հոգիները, սակայն մենք աւելի վճռակամութեամբ կը կենանք Ձեր եւ պետութեան կողքին, ազգային այս դժուարին փորձութեան շրջանը անցընելու:

Դաւադիրներ եւ ոճրագործներ խստիւ պատժուելով է որ հայրենիքը պիտի մաքրագործէ ինքզինք:

Երախտագիտութեամբ կը խոնարհինք զոհուած հայրենի ղեկավարներու յիշատակին առաջ:

Պէյրութ, 29 Հոկտ. 1999

**Ս.Դ.Հ. ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՆԱԽԱԳԱՀ**
**ՎԱՀՐԻՃ ՃԵՐԷՃԵԱՆ**

**ԳԱՀԻՐԷ**

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ ՅԱՅՏՆՈՒԵՑԱՒ ՀՀ ԴԵՍՊԱՆԱՏԱՆ ՄԷՋ

Անցեալ Շաբաթ եւ Կիրակի 30 եւ 31 Հոկտ.-ի առաւօտեան, Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպանատան մէջ ցաւակցութիւն յայտնեցին, հայրենիքին մէջ պատահած անարգ դաւադրութեան ընթացքին զոհուածներուն առիթով զանազան դեսպաններ, դիւանագէտներ, հանգամանաւոր դէմքեր եւ համայնքէս ազգայիններ: Ցաւակցութիւնները ընդունեց ՀՀ արտակարգ եւ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեան:

«Ջահակիր»ի շրջանակին կողմէ պատուիրակութիւն մը եւս յայտնեց իր ցաւակցութիւնները եւ այդ առթիւ բացուած տոմարին մէջ արձանագրեց Հայկական Ընթերցասրահի եւ խմբագրութեանս անունով ցաւակցագրեր:

## ԱՐՄԷՆ ԽԱՉԱՏՐԵԱՆ ԸՆՏՐՈՒԵՑԱՒ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՆՈՐ ՆԱԽԱԳԱՀ

Հայաստանի Խորհրդարանը, 2 Նոյեմբերին, ընթացք տալով Նախագահ Քոչարեանի հրաւէրին, ժամը 17-ին արտակարգ նիստ գումարեց եւ ընտրեց ԱԺի նոր Նախագահն ու երկու փոխնախագահները: Նիստին ներկայ



*Արմէն Խաչատրեան*

գտնուեցաւ Նախագահ Քոչարեան: Առաջարկուած թեկնածուներէն եւ կատարուած գաղտնի քուէարկութիւններէն վերջ, Ազգային Ժողովի Նախագահ ընտրուեցաւ «Միասնութիւն» Դաշինքէն երեսփոխան Արմէն Խաչատրեան: Փոխ նախագահներ ընտրուեցան դարձեալ նոյն Դաշինքէն՝ Տիգրան Թորոսեան 4

**Մեծայարգ Տիար Ա. Խաչատրեան**
**Նախագահ ՀՀ Աժի**

**<u>Երեւան</u>**

Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը, Հայաստանի եւ Սփիւռքի իր բոլոր կուսակցական կազմակերպութիւններու, հաստատութիւններու եւ միութիւններու անունով այսու կուգայ ջերմօրէն շնորհաւորելու Ձեզ եւ Ձեր երկու պաշտօնակիցները Աժ-ի նախագահ եւ փոխ-նախագահներ ընտրուելու առիթով:

Հայաստանի ներկայ դժուարին օրերուն կը վստահեցնենք Ձեզ թէ մեր կուսակցութիւնը ինչպէս նաեւ ամբողջ հայ ազգը Ձեր կողքին է կեցած, Ձեր ազգաշէն ծրագիրներու իրականացման ջանքերուն մէջ:

**Ս.Դ.Հնչակեան Կուսակցութեան**
**ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

### Փրոֆ. Բարսեղ Թուղլաճեանի

Անցեալ Հինգշաբթի 21 Հոկտեմբերի կէսօրին, հաճոյքը ունեցանք այցելութիւնը ընդունելու պոլսահայ յայտնի մտաւորական Փրոֆ. Բարսեղ Թուղլաճեանի, որ Եգիպտոս հրաւիրուած է Գահիրէի Հ.Բ.Ը. Միութեան վարչութեան կողմէ:

Յարգելի հիւրը Եգիպտոս ժամանած է շարք մը դասախօսութիւններ տալու Եգիպտահայ մշակութային միութիւններու մէջ: Հետեւաբար, 24 Հոկտեմբերի երեկոյեան, Հելիոպոլսոյ «Պլըքտանեան» հանդիսասրահին մէջ, ան հետաքրքրական դասախօսութիւն մը տուաւ նիւթ ունենալով՝ «Պալեան ընտանիքին դերը Օսմանեան ճարտարապետութեան մէջ»: Նոյն նիւթին շուրջ, ան խօսեցաւ 27 Հոկտ.ի յետմիջօրէին, Ամերիկեան համալսարանին մէջ, անգլերէն լեզուով: Գալով 4

ԼԻԲԱՆԱՆ

# ԳԱՀԱԿԱԼՈՒԹԵԱՆ ԵՒ ՔՕՂԱՐԿՈՒԹԵԱՆ ԱՐԱՐՈՂՈՒԹԻՒՆ՝ ԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՅՈՑ ՆԵՐՍԷՍ ՊԵՏՐՈՍ ԺԹ. ԹԱՐՄՈՒՆԻ ՊԱՏՐԻԱՐՔԻ

Կիրակի, 24 Հոկտեմբեր 1999ին, առաւօտեան ժամը 10էն սկսեալ, Կաթողիկէ Հայոց Ս. Եղիա Աթոռանիստ եկեղեցւոյ մէջ տեղի ունեցաւ նորընտիր Կաթողիկոս-Պատրիարք Ներսէս Պետրոս ԺԹ. Թարմունիի գահակալութեան եւ քօղարկութեան արարողութիւնը:

Արարողութեանց հանդիսապետեց նախկին Պատրիարք Յովհաննէս Պետրոս ԺԸ. Գասպարեան, պատարագեց եւ քարոզեց նորընտիր Պատրիարք Ներսէս Պետրոս ԺԹ.: Ան իր հայերէն եւ ապա արաբերէնով արտասանած խօսքերուն մէջ նշեց. «Իբր կաթողիկոսական նշանաբան ընտրած եմ հաւատք եւ սէր» խօսքերը: Նորընտիր Պատրիարքը մաղթեց որ աստուածային սէրը հանդիսանայ հիմնաքարը երրորդ հազարամեակին, որպէսզի ժողովուրդներ ու ամբողջ մարդկութիւնը կարենայ ապրիլ աստուածահաճոյ եւ մարդավայել կեանք մը:

Պատրիարք Ներսէս Պետրոս ԺԹ. Թարմունի կոչ ուղղեց իր հօտին միակամօրէն ոգեկոչելու Հայաստանի քրիստոնէացման 1700ամեակը:

Բացայայտելով իր ուղին, նորընտիր Պատրիարքը ըսաւ, որ պիտի գործէ Լիբանանի Սինոտոսին յղուած Յովհաննէս Պօղոս Բ. սրբազան քահանայապետին առաքելական յորդորին համաձայն, հիմնուած հոգեւոր կեանքի ծաղկումին եւ ընտանեկան սրբութեան պահպանման սկզբունքներուն վրայ:

Յաւարտ Պատարագի, նորընտիր Պատրիարքը ընդունեց շնորհաւորութիւնները բարձրաստիճան անձնաւորութիւններու եւ հոգեւորականներու:

Կարդացուեցան Հայաստանի նախագահ Ռոպերթ Քոչարեանի եւ Վարչապետ Վազգէն Սարգսեանի շնորհաւորական գիրերը, ուր կը յայտնուէր մաղթանք՝ Հայաստանեայց Առաքելական եկեղեցւոյ հետ յարաբերութիւններու սերտացման եւ համագործակցութեան:

Հուսկ, եկեղեցւոյ դահլիճին մէջ Ներսէս Պետրոս ԺԹ. Թարմունի ընդունեց հաւատացեալ ժողովուրդին շնորհաւորութիւնները:

Յայտնենք որ արարողութեանց ներկայ էին Լիբանանի ներքին գործոց նախարար եւ փոխ-վարչապետ նախարար Միշէլ Մըռ, որ կը ներկայացնէր նախագահ Էմիլ Լահուտը, երեսփոխան Ժագ Չուխատարեան՝ խորհրդարանի նախագահ Նեպիհ Պըրրիի ներկայացուցիչ, կրթական նախարար Մուհամէտ Եուսէֆ Պայտուն՝ ներկայացուցիչ վարչապետ Սելիմ Հըսի, նախկին նախագահ Շարլ Հըլու, Հայաստանի նախագահ Ռոպէրթ Քոչարեանի ներկայացուցիչ՝ Սուրիոյ մօտ Հայաստանի դեսպան Սերկէյ Վարդանեան, Հայաստանի մօտ Լիբանանի, Եգիպտոսի դեսպանները, նախկին վարչապետ Ռաշիտ Սոլհ, մեծ թիւով նախարարներ եւ երեսփոխաններ ու հայ թէ օտար յարանուանութիւններու եւ հայկական կուսակցութիւններու ներկայացուցիչներ:

*«Ջահակիր» եւ իր շրջանակը սրտանց կը շնորհաւորէ նորընտիր Ամենապատիւ Կաթողիկոս-Պատրիարքը, մաղթելով քաջառողջութիւն եւ կորով, իր հոգեւոր ղեկավարի պարտականութեան մէջ:*

***

## Կենսագրական Գիծեր

## ՆՈՐԸՆՏԻՐ ԱՄԵՆ. ՆԵՐՍԷՍ-ՊԵՏՐՈՍ ԺԹ. ԹԱՐՄՈՒՆԻ ՊԱՏՐԻԱՐՔԻ

Ամենապատիւ Ներսէս – Պետրոս ծնած է Գահիրէի 17 Յունուար 1910-ին, հինգերորդ զաւակը խորապէս հաւատացեալ եւ ութ զաւակներու տէր ընտանիքի մը:

Իր նախնական եւ երկրորդական ուսումները կատարած է Գահիրէի ֆրէրներու գոլէճին մէջ:

Կանուխէն քահանայական կոչում զգալով, ան ղրկուած է Հռոմ, Լեւոնեան Հայ Դպրեվանքը, եւ յաճախած է Յիսուսեան Հայրերու, Գրիգորեան Համալսարանը, ուսանելով հոն փիլիսոփայութիւն եւ աստուածաբանութիւն:

Կուսակրօն քահանայ ձեռնադրուած է Գահիրէ՝ 15 Օգոստոս 1965-ին, ձեռամբ Թեմին Առաջնորդ՝ Ռափայէլ Եպս. Պայեանի եւ ստանձնած է անմիջապէս Գահիրէի հայ կաթողիկէ ժողովրդապետութեան պատասխանատուութիւնը, օժանդակելով Գեր. Յովհաննէս Վրդ. Գասպարեանի, յետագային՝ Յովհաննէս – Պետրոս ԺԸ. Կաթողիկոս – Պատրիարք:

1968 էն 1990, եղած է ժողովրդապետ Հելիոպոլսոյ (Գահիրէի մօտ) Սրբուհի Թերեզա եկեղեցւոյն, յատկապէս քաջալերելով զանազան հոգեւոր շարժումներու գործունէութիւնը:

18 Փետրուար 1990-ին, Եգիպտոսի Հայ Կաթողիկէ Թեմին Առաջնորդ օծուած է, ձեռամբ Ամեն. Յովհաննէս – Պետրոս ԺԸ.ի:

Վեց տարի, 1992-էն 1997, իբր անդամ Եգիպտոսի Կաթողիկէ Նուիրապետութեան, ան ընդհանուր քարտուղարի պաշտօն վարած է Եգիպտոսի Կաթողիկէ եկեղեցիներու, Հովուական Խորհուրդին:

Իբր անդամ Հայ Կաթողիկէ Եկեղեցւոյ Եպիսկոպոսաց Սինհոդոսին, ան եղած է յաջորդաբար՝

-Անդամ Երեք Եպիսկոպոսներու յատուկ Խորհուրդին՝ կառավարելու համար Պատրիարքական Աթեռը, 1993 էն 1995:

-Նախագահ՝ Քահանայական Կոչումներու Պատրիարքական Յանձնախումբին՝ 1993-էն 1995:

-Անդամ Հայ Կաթողիկէ Եկեղեցւոյ Մնայուն Սինհոդոսի՝ 1991-էն ի վեր:

ՄԱՐԶԱԿԱՆ

ՖՈՒԹՊՈԼ

# Հ.Մ.Մ. ԲԱԺԱԿԱԿԻՐ

Կիրակի 12 Սեպտ.ին, Պուրճ Համուտի Մարզադաշտին վրայ 2-1 արդիւնքով պարտութեան մատնելով Շապապ Սահէլը՝ Հ.Մ.Մ. տիրացաւ Լաւագոյն Վեցեակի «Վայսրոյ»ի Բաժակին:

«Վայսրոյ»ի մրցաշարքին հետեւող թղթակիցներուն իսկ վկայութեամբ, իր ցուցաբերած խաղարկութեամբ՝ Հ.Մ.Մ. փաստեց որ եղանակի ամենէն փայլուն խումբերէն մէկն է եւ արդար յաւակնութիւններով կրնայ ներկայանալ Լիբանանի Ախոյեանութեան: Այդ յաւակնութիւնը ամենէն աւելի արդարացնող երեւոյթը խումբին յարձակողական խաղաոճն է:

Երեք հանդիպումներու ընթացքին Հ.Մ.Մ.ին նշանակած 10 կոլերը պերճախօս էին ֆութպոլասէրներուն համար եւ կը փարատէին ամէն կասկած խումբի մակարդակին ու կարողութեան մասին:

Ինչ կը վերաբերի աւարտական մրցումին, որ եղաւ շատ հետաքրքրական՝ Սահէլի տղաքը եւս գնահատելի խաղարկութիւն մը ցուցաբերած ըլլալով, հոգ չէ թէ որոշ պահերու կոշտ ու կարծր, ան վայելք մը եղաւ ֆութպոլասէրներուն համար: Առաջին կիսախաղին, երկու մրցակիցներն ալ պրկուած վիճակ մը ունէին, ինչ որ հասկնալի էր:

⇨ 4

ԳԱՀԻՐԷ

# ԶԵԿՈՒՑՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆ - ՍՓԻՒՌՔ ՀԱՄԱԺՈՂՈՎԻ ՄԱՍԻՆ

*Շաբաթ 16 Հոկտեմբերի երեկոյեան, Հելիոպոլսոյ «Պլրքտանեան Սրահ»ին մէջ, տեղի ունեցաւ հրապարակային զեկոյց՝ Հայաստան – Արցախ – Սփիւռք համահայկական խորհրդաժողովի մասին, նախաձեռնութեամբ Գահիրէի Ազգ. Իշխանութեան եւ մասնակցութեամբ Եգիպտահայ պատուիրակութեան անդամներուն: Ներկայ էին Թեմիս Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն*



*Եղոյթի պահուն, ձախէն՝ Տոքթ. Սուրէն Պայրամեան, ՊՊ. Լեւոն Գաղթացեան, ՀՀ դեսպան Սերկէյ Մանասարեան եւ Պերճ Թէրզեան:*

*Արք. Զինչինեան, Գահիրէի մօտ ՀՀ դեսպան Սերկէյ Մանասարեան, Ազգային Իշխանութեան անդամներ գլխաւորութեամբ Պր. Անդրանիկ Մեսրոպեանի, Եգիպտահայ պատուիրակութեան անդամներ, հանգամանաւոր ներկայացուցիչներ եւ հայ հասարակութիւն մը:*

*Երեկոյի բացումը կատարեց Պր. Նորայր Տէօվլէթեան, եւ իր ընդվզումը յայտնեց, որ այս տեսակ լուրջ ձեռնարկներու երիտասարդութիւնը ներկայ չի գտնուիր: Ապա հրաւիրեց զեկոյցին մասնակցողները գլխաւորութեամբ մեծարգոյ դեսպանին:*

*Առաջին խօսք առնողը եղաւ ՀՀ դեսպան Ս. Մանասարեան, որ չահեկան իր խօսքի ընթացքին անդրադարձաւ Հայաստան – Սփիւռք կապերու պատմութեան, անցեալի՝ Սփիւռքահայութեան հետ կապի կոմիտէի աշխատանքին: Նշեց անկախութենէն ետք ծագած դժուարութիւնները, որմէ ետք չեշտը դրաւ Հայաստան – Սփիւռք առաջին խորհրդաժողովի պատմութեան վրայ: Յարգելի դեսպանը պարզեց թէ Սփիւռքի մէջ բնակող հայութեան թիւը կը գերազանցէ Հայաստանաբնակ ժողովուրդի թիւին:*

*Արտայայտուելով ժողովին ներկայացուած ու քննարկման դրուած վեց հարցերուն, Պարոն դեսպանը վեր առաւ եգիպտահայ պատուիրակութեան զեկոյցը, որպէս գործնական նիւթերէն մին: Ան ընդգծեց նախագահ Ռ. Քոչարեանի եւ վարչապետ Վ. Սարգսեանի համապարփակ նիւթերը եւ ընդունուած հռչակագիրն ու Յայտարարութիւնը:*

*ՀՀ դեսպան Ս. Մանասարեան դրուատելով խորհրդաժողովը, եզրակացուց՝ «Թէ այս երկար գործընթացի մը սկիզբն է միայն, որ շուրջ 60 երկիրներէ պատուիրակութիւններ կը մասնակցէին անոր»:*

*Ապա խօսք առաւ Տոքթ. Սուրէն Պայրամեան, որ մանրամասն ներկայացուց խորհրդաժողովի կազմակերպման աշխատանքները, նշելով՝ նախապատրաստական հանդիպումներու գործընթացը: Անդրադառնալով եգիպտահայ պատուիրակութեան զեկոյցի խմբագրութեան միասնական բծախնդիր աշխատանքին, ան ամբողջութեամբ կարդաց ներկաներուն: Արդարեւ, սերտուած եւ համապարփակ բովանդակութեամբ նիւթ մըն էր, որ համաժողովին ներկայացուած է եգիպտահայ պատուիրակութեան կողմէ Պր. Պերճ Թէրզեան:*

*Զեկոյցը՝ իր ողջոյնի խօսքէն ետք կը ներկայացնէր իր պատկերացումը Հայաստան – Սփիւռք համակարգող Մարմնի կառոյցին, որուն իրենց մասնակցութիւնը կրնան բերել Հայաստանի եւ Սփիւռքի մէջ գործող հայկական հոգեւոր եւ մտաւոր ժառանգութիւն ունեցող կազմակերպութիւններն ու անհատները, նպատակ ունենալով սերտ գործակցութիւն ստեղծել Հայաստանի եւ Սփիւռքի միջեւ, գործունէութեան բոլոր կարելի ասպարէզներու մէջ: Այդ գործունէութիւնը կարելի է ընդգրկէ մշակութային, կրթական, գիտական, տեղեկատուական, մարզական-երիտասարդական, տնտեսական եւ թեքնիք բնագաւառներու մէջ գործակցութիւն: Նշեալ կառոյցը կրնայ ունենալ Կեդրոնական Վարչութիւն մը, որուն կողքին կարելի է գործէ մնայուն կեդրոնական աշխատակազմ մը, գլխաւորութեամբ ընդհանուր քարտուղարի: Ապա իւրաքանչիւր երկրի մէջ կը կազմուին տեղական մասնագիտական ենթակառոյցներ, որոնք ընդգրկեն տուեալ երկրի մը տարբեր մասնագիտութիւններ ունեցող անհատները, նպատակ ունենալով հաւաքագրել իւրաքանչիւր գաղութի մասնագիտական ներուժը կազմող տարրերը:*

*Երկրորդ՝ գործակցութեան զանազան բնագաւառներու մասին ներկայացուած էին չինիչ առաջարկներ, որոնք կը բովանդակէին կրթական, մշակութային, մարզական – երիտասարդական, տեղեկատուական եւ այլ հարցերու շուրջ:*

*Գալով տնտեսական հարցին՝ պատուիրակութիւնը կ'առաջարկէր Եգիպտոս – Հայաստան կանոնաւոր օդային չուերթի ստեղծում, հաշուի առնելով, որ նման*



*Պատուիրակութեան անդամները, ձախէն՝ Ընկ. Վրէժ Սէֆէրեան, ՊՊ. Նորայր Տէօվլէթեան, Լեւոն Գաղթացեան, Վարուժան Գազանճեան, Պերճ Թէրզեան եւ Տոքթ. Սուրէն Պայրամեան: Նկարին մէջ կը բացակայի Պր. Վարդ Ալեքսանեան:*

*կանոնաւոր չուերթի մը ստեղծումը կապ պիտի ունենայ անոր արդիւնաւէտ շահագործման հետ, յատկապէս տնտեսական եւ մշակութային յարաբերութիւնները աշխուժացնելու համար: Կ'առաջարկուէր նաեւ արտասահմանեան ներդրումներու երաշխիքի ապահովում:*

*Ինչ կը վերաբերի երկքաղաքացիութեան հարցին՝ զեկոյցը կ'առաջարկէր իւրաքանչիւր դիմող սփիւռքահայու արտօնութիւն տրուէր հողատարածք մը ունենալ սահմանափակ տարածութեամբ:*

*Տոքթ. Ս. Պայրամեան իր խօսքի աւարտին ընդգծեց խորհրդաժողովի բացման արարողութեան եւ ՀՀ Ազգային Տօնի ճոխ միջոցառումներու մասին:*

*Իր կարգին խօսք առնելու հրաւիրուած էր Պր. Պերճ Թէրզեան, որ չեշտը դրաւ կարգ մը հայ գաղութներու գոյավիճակներու տարբերութեան՝ ինչպէս Ռուսաստանի եւ Եթովպիոյ: Որմէ ետք անդրադարձաւ կարգ մը հանգամանաւոր անձերու տեսակէտներուն, հողային պահանջումի հարցի առնչութեամբ:*

*Պր. Պ. Թէրզեան հանգամանօրէն արտայայտուեցաւ ուսումնասիրման առարկայ ծրագիրներուն: Ապա ան յայտնեց իր խոր տպաւորութիւնները տեղի ունեցած զանազան միջոցառումներուն եւ այցելութիւններուն, ինչպէս՝ Մեծ Եղեռնի յուշարձանին եւ Սարդարապատի համալիրին: Ան իր խօսքը վերջացուց մատնանշելով եգիպտահայ համայնքի ինքնութեան պահպանումը. յոյժ կարեւոր հարց մը, որ կը կարօտի հաւաքական ծրագրուած աշխատանքի:*

*Պր. Նորայր Տէօվլէթեանի փակման խօսքով վերջ գտաւ երեկոն, որուն աւարտին ներկաները հրաւիրուեցան զովացուցիչներու եւ քաղցրաւենիներու ընդունելութեան:*

**Ա. Մ.**

# «Ա՜Խ, ԻՄ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՋՈՒՐԸ...»

*Ծ. Խ.- Հայրենի «Հայաստան» օրաթերթը իր 23 Սեպտեմբերի խմբագրականը նուիրած էր Հայաստան - Սփիւռք Համահայկական Խորհրդաժողովին: Կը ներկայացնենք հայրենասիրութեամբ զեղուն կարճ, բայց բովանդակալից այս խմբագրականը:*

Մէկ ամսուայ ընթացքում երկու նոյնանպատակ խոշոր միջոցառումները խօսում են այն մասին, որ իսկապէս ժամանակն է Հայրենիք - Սփիւռք կապերը դիտել նորովի, դիտել ազգապահպանութեան տեսանկիւնից, առանց ծայրայեղութիւնների: Հայրենիքը չի կարող որեւէ մէկի սեփականութիւնը լինել: Հայրենիքում չի կարող մի հայը տանտէր, իսկ մէկ ուրիշը հիւր լինել: Հայրենիքը է բոլոր հայերի համար: Առանց պահանջատիրութեան, հեռուից ու վերեւից նայելու ընդունենք, որ ինչքան էլ աղքատ ու թշուառ, առանց հայրենիքի չի կարող գոյութիւն ունենալ Սփիւռքը: Այնպէս որ, ամէն ինչ պիտի փոխադարձ լինի: Հայրենիքի Սփիւռքին, իսկ Սփիւռքը Հայաստանին հաւասարապէս ու հաւասարազօր տալիք ունեն: Կան հիմնահարցեր, կան կուտակուած խնդիրներ, կայ պառակտման վտանգ, միմեանց մեղադրելու, չսիրելու, վերեւից նայելու անցանկալի միտումներ: Այս ամենին պիտի մօտենալ անկեղծ ու բաց խօսակցութեամբ եւ լուծումներ տալ: Դժուարին կացութեան մէջ է հայրենիքը, յաղթահարելու բազմաթիւ խուլ ու խութեր ունի իր առջեւ: Բազմաթիւ խնդիրներ ունի նաեւ Սփիւռքը՝ որպէս աշխարհասփիւռ, բայց ամբողջական մի մարմին: Եւ այդ խնդիրներն առաւելապէս առնչւում են հայապահպանութեան, ազգապահպանութեան խնդրին, օտարների մէջ հայ մնալուն, հայրենիքի սէրը հոգում պահելուն, հայրենիքին որպէս հայրենիք դիտելուն:

Կարողանալո՞ւ է վեհաժողովը անդրադառնալ այս հարցերին, կարողանալո՞ւ է եթէ ոչ լուծում տալ դրանց, ապա գոնէ ստեղծել բոլոր նախահիմքերը՝ աստիճանաբար դրանց լուծմանը հասնելու համար: Ի վերջոյ, ոչ միայն «միմեանց մէկ անգամ եւս տեսնելու» կամ «հայրենիք ժամանելու», այլեւ առաջին հերթին նշեալ խնդիրների շուրջ «խելք-խելքի» տալու համար է այս վեհաժողովը:

Անշուշտ, կան բայցեր: Անշուշտ, շատ աւելի լաւ կը լինէր, եթէ հրաւիրեալների «աշխարհագրութիւնն» առաւել ընդգրկուն ու համապարփակ լինէր: Անշուշտ, նման վեհաժողովի նախապատրաստման համար շատ աւելի երկար ժամանակ էր պէտք: Այս ամէնը յոկել կարելի է: Բայց փաստը մնում փաստ, որ վեհաժողովը արդէն սկսել է իր աշխատանքներն ու նպատակ ունի համախմբել հայութեան տարբեր թեւերի ուժերը: Ուրեմն, բարի երթ մաղթենք եւ յուսանք, որ առաջինը լինելով, այս վեհաժողովը վերջինը չի լինի ու կը կատարի իր առջեւ դրուած խնդիրները:

# ԽՈՐՀՐԴԱՐԱՆԻ ԴԷՊՔԻ ՈՒԹ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ ՎԵՀԱՇՈՒՔ ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ ՀՈՂԻՆ ՅԱՆՁՆՈՒԵՑԱՆ

Կիրակի առաւօտեան Երեւան մայրաքաղաքը եւ բովանդակ հայ ժողովուրդը ապրեցաւ տխուր եւ տառապանքի օր մը. սրտաճմլիկ տեսարան պարզուած էր Օփերայի դահլիճին մէջ ու Ազատութեան Հրապարակին վրայ: Հազարաւոր Հայաստանցիներ եւ արտասահմանէն ժամանած հիւրեր, արցունքոտ աչքերով անցան զոհերու բաց դագաղներուն առջեւէն եւ վերջին հրաժեշտ տուին անոնց:



Նախագահ Ռ. Քոչարեան ցաւակցութիւն կը յայտնէ

Առաջին կարգին վրայ, ինչպէս նախորդ օր, նստած էին Վազգէն Սարգսեանի մայրն ու եղբայրը որ շատ կը նմանէր հանգուցեալին: Այդ միջոցին կը սփռուէին հայ հոգեւոր երաժշտութեան հիանալի մեղեդիներ եւ շարականներ, որոնք կ'երգուէին Հայաստանի ամէնէն նշանաւոր արուեստագէտներուն, մանաւանդ, Հայաստանի անմոռանալի սոխակ՝ ողբացեալ Լուսինէ Զաքարեանի կողմէ:



Ողբ. Վ. Սարգսեան դագաղին մէջ

Օփերայի շէնքի մուտքին կանգնած էին Նախագահ Ռոպէրթ Քոչարեան, Սահմանադրական Դատարանի Նախագահ՝ Գագիկ Յարութիւնեան, Արտաքին Գործոց Նախարար՝ Վարդան Օսկանեան, որոնք կ'ընդունէին հիւրերը, եւ կը լսէին անոնց ցաւակցական արտայայտութիւնները: Օփերայի շէնքին առջեւ շարուած էին զանազաններէ ղրկուած մեծ ծաղկեպսակներ: Ներսը, բեմին վրայ, քով քովի դրուած էին ութ զոհերէն եօթին դագաղները, բաց վիճակով: Իւրաքանչիւր դագաղին քով, Հայաստանի դրօշակով ծածկուած ամպիոնի մը վրայ զետեղուած էր զոհին հսկայ ու գունաւոր մէկ դիմանկարը: Դագաղներուն մէջ կը հանգչէին ահաբեկչութեան զոհ գացած քաղաքային դէմքերը, իրենց ձեռքերը իրենց կուրծքին վրայ ծալլուած: Միայն ողբացեալ Կարէն Դեմիրճեանին դէմքը, ճակատի ու աչքերու մասերէն ծածկուած էր ու չէր տեսնուեր:

Այն պահէն սկսեալ, երբ դռները բացուեցան, ժողովուրդը սկսաւ անցնիլ բեմին առջեւէն: Շատ կարճ ժամանակ վերջ, բեմին յառաջամասը, մէկ ծայրէն մինչեւ միւսը, լեցուեցաւ ծաղիկներով, որոնք սկսած էին պատի մը նման բարձրանալ դագաղներուն առջեւ:

Միջոց մը սպաներու ու զինուորականներու երկար շարք մըն ալ մասնակցեցաւ յարգանքի անցքին:

Առտուան ժամերուն Մոսկուայէն Երեւան ժամանեցին Ռուսաստանի Վարչապետ Վլատիմիր Փութին եւ Պետական Տումայի Նախագահ Կենատի Սէլէզնիով, որոնք եկած էին իրենց ցաւակցութիւնը յայտնելու: Վարչապետ Փութին յայտնեց թէ սուգի օր է այս եւ համայն Ռուսաստանի Դաշնակցութիւնը կը մասնակցի Հայաստանի այս մեծ սուգին, շարունակ կրկնելով որ Ռուսաստան միշտ կանգնած է ու ասկէ վերջ ալ պիտի կանգնի Հայաստանի կողքին, քանի որ Ռուս ու Հայ ժողովուրդները միշտ եղած են բարեկամ:

Ցաւակցական ելոյթ մըն ալ ունեցաւ Պետական Տումայի Նախագահ Սէլէզնիով, որ նմանապէս կրկնեց թէ Ռուսաստանն ալ Հայաստանի նման կը սգայ այս արժէքաւոր քաղաքական գործիչներու մահը: Ան յիշեց թէ տակաւին տասը օր առաջ Մոսկուայի մէջ ինչպիսի անմոռանալի հանդիպում մը ունեցած էր Ազգային Ժողովի Նախագահ Կարէն Դեմիրճեանի հետ:

Հանդիսաւոր կերպով մուտք գործեց Ղարաբաղի պատուիրակութիւնը՝ Նախագահ Արկադի Ղուկասեան, Վարչապետ՝ Անուշաւան Դանիէլեան, Ազգային Ժողովի Նախագահ՝ Օլէկ Եսայեան, Պաշտպանութեան Նախարար՝ Սէյրան Օհանեան եւ կառավարութեան այլ անդամներ, որոնք մէկ-մէկ ծաղիկ կը զետեղէին դագաղներու առջեւ: Սրահին մէջ կը հնչէին «Ի վերինն Երուսաղէմ», «Տէր Ողորմեա» շարականները:

Ժամը 13.00ին բոլոր ներկաները յոտնկայս ունկնդրեցին Տէրունական Աղօթքը, երբ մուտք գործեցին Գարեգին Բ. Ամենայն Հայոց Ծայրագոյն Կաթողիկոսը, Մեծի Տանն Կիլիկիոյ Արամ Ա. Վեհափառ Հայրապետը, Ս. Երուսաղէմի եւ Պոլսոյ Պատրիարքներ՝ Ամեն. Տ. Թորգոմ Ս. Արք. Մանուկեան եւ Ամեն. Տ. Մեսրոպ Ս. Արք. Մութաֆեան, Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ թեմակալ Առաջնորդներ:

Այդ միջոցին Նախագահ Քոչարեանն ալ եկաւ ու տեղ գրաւեց Վարչապետ Վազգէն Սարգսեանի մօր քով: Բարձրաստիճան հոգեւորականները բարձրացան օփերայի բեմին վրայ, ուր սկսաւ եկեղեցական արարողութիւն, բան մը, որ անսովոր երեւոյթ էր թէ Հայաստանի քաղաքական կեանքի եւ թէ եկեղեցական մեր սովորութիւններուն մէջ:



Ժողովուրդէն մաս մը Ազատութեան Հրապարակին վրայ

Յետոյ, ճիշդ այն պահուն, երբ Վրաստանի Նախագահ Էտուարտ Շէվարտնածէ եւս սրահ կը ժամանէր եւ ցաւակցութիւն կը յայտնէր Նախագահ Քոչարեանին, բեմի վրայէն դամբանախօսեց Ծայրագոյն Գարեգին Բ. Վեհափառ Հայրապետը, որմէ ետք Հայաստանեայց Եկեղեցւոյ բարձրաստիճան հոգեւորականները մի առ մի իջան բեմէն: Ապա վարը, բեմին մէկ կողմը դրուած ամպիոնէն խօսելու հրաւիրուեցաւ Հանրապետութեան Նախագահ Ռոպերթ Քոչարեան: Նախագահը յուզիչ արտայայտութիւններով դրուատեց զոհուած իր գործակիցներուն, մանաւանդ Վազգէն Սարգսեանի ու Կարէն Դեմիրճեանի ազգանուէր ու հայրենանուէր ծառայութիւնները, վստահեցնելով որ այս անարգ ոճիրին պատասխանատուները հաշիւ պիտի տան ո՛չ միայն օրէնքներուն, այլ նաեւ պատմութեան ու գալիք սերունդներուն առջեւ:



Ողբ. Կ. Դեմիրճեան դագաղին մէջ

Նախագահին ուղերձով աւարտած եղաւ Օփերայի շէնքին մէջ կատարուած հոգեհանգստեան արարողութիւնը: Այդ պահուն բեմ եկան զինուորներ եւ շարուեցան դագաղներուն ետին: Մէկ-մէկ սպայ վերցուցին դագաղներուն առջեւ դրուած մեծ դիմանկարները: Անոնց ետեւէն ալ տեղ գրաւեցին զինուորներ որոնք կը կրէին ողբացեալք Վազգէն Սարգսեանին ու Կարէն Դեմիրճեանին մետալներն ու շքանշանները ցոյց տուող տախտակներ: Յետոյ բեմէն վար առնուեցան դագաղները ու հանուեցան դուրս՝ Ազատութեան հրապարակ: Այստեղ յուղարկաւորներու թափօրը բաժնուեցաւ չորս ուղղութիւններու:

## ՎԱԶԳԷՆ ՍԱՐԳՍԵԱՆԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Վարչապետ Վազգէն Սարգսեանի դագաղը Ազատութեան Հրապարակէն վերջ դրուեցաւ ծաղիկներով զարդարուն ու սպիտակ զրահամեքենայի մը վրայ եւ փոխադրուեցաւ դէպի նահատակ զինուորներու յատկացուած Եռաբլուր գերեզմանատուն: Թաղման արարողութեան ներկայ գտնուեցաւ Նախագահ Քոչարեան, որուն քով կանգնած էր Ղարաբաղի նախագահ Արկադի Ղուկասեան եւ Անվտանգութեան Նախարար Սերժ Սարգսեան, որ շարունակ գետին կը նայէր:

Դագաղին անմիջապէս ետեւէն կը քալէր իր մայրը, որ շատ ամուր կեցուածք ունէր, երբեմն կը շոյէր իր զաւկին երեսը:

Ներկաներուն մէջ հեռուէն կը տեսնուէին նախկին Նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան եւ իր նախկին գործակիցները:

Այստեղ դարձեալ ելոյթ մը ունեցաւ Նախագահ Քոչարեան, որ իր սրտի ցաւը արտայայտեց հիանալի գործընկեր մը կորսնցուցած ըլլալուն համար:

Դամբանախօսութիւն մը ըրաւ նաեւ Ուքրանիոյ Վարչապետը: Յետոյ Վազգէն Սարգսեանի մարմինը յանձնուեցաւ հողին:

## ԿԱՐԷՆ ԴԵՄԻՐՃԵԱՆԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Կարէն Դեմիրճեան հողին յանձնուեցաւ Կոմիտասի անուան Պանթէոնին մէջ, որ անմահներու գերեզ-

# ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԽՈՐՀՐԴԱՐԱՆԷՆ ՆԵՐՍ ԿԱՐԷՆ ԴԵՄԻՐՃԵԱՆ, ՎԱԶԳԷՆ ՍԱՐԳՍԵԱՆ, ԵՒ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐ ԶՈՀ ԱՆԱՐԳ ՈՃԻՐԻ

Հայաստանի Ազգային Ժողովէն ներս կատարուած ահաբեկչական արարքի մը զոհ գացին երկրի գործադիր ու օրէնսդիր իշխանութեան երկու գլխաւոր դէմքերը՝ Վազգէն Սարգսեանն ու Կարէն Դեմիրճեանը:

Արդարեւ, Հոկտեմբեր 27-ի կ.ե. ժամը շուրջ 17:30-ին, երբ խորհրդարանէն ներս տեղի կ'ունենար Ազգային Ժողով-Կառավարութիւն հարց ու պատասխան, խումբ մը զինեալ անձեր խուժած են խորհրդարանի դահլիճէն ներս եւ սկսած կրակ բանալ:

Ըստ դահլիճէն ներս գտնուած լրագրողներուն, որոնց առիթ տրուած է դուրս գալ շէնքէն, յարձակողները նախ պահանջած են պատգամաւորներէն յանձնել իրենց բջջային հեռախօսները ու պառկիլ գետին, յայտարարելով, թէ յեղաշրջում կը կատարեն եւ պատանդ կը պահեն պատգամաւորները: Անոնք նաեւ յայտնեցին, որ ներխուժողներու ղեկավարն էր նախկին լրագրող Նաիրի Յունանեան, որ եղած է Դաշնակցութեան անդամ: Ահաբեկիչները կրակ բացած են յատկապէս կառավարութեան եւ «Միասնութիւն» դաշինքին անդամներու ուղղութեամբ:

Երեկոյեան ժամը 11:00-ին խորհրդարանէն դուրս բերուեցան զոհերու դիակները, որոնց մէջ կը գտնուէին բացի Վազգէն Սարգսեանէն եւ Կարէն Դեմիրճեանէն, Խորհրդարանի փոխ նախագահներ Եուրի Բախշեան եւ Ռուբէն Միրոյեան նախարար Լէոնարտ Պետրոսեան, պատգամաւորներ՝ ակադեմիկոս Միքայէլ Գոթանեան, Հէնրի Աբրահամեան եւ Արմենակ Արմենակեան:

Հանրապետութեան նախագահը, անձնապէս սկսաւ բանակցիլ ահաբեկիչներուն հետ: Անոնք պահանջեցին ելոյթ ունենալ հեռատեսիլէն եւ այդ առիթ տրուեցաւ իրենց Հինգշաբթի առաւօտեան:

Կէսօրուայ մօտ անոնք սկսան ազատ արձակել պատանդները եւ ապա անձնատուր եղան: Հայաստանի ներքին քաղաքական կացութիւնը ծանր բնոյթ ստացաւ երբ պաշտպանութեան նախարարութիւնը Հինգշաբթի օր հանդէս եկաւ յայտարարութեամբ մը, ուր ըսուած էր թէ, Ազգային Ժողովի դահլիճէն ներս կատարուածը նախապէս ծրագրուած եւ նենգօրէն իրականացուած ոճրագործութիւն է: «Կատարուածը դաւադրութիւն է ուղղուած Հայոց պետականութեան եւ Հայ ժողովրդի ապագայի դէմ»: Յայտարարութեան մէջ կը պահանջուէր նաեւ Ազգային Անվտանգութեան եւ Ներքին Գործոց նախարարներու ու Ընդհանուր Դատախազի հրաժարականները:

Առաջին առթիւ իր հրաժարականը ներկայացուց Ներքին Գործոց Նախարար Սուրէն Աբրահամեանը: Իսկ անցեալ Կիրակի օր Ազգ. Անվտանգութեան նախարար Սերժ Սարգսեան ներկայացուց իր հրաժարականը:

Հայաստանի ողբերգական այս դէպքերը դատապարտեցին աշխարհի գրեթէ բոլոր երկիրներու ղեկավարները:

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

*Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Կեդրոնական Վարչութիւնը, աշխարհասփիւռ իր բոլոր անդամներուն եւ համակիրներուն անունով, բուռն կերպով կը դատապարտէ հայրենադաւ ոճրագործութիւնը որը գործադրուեցաւ ԱԺի դահլիճէն ներս ԱԺի նիստի պահուն եւ որուն զոհ գացին ԱԺի նախագահը, երկու փոխ - նախագահները, Ազգային հերոս՝ վարչապետը, նախարարներ եւ երեսփոխաններ, ընդամէնը ութը պատասխանատու օգտաշատ անձեր եւ մեծ թիւով վիրաւորներ:*

*Մեծ դաւադրութեան մը գործադրութիւնն է աս, որը կը միտի հիմնէն խախտել Հայաստանի պետականութիւնը, ստեղծել իրարանցում եւ գլխատել ղեկավարութիւնը:*

*Ոճրագործներուն դիրքութեամբ ԱԺէն ներս կարենալ մտնելը եւ անարգել սպանութիւններ կատարելը, կը փաստեն դաւադիրներուն վայելած մեղսակցութիւնը պատասխանատու անձերու մօտ:*

*Ուստի, Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը կը պահանջէ անյապաղ դիմակազերծել հայրենադաւ ծրագրի հեղինակները, կազմակերպողները եւ մեղսակից բոլոր դերակատարները եւ խստօրէն պատժել զանոնք արմատախիլ ընելու համար չարիքը:*

*Հայ ժողովուրդի դարաւոր երազը խամրեցնելու՝ իր անկախ պետականութիւնը քանդելու այս եւ նման փորձեր բնաւ պէտք չէ յուսահատեցնեն հայ մարտնչող ժողովուրդը եւ անոր հայրենասէր ղեկավարները: Ընդհակառակը, հայ ժողովուրդը մէկ ճակատ կազմած, պէտք է ձախողեցնէ այս եւ նման ամէն դաւադրութիւն:*

*Բիւր յարգանք հայրենի պետականութեան զօրացման պայքարի ճակատին վրայ զոհուած ղեկավարներու յիշատակին:*

Պէյրութ, 29 Հոկտ. 1999

**Ս.Դ.Հ. ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

մանատունն է: Դեմիրճեանի դագաղը Օփերայի շէնքէն մինչեւ Պանթէոն փոխադրուեցաւ ժողովուրդին կողմէ ուսամբարձ: Արարողութեան նախագահեց Ներսէս Արք. Պօզապալեան: Դամբանախօսութիւն մը ըրաւ Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի Նախագահ Ակադեմիկոս Ֆադէյ Սարգսեան:

Ելոյթ ունեցաւ երեսփոխան Դաւիթ Յովհաննէս: Ելոյթ ունեցաւ նաեւ Ռուսաստանի նախկին վարչապետ Նիքոլայի Ռիժքով:

Դամբանախօսութիւններէն վերջ զինուորներու հրացանաձգութեան ներքեւ ու ազգային հիմնի ընկերակցութեամբ, Կարէն Դեմնիրճեանի մարմինը հողին յանձնուեցաւ Ազգային Պանթէոնին մէջ:

## ԵՒ ՄԻՒՍՆԵՐՈՒՆ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Միւս զոհերն ալ հողին յանձնուեցան Քաղաքացիական Գերեզմանատան մէջ: Անոնց յուղարկաւորութիւնն ալ կատարուեցաւ յուզիչ մթնոլորտի մէջ, իրենց մերձաւորներուն ու անմիջական բարեկամներուն արցունքներուն մէջ: Շատեր, ինչպէս Պարոյր Հայրիկեան, Րաֆֆի Յովհաննէսեան, երեսփոխաններ, մտաւորականներ, խօսելով լրագրողներու հետ, ի վեր կ'առնէին անոնց բարի մարդու ու հայրենասէր գործիչի յատկութիւնները:

## ՇԱԲԱԹ ՕՐ՝ ԱՐՄԵՆԱԿ ԱՐՄԵՆԱԿԵԱՆԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՅԱՐԳԱՆՔԻ ՀԱՄԵՐԳԸ

Երեսփոխան Արմենակ Արմենակեանի մարմինը հողին յանձնուեցաւ Շաբաթ 30 Հոկտ.ին, միւսներէն մէկ օր առաջ: Նորք-Մարաշ թաղամաս՝ ուր բարեկամներու, զինուորականներու, ազգականներու ու սգակիր ժողովուրդի ստուար բազմութեան մը ներկայութեան հողին յանձնուեցաւ իր իսկ կողմէ կառուցուած Սուրբ Մարիամ Աստուածածին եկեղեցիի բակին մէջ:

Իրիկունը, Երեւանի Արամ Խաչատրեան համերգասրահին մէջ զոհերու ի յիշատակ յարգանքի համերգ մը սարքուեցաւ Լորիս Ճգնաւորեանի խմբավարութեամբ: Նուագախումբ ու երգչախումբ, նաեւ չորս մենակատարներ, մեկնաբանեցին Մոցարդի «Ռէքուէմ»ը, հոյակապ գործ մը, որ կատարուեցաւ հիանալի մեկնաբանութեամբ:

Համերգը վերջացաւ Տէրունական աղօթքով:

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع.

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax: (202) 4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1415 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 25 ՆՈՅԵՄԲԵՐ 1999

ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 եգ. Դհկ.

عدد رقم ١٤١٥ — الخميس ٢٥ نوفمبر ١٩٩٩

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՄԻՇՏ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԱԿԱՆ ՈԳԻՈՎ

### (Գահիրէի Թեմական Ընտրութեանց Առիթով)

Իրողութիւն մըն է, թէ «Ջահակիր»ի շրջանակը առաջիններէն էր, որ համոզուած և դրական աշխատանք տարած էր իրագործելու համագործակցական ոգին համայնքէս ներս:

Արդարեւ 24 տարիէ ի վեր Գահիրէի ազգային և համայնքային վարչամեքենան կ'ընթանայ երեք գլխաւոր հաստուածներու՝ «Արեւ»ի, «Յուսաբեր»ի և «Ջահակիր»ի շրջանակներու միասնական գործունէութեամբ:

Ուրեմն անոնց պարտականութիւնն ու պատասխանատուութիւնը մեծ է, տրուած ըլլալով որ գահիրէաբնակ քուէարկող հասարակութիւնը իրենց կը վստահի թեմիս կալուածական, վարչական, կրթական, եկեղեցական և այլ հարցերու բարենպաստ յանձնառումը:

Եգիպտահայ մամուլն ալ իր կարգին ջատագովելով համագործակցական ոգին և եգիպտահայ գաղութին բարի համբաւը բարձր պահելու մտադրութեամբ, յաճախ արձագանգ հանդիսացած է Ազգային Իշխանութեան տարած գնահատանքի արժանի գործերուն ու կատարած բարեկարգումներուն, առանց սակայն մատնանշելու թերացումներ կամ սխալներ երբ կը պատահին, այն համոզումով, թէ գաղութային և համայնքային հարցերով զբաղուիլ կը նշանակէ անսակարկ նուիրում, ողջախոհութիւն և ձեռնհասութիւն: Բարեբախտաբար այդ տեսակէտէն համայնքէս ներս ունինք ընտիր գործիչներ և ժրաջան ազգայիններ, որոնք ամէն ճիգ կը թափեն ի շահ համայնքիս ու ազգիս բարօրութեան:

Սակայն միաժամանակ նաեւ կը գտնուին ոչ գործօն, անկարող և փառասէր անձեր, որոնք մաս կազմած են հոգաբարձական կամ համայնքային այլ կառոյցներու մէջ, և փոխանակ գործեր յառաջ տանելու, ընդհակառակը իրենց չաշխատելով հարցեր կը մնան դժուարացած, արգելակուած, խնդիրներ ալ կը սպասին լուծումի ու լրացումի: Այս բոլորը պատճառ կը հանդիսանան, որ անտարբերութիւն մը ստեղծուի և անհաճոյ հետեւանք ստացուի համայնքէս ներս: Արդի՞ւնք. գործեր կը մնան մոռցըւած կամ թերացած վիճակի մէջ:

Այս յուզող կացութեան ի տես, քանի մը ազգային դէմքեր անվերապահօրէն իրենց ուսերուն վրայ առած են համայնքային ամէն գործ, հարցերը կարգադրելով իրենց դատած հայեցողութեամբ: Այսքան դժուարութեանց առջեւ, բնական է որ ոեւէ խմբաւորում կամ անհատ գործիչ, արդիւնաւէտ գործունէութեանց կողքին, սխալներ գործէ կամ թերացումներ ունենայ: Կարեւորը կանոնք ընդունիլն է. անդրադառնալով վերատեսութեան ենթարկել ու սրբագրելն է, քանի դեռ ուշ չէ:

Ուստի ի խնդիր այս բոլորին՝ նկատի ունենալով հայ մամուլի վերահսկիչ դերը, որ պէտք է կատարէ գաղութէս ներս, եգիպտահայ մամուլը որոշած է այսուհետեւ աւելի մօտէն հետաքրքրուիլ համայնքային կեանքով: Լուսաբանութիւններ և բացատրութիւններ պահանջելէ ետք պատասխանատուներու եւ մասնագէտներու կողմէ, պիտի գնահատէ ու քննադատէ Ազգային Իշխանութեան տարած գործունէութիւնը, միշտ փաստարկումներով, օրինակելի եղանակով և փոխադարձ յարգանքի սահմաններէն ներս: Ի պահանջել հարկին պիտի մատնանշէ մոռցուած կամ թերացած հարցերը, միշտ օրինաւոր և պատշաճ ուղիներով: Պիտի ջանայ հեռացնել վերեւ յիշուած այն անձերը, որոնք տարբեր կառոյցներու մէջ սպրդելով, կամայ թէ ակամայ կը վարակեն իրենց գործակիցները: Եւ վերջապէս պիտի աշխատի շինիչ և ուսումնասիրուած առաջարկներ ներկայացնել, ի շահ գաղութիս յառաջդիմութեան:

Հետեւաբար նորակազմ «Համագործակցական Ճակատ»ի անդամներէն կը խնդրենք, որ ըլլան առաւել ողջամիտ ու հարցերը քննարկեն բանականութեամբ, բարւոք լուծումներ տալով հարցերուն: Աւելի լաւ կազմակերպուելու համար կը պահանջուի վճռակամութիւն և բարձրագոյն գիտակցութիւն, յատկապէս համայնքային յոյժ կարեւոր հարցերու շուրջ, ինչպէս՝ հողային կալուածներու կնճռոտ խնդիրը, ազգային վարժարաններու աշակերտութեան օտար վարժարաններ յաճախելու արգելակման հարցը, Ազգային Առաջնորդարանի դիւանի պաշտօնէութեան կայունացման անհրաժեշտութիւնը, եկեղեցիէն ներս նոր կղերականներով օժտելու և Առաջնորդ Սրբազան Հօր տնօրինութեամբ կրօնաբարոյական դաստիարակութեան զօրացման կարեւորութիւնը կամ տարի մը առաջ նոտարի պաշտօնի նշանակուած անձի վաւերացման թնճուկը և այլ բարդ հարցեր, որոնց առջեւ պէտք է առհասանք և միշտ համագործակցական ոգիով, ջանք չխնայենք, ի մտի ունենալով ազգային ու համայնքային շահերը:

Ուրախ ենք, որ կողքին երեւցող ընտրելիներու «Համագործակցական Ցանկ»ը համալրուած է կայտառ և աշխոյժ ուժերով, ինչ որ յոյս կը ներշնչէ որ անվերապահօրէն վստահինք իրենց և լաւատեսութեամբ տոգորուած, անկաշկանդ, մեր քուէները տանք այդ ցանկին, յառաջիկայ Կիրակի 28 Նոյեմբերին կայանալիք Գահիրէի Թեմական ամբողջական ընտրութիւններուն, նուիրական պարտականութիւն մը կատարած ըլլալու գիտակցութեամբ:

---

ԳԱՀԻՐԷԱԲՆԱԿ ՔՈՒԷԱՐԿՈՂ ՀԱՅՐԵՆԱԿԻՑ,

Այս Կիրակի գիտակցօրէն կատարէ քաղաքացիական պարտականութիւնդ եւ անվերապահօրէն քուէդ տու՛ր ՄԻԱՍՆԱԿԱՆ ՑԱՆԿԻՆ

## ԿՈՉ ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

*«Արեւ»ի, «Յուսաբեր»ի եւ «Ջահակիր»ի շրջանակներուն միջեւ 24 տարի եւ մինչեւ օրս իրարհաւկացողութեամբ շարունակուող համագործակցութիւնը յետ այսու եւս նոյն վճռակամութեամբ եւ համայնքին ծառայելու նուիրական պարտականութեան գիտակցութեամբ, որոշուած է շարունակել միշտ ի մտի ունենալով ազգային եւ համայնքային շահերը:*

*Հետեւաբար, յառաջիկայ 28 Նոյեմբեր 1999ի Գահիրէի Թեմական ամբողջական ընտրութիւններուն, համագործակցական ցանկով կը ներկայանանք, եւ վստահ ենք, որ քուէարկող հասարակութիւնը իր քուէները պիտի տայ մեր ցանկին, այն հաստատ համոզումով, որ յառաջիկայ Թեմական ժողովը համալրուած նոր ուժերով, իր բոլոր կարելիութիւնները ի սպաս պիտի դնէ մեր թեմի բարօրութեան եւ յառաջդիմութեան:*

*Մեր ներկայացուցած ընտրելիներու ցանկին իւրաքանչիւր մէկ անդամին մօտէն ծանօթ են բոլորը:*

*Ուրեմն, սիրելի հայրենակիցներ, կատարեցէք ազգային քաղաքացիական ձեր պարտականութիւնը, Կիրակի, 28 Նոյեմբեր 1999ին քուէատուփ ներկայանալով, եւ գիտակցօրէն ու համոզումով ձեր քուէները տուէք համագործակցական ցանկին:*

«ԱՐԵՒ»Ի, «ՅՈՒՍԱԲԵՐ»Ի ԵՒ «ՋԱՀԱԿԻՐ»Ի
ՄԻԱՍՆԱԿԱՆ ՃԱԿԱՏ

## ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐՈՒ ԱՆՈՒՆՆԵՐԸ

1.- ԱՍԱՏՈՒՐԵԱՆ ԱՐԹԻՆ, ԱԶԻԶ
2.- ԳԱԶԱՆՃԵԱՆ ՍԵՊՈՒՀ, ՎԱՐԴԱՆ
3.- ԳԱԼԻՆԵԱՆ ԽՈՐԷՆ-ԱՍՊԵՏ, ԱԼՊԷՐ
4.- ԳԱՍԱՊԵԱՆ ԷՏՈՒԱՐ, ՎՐԷԺ
5.- ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ՆՈՐԻՍ-ՖՐԷՏԻ, ԱՐՇԱԿ
6.- ԳԸԶԸԼԵԱՆ ԲԱՐՍԵՂ, ՎԱՀԱՆ
7.- ԵԱԶԸՃԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ, ՅՈՎՀԱՆՆԷՍ
8.- ԵՐԶՆԿԱՑԵԱՆ ԳԷՈՐԳ-ՎԱԶԳԷՆ, ԱՆԴՐԱՆԻԿ
9.- ԹԷՐԶԵԱՆ ՊԵՐՃ, ՏԻԳՐԱՆ
10.- ԿԱՊԷՅԵԱՆ ԱՐԹԻՆ, ՆՇԱՆ
11.- ԿԷՎՐԷԿԵԱՆ ՎԱՀՐԱՄ, ՌՈՒԲԷՆ
12.- ՄԱԶԼՈՒՄԵԱՆ ԳԷՈՐԳ, ԳԵՂԱՄ
13.- ՄԱԶԼՈՒՄԵԱՆ ՇԱՀԷՆ, ՅԱԿՈԲ
14.- ՄԱՐԳԱՐԵԱՆ ԳՐԻԳՈՐ, ՅԱՐՈՒԹԻՒՆ
15.- ՄԵՍՐՈՊԵԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ, ՍԱՐԳԻՍ
16.- ՄԽՏԻԿԵԱՆ ՊԵՏՐՈՍ, ԾԱՏՈՒՐ
17.- ՄՈՎՍԷՍԵԱՆ ՊԵՏՐՈՍ, ՄՈՎՍԷՍ
18.- ՁԱՄՔԷՐԹԷՆԵԱՆ ՍԻՄՈՆ, ՍԱՐԳԻՍ
19.- ՊԱԼԱԵԱՆ ՄԱՐՏԻՐՈՍ, ՆՈՒՊԱՐ
20.- ՊԱՅՐԱՄԵԱՆ ՍՈՒՐԷՆ, ՆԱՐՊԷՅ
21.- ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՕՆՆԻԿ, ԱՐԹՕ
22.- ՍԻՄՈՆԵԱՆ ՀՐԱՉ, ՊՕՂՈՍ
23.- ՍԻՄՈՆԵԱՆ ՆՈՒՊԱՐ, ՊՕՂՈՍ
24.- ՏԷՕՎԼԷԹԵԱՆ ՆՈՐԱՅՐ, ՊԵՏՐՈՍ

---

ԵԱՀԿ-ի Գագաթաժողովէն Վերջ

## ԿՈՎԿԱՍԻ ՄԷՋ ՎԵՑԵՐՈՒ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ԱՊԱՀՈՎՈՒԹԵԱՆ ԴԱՇԻՆՔ ՄԸ ԿՐՆԱՅ ԿՆՔՈՒԻԼ

### Ալիեւ Ու Քոչարեան Իրենց Մտածումները Կ'արտայայտեն Հողային Ամբողջականութեան Սկզբունքին Մասին

«Զաման»ի թղթակիցը ԵԱՀԿ-ի արդիւնքներուն նուիրուած իր մէկ թղթակցութեան մէջ, կը խօսէր վեց երկիրներու մասնակցութեամբ Կովկասեան ապահովութեան նոր Դաշինքի մը մասին, որուն հիմնական կէտերուն իրենց հաւանութիւնը տուած են Հայաստան ու Ատրպէյճան: Թղթակիցը, կը նշէ որ Դաշինքը պիտի կնքուի Ամերիկայի, Թուրքիոյ, Ռուսաստանի, Ատրպէյճանի, Վրաստանի ու Հայաստանի միջեւ:

ԵԱՀԿ-ի Իսթանպուլեան Գագաթաժողովի մասնակի բազմաթիւ ժողովներու ընթացքին շահագրգիռ կողմերը լայնօրէն քննարկեցին այս առաջարկը, որ կը վայելէ Ամերիկայի ու Թուրքիոյ քաջալերութիւնը: Հայաստանի Նախագահ Ռոպերթ Քոչարեան, Քլինթընի ու Տէմիրէլի նախաձեռնութիւնը ընդունելով այս մասին կարծիքի փոխանակումներ ունեցաւ Ալիեւի ու Շեվարտնածէի հետ: Ալիեւ ու Շեվարտնածէ, իրենց գլուխ գլխի տեսակցութեան ընթացքին ուրիշ կարեւոր հարց մըն ալ ծեծեցին: Անոնք մտահոգութիւններ յայտնեցին Հայաստանի մէջ տեղակայուած ռուսական ուժերու թիւին ու այդ թիւի ապագայ բարձրացման հաւանականութեան մասին:

Թղթակիցը կը նշէ որ Քոչարեանի հաւանութիւնը նոր յոյսեր ստեղծեց հողատարածքի ապագային նկատմամբ: Դաշինքը, ըստ ծրագրի, գործօն դեր պիտի կատարէ Ղարաբաղի, Աբխազիոյ ու Օսէթիայի հակամարտութիւններու լուծման գործընթացին մէջ:

Թղթակիցը կը նշէ որ ազերիներ շատ գոհ չեն մնացած Իսթանպուլեան Գագաթաժողովի Հռչակագրի մէջ Ղարաբաղեան հարցի առընչութեամբ տեղ գտած երկու յօդուածներէ: Առաջինը կը վերաբերի Մինսքեան Խմբակի աշխատանքին որ 7 տարիէ ի վեր շօշափելի գործ չէ կրցած տեսնել: Երկրորդ դժգոհութիւնն ալ ծնունդ կ'առնէ այն փաստէն՝ թէ այս անգամ Հռչակագրին մէջ տեղ չտրուեցան այն երեք սկզբունքները, որոնք ընդունուած են Լիզպոնի մէջ:

Ատոր փոխարէն Հայաստան ու Ատրպէյճան համաձայնած ըլլալ կը թուին, որ Ղարաբաղեան հաշտութեան ծրագիրը տարածուի երկար ժամանակաշրջանի մը վրայ, նախ յղուի ժողովուրդներու հանրաքուէին, ապա վերջապէս դրուի հաշտութեան սեղանին վրայ:

Միւս կողմէ Արմէն Փրէս կը հաղորդէ թէ Նախագահ Ալիեւ Պաքու վերադառնալէ վերջ ազերի լրագրողներուն յայտնած է որ ինք գոհ է Իսթանպուլի Գագաթաժողովին արդիւնքէն:

Լրագրողներէն մէկը հարցուցած է թէ ինչո՞ւ այս անգամ Հռչակագրին մէջ չէ շեշտուած Ատրպէյճանի հողային ամբողջականութեան սկզբունքը, բան մը որ Լիզպոնի մէջ շեշտուած էր: Ալիեւ պատասխանած է որ Իսթանպուլի Հռչակագրին մէջ ներմուծուած է յատուկ կէտ մը, որ նոյն իմաստը ունի: Հոն քննարկուած է վիճակը այն երկիրներուն, որոնք փոքրամասնութիւններ ունին: Այդ փոքրամասնութիւններուն կարելի է բարձր մակարդակով ինքնավարութիւն շնորհել, պահելով հանդերձ հողային ամբողջականութեան սկըզբունքը: Այս յօդուածը արդէն Ատրպէյճանի համար բաւարար նկատուած է:

### ՀՈՂԱՅԻՆ ԱՄԲՈՂՋԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ Ի՞ՆՉ ԸՍԱՒ ՔՈՉԱՐԵԱՆ

Հողային ամբողջականութեան սկզբունքի մասին նմանօրինակ հարցումի մը ենթարկուեցաւ նաեւ Նախագահ Քոչարեան, երբ Ուրբաթ իրիկուն Երեւան վերադարձաւ:

Ան պատասխանեց.- «Մենք հողային ամբողջականութեան սկըզբունքին դէմ չենք: Ի վերջոյ մի՛ մոռնաք որ մենք ալ հողային տարածութիւններ ունինք եւ մեր հողային ամբողջականութիւնը պաշտպանել կը ցանկանք: Ուստի մենք հողային ամբողջականութեան դէմ չենք: Մենք Ղարաբաղեան հարցի մէջ պարզապէս կը պաշտպանենք ժողովուրդներու ինքնավարութեան իրաւունքը: Պէտք է այսպէս տեսնել այս հարցը»:

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԻՆ ՇՆՈՐՀԱՒՈՐԱԳՐԵՐԸ ՆՈՐԸՆՏԻՐ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ. ՀԱՅՐԱՊԵՏԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ԵՒ ՕԾՄԱՆ ԱՌԹԻՒ

**Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ.**
**Ծայրագոյն Պատրիարք եւ Կաթողիկոս Ամենայն Հայոց**
**Ս. ԷՋՄԻԱԾԻՆ**

Վեհափառ Տէր,

*Թադէոս եւ Բարթողոմէոս Առաքելական Ս. Աթոռը թափուր մնացած էր անժամանակ վախճանումովը Երջանկայիշատակ Գարեգին Ա. Կաթողիկոսի: Այսօր այդ Աթոռը դարձեալ կը ծաղկի իր արժանաւոր Գահակալի՝ Ձերդ Սրբութեան պայծառ եւ իմաստուն անձնաւորութեան մէջ:*

*Վստահ ենք թէ Ձերդ Սրբութեան Գահակալութեան շրջանին պիտի ծաղկի եւ բարգաւաճի Ս. Էջմիածինը, եւ այս ի փառս հայ եկեղեցւոյ եւ հայ ժողովուրդին:*

*Ի սրտէ կը շնորհաւորենք Ձերդ Սրբութեան Գահակալութիւնը եւ որդիական խոնարհութեամբ կը մաղթենք Ձեզ առողջութիւն, երկար կեանք եւ բեղմնաւոր գործունէութիւն:*

*Մատչելով ի համբոյր Ձեր Ս. Աջոյն*
**ԳԱԼՈՒՍՏ ՎԱՐԴԱՊԵՏ ԴԱՐԲԻՆԵԱՆ**
**Հոգեւոր Հովիւ Գահիրէի Հայոց**

* * *

**Ն.Ս.Օ.Տ.Տ. ԳԱՐԵԳԻՆ Բ.**
**Ծայրագոյն Պատրիարք եւ Կաթողիկոս Ամենայն Հայոց**
**Ս. ԷՋՄԻԱԾԻՆ**

Վեհափառ Տէր,

Յանուն Գահիրէի Ազգային Իշխանութեան եւ Համայնքի զաւակներուն, կու գանք Ձերդ Սրբութեան փոխանցել մեր սրտագին մաղթանքները ու շնորհաւորութիւնները, Ձեր Ամենայն Հայոց Կաթողիկոս ընտրութեան եւ Օծման առթիւ:

Կ'աղօթենք որ Բարձրեալը անսասան պահէ Առաքելական Աթոռ Ս. Էջմիածինը եւ երկնային հովանիին տակ պահէ անոր արժանաւոր Գահակալը:

Այսու կու գանք վերանորոգել մեր հաւատարմութիւնը հանդէպ Ս. Էջմիածնայ Ամենայն Հայոց Հայրապետական Ս. Աթոռին:

Մեր որդիական ջերմ զգացումները Ձերդ Վեհափառութեան, մաղթելով քաջառողջութիւն եւ յաջողութիւն Աստուածանուէր Ձեր առաքելութեան:

Ի դիմաց Գահիրէի Թեմական Ազգային Իշխանութեան

Ատենապետ Քաղաքական Ժողովի — **ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆ**

Ատենապետ Թեմական Ժողովի — **ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ**

## ՈՂԲԱՑԵԱԼ ՄԱՐԿՐԻԹ- ՊԱՅԾԱՌ ՅԱԿՈԲԵԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ

### ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Մօ. Եդուարդ Յակոբեան իր յաւէտ ողբացեալ կնոջ, վաստակաշատ երգչուհի եւ Ազգային Բարերարուհի Մարկրիթ-Պայծառ Յակոբեանի քաղցր յիշատակին հաստատած Հիմնադրամի կանոնագրին համաձայն, Դեկտեմբեր 1-էն սկսեալ, Հիմնադրամի եկամուտները պիտի բաշխուին հետեւեալ կերպով.-

| | Ե.Ո. |
|---|---|
| «Արեւ»ին | 1200 |
| «Յուսաբեր»ին | 1200 |
| «Ջահակիր»ին | 600 |
| Գալ. եւ Մերձանեան Մանկապարտէզներու ուսուցչուհիներուն | 800 |
| Գահիրէի եւ Աղեքս. Հոգեւորականներուն | 350 |
| Շնորհալի Երգչախումբին | 550 |
| Սարկաւագաց Դասին | 200 |
| Ս. Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 200 |
| ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՈՒՄԱՐ | Ե.Ո. 5100 |

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

**ՄԻԱՑ. ՆԱՀԱՆԳՆԵՐ**

## ԹԵԼԵԹՈՆ 99 ՅԱՋՈՂՈՒԹԵԱՆ ՃԱՄԲՈՒՆ ՎՐԱՅ «ԼԻՆՍԻ» ՀԻՄՆԱՐԿԸ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ ՄԷԿ ՄԻԼԻՈՆ, ՏԻԿ. ԼՈՒԻԶ ՍԻՄՈՆ՝ 350 ՀԱԶԱՐ ՏՈԼԱՐՈՎ ԳՈՐԻՍ-ՍՏԵՓԱՆԱԿԵՐՏ ՄԱՅՐՈՒՂԻՆ ԼՐԻՒ ՊԱՏՐԱՍՏ Է

Հակառակ Հայաստանի վերջին իրադարձութիւններու յառաջացուցած յուզումին, Լոս Անճելըսի հայութիւնը կը պատրաստուի իր մասնակցութիւնը բերելու «Հայաստան» Համահայկական Հիմնադրամի կազմակերպած Թելեթոն 99-ին:

Թելեթոն 99-ի յաջողութեան առաջին նշանները արդէն իսկ սկսած են ի յայտ գալ, ցարդ յայտարարուած երկու մեծագումար նուիրատուութիւններով, որոնց վստահաբար պիտի հետեւի այսօր՝ Նոյեմբեր 25-ին ժողովրդային հանգանակութիւնը:

Արդարեւ, «Հայաստան» Հիմնադրամի գրասենեակը հաղորդեց, որ բարերար Քըրք Գրգորեանի կողմէ հաստատուած «Լինսի» Հիմնարկը անգամ մը եւս իր մասնակցութիւնը պիտի բերէ թելեթոնին՝ խոստանալով մէկ միլիոն տոլար: Նոյնպէս, Հ.Բ.Ը.Մ.-ի նախագահ տիկին Լուիզ Սիմոն նուիրահաւաքին մասնակցած է 350 հազար տոլարով:

Նաեւ կը հաղորդուի, որ Թելեթոնի յաջողութեան սատարելու նպատակով, Նոյեմբեր 22-ին Լեռնային Ղարաբաղի Հանրապետութեան նախագահ Արկադի Ղուկասեան ժամանեց Լոս Անճելըս, ընկերակցութեամբ «Հայաստան» Համահայկական Հիմնադրամի գործադիր տնօրէն Վահան Տէր Ղեւոնդեանի եւ դերասանուհի Ժաննա Գալստեանի:

Այս տարուայ թելեթոնի հասոյթը պիտի յատկացուի 169 քիլոմեթր երկարութիւն ունեցող՝ Հիւսիս-Հարաւ մայրուղիի շինարարութեան, որու ծախսերը կը գնահատուին շուրջ 25 միլիոն տոլար:

Միւս կողմէ, Հոկտեմբերի 12-ին կատարուեցաւ պաշտօնական բացումը Գորիս-Ստեփանակերտ 69-քիլոմեթրնոց մայրուղիի վերջին՝ Շուշի-Ստեփանակերտ հատուածին: Գլխաւորաբար նախորդ թելեթոններու նուիրատուութիւններով կառուցուած այդ ճանապարհի շինարարութեան վրայ ծախսուած է 10 միլիոն 265 հազար տոլար:

## ԱՊԱՔԻՆՄԱՆ ՄԱՂԹԱՆՔ

Գահիրէի Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը իմացած ըլլալով որ Հոգաբարձութեանս երկարամեայ եւ վաստակաւոր Փոխ Ատենապետ Տիար Մանուէլ Կարմիրեան հիւանդացած է, իր ժողովական ընկերները կը մաղթեն շուտափոյթ ապաքինում:

**ԵԿԵՂԵՑԵԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

* * *

## ԱՊԱՔԻՆՄԱՆ ՄԱՂԹԱՆՔ

Գահիրէի Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը իմացած ըլլալով որ Հոգաբարձութեանս երկարամեայ եւ վաստակաւոր անդամ Տիար Վարուժան Կապէեան գործողութեան ենթարկուած է, իր ժողովական ընկերները կը մաղթեն շուտափոյթ ապաքինում:

**ԵԿԵՂԵՑԵԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

## ՀՈԿՏԵՄԲԵՐ 27-Ի ԶՈՀԵՐԻ ԿԵԱՆՔԸ ՓՐԿԵԼՆ ԱՆՀՆԱՐ ԷՐ

Հայաստանի ՆԳ նախարարութեան դատաբժշկական կենտրոնի ղեկավար Շոթա Վարդանեանը Նոյեմբերի 12-ի երեկոյեան ՀՀ ազգային հեռուստատեսութեամբ ներկայացրեց Հոկտեմբերի 27-ի ոճրագործութեան զոհերի վերաբերեալ դատաբժշկական քննութեան որոշակի արդիւնքներ:

Ըստ Պրն. Վարդանեանի, ահաբեկչութեան առաջին վայրկեաններին զոհուել է վարչապետ Վազգէն Սարգսեանը, որի վրայ կատարուել է 9 կրակոց, բոլորն էլ, բացի վերջոյթների վրայ արձակուածներից, եղել են կեանքի հետ անհամատեղելի (մահացու):

Կարէն Դեմիրճեանի վրայ արձակուել է 3 կրակոց՝ մէկը ոտքին, 2-ը գլխին: Նա նոյնպէս մահացել է անմիջապէս:

Արմենակ Արմենակեանի վրայ կատարուել է 3 կրակոց, նրա մահը վրայ է հասել շատ արագ՝ ներքին արիւնահոսութեան պատճառով:

Հենրիկ Աբրահամեանի վրայ արձակուել է 4 կրակոց, մահը նոյնպէս շատ արագ է վրայ հասել:

Եուրի Բախշեանի վրայ արձակուած է եղել 2 կրակոց, որոնք պրն. Վարդանեանը շատ բարդ համարեց. գնդակը մտել է կրծքավանդակից եւ դուրս է եկել մինչեւ ստորին ծնօտի եզրը՝ փշրելով այն:

Ռուբէն Միրոյեանի վրայ արձակուել է 3 կրակոց, վնասուել են թոք եւ սիրտը, ընդ որում՝ կրակոցից սիրտը պայթել է:

Լեոնարտ Պետրոսեանի վրայ արձակուած միակ գնդակը մտել է կրծքավանդակ, վնասել է ձախ թոքը, մայր զարկերակը (կրծքային աորթան) եւ աջ թոքը:

Միքայէլ Քոթանեանի վրայ նոյնպէս արձակուել է մէկ գնդակ, որը վնասել է փայծախը, նա նոյնպէս մահացել է ներքին արիւնահոսութիւնից:

Վնասուածքների մեծ մասը մահացու են եղել, եւ բժշկական օգնութիւն ցոյց տալը, զոհուածներից որեւէ մէկի կեանքը փրկելը, փաստօրէն, ըստ Շ. Վարդանեանի անհնար է եղել, մանաւանդ՝ 10-15 րոպէ կրակոցները շարունակուել են ԱԺ դահլիճում, եւ զոհուածներն ու վիրաւորները դահլիճից դուրս են տարուել դէպքից որոշակի ժամանակ անց:

**ՅԱՋՈՐԴ ԹԻՒՈՎ՝**

*Տեղի սղութեան պատճառով, յաջորդ թիւով պիտի տանք արուեստագէտ Վահէ Վարժապետեանի ներկայացուցած յաջող ցուցահանդէսի նկարագրականը:*

*ԽՄԲ.*

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ ԿԱՆԽՈՒԵՑԱՒ ՔՈՉԱՐԵԱՆ ԵՒ ՍԱՐԳՍԵԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԵՑԱՆ ՆՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԿԱԶՄԻՆ ՇՈՒՐՋ

*Նախանցեալ շաբաթ Հայաստանի քաղաքական երկնակամարին վրայ ուրուագծուող տագնապը ու անոր հաւանական հետեւանքները կարելի եղաւ կանխել ու նախագահ Ռոպերթ Քոչարեանի եւ վարչապետ Արամ Սարգսեանի միջեւ գոյացած փոխզիջումային համաձայնութեամբ մը Շաբաթ, Նոյեմբեր 13-ին յայտարարուեցաւ նոր կառավարութեան կազմը, որմէ ներս ներքին գործոց եւ ազգային անվտանգութեան նախարարութիւնները վստահուած էին քատրային սպաներու: Արդարեւ, նոր կառավարութեան ձեւաւորման, մասնաւորապէս՝ ուժային նախարարներու նշանակման հարցով, նախագահ Քոչարեանի եւ վարչապետի միջեւ ստեղծուած յարուածութիւնը ստացած էր յուրջ բնոյթ: Վարչապետ Սարգսեան կ'ուզէր օգտագործել սահմանադրութեամբ իրեն վերապահուած՝ կառավարութիւն կազմելու իրաւունքէն, իսկ հանրապետութեան նախագահը կը փորձէր օգտուիլ կառավարութեան կազմը չհաստատելու սահմանադրական իր իրաւունքէն, պահանջելով որ ազգային անվտանգութեան եւ ներքին գործոց նախարարները ըլլան ոչ քաղաքական անձիք, որոնց հետ ինք կրնայ աշխատիլ:*

*Քաղաքական եւ նոյնիսկ սահմանադրական ճգնաժամի մը առաջքը առնելու նպատակով, նախ քան նոր կառավարութեան կազմութիւնը, տեղի ունեցան քաղաքական բազմակողմանի եւ բազմաբնոյթ խորհրդակցութիւններ եւ հանդիպումներ: Ուրբաթ օր, նախագահ Քոչարեան այս ուղղութեամբ հանդիպումներ ունեցաւ Ազգային Ժողովի նախագահ Արմէն Խաչատրեանի եւ սահմանադրական դատարանի նախագահ Գագիկ Յարութիւնեանի հետ: Որոշ տեղեկութիւններու համաձայն, Յարութիւնեան կողմերու միջնորդի դեր ստանձնած էր եւ կը փորձէր տեսակէտները ի մի բերել:*

*Նոյեմբերի 13-ին ժամը 18-ին ՀՀ նախագահի մամուլի քարտուղար Վահէ Գաբրիէլեան ներկայացուց նախագահ Քոչարեանի ստորագրած հրամանագիրերը՝ ՀՀ կառավարութեան կազմէն ներս կառուցուածքային փոփոխութիւններ կատարելու եւ կառավարութեան նոր կազմ նշանակելու մասին: Վերացուած էր օփերատիւ նախարարի պաշտօնը եւ կառավարութեան անդամներ նշանակուած էին.*

| | |
|---|---|
| *Կարլոս Պետրոսեան* | *– ազգային անվտանգութեան նախարար* |
| *Հայկ Նիկողոսեան* | *– առողջապահութեան նախարար* |
| *Դաւիթ Յարութիւնեան* | *– արդարադատութեան նախարար* |
| *Կարէն Ճշմարիտեան* | *– արդիւնաբերութեան եւ առեւտուրի նախարար* |
| *Վահան Շիրխանեան* | *– արտադրական ենթակառուցուածքներու գործերը համակարգող նախարար* |
| *Վարդան Օսկանեան* | *– արտաքին գործոց նախարար* |
| *Գէորգ Վարդանեան* | *– բնապահպանութեան նախարար* |
| *Գագիկ Շահբազեան* | *– գիւղատնտեսութեան նախարար* |
| *Արման Դարբինեան* | *– էքոնոմիքայի նախարար* |
| *Դաւիթ Զադոյեան* | *– էնէրժիայի նախարար* |
| *Շահէն Կարամանուկեան* | *– կառավարութեան աշխատակազմի ղեկավար-նախարար* |
| *Էդուարդ Ղազարեան* | *– գիտութեան եւ կրթութեան նախարար* |
| *Ռոլանտ Շառոյեան* | *– մշակոյթի, երիտասարդութեան հարցերի եւ սպորտի նախարար* |
| *Հայկ Յարութիւնեան* | *– ներքին գործերի նախարար* |
| *Վաղարշակ Յարութիւնեան* | *– պաշտպանութեան նախարար* |
| *Սմբատ Այվազեան* | *– պետական եկամուտների նախարար* |
| *Պաւէլ Ղալթաղչեան* | *– սեփականաշնորհման նախարար* |
| *Ռազմիկ Մարտիրոսեան* | *– սոցիալական ապահովութեան նախարար* |
| *Ստեփան Մնացականեան* | *– վիճակագրութեան, պետական ռեգիստրի եւ վերլուծութեան նախարար* |
| *Խոսրով Յարութիւնեան* | *– տարածքային կառավարման նախարար* |
| *Երուանդ Զախարեան* | *– տրանսպորտի նախարար* |
| *Ռուբէն Տոնոյեան* | *– փոստի եւ հեռահաղորդակցութեան նախարար* |
| *Հրայր Յովհաննիսեան* | *– քաղաքաշինութեան նախարար* |
| *Լեւոն Բարխուդարեան* | *– ֆինանսների նախարար:* |

*Արամ Սարգսեանի գլխաւորած նոր կառավարութիւնը կազմուած է 25 անդամներէ, փաստօրէն բացի օփերատիւ հարցերու նախարարի պաշտօնի (որ կը զբաղեցնէր Հոկտեմբեր 27-ի դէպքերուն զոհ՝ Լէոնարտ Պետրոսեան) վերացումէն, տեղի ունեցաւ երեք փոփոխութիւն՝ արդիւնաբերութեան եւ առեւտուրի նախարար Հայկ Գէորգեանին՝ փոխարինեց Կարէն Ճշմարիտեան, ներքին գործոց նախարար Սուրէն Աբրահամեանին՝ Հայկ Յարութիւնեանը, ազգային անվտանգութեան նախարար Սերժ Սարգսեանին՝ Կարլոս Պետրոսեանը:*

*Նոր նշանակուած ներքին գործոց նախարար Հայկ Յարութիւնեանը, ՆԳՆ ներքին զօրքերու հրամանատարն էր, ծնուած 1955 թուականին: Ազգային անվտանգութեան նախարար Կարլոս Պետրոսեանը 48 տարեկան է, մինչ նախարար նշանակուիլը եղած է ներքին գործոց նախարարութեան հետաքննութիւններու գլխաւոր վարչութեան պետը:*

*Միւս կողմէ, կառավարութեան կազմէն դուրս մնացած ազգային անվտանգութեան նախկին նախարար Սերժ Սարգսեան Նոյեմբեր 16-ին նշանակուեցաւ նախագահի աշխատակազմի ղեկավար: Նոյն օրը կատարուեցաւ նաեւ նոր գլխաւոր դատախազի նշանակումը: Արարատի մարզային դատախազ Պորիս Նազարեան եկաւ փոխարինելու Աղուան Յովսէփեանին, որու հրաժարականը կը պահանջուէր բանակի եւ խորհրդարանական մեծամասնութեան կողմէ:*

*Աղուան Յովսէփեան մէկ գրասենեակէն միւսը փոխադրուելով դարձաւ գլխաւոր դատախազի տեղակալ:*

## ԱՐՄԷՆ ՊԵՏՐՈՍԵԱՆ՝ ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ՄՕՏ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԴԵՍՊԱՆ Սերժ Սարգսեան՝ Ազգային Անվտանգութեան Խորհուրդի Քարտուղար

Անցեալ Շաբաթ օր, 20 Նոյեմբերին, Հայաստանի Նախագահ Ռոպերթ Քոչարեան, յատուկ հրամանագրով մը Յունաստանի մօտ Հայաստանի դեսպան նշանակեց Արմէն Պետրոսեանը: Մինչեւ այս պաշտօնը, Արմէն Պետրոսեան Արդիւնաբերութեան եւ Առեւտուրի փոխ-նախարար էր:

Նոյն օրը, այլ հրամանագրով մը, Նախագահ Քոչարեան Հայաստանի Ազգային Անվտանգութեան Խորհուրդի քարտուղար նշանակեց Սերժ Սարգսեանը:

Յիշեցնենք որ Յունաստանի մօտ Հայաստանի նախկին դեսպան Արման Կիրակոսեան ամիսէ մը ի վեր ստանձնած է Ամերիկայի մօտ Հայաստանի արտակարգ եւ լիազօր դեսպանի պաշտօնը:

*Ստորեւ կը հրատարակենք հրապարակագիր Ողբ. Հայկ Ժամկոչեանի մէկ անտիպ յօդուածը, զոր գրած է աւելի 20 տարի առաջ «Ա. Ջահակիրեան» ծածկանունով: Որքա՛ն շահեկան կը համարուի մօտերս կայացած Գահիրէի Թեմական ամբողջական ընտրութեանց այս շրջանին, նկատի ունենալով որ ցարդ կը շարունակուի իրարու հետ գործակցելու եւ համագործակցութեան ոգին պահելու վճռակամութիւնը, միշտ ի մտի ունենալով ազգային եւ համայնքային շահերը:*

*«Ջ.»*

**ԱՌՕՐԵԱՅ ՀՈԳԵՐ**

# ՄԻՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԻՒՆԸ ՈՅԺ ԿԸ ՅԱՌԱՋԱՑՆԷ

*Մարդկային ընկերութեան կեանքն ու գործունէութիւնը հիմնուած է տուր-եւ-առի, գործունէութեան եւ իրերօգնութեան սկզբունքին եւ արարքին վրայ:*

*Մարդ միաժամանակ չի կրնար անտառէն փայտ կտրել ու անմիջապէս յետոյ ճաշ եփել: Երբ հիւանդանայ, ինք մինակը չի կրնար գտնալ իր հիւանդութիւնը եւ բժշկել զայն: Հետեւաբար, բոլոր մարդիկը իրարու պէտք ունին:*

*Անհատէ անհատ գործակցութեան յաջորդած է խումբէ խումբ գործակցութիւնը: Ապա, ամբողջովին համագործակցութիւնը՝ ծանր ու մեծ գործ մը կատարելու համար: Հաւաքականութիւններ կը համագործակցին բնութեան աղէտներուն եւ վտանգներուն դէմ պաշտպանուելու համար: Ժողովուրդներ՝ իրարու հետ կը դաշնակցին, դրական կամ ժխտական ձեռնարկի մը դէմ:*

*Ուրեմն, միութիւնը եւ գործակցութիւնը ոյժ կը յառաջացնէ: Եւ պայման չէ որ իրարու հետ միացող եւ գործակցող տարրերը նոյն բնոյթն ու նկարագիրը ունենան, նոյն պահանջներն ու ձգտումները ունենան:*

*Ծայրայեղ պահպանողականներ կրնան գործակցիլ ծայրայեղ ընկերվարականներուն հետ՝ ընդդէմ վտանգ դարձող փաշիստներուն:*

*Հայոց մօտ Հայ Յեղափոխական Դաշնակցութիւնը, Ս. Դ. Հնչակեան Կուսակցութիւնը եւ Ռամկավար Ազատական Կուսակցութիւնը պահ մը միացան իրարու հետ՝ ընդդէմ Թուրք գաւթիչութեան, առանց իրենց սկզբունքները եւ նպատակները մոռնալու կամ ջնջելու: Եղեռնի յիսնամեակին կամ վաթսունեամեակին եւ այլ ամեակներու կարգ մը գաղութներու մէջ՝ Հայ կուսակցութիւնները համերաշխեցան եւ համագործակցեցան՝ եկեղեցիի, դպրոցի եւ այլ ազգային հաստատութիւններու յանձնաժման համար, առանց իրենց ուղղութիւններուն մէջ փոփոխութիւն մտցնելու:*

*Այս օրինակներէն կրնանք հետեւցնել, որ՝ խումբերու միջեւ գոյացած համաձայնութիւնը կրնայ ոտքի կանգնիլ ու յառաջանալ փոխադարձ յարգանքի շնորհիւ: Հնչակեանին դեմոկրատականութիւնը համագործակցութեան ատեն պիտի յարգուի Դաշնակցական ազգայնականէն եւ փոխադարձաբար: Ռամկավարին զգօն մտայնութիւնը երբեք խնդրոյ առարկայ պիտի չըլլայ Դաշնակցական խստապահին կողմէ. կամ Դաշնակցականին հայաստանասիրութիւնը այլանդակ որակումներու առարկայ պիտի չըլլայ: Իսկ էջմիածնական մը ուրիշ էջմիածնականի դէմ բնաւ չի կրնար փչել...: Պէտք չէ խորթ աչքով նայինք իրարու քանի կը պահուի ներկայի համագործակցութիւնը: Եթէ հին, անցած-գացած խնդիրները եւ վէճերը նորէն նոր բանալու փորձ ընենք, այդ կը նշանակէ՝ որ կ'ուզենք գոյացած համերաշխութիւնը խախտել, աւրել:*

*Համագործակցութիւնը աւրելու եթէ անտեղիտալի կարիք մը կայ, այդ պէտք է գիտնան բոլոր կողմերը: Եթէ անձերու եւ մանրուք գործերու շուրջ թիւրիմացութիւններ կան, գիտնա՛նք, խրատուի՛նք կամ սրբագրուի՛նք:*

*Ապա, պահելով մէկտեղ համագործակցութիւնը -որուն պէտք ունինք դեռ- եթէ սկսինք բամբասել, դատապարտել մեր գործակիցը (հոգ չէ թէ բոլորովին հեռաւոր հարցերով), մենք փաստր տուած կ'ըլլանք մեր անմշակութեան:*

**Ա. ՋԱՀԱԿԻՐԵԱՆ**

**ՉՈՒՀԱՃԵԱՆԱԿԱՆ**

# ԼՈՒՍԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԿԱՐՕՏ ՀԱՐՑ ՄԸ

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

«Ջահակիր»-ի 1999 Մայիս 20 եւ Յունիս 3-ի թիւերուն մէջ անդրադարձած էինք Տիգրան Չուհաճեանին վերագրուող երեք կասկածելի ստեղծագործութիւններու՝ «Զէպլէքլէր» եւ «Չէնկիլէր» օփերէթներուն եւ «Ինտիանա» օփերային մասին: Այս յօդուածով, յարգելի ընթերցողներուն ուշադրութեան կը յանձնենք երեք անյայտ ստեղծագործութիւններու անուններ՝ զորս 1875 թուականին նշած է պոլսահայ «Միմոս» հանդէսը:

Այսպէս, 1875 Սեպտեմբեր 24-ին, յիշեալ հանդէսը (Ա. տարի, թիւ 10, էջ 73-74) կը հրապարակէ հայատառ թրքերէն հետեւեալ լուրը.

**ՕՍՄԱՆԼԸ ՕՊԷՐԱ ԳՈՒՄՊԱՆԻԱՍԸ**

*՝Տիգրան էֆէնտի Զուհաճըեան Թահթի խտարէսինտէ օյարագ, պու չարշէմպիհ ախշամը, Պէյօղլու Բալէ տը Քրիսթալ Թէաթրօսունտա, ՔԷՕՍԷ ՔԵԱՀԵԱ նամ օբէրա օյնաեաճագ իլք տէֆա օյարագ:*

*Միլլէթիմիզին պատիի իֆթիխարը օլան իշպու Թէշպպիւսաթ, տօղրուսու հէր սրնըֆ ահալինին թէշվիգինէ շայէսթէ օլմալը տըր:*

*Ումարըզ քի մումայիլէյհ սանաթքեար էֆէնտի (Առթիստ) Օսմանլը մուզիգասընը իքլամէ էրտիրտիկի զատար, թէնօր վէ բրիմատօնյար եէթիշտիրէպիլմիշ տիր. գիրա պիզճէ էն էհէմմիեէթլիսի վէ էն միւշքիլիւ պու ագթէօր մէսէլէսի տիր. եօգսա եէնիտէն էբէրա եաբմագ գալսա, Զուհաճեան էֆէնտի պիրազ տիչինի որզա, պիր այտա թէքմիլ պիր օբէրա եաբապիլէճէք տիր. պու տէտիկիմիզին Թաստիգի իչիւն այթը այ զարֆընտա եաբմըշ օլտուղու օբէրալարըն իսիմլէրինի տէրճ իտէրիզ:*

*ԼԷՊԼԷՊԻՃԻ ՀՕՐՀՕՐ*

*ԼԻՒԼԷՃԻ ԱՀՄԷՏ*

*ՍԹԱՆՊՕԼ ՏԻԼԷՆՃԻԼԷՐԻ*

*ԹՕՊՃՈՒԼԱՐ:*

Ստորեւ կը հրատարակենք անոր հայերէն թարգմանութիւնը՝ զոր մեզի համար սիրայօժար կատարեց Մելգոնեան հաստատութեան տնօրէն՝ Տիար Կարապետ Տաքէսեան, միջնորդութեամբ Փարիզի «Տիգրան Չուհաճեան» հետազօտական կեդրոնին, որոնց կը յայնենք մեր անկեղծ շնորհակալութիւնները: Թարգմանութեան մէջ փակագիծերու մէջ գրուած բոլոր բառերը Կ. Տաքէսեանին սեփական մեկնաբանութիւններն են.

**ՕՊԵՐԱՅԻ ՕՍՄԱՆԱԿԱՆ ԽՄԲԱԿ**

*Տիգրան Էֆէնտի Չուհաճեանի ղեկավարութեամբ, այս չորեքշաբթի իրիկուն, Պէյօղլուի Palais de Cristal թատրոնին մէջ առաջին անգամ ըլլալով պիտի ներկայացուի ՔԷՕՍԷ ՔԵԱՀԵԱ անուն օպերան:*

*Մեր ազգին համար պատիւ բերող այս նախաձեռնութիւնը պէտք է արժանանայ քաջալերանքին:*

*Մեր կարծիքը այն է որ անուանի արուեստագէտ այս պարոնը Օսմանական մուզիքան (fanfare) իր հասցուցած կատարելութեան համապատասխան՝ պատրաստած է նաեւ ténor-ներ եւ primadonna-ներ: Որովհետեւ, մեզի համար (մեր կարծիքով) ամենակարեւոր եւ ամենադժուարին խնդիրը արուեստագէտի (պատրաստելու) խնդիրն է: Թէ ոչ եթէ կրկին օպերա գրել (յօրինել) ըլլայ հարցը, Չուհաճեան էֆէնտին քիչ մը ակռան սեղմելով (փոքր ճիգով) մէկ ամսուայ մէջ կրնայ օպերա մը ամբողջացնել (ամբողջութեամբ յօրինել): Մեր այս ըսածին որպէս փաստ կը նշենք վեց ամսուայ ընթացքին ըրած (յօրինած) օպերաներուն անունները.*

*ԼԷՊԼԷՊԻՃԻ ՀՕՐՀՕՐ*

*ԼԻՒԼԷՃԻ ԱՀՄԷՏ*

*ՍԹԱՆՊՕԼ ՏԻԼԷՆՃԻԼԷՐԻ*

*ԹՕՊՃՈՒԼԱՐ:*

Մեզի հետաքրքրողը յօդուածին վերջին մասն է՝ ուր նշուած է չորս ստեղծագործութեան խորագիր: Անոնցմէ միայն մէկը՝ «Լէպլէպիճի Հօր Հօր աղա» օփերէթը վաւերականօրէն Չուհաճեանի հեղինակութիւնն է: Միւս երեքը անծանօթ են չուհաճեանագիտութեան: Սակայն «Միմոս»-ի յօդուածին մէջ օգտագործուած «օփերա գրել», «օփերա մը ամբողջացնել» նախադասութիւնները կը յուշեն՝ որ ակնարկուող ստեղծագործութիւնները Չուհաճեանի յօրինումներն են:

Չմոռնանք, որ 1875 թուականը Չուհաճեանի ստեղծագործական կեանքի ամենաբեղուն շրջանն էր՝ երբ բացառիկ յաջողութեամբ յօրինեց ու բեմադրեց երեք օփերէթները՝ «Արիֆին Հիյլէսի», «Քէօսէ Քէհեա» եւ «Լէպլէպիճի Հօր Հօր աղա»: Ինչո՞ւ այդ ժամանակահատուածի պոլսահայ մամուլը անընդհատ կը յիշէր միայն այս երեք օփերէթները՝ եթէ Չուհաճեան նոյն շրջանի յօրինած էր նաեւ այլ մեծածաւալ երկեր: Արդեօք վերջինները յաջողութիւն չե՞ն արձանագրած: Ինչեւէ, ենթադրութիւնները մեզի կրնան շատ հեռուները տանիլ:

Այս հարցին պատասխանելու համար անհրաժեշտ է թերթել 1870-ական թուականներու թրքական մամուլը (ատիկա կրնայ ընել միայն պոլսաբնակ հայը): «Լիւլէճի Ահմէտ», «Սթանպօլ Տիլէնճիլէրի» եւ «Թօբճուլար» օփերա-օփերէթներու իսկութեան յայտնաբերումը նոր էջ մը կրնայ բանալ Տ. Չուհաճեանի երաժշտական ժառանգութեան մէջ եւ նախամուտք մը հանդիսանալ նոր որոնումներու:

**ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ**

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութիւնը անհուն երախտագիտութեամբ կը յայտարարէ, թէ ազնուափայլ Տիկին Նուրիկ Զամպաքեան Իպրահիմիէյի Օմար Լոթֆի փողոցի վրայ գտնուող իր սեփականութիւնը եղող շէնքը սրտաբուխ բարերարութեամբ նուիրաբերեց Աղեքսանդրիոյ Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցւոյ պայծառութեան:

Տիկ. Նուրիկ Զամպաքեան սոյն նուիրաբերումը կը կատարէ յաւերժացընելու համար իր այնքան սիրելի ամուսինին՝ ողբ. Նազարէթ Զամպաքեանի քաղցր եւ խնկելի յիշատակը:

Ողբ. Նազարէթ Զամպաքեան գաղութիս մէջ ճանչցուած եւ յարգուած անձնաւորութիւն մըն էր: Իր ազնիւ եւ հեզ բնաւորութեամբ սիրելի դարձած էր բոլորին:

Իր անձնուէր խառնուածքը կը մղէր զինք հետաքրքրուելու հանրային եւ մարզական գործունէութեամբ:

Եղած էր Աղեքսանդրիոյ Հ.Մ.Ը.Մ.- Նուպար մարզական ակումբի վարչութեան երկարամեայ անդամ եւ ատենապետ: Իր կողքին, կողակիցը՝ Տիկ. Նուրիկ Զամպաքեան չէ զլացած բերել իր օժանդակութիւնը իբրեւ անդամ Պօղոսեան Ազգային Վարժարանի Տիկնանց Խնամակալութեան եւ միաժամանակ Հ.Մ.Ը.Մ.- Նուպար մարզական ակումբի Տիկնանց Յանձնախումբին:

Զամպաքեան ամուսինները Հ.Մ.Ը.Մ. - Նուպար մարզական եւ «Տիգրան Երկաթ» Մշակ. Միութեան բերած իրենց առատաձեռն նուիրատուութիւններով հռչակուած են ցկեանս բարերարներ:

Այս ուրախ առթիւ, յանուն Աղեքսանդրիոյ Ազգային Իշխանութեան բոլոր մարմիններուն եւ բոլոր յարգելի ազգայիններուն անխտիր, ազնուափայլ Տիկին Նուրիկ Զամպաքեանին կը յայտնենք մեր երախտագէտ շնորհակալութիւնները եւ կը ցանկանք իրենց առողջութիւն եւ երկար կեանք:

**ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ**
**ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

# ՀՈՂԻՆ ԵՐԿՐՈՐԴ ՏԵՍԱԿԸ

*Ինչ խօսք, հողը կ'ըլլայ մէկ տեսակ իր գիտական բացատրութեամբ, եթէ մին արգասաբեր է՝ հողամշակին ցանկալի, միւսը խոպան է անհրապուրելի, ապա անջրդի տեսակը բոլորովին անբաղձալի է ցանկացած անձի համար: Սակայն, եկէք մտածենք հողի երկու տեսակներու մասին բարոյական առումով: Արդարեւ, երկրագունդին վրայ կրնանք նկատել հողեր՝ որոնց իւրաքանչիւր բունծին համար անհամար նահատակներ են ինկած, իսկ կան հազարաւոր հեքթար հողեր, որոնց տէրերը առանց կաթիլ մը արեան դարձած են հայրենիքի տիրական: Շատեր պատմութեան ու քաղաքականութեան բերումով եւ բախտին ալ օժանդակութեամբ եղած են մեծ երկիրներու տէր-տիրական, իսկ շատեր՝ ափ մը հայրենիքի համար իրենց ողջ պատմութեան ընթացքին մաքառած են՝ տալով շարան-շարան նահատակներ, դեռ եւս կու տան զոհեր. արդեօ՞ք նոյն տարողութեամբ ու պատկառանքով հողին արժէքը կը գնահատեն անոնք՝ որոնք հեշտութեամբ տէր եղած են հայրենիքի, կամ անոնք՝ որոնք քիլ մը հողի համար հերոսամարտեր են մղած իրենց պատմութեան ընթացքին: Բնականաբար, հողը այլ իմաստ ունի պայքարած ու ճակատած ազգերու համար. մի գուցէ անոր ամէն մէկ թիզը համազօր է սրբութեան ու պաշտամունքի, որովհետեւ՝ անոր պահպանման երթին համար քանդակուած են անունները անհաշուելի մարտիրոսներու:*

*Հեշտութեամբ ձեռք բերուած հողը փխրուն կ'ըլլայ իր էութեամբ. դիւրին կ'ըլլայ կորսնցնելը զայն. անոր արժէքը ու նուիրականութիւնը չեն ըմբռներ անոնց վրայ բնակող բախտաւորները, մինչ՝ արեամբ ու քրտինքով նուաճուած հողը կարծր կ'ըլլայ իր բնոյթով. դժուար ձեռք բերուած՝ հետեւաբար դժուար կառուցուող եւ օտարին յանձնուող. անհնար է գտնել մէկը, որ իր հողը կը գիջի օտարին, երբ այդ հողը շաղախուած է հերոսներու արեամբ, անմահներու աճիւնով: Հողը ամենաթանկ հարստութիւնն է ազգի մը, եւ պատահական չէ, որ բազում ու բազմապիսի պատերազմներ արձանագրուած են պատմութեան մէջ հողի համար բռնկուած: Պատահական չէ նաեւ հողին համար ինկածներու թուաքանակը, որովհետեւ՝ մէկ զոհի փոխան, տարիներ ետք ազգը ծնունդ կու տայ նոր որդիներ, իսկ, կորուսեալ հողը անվերադարձ կ'իյնայ յուծին տակ:*

*Գալով մեր հայրենի հողին, երեւի աշխարհի ամենաթանկ հողերէն է ան. մեր իշխանութեան տակ գտնուող պատմական Հայաստանի մէկ փոքր մասին հողը ահաւոր կարծր է. հաւատացէք՝ շա՜տ կարծր: Ամէն մէկ քարին ու ծառին համար պատմութիւնը ինչպիսի՜ հերոսական դրուագներ կրնայ պատմել. հսկայական տարածքներ սերունդներուն միայն դիւցազնական էջեր կրնան փոխանցել, որովհետեւ՝ սուրով ու անշիրիմ նահատակներով գրուած է Հայոց հողին պատմութիւնը, հող՝ որուն արժէքը գիտցան մեր նախորդ սերունդները, հող՝ որուն գրկուածութենէն շա՜տ տառապեցան մեր նախնիները, հող՝ որուն կանչիլը ոչ միայն սրբազան պարտականութիւն է, այլ՝ պարտք ու պարտաւորութիւն:*

*Մենք, երբ գաղթական եւ օտար էինք մեր հողին վրայ, երբ հողին վրայ ապրելով մեր վերեւ կար եաթաղանը ոսոխին, մեր ազգի պայծառ ղեկավարներն ու գրիչները կը փառաբանէին զայն՝ պատուիրելով նաեւ պաշտել հայրենի հողը, կառուցել անոր վրայ եւ մինչեւ արեան վերջին կաթիլը չհեռանալ անկէ. հողի կապուածութեան մէջ տեսնել ազգի յարատեւման գրաւականը, ժողովուրդին յաւերժութեան կռուանը: Ուրեմն՝ ան նիւթական արժէքէ վեր հասկացողութիւն մըն է իր մէջ ազգային արժանապատուութիւն ու բարոյական ըմբռնում պարփակող: Հողը մեզի համար բեղմնաւոր է թէ անպտուղ, քարքարոտ է թէ անմշակ, միեւնոյնն է՝ կարծր է, նահատակներու ոսկորներով պնդացած: Ոչ մէկ հայու թոյլատրուած է իր հայրենի հողին կողքէն անտարբեր անցնիլ, հողը եթէ նոյնիսկ առ երեւոյթ անհրապոյր է, միեւնոյնն է՝ կը մնայ դիւթիչ ու պաշտելի: Ոչ ոքի անծանօթ է մեր հողին ահեղի պայքարէ ետք ձեռք բերուած ըլլալու հանգամանքը. ոչ ոքի գաղտնիք է, թէ ինչպիսի՜ զոհաբերութիւններու գնով ան մնացած է մեր հակակշռին տակ, եւ առաւել եւս՝ ան այսօր կը վայելէ անկախութեան բերկրանքը, ազատութեան բոլոր հնարաւորութիւնները:*

*Լեռներ ու դաշտեր հայրենի եթէ կարողութիւնը ունենային թարգմանը ըլլալ պատմութեան, ինչեր պիտի խօսէին մեր սերունդին, ինչպիսի՜ յանդիմանութիւններ պիտի ուղղէին Հայաստանէն խորթացած հայանուններու՝ ինչպիսի՜ կշտամբանքներ պիտի հասցէագրէին օտարամոլ ծնողներու, ինչպիսի՜ անէծքներ պիտի թափէին իրենց հայութենէն ամչցող տականքներու: Մեր կարծր հողը, որ իրաւամբ արեւահամ է, որ արիւնաթաթախ է ու պնդացած պատմութեան թոհուբոհներէն, կը մնայ պաշտելի անոր վրայ բնակող մարդկանց ու անոր կարօտով կոտտացող սիրտերուն համար: Հողը կարծր է, ինչքան ալ կարծր հոգիներ՝ չեն գիտեր արժէքը անոր:*

*Եթէ հողին առաջին տեսակը դիւրաբեկ է, քանզի անոնց տէրերը դիւրութեամբ ու առանց տքնանքի են տիրացած անոր, ապա մեր հողին տեսակը կարծր է՝ մարտնչումով նուաճուած, պայքարով պահպանուող:*

*Կարծր հողը կարծրօրէն պէտք է պաշտպանել:*

*Մեր կարծր հողին իւրաքանչիւր մասնիկը արեան պատմութիւն ունի իր մէջ:*

*Գիտնանք արժէքը մեր հողին: Արիւնէ ալ թանկագին մեր հողին...:*

*Կարծր հողը կորսնցնելէ ե՞տք միայն պիտի յիշենք արժէքը անոր...:*

**ԱՐԱՐԱՏ** **ԱԻԵՏԻՍ ՌԱԶՄԻԿ**




## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Նորայր եւ Հիլտա Փիլիպոսեաններ Հինգշաբթի 11 Նոյեմբեր 1999-ին բախտաւորուած են երրորդ զաւակով մը, զոր անուանակոչած են Ալեքս:

Այս ուրախ առթիւ ջերմօրէն կը շնորհաւորենք նորածինին ծնողքը եւ մեծ ծնողները՝ Տէր եւ Տիկ. Պերճ Փիլիպոսեանները ու Տէր եւ Տիկ. Փօլ Բարսեղեանները (Աւստրալիա), մաղթելով երջանիկ եւ առողջ կեանք նորածին մանկան:

* * *

Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր եւ Տիկին Ալէն եւ Նաթալի Սագայեաններ ամսոյս 11-ին բախտաւորուած են առջինեկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Փաթրիք:

Այս բարեբաստիկ առթիւ մեր խնդակցութիւնները կը յայտնենք նորածին մանկան ծնողքին եւ մեծ ծնողներուն՝ Տէր եւ Տիկ. Գէորգ Սագայեաններուն եւ Տէր եւ Տիկ. Գէորգ Կաճոյեաններուն, մաղթելով արեւշատ եւ երկար կեանք նորածինին:

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Ընտրական իրաւունք ունեցող Գահիրէաբնակ եւ Գահիրէի շրջանին պատկանող վայրերուն մէջ բնակող մեր ազգայիններուն ուշադրութեան կը յանձնենք հետեւեալ կէտերը.*

*1.- Գահիրէի Թեմական ամբողջական ընտրութիւնները - 24 հոգի - տեղի պիտի ունենան, Կիրակի 28 Նոյեմբեր 1999-ին: Քուէարկութիւնը պիտի սկսի առաւօտեան ժամը 8.-ին եւ վերջանայ երեկոյեան ժամը 5.-ին:*

*2.- Ընտրող ազգայինները իրենց քուէները կրնան տալ ընտրելու իրաւունք ունեցող ազգայիններու միայն, պայմանաւ, որ անոնք 30 տարին լրացուցած անձեր ըլլան:*

*3.- Պիտի ընտրուին միայն 24 անձեր, որոնց անունները եւ մականունները պէտք է գրուած ըլլան քուէաթուղթին վրայ ու անպայման ներփակուած Առաջնորդարանի կնիքով փոքր պահարանին մէջ եւ գոցուած:*

*4.- Ընտրութեան օրը, ամէն ազգային պարտի ի ձեռին ունենալ անձնական հպատակութեան, կամ հօր հպատակութեան անցագրին կամ ինքնութեան թուղթի - պըթաքա շախսիա կամ աիլիյա - ԲՆԱԳԻՐԸ, որպէսզի զայն ներկայացնելէ վերջ ստանայ իր թիւը եւ ընտրական քարթը, ապա քուէարկէ:*

*5.- Հպատակութեան, անցագրի կամ ինքնութեան քարթի լուսատիպ պատճէններով ներկայացողները պիտի չկարենան մուտք գործել Առաջնորդարանի բակէն ներս, ուստի պիտի կորսնցնեն ընտրելու իրենց իրաւունքը:*

*6.- Պահանջուած ընտրելիներուն (24) թիւէն աւելի անուններ պարունակող քուէաթուղթէն կը ջնջուին աւելորդ անունները եւ պահանջուած թիւին առնչութեամբ վաւերական կը նկատուի քուէաթուղթը ըստ կարգի (Կազմ. կանոնագիր Յօդ. 17): Իսկ մէկէ աւելի քուէաթուղթ պարունակող պահարանները ամբողջութեամբ չեղեալ կը համարուին եւ կը ջնջուին, նաեւ ստորագրուած քուէաթուղթերը:*

*7.- Ընտրութեան օրը, ընտրող ազգայինը, ընտրական տոմարին մէջ իր ստորագրութիւնը դնելէ վերջ պիտի մտնէ փոքրիկ միջնասենեակը, ուր ինք, բացարձակ առանձնութեան մէջ, պիտի գտնէ կնքուած պահարան եւ պարապ քուէաթուղթ, ազատօրէն տալու համար իր քուէն:*

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## …ՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ ՎԱՐԺԱՐԱՆ

Ուրբաթ 3 Դեկտեմբեր, 1999 Կ.Ե. ժամը 7ին

**ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ**

**1998-99 Տարեշրջանի**

Հովանաւորութեամբ

**ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ**

Բարեխնամ Առաջնորդ Հայոց Եգիպտոսի

Նախագահութեամբ

**ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ**

Սիրելի Հրաւէր բոլորին

<u>ՄԱՄԼՈՅ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ</u>

## ՊՈ-ԱՐԱՔՍ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ - ՎԵՆԵՏԻԿ

### ԿԱՐԵՒՈՐ ԾԱՆՈՒՑՈՒՄ

Բացուած են դիմումները ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ԿՐԹԱԹՈՇԱԿՆԵՐՈՒ 2000 Օգոստոսի, Վենետիկի Համալսարանի Հայ Լեզուի եւ Մշակոյթի Խտացեալ դասընթացքին մասնակցելու համար: Դիմողները պէտք է լրացուցած ըլլան 18 տարեկանը. չեն ընդունուիր դիմումներ Արեւմտեան Եւրոպայի երկիրներէն եւ հիւսիսային Ամերիկայէն: Դիմողները պէտք է ղրկեն համառօտ բնութագիր մը (curriculum) եւ այլ ամէն օգտակար նկատուած տեղեկութիւն, հաստատելու համար կրթաթոշակի իրենց կարիքը, հետեւեալ հասցէին՝ Prof. Boghos Levon Zekian - Lingua e Letteratura Armena- Dipartimento Studi Eurasiatici - San Polo 2035 - 20135 Venezia (Italia)

Դիմումի պայմանաժամն է 10 Դեկտեմբեր 1999:

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Կը տեղեկանանք, որ համայնքիս յարգելի ազգայիններէն՝ Պր. Միսաք Չէչճէնեան, Երեքշաբթի 16 Նոյ.ին, «Էլ Սաֆա» հիւանդանոցին մէջ վահանագեղձի հատման (Thyroidectomy) գործողութեան մը ենթարկուած է: Ուրախ ենք որ գործողութիւնը անցած է յաջող եւ ան իր բնակարանը վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորէ այժմ:

Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամին:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրելի ամուսնոյն, հօր եւ մեծհօր, Ողբ. Յոլակ Երզնկացեանի մահուան երկրորդ տարելիցին առթիւ Տիկին Սիրան Երզնկացեան, Տէր եւ Տիկին Օննիկ եւ Լուսի Ֆրունճեան եւ զաւակունք (Գանատա), Տէր եւ Տիկին Թովմաս եւ Նորա Զաքարեան եւ զաւակունք կը նուիրեն.

| | |
|---|---|
| Գահիրէի Աղքատաց Հոգաբարձութեան | 50 |
| Հայ Կարիքի Խաչին | 50 |
| «Այծեմնիկ» Հանգստ. Տան | 50 |
| «Արեւ»ին | 30 |
| «Յուսաբեր»ին | 30 |
| «Ջահակիր»ին | 20 |

(Ստանալ «Արեւ»էն)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այսու կու գամ իմ խորին շնորհակալութիւններս յայտնել Գահիրէի Հոգեւոր Հովիւ Հոգշ. Տ. Գալուստ Վրդ. Դարբինեանի, Ե.Գ.Մ. Հոգաբարձութեան, Գահիրէի Աղքատաց Հոգաբարձութեան, Հայ Կարիքի Խաչի Վարչութեան, «Յուսաբեր»ի Մշակ. Ընկերակցութեան, Հ.Մ.Ը.Մ.-Արարատի Վարչութեան, «Արեւ» օրաթերթի եւ «Ջահակիր» շաբաթաթերթի խմբագրութիւններուն, բժիշկներ՝ Գէորգ եւ Արմէն Մազլումեաններուն, որոնց անմիջական աջակցութեան շնորհիւ, յաջողեցաւ վիրաբուժական գործողութիւնս, ինչպէս նաեւ բոլոր անոնց որոնք անձամբ, ծաղկեփողով ղրկելով եւ հեռաձայնով ապաքինում մաղթեցին զիս:

Շնորհակալութիւն եւ քաջառողջութիւն բոլորին:

**ՎԱՐՈՒԺԱՆ ԿԱՊԷԵԱՆ**

## ԳԱՀԻՐԷԻ ԱՂՔԱՏԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

**ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ**

Շաբաթ, 18 Դեկտեմբեր 1999

**ՏԱՐԵԿԱՆ ԱՒԱՆԴԱԿԱՆ ԱՆՈՒՇԱՊՈՒՐԱՍԵՂԱՆ**

*Բոլոր միութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ եւ չխաչաձեւել*

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

**Ամանորի Տօնակատարութիւն**

Կիրակի, 26 Դեկտեմբեր, 1999

*Կը խնդրուի նկատի ունենալ*

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք ղրկել «M. BALAYAN»ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111 Գահիրէ (11511), Եգիպտոս:

## ՏԽՐՈՒՆԻ

Այրի Տիկին Մէրի Ասլանեան, Տէր եւ Տիկ. Գալուստ Ասլանեան եւ դուստրերը՝ Նաթալի եւ Ռուբինա, Տէր եւ Տիկ. Պերճ Ասլանեան եւ զաւակները՝ Ալին, Կարօ եւ Յակոբ, Տէր եւ Տիկ. Կարօ եւ Անժէլ Պէնեան եւ զաւակները՝ Մարկօ եւ Անդրօ, ինչպէս նաեւ Ասլանեան (Աւստրալիա), Գարամըրեան (Միաց. Նահանգներ), Կիւմիշեան (Աղեքսանդրիա), Կիրիտլեան (Աղեքսանդրիա), Գումրուեան, Պօսնոյեան, Մարգարեան (Յորդանան), Քէչէպաշեան (Հայաստան), Պօյաճեան (Հայաստան), Պայտարեան, Թարմունի եւ Պէնեան ընտանիքները ցաւ ի սիրտ կը ծանուցանեն մահը իրենց սիրելի ամուսնոյն, հօր, մեծհօր, զարմիկին եւ ազգականին Ողբացեալ՝

### ՅԱԿՈԲ ԱՍԼԱՆԵԱՆԻ

որ պատահեցաւ Ուրբաթ, 5 Նոյեմբեր 1999-ի յետմիջօրէի ժամը 3-ին, իր բնակարանին մէջ, յետ երկարատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը կատարուեցաւ յաջորդ օր՝ Շաբաթ կէսօրուան ժամը 12-ին, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատան մատրան մէջ, որմէ ետք հանգուցեալին մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

*Այս տխուր առթիւ «Ջահակիր» իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ Ողբացեալի այրիին՝ Տիկին Մէրիի, զաւակներուն՝ Տէր եւ Տիկ. Գալուստ Ասլանեանի, Տէր եւ Տիկ. Պերճ Ասլանեանի եւ Տէր եւ Տիկ. Կարօ Պէնեանի, ինչպէս նաեւ ազակիր բոլոր պարագաներուն:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Հիմք ընդունելով Հայաստան-Սփիւռք խորհրդաժողովի ս/թ Սեպտեմբերի 23-ին ընդունուած որոշումը, այն է.

«Որպէսզի Հայաստանի Հանրապետութեան նախագահ Ռ. Քոչարեանի 1998թ. Դեկտեմբերի 24-ի ստեղծած Հայաստան-Սփիւռք համահայկական խորհրդաժողովը նախապատրաստող կառավարական յանձնաժողովը շարունակի աշխատանքները:

Յանձնաժողովի վրայ դնել Հայաստան - Սփիւռք փոխյարաբերութիւնների համակարգման աշխատանքների կազմակերպումը, ինչպէս նաեւ ստեղծել Հայաստան - Սփիւռք խառն աշխատանքային խմբեր, հետեւեալ վեց ուղղութիւններով՝

1.- Քաղաքական քարոզչութիւն
2.- Տնտեսական հիմնահարցեր
3.- Մշակութային, գիտա - կրթական
4.- Տեղեկատուական
5.- Հումանիտար
6.- Աշխատանքային խումբ, որը կ'ուսումնասիրի ապագայում Հայաստան-Սփիւռք գործակցութեան օրակարգի մշակման եւ իրականացման, ինչպէս նաեւ համահայկական մարմին ստեղծելու նպատակայարմարութիւնն ու հնարաւորութիւնը»:

Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը եգիպտահայ համայնքին (Գահիրէ եւ Աղեքսանդրիա) առաջարկում է թեկնածուներ ներկայացնել վերոյիշեալ աշխատանքային խմբերում ընդգրկուելու համար:

Ցուցակագրուելու համար բոլոր ցանկացողները մինչեւ ս/թ Դեկտեմբեր 20-ը կարող են դիմել Գահիրէում ՀՀ դեսպանութիւն՝ ամէն օր, ժամը 10.00-14.00, բացի Ուրբաթ եւ Շաբաթ օրերից:

Յետագայ քայլերի մասին կը տեղեկացուի լրացուցիչ, ցուցակագրման աւարտից յետոյ:

**ԳԱՀԻՐԷՈՒՄ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ**

## Հ.Բ.Ը.ՄԻՈՒԹԻՒՆ -ԳԱՀԻՐԷ

### Սաթենիկ Չագըր Հիմնադրամ Առողջապահական Հոգատարութեան Ծրագիր

Գահիրէի Հ.Բ.Ը.Մ.ի վարչութիւնը հաճոյքն ունի, Սաթենիկ Չագըր Հիմնադրամի Առողջապահական Հոգատարութեան Ծրագրին բոլոր դիմողներուն տեղեկացնելու, թէ Ծրագրին 2000-ի թուականի մասնակցութեան քարտերուն յանձնումը պիտի սկսի 1 Դեկտեմբեր 1999-ին, փոխան Ե.Ո.50.- մասնակցութեան վճարումի:

Մասնակցութեան քարտերը պիտի յանձնուին

<u>Գահիրէ - 15 Էմատ Էլ Տին փողոց, Ա- յարկ</u>

Երկուշաբթիէն - Շաբաթ (բացի Ուրբաթ օրերէն) առաւօտեան ժամը 10.00-էն ժամը 2.00:

<u>Հելիոպոլիս - 26 Մուրատ Բէկ փողոց</u>

Ուրբաթ օրերը, կ.վ. ժամը 6.00-էն ժամը 8.00

Վերոնշեալ քարտերու յանձնումի վերջին թուականն է Ուրբաթ 24 Դեկտեմբեր 1999:

Մինչեւ 24 Դեկտեմբեր 1999, վճարումը չկատարած բոլոր դիմողներուն դիմումնագրերը ինքնաբերաբար չեղեալ կը նկատուին եւ իրաւունք չեն ունենար 2000 թուականի ընթացքին Միութեան Առողջապահական Հոգատարութեան Ծրագրին մասնակցելու:

**ՎԱՐՉՈՒԹԻՒՆ**

## ՄԱՐՏԻԿ ԵՒ ՌՈՒԲԷՆ ԹԵՐՁԻՊԱՇԵԱՆ ԵՂԲԱՐՔ

### ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ

<u>ՈՍԿԻԻՆ ՕՐՈՒԱՅ ԳԻՆԸ՝</u>

| | | |
|---|---|---|
| Ոսկեդրամը | Ե.Ո. | 236.00 |
| 21 կարատ՝ կրամը | | 29.40 |
| 18 կարատ՝ կրամը | | 25.20 |

4,Զողէպ փողոց, Ապտէլ Խալէք Սարուաթ, Գահիրէ Հեռ. 3901151

دار شرشة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع

TCHAHAKIR
Armenian Weekly
P.O.Box 2111 (Cairo),
Tel: 4530327, Fax:(202)4522282
E-mail: emarco@ritsec3.com.eg

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ - ԹԻՒ 1416 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1999 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 50 Եգ. Դհկ. — عدد رقم ١٤١٦ — الخميس ٢٣ ديسمبر ١٩٩٩


ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԳԱՀԻՐԷԻ ԹԵՄԱԿԱՆ ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

Եգիպտահայ Կազմական Կանոնագրի տրամադրութիւններուն համաձայն եւ ինչպէս արդէն նախօրօք ծանուցուած էր եգիպտահայ մամուլին մէջ, Կիրակի 28 Նոյեմբեր 1999-ին, տեղի ունեցաւ Գահիրէի շրջանակի թեմական ամբողջական ընտրութիւն 24 աշխարհական անդամներու համար:

Նոյն օրը առաւօտեան, ի ներկայութեան պետական հսկիչներուն, Տահէր թաղամասի ոստիկանապետին եւ իր օգնականներուն, ժամը 8-ին ներկայ քուէարկողներու ձեռամբարձ միաձայնութեամբ ընտրուեցան Տեարք Յակոբ Համբիկեան եւ Յովհաննէս Մելքոնեան ընտրողական Յանձնախումբի իբրեւ յաւելեալ անդամներ, ընտրութեան քուէատուփերուն վրայ հսկողութեան պաշտօնով:

Ընտրութեան սնտուկներուն պարապ ըլլալը ստուգուելէ ետք, Ազգային Առաջնորդարանիս դահլիճին մէջ, զանոնք կղպելէ ետք, ժապաւէնով ալ փակուեցան եւ կարմիր մոմով կնքուեցան եւ ընտրութեան գործընթացին մասին բացուեցաւ յատուկ արձանագրութիւն, որուն ներքեւ ստորագրեցին եգիպտահայ Առաջնորդը եւ ընտրողական Յանձնախումբի բոլոր անդամները:

Ապա սկսաւ քուէարկութիւնը: Դարձեալ ըստ Կազմական Կանոնագրի, ընտրելու իրաւունք ունեցող երկու սեռէ քուէարկողներու 468-էն 207 ազգայիններ, առաւօտեան ժամը 8-էն մինչեւ յ.մ. ժամը 5 իրենց տոմսերն ու քուէներու թուղթերը, դահլիճին մէջ մեկուսի վայր մը առանձնանալէ ետք, խղճի մտօք, ձգեցին քուէատուփերուն մէջ:

Երեկոյեան ժամը 5-էն ետք, ի ներկայութեան պետական հսկիչներու, Նախագահ Սրբազան Հօր եւ ընտրողական Յանձնախումբի անդամներուն, քուէատուփերու կնիքները քակուեցան եւ քուէներն ու քարտերը հաշուելով, ճիշտ 207 քուէ եւ քարտ համրուեցան:

Քուէարկութեան արդիւնքը եղաւ ըստ հետեւեալին: Երկու քուէներ ջնջուեցան: Մէր պարապ քուէի պահարան գտնուեցաւ եւ մէկ ալ ճերմակ քուէ:

| | Քուէ |
|---|---|
| 1.- ԱՍԱՏՈՒՐԵԱՆ ԱՐԹԻՆ, ԱԶԻԶ | 169 |
| 2.- ԳԱԶԱՆՃԵԱՆ ՍԵՊՈՒՀ, ՎԱՐԴԱՆ | 181 |
| 3.- ԳԱԼԻՆԵԱՆ ԽՈՐԷՆ-ԱՍՊԵՏ, ԱԼՊԷՌ | 169 |
| 4.- ԳԱՍԱՊԵԱՆ ԷՏՈՒԱՐ, ՎՐԷԺ | 181 |
| 5.- ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ՆՈՐԻՍ-ՖՐԷՏԻ, ԱՐՇԱԿ | 181 |
| 6.- ԳԸԶԸԼԵԱՆ ԲԱՐՍԵՂ, ՎԱՀԱՆ | 186 |
| 7.- ԵԱԶԸՃԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ, ՅՈՎՀԱՆՆԷՍ | 174 |
| 8.- ԵՐԶՆԿԱՑԵԱՆ ԳԷՈՐԳ-ՎԱԶԳԷՆ,ԱՆԴՐԱՆԻԿ | 185 |
| 9.- ԹԷՐԶԵԱՆ ՊԵՐՃ, ՏԻԳՐԱՆ | 183 |
| 10.- ԿԱՊԷՅԵԱՆ ԱՐԹԻՆ, ՆՇԱՆ | 183 |
| 11.- ԿԷՎՐԷԿԵԱՆ ՌՈՒԲԷՆ, ՎԱՀՐԱՄ | 180 |
| 12.- ՄԱԶԼՈՒՄԵԱՆ ԳԷՈՐԳ, ԳԵՂԱՄ | 180 |
| 13.- ՄԱԶԼՈՒՄԵԱՆ ՇԱՀԷՆ, ՅԱԿՈԲ | 158 |
| 14.- ՄԱՐԳԱՐԵԱՆ ԳՐԻԳՈՐ, ՅԱՐՈՒԹԻՒՆ | 178 |
| 15.- ՄԵՍՐՈՊԵԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ, ՍԱՐԳԻՍ | 184 |
| 16.- ՄԽՏԻԿԵԱՆ ՊԵՏՐՈՍ, ԾԱՏՈՒՐ | 180 |
| 17.- ՄՈՎՍԷՍԵԱՆ ՊԵՏՐՈՍ, ՄՈՎՍԷՍ | 182 |
| 18.- ՉԱՄՔԷՐԹԷՆԵԱՆ ՍԻՄՈՆ, ՍԱՐԳԻՍ | 182 |
| 19.- ՊԱԼԱԵԱՆ ՄԱՐՏԻՐՈՍ, ՆՈՒՊԱՐ | 178 |
| 20.- ՊԱՅՐԱՄԵԱՆ ՍՈՒՐԷՆ, ՆԱՐՊԷՅ | 180 |
| 21.- ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՕՆՆԻԿ, ԱՐԹՕ | 184 |
| 22.- ՍԻՄՈՆԵԱՆ ՀՐԱՉ, ՊՕՂՈՍ | 185 |
| 23.- ՍԻՄՈՆԵԱՆ ՆՈՒՊԱՐ, ՊՕՂՈՍ | 183 |
| 24.- ՏԷՕՎԼԷԹԵԱՆ ՆՈՐԱՅՐ, ՊԵՏՐՈՍ | 181 |

Վերոյիշեալ 24 ընտրուած անդամներէն զատ, հետեւեալ ազգայինները ստացան՝ Բրուտեան Գէորգ 31 քուէ, Սիմոնեան Ժորժ 13, Զաքարեան Թովմաս 8, Բրուտեան Վահրամ 6, Ասատուրեան Հայկ 6, Մազլումեան Տոքթ. Արմէն 5, Կապէեան Շանթ 5, իսկ 24 այլ ազգայիններ աւելի նուազ քուէներ ստացան:

Քուէախոյզ նշանակուած էին տեարք Պերճ Յովակիմեան եւ Պետրոս Գոգորեան: Գիշերուան ժամը 11:30-ին, Նախագահ Սրբազան Հայրը ներկայ բազմութեան եւ եգիպտահայ մամուլի ներկայացուցիչներուն յայտարարեց ընտրութեան արդիւնքը եւ քուէարկութեան գործընթացի արձանագրութեան ներքեւ ընտրողական Յանձնախումբի անդամներուն ստորագրութենէն ետք քուէարկութիւնը աւարտեցաւ:

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳ. ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

* * *

*Կը շնորհաւորենք ամբողջութեամբ ընտրուած՝ «Համագործակցական ճակատ»ի անդամները, մաղթելով արեւշատութիւն եւ արդիւնաբեր գործունէութիւն: Յոյսով ենք, թէ անոնք համագործակցական ոգիով, ջանք պիտի չխնայեն ի շահ համայնքիս յառաջդիմութեան եւ գործադրեն ընտրութիւններէն առաջ տրուած խոստումները:*

*Սակայն, թերեւս կառավարութեան վաւերացումը քիչ մը ուշանայ, տրուած ըլլալով որ երկու բողոք ներկայացուած է երկու ազգայիններու կողմէ, ընտրութեան օրինականութեան դէմ:*

*Այս կապակցութեամբ նորընտիր երեսփոխանները ամսոյս 7-ին, ըստ Թեմիս կազմական կանոնագրին, դռնփակ արտակարգ Թեմական Ժողովի նիստ գումարած են, գլխաւորութեամբ Թեմիս Առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի եւ քննարկած ներկայացուած բողոքները: Յետ քննարկման, պատրաստուած է պատշաճ հերքում-պատասխան մը եւ ուղարկուած պատկան պետական մարմիններուն:*

«Ջ.»

ՀԱՅԱՍՏԱՆ

## ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԿԱՍԿԱԾՈՎ ԿԸ ՄՕՏԵՆԱՅ ՆԱՅԻՐԻ ՅՈՒՆԱՆԵԱՆԻ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ

### ՊԵՏԱԿԱՆ ՀԱՐՈՒԱԾԻ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԹԻՒՆ ԿԸ ՆԿԱՏԷ ՏՐՈՒՈՂ ՑՈՒՑՄՈՒՆՔՆԵՐԸ

*Երեքշաբթի, Դեկտեմբեր 21-ին Հայաստանի Հանրապետութեան նախագահ Ռոպերթ Քոչարեան ասուլիսի հրաւիրելով սահմանափակ թիւով լրատուական միջոցներու ներկայացուցիչներ, անդրադարձաւ երկրի ներքին քաղաքական իրավիճակին, Ղարաբաղի մէջ տեղի ունեցած զարգացումներուն, տնտեսական հարցերու եւ բնականաբար, իր ամէնէն մօտ գործակիցներէն՝ Ալեքսան Յարութիւնեանի ձերբակալութեան:*

*Այս վերջին հարցի կապակցութեամբ Քոչարեան այն կարծիքը յայտնեց, որ Հոկտեմբեր 27-ի ահաբեկիչները պետական յեղաշրջումի իրենց ծրագիրը իրականացնելու եւ Հայաստանի ղեկավարութիւնը տապալելու համար կը չեղեցնեն քննչական մարմինները:*

*Նախագահ Քոչարեան, որ մինչեւ վերջերս կը պնդէր, որ Ազգային Ժողովէն ներս պատահածը անհատներու գործ է, առաջին անգամ ըլլալով Հոկտեմբեր 27-ի ահաբեկչութիւնը բնութագրեց որպէս «պետական հարուածի փորձ» եւ յայտնեց, որ անոր հեղինակները տակաւին*

2

## Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀԻՆ ՀԵՏ

*Հայաստանի Ազգային Ժողովի նախագահ Արմէն Խաչատրեան Դեկտեմբերի 9-ին ընդունեց Սոցիալ-Դեմոկրատ Հնչակեան կուսակցութեան պատուիրակութիւնը, որուն մաս կը կազմէին Հայաստանի կեդրոնական վարչութեան ատենապետ Ծորճ Յակոբեան, փոխ-ատենապետ Ստեփան Մանթաշեան, վարչութեան անդամներ՝ Հրանդ Ամիրեան եւ Գէորգ Կիւզալեան:*

*Կուսակցութեան պատուիրակութիւնը հակիրճ ներկայացուց կազմակերպութեան գործունէութիւնը եւ ծրագիրները եւ ապա պարզեց իր տեսակէտները երկրի ներքին քաղաքական իրավիճակի մասին: Քննարկուեցան նաեւ տնտեսութեան զարգացման, օրէնսդրութեան կատարելագործման եւ Ղարաբաղեան տագնապի լուծման վերաբերող հարցեր:*

*Ազգային Ժողովի նախագահը բարձր գնահատեց Հնչակեաններու պատրաստակամութիւնը՝ նպաստելու պետութեան կայունութեան ապահովման:*

*Միւս կողմէ, վերջերս Հայաստանի մէջ ստեղծուած «Արդարութիւն» դաշինքի անդամ կուսակցութիւններու՝ Հայաստանի Դեմոկրատա-*

3

## ՄԱՀ ԵՒ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԿ ԻՐԱՏԵԱՆԻ

Անցեալ 25 Նոյեմբեր 1999-ի երեկոյեան, անգութ մահը խլեց մեր հաւատաւոր բարեկամներէն, Հայկական Ընթերցասրահի ատենապետի պաշտօնակատար, ազգային-հասարակական գործիչ՝ Հայկ Իրատեանը:

Թէեւ տեղեակ էինք որ հիւանդ էր ան, սակայն երբ նոյն գիշերը կայծակի արագութեամբ տարածուեցաւ մահուան բօթը, կարծես սուրի մշուշ մը պատեց մեր հոգիները, որովհետեւ մեր աչքին առաջ է ինք՝ ուղիղ նայուածքով, անկեղծ խօսելակերպով եւ ջերմեռանդ հայրենասէրի տոգորումով:

Յաւէտ ողբացեալը անսպառ կորովով գործեց ազգապահպանման նուիրական գործին: Ան երկար տարիներ պահեց Հայկ. Ընթերցասրահի փոխ-ատենապետութիւնը եւ վերջին տարիներուն՝ ատենապետի պաշտօնակատարութիւնը: Յարգելի հանգուցեալը քանի մը տարիէ ի վեր անդամ էր Գահիրէի Ազգային Իշխանութեան եւ՝ Քաղաքական Ժողովի ատենադպիրը: Ան իր գործօն մասնակցութիւնը բերած է զանազան ազգային, հասարակական գործունէութեանց: Այս բոլորին կողքին, չենք կրնար չյիշել աշխատակցութիւնը եգիպտահայ մամուլին: Իր երբեմնակի գրութիւններով եւ թարգմանութիւններով սատար հանդիսացած է «Ջահակիր» շաբաթաթերթին:

Ազգային յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը կատարուեցաւ յաջորդ օր՝ 26 Նոյեմբերի կէսօրէ ետք ժամը 3-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, գլխաւորութեամբ Թեմիս բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի, ի ներկայութեան Եգիպտոսի մօտ ՀՀ լիազօր դեսպան Սերկէյ Մանասարեանի, համայնքիս ներկայացուցչական դէմքերու, վարչականներու, հոգաբարձուներու, ազգականներու եւ սգակիր հօծ բարեկամներու, որոնք եկած էին իրենց վերջին տուրքը մատուցանելու եւ հրաժեշտ առնելու սիրելի հայորդի է մը:

Թաղմանական արարողութիւններէն ետք, դամբանական խօսեցաւ Առաջնորդ Սրբազան Հայրը, որ դրուատելով հանգուցեալին բարեմասնութիւնները, անդրադարձաւ Անգլիա ուսանելու մասին, ապա յիշեց որ հանգուցեալը հոգաբարձական անդամ եղած է Ս. Եկեղեցւոյ,

2

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը եգիպտահայ համայնքին սիրով հրաւիրում է ներկայ գտնուելու դեսպանութեան տօնածառի շուրջ աւանդական տօնական հաւաքոյթին Նոր Տարի եւ Նոր հազարամեակ մուտք գործելու կապակցութեամբ միմեանց շնորհաւորելու եւ միասին ուրախ երեկոյ անցկացնելու նպատակով:

Տօնական հաւաքոյթը տեղի կ'ունենայ 2000 Թուականի Յունուարի 1-ին, երեկոյեան ժամը 17.30 - 20.30, դեսպանութեան պարտէզում:

Երեխաների ներկայութիւնը ցանկալի է:

ԳԱՀԻՐԷՈՒՄ
ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ

## ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՒ ՀՀ ՆԱԽԱԳԱՀԻ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԱԼԵՔՍԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆԸ

*Հինգշաբթի, Դեկտեմբեր 16-ին Հայաստանի զինուորական դատախազութիւնը ձերբակալել տուաւ Հայաստանի Հանրապետութեան նախագահի աշխատակազմի նախկին ղեկավար եւ ներկայիս խորհրդական Ալեքսան Յարութիւնեանը: Յարութիւնեան մեղադրուած է Հոկտեմբեր 27-ին Հայաստանի Ազգային Ժողովէն ներս Նայիրի Յունանեանի եւ միւսներու կողմէ իրականացուած ահաբեկչական գործողութիւնը դրդելու կասկածանքով: Դեկտեմբեր 18-ին զինուորական դատախազութիւնը միջնորդութեամբ դիմած է մայրաքաղաքի Արաբկիր եւ Քանաքեռ-Զէյթուն համայնքներու առաջին ատեանի դատարան, որպէսզի Յարութիւնեանի նկատմամբ խափանման միջոց ընտրուի կալանքը:*

*Միջնորդութիւնը բաւարարուած է: ՀՀ զինուորական դատախազ Գագիկ Ջհանգիրեանի համաձայն, խափանման միջոցի ընտրութիւնը չի նշանակէր, որ անձր մեղաւոր է, որու պատասխանը կրնայ տալ միայն քննութիւնը:*

*Կանխատեսելով իր ձերբակալութիւնը, օր մը առաջ Յարութիւնեան ներկայացուց իր հրաժարականը՝ Հանրապետութեան նախագահի խորհրդականի իր պաշտօնէն, յայտնելով թէ պատրաստ է ամէն կերպ գործակցելու դատախազութեան հետ, իր անմեղութիւնը փաստելու նպատակով:*

*Յարութիւնեանի հրաժարումին առթիւ նախագահ Ռոպերթ Քոչարեան հրապարակեց յայտարարութիւն մը, ուր կը յայտնէր թէ, շատ մը հարցերու լուծումները կապուած են Հոկտեմբերի 27-ի ողբերգական իրադարձութիւններու անկողմնակալ քննութեան, մեղաւորներու բացայայտման եւ օրէնքի շրջագիծէն ներս պատասխանատուութեան ենթարկելու հետ:*

ՆԿԱՐՉԱԿԱՆ

# ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏ ՎԱՀԷ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆԻ

## Նորագոյն Ցուցահանդէսը

Շաբաթ 20 Նոյեմբեր 1999-ի երեկոյեան, Հելիոպոլսոյ Կոկանեան Սրահին մէջ, բացումը կատարուեցաւ ծանօթ արուեստագէտ, նկարիչ Վահէ Վարժապետեանի նկարչական անհատական ցուցահանդէսին, նախագահութեամբ Տէր եւ Տիկ. Ժիրայր Տեփոյեանի:

Այդ երեկոյ Վահէն եկած էր ներկայ հասարակութեան հրամցնելու վերջին քանի տարիներու արգասիքը՝ 16 պաստառներու համադրում մը: Իսկապէս գնահատանքի արժանի եւ իրարմէ տպաւորիչ ստեղծագործութիւններու պատկերներ էին անոնք, որոնց մէջ յատկապէս նշմարելի էին ծաղիկներու աշխարհը, որ իրենց գեղանկարչական բնական արտայայտութիւններով եւ ջերմ գոյներով, կարծէք բուրմունք եւ պերճանք յառաջ բերած էին ցուցասրահէն ներս: Ահա այս էր մեր առաջին տպաւորութիւնը:

Որքան գեղեցիկ էր դիտել գարնանային երանգաւորումներով, տարբեր բնանկարներու գործերը, որոնց մէջ յաճախ կը տիրապետէր կապոյտ գոյնը, որ նկարչին նախընտրած գոյնն է ընդհանրապէս, ինչպէս կ՛ըսէ ան: Արուեստագէտ նկարիչը խառնուածքով զգայուն եւ բծախնդիր ըլլալուն, յաջողած էր իր հեղինակաւոր վրձինի հարուածներով, արտացոլել իր ներաշխարհը. խորասուզուիլ գոյներու աշխարհը եւ իր իւրայատուկ ոճով դրսեւորել ստեղծագործութիւններ, որ ինչպէս Վահէն կ՛ըսէ. «Միշտ սիրած եմ բնութիւնը եւ կը նախընտրեմ նկարել զայն, մասնաւորապէս ծաղիկներով լեցուն ծաղկամաններ»:



«Ճերմակ մարկրիթներ»

Իր կտաւները կը վկայեն, որ Վ. Վարժապետեան ոչ միայն նկարիչ է այլ եւ վարպետ լուսանկարիչ: Ունի սուր երեւակայութիւն, եւ գիտէ թէ ո՞ր տեսանկիւնէն պէտք է սկսի դիտել ու մարմնաւորել իր նկարելիք ստեղծագործութիւնը: Վստահաբար ակներեւ ձիրք մըն է որ Աստուած շնորհած է համակրելի արուեստագէտին:

Հետաքրքրական էին արուեստագէտ Վահէի նոր որոնումներով, այն ինքնատիպ գործերը, որ փաստօրէն առաջին անգամն էր որ կը տեսնէինք անոր գործերուն մէջ: Ան դուրս ելլելով վառ գոյներէ, կարողացած էր ստեղծագործել պաստառներ կիրարկելով, մոխրագոյնը: Հիացմունքով դիտեցինք «Նուագախումբը», «Կիպրոսի Փաֆոս նաւահանգիստը» եւ երկու նուպիական կենցաղանկարները:

Վահէին բոլոր կտաւները ընդհանրապէս քառակուսի չափերով էին (60x60սմ. կամ 80x80սմ. եւ այլ համեմատած չափեր), ինչ որ արուեստագէտին գործը կը դժուարացնէ, սակայն կու տայ ճաշակաւոր բնոյթ, նաեւ իր ինքնավստահ վրձինահարուած տեսարաններուն՝ այժմէականութիւն եւ մասնաւորաբար զուարթութիւն, մինչեւ իսկ մոխրագոյնով գծուած նկարչութիւններուն մէջ, որոնց վրայ կը նշմարէինք մերթ ընդ մերթ կարմիր մը կամ դեղին երանգաւորում մը:

Անտարակոյս Վ. Վարժապետեանի ներկայացուցած ցուցահանդէսը, որ 30 տարիներու հունձք մըն էր գոյներու աշխարհէն, մեծ ընդունելութեան արժանացաւ այդ գիշեր, ներկայ արուեստագէտ եւ արուեստասէր հասարակութեան կողմէ, որոնք թողեցին սրահը ապագայի առաւել փայլուն յաջողութիւններու անկեղծ ցանկութիւններով:

Մենք ալ մեր կարգին, ջերմօրէն կը շնորհաւորենք սիրուած նկարիչ Վահէ Վարժապետեանը՝ իր այս ցուցահանդէսով ձեռք բերած յաջողութեան համար եւ կը մաղթենք նորանոր յաջողութիւններ արուեստի գծով տարած իր ասպարէզին մէջ:

Ա. Մ.

## ՄԱՀ ԵՒ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԿ ԻՐԱՏԵԱՆԻ



Աղքատախնամի եւ վերջերս ատենապետը՝ Կալուածոց Հոգաբարձութեան: Սրբազան Հայրը ցաւակցութիւն յայտնելով իր այրիին եւ զաւակներուն, Ս. Հոգւոյն մխիթարութիւնը հայցեց բոլոր սգակիրներուն:

Ապա խօսք առաւ Հայկական Ընթերցասրահի ատենադպիր Ընկեր Պետրոս Մովսէսեան: Ան իր յուզումնալից դամբանականին մէջ ըսաւ. «Ողբացեալ Հայկին մէջ կը հրկիզէր անշէջ կրակը իր իտէալներուն եւ հայրենասիրական ոգիին»: «Ամէն անգամ որ հայրենասիրական ծառայութիւն մը կ՚առաջարկուէր իրեն, սիրով կը բերէր իր բաժինը ինքնամատոյց աշխատանքով»: «Հանգուցեալ բարեկամը լռելեայն սատար կը հանդիսանար անկարին եւ յաճախ զօրավիգ կը կանգնէր հայ երիտասարդին, ու մանաւանդ կը քաջալերէր անոնց, որ մաս կազմեն համայնքային կեանքէն ներս»:

Ընկեր Պ. Մովսէսեան եզրափակելով իր դամբանականը, ցաւակցութիւն յայտնեց յանուն «Զահակիր»ի շրջանակին եւ Հայկ. Ընթերցասրահի վարչութեան, մաղթելով որ ողբացեալը երկնքի արքայութեան արժանի ըլլայ:

Ապա յուղարկաւորներէն շատեր ընկերացան դագաղին մինչեւ Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատունը, ուր եւս տեղի ունեցաւ եկեղեցական արարողութիւն, յետոյ հանգուցեալին անկենդան մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան շիրիմին մէջ:

Սիրելի Հայկ, արդար եւ խոնարհամիտ էիր, եւ ծրագիրներդ կիսատ թողած, կ՚երթաս յաւիտենականութեան գիրկը, սակայն վստահ եղիր որ յիշատակդ անթառա՛մ պիտի մնայ մեր հոգիներուն մէջ:

Այս տխուր մահուան առթիւ խմբագրութիւնս իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ իր կողակցին՝ Տիկին Էլիզին, զաւակներուն՝ ՊՊ. Յակոբին եւ Գէորգին, հարսին՝ Տիկին Լենային, թոռներուն եւ սգակիր բոլոր պարագաներուն:

Ա. Մ.

### ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Տեղեկացանք որ մեր Լոս Անճելըսի բարեկամներէն, արուեստագէտ, մեներգիչ Լեւոն Եկաւեան վերջերս Միացեալ Նահանգներու մէջ, աղիքի վիրահատութեան մը ենթարկուած է, որ բարեբախտաբար անցած է յաջող:

Ան այժմ տուն վերադառնալով, ապաքինման շրջան մը կը բոլորէ:

Շուտափոյթ եւ կատարեալ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամին:

***

Կը տեղեկանանք թէ մեր բարեկամներէն, եգիպտական ձայնասփիւռի՝ Հայկական Ռատիօժամի երկարամեայ հաղորդավար՝ Պր. Յակոբ Բամպուքճեան, վերջերս ակնաքօղի (քաթարաքթի) վիրահատութեան ենթարկուած է, որ բարեբախտաբար յաջող անցած է: Ան իր բնակարանը վերադառնալով, այժմ ապաքինման շրջան մը կը բոլորէ:

Շուտափոյթ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի բարեկամին:

### ՆԱԽԱԳԱՀ ՔՈՉԱՐԵԱՆ ԿԱՍԿԱԾՈՎ ԿԸ ՄՕՏԵՆԱՅ ՆԱՅԻՐԻ ՅՈՒՆԱՆԵԱՆԻ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ

1 ➯ կ՚աշխատին հասնելու իրենց այդ ծրագիրին՝ բարձրաստիճան պաշտօնեաներու անուններ տալով: «Այս ձերբակալութեամբ, անոնք կը սկսին իրենց ծրագիրի երկրորդ մասը»,- ըսաւ նախագահը: Ալեքսան Յարութիւնեանի անմեղութեան մասին չեշտելով հանդերձ, նախագահը ըսաւ.-«Այս չի նշանակեր որ, վստահութիւն չունիմ քննութիւնները վարողներու նկատմամբ: Սակայն երբ Նայիրի Յունանեան սկսաւ Ալեքսանի դէմ վկայութիւն տալ, ես սկսայ կասկածիլ»:

Քոչարեան աւելցուց որ, ինք պիտի չզարմանայ, եթէ Յունանեան գինք ալ ներքաշէ հարցին մէջ:

Այն հարցի մասին, թէ որոշ տեղեկութիւններու համաձայն Յունանեան քննիչներու կողմէ կ՚ենթարկուի ֆիզիքական ճնշումներու, Քոչարեան ըսաւ.-«Ինծի ըսուեցաւ, որ անոնք բռնութեան չեն ենթարկուիր, սակայն չեմ կրնար ըսել, որ հարիւր տոկոս վստահ եմ ատոր»:

Ներքին իրավիճակը գնահատելով նախագահ Քոչարեան բաւականին լաւատեսօրէն յայտնեց, որ կացութիւնը սկսած է վերադառնալ իր բնականոն վիճակին: «Ներկայիս համագործակցութիւն կայ նախագահին, վարչապետին, կառավարութեան եւ քաղաքական ուժերուն միջեւ եւ ես կը խորհիմ, որ մենք սկսած ենք դուրս գալ դժուար վիճակէն, որուն մէջ յայտնուած էինք»:«Ճիշդ է որ կայ որոշ յարուածութիւն սակայն մթնոլորտը սկսած է փոխուիլ դէպի դրականը» աւելցուց Քոչարեան: Ղարաբաղի մասին անդրադառնալով Հայաստանի նախագահը յայտնեց, որ անկարելի պիտի ըլլայ բանակցային գործընթացը սկսիլ, առանց ներքին քաղաքական կայունութեան: Ռոպերթ Քոչարեան նաեւ ակնարկեց, որ գոհ է Սամուէլ Բաբայեանի պաշտօնազրկումով ու այս կապակցութեամբ ողջունեց ԼՂՀ նախագահի վճռական քայլերը»:

Ինչ կը վերաբերի տնտեսական հարցերուն Քոչարեան անգամ մը եւս յայտնեց, որ պիտի շարունակէ նախորդ իշխանութիւններու օրով սկսած տնտեսական բարեփոխումներու քաղաքականութիւնը:

# Նուպարեան Ազգ. Վարժարանի Ամավերջի Յաջող Հանդէսը

Կարծէք տօնական օր էր Ուրբաթ 19 Նոյեմբերը, որ տեղի ունեցաւ Նուպարեան վարժարանի ամավերջի հանդէսը «Պըլքտանեան» հանդիսասրահին մէջ: Փոխանակ 1999-ի ամրան, աշնան հանդիսադրուած՝ որովհետեւ պետական քննութիւններու արդիւնքը ուշ կը ստացուի: Հանդէսին կը հովանաւորէր Առաջնորդ Սրբազան Հայրը, նախագահութեամբ Քաղաքական Ժողովի ատենապետ՝ Պր. Նուպար Սիմոնեանի եւ իր տիկնոջ: Ներկայ էին ՀՀ.ի դեսպան Ն.Գ. Սիրկէյ Մանասարեան ու իր Տիկինը, Թեմական Ժողովի ատենապետ՝ Պր. Անդրանիկ Մեսրոպեան ու իր Տիկինը, ինչպէս նաեւ ծնողքներ եւ շրջանաւարտ աշակերտներ:

Գեղարուեստական յայտագիրը նուիրուած էր մեծ բանաստեղծ Յովհ. Թումանեանի ծննդեան 130-ամեակին եւ բոլոր երգերն ու արտասանութիւնները անոր հեղինակութիւններն էին: Հանդէսը բացուեցաւ Հայաստանի պետական եւ դպրոցի մաղթերգներով:

Բացման խօսքը կատարեց վարժարանի ուսուցչուհիներէն՝ Տիկ. Սիլվա Գասապեան եւ ըսաւ, թէ դպրոցիս մէջ այս տարի Թումանեանական շաբաթ կայացաւ ծննդեան 130-ամեակին առթիւ եւ իր բանաստեղծութիւնները, հեքիաթներն ու կենսագրութիւնը լայնօրէն տրուեցան թէ հայերէնի դասընթացքներուն եւ թէ առաւօտեան հաւաքներու ժամանակ:

Դ. եւ Ե. նախակրթարանի աշակերտները արտասանեցին Թումանեանի կենսագրութիւնը: Տաթեւիկ Շապոյեան արտասանեց «Տերեւաթափ»ը, Ալիսա Տեփոյեան, Նանար Գալընեան մեներգեցին Զթչեանի «Կռունկները», Նարինէ Աւետանեան եւ Նայիրի Յակոբեան Մարօ պոէմէն՝ հատուածներ: Թալին Գալըչեան մեներգեց Ա. Մանուկեանի «Մտին Օրօրը»: Ժան Բերլոչեան եւ Արփինէ Շապոյեան արտասանեցին «Լուսաւորչի կանթեղը»: Նորա Էտուար եւ Շահան Թէրզիպաշեան՝ «Հայոց լեռներում»ը, Անի Օհաննէսեան՝ «Հայոց վիշտը», Թալին Յակոբեան մեներգեց Ռ. Մելիքեանի «Աշնան երգը»: Քառեակներ արտասանեցին Ալիս Յակոբեան, Սթիւ Սիմոնեան եւ Լորա Գասապեան:

Մօ. Դաւիթ Զալեան, իր տիկինը՝ Իրինա եւ Տիկ. Շուշանիկ Շապոյեան պատրաստած էին «Անուշ» օփերայէն հատուածներու երգը եւ արտասանութիւնը: Երգչախումբին անդամներէն Արփինէ Շապոյեան, Ալին Ասլանեան եւ Տովինար Աւետանեան արտասանեցին իսկ երգչախումբը՝ «Ամպի տակից» եւ «Համբարձում եայլա»: Երգչախումբը ներկայացուց նաեւ Մ. Միրզոյեանի «Մարդը» Կոմիտասի «Կագաւիկ»ը եւ Յ. Թումանեանի թէ խօսք եւ թէ երաժշտութիւնը՝ «Ախ ինչ լաւ է» անունով երգը:

Ապա խօսք առաւ տնօրէնուհի Տոքթ. Հերմինէ Վարժապետեան: Ան իր խօսքին մէջ չեշտեց, թէ՝ «Գոհութիւն Աստուծոյ, որ բարի տարի մը անցուցինք յաջողութեամբ եւ գոհացուցիչ արդիւնքներով: Այս տարի մեր դպրոցին հիմնադրութեան 75-ամեակն է: Առ այդ ծրագրած ենք յոբելինական ձեռնարկներով տօնել յառաջիկային: «Կարելի չէ հայը հայ պահել, եթէ երբեք ան գիտակցութիւնը չունենայ իր ինքնութեան. եւ ինքնութիւնը կարեւոր է հայ անունը պահելու համար: Մեր ազգային արժանիքները կը զարգանան միայն հայ լեզուին պահպանութեամբ», ըսաւ ան: Ազնիւ տնօրէնուհին յիշատակեց այն բացառիկ յաջողութիւնները, զոր արձանագրած է դպրոցը պետական քննութեանց մէջ: Ան շնորհաւորական գիր եւ մետալ յանձնեց արաբերէնի, անգլերէնի, ֆրանսերէնի եւ գիտութեան երկրորդական բաժնի ուսուցիչ - ուսուցչուհիներուն, որոնց շնորհիւ դպրոցը ձեռք բերած է փայլուն յաջողութիւն: Իր համապարփակ «Հուսկ բանք»ին մէջ, յարգելի տնօրէնուհին անդրադարձաւ Երեւանի քաղաքապետարանի կրթութեան վարչութեան կազմակերպած համազգային շարադրութեան մրցանքին մասին, որուն իրենց մասնակցութիւնը բերած են վարժարանէն 35 երկսեռ աշակերտներ: Այս առիթով ան կարդաց վարչութեան պետ Ս. Խրիմեանի ոգեւորիչ շնորհակալագիրը (տես՝ նոյն սիւնակի ներքեւ):

Հանդիսութեան աւարտին Գերշ. Տ. Զաւէն Արքեպիսկոպոս իր փակման խօսքին մէջ անդրադարձաւ հայ դպրոցի դերին շուրջ եւ եզրափակելով իր խօսքը, շրջանաւարտ աշակերտներուն տուաւ իր յորդորները:

Ապա ներկաները հրաւիրուեցան Յ. Թումանեանի համար պատրաստուած անկիւնը, ուր ցուցադրուած էին բանաստեղծին գիրքերը, նկարները եւ այլ գրութիւններ, հետաքրքրութիւն ստեղծելով ներկաներուն մօտ:

Մեկնումի պահուն, առիթը ունեցանք տեսնելու աշակերտութեան գծագրութիւններով պատրաստուած 2000 տարւոյ պատի օրացոյցները, որ գնահատելի աշխատանք մըն էր անկասկած:

Մեր շնորհաւորութիւնները կը յայտնենք վարժարանի տնօրէնութեան եւ բոլոր անոնց որոնք սատար հանդիսացան սոյն հանդէսի յաջողութեան:

Յ.

### ՇՆՈՐՀԱԿԱԼԱԳԻՐ

Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը պատիւ ունի եգիպտահայ մամուլի միջոցով Գահիրէի եւ Աղեքսանդրիայի հայկական վարժարանների ուսուցիչներին փոխանցելու Երեւանի քաղաքապետարանի կրթութեան վարչութեան շնորհակալութիւնը **«Երեւանն իմ քաղաքն է»** շարադրութեան համազգային մրցոյթին մասնակցելու համար:

*«Խորին երախտագիտութիւն այն մանկավարժներին, ովքեր հայրենի երկրից հեռու, անձնուէր ու ինքնամոռաց, կատարում են ուսուցչի սուրբ գործը, վառ պահում հայրենասիրութեան կրակը, պաշտպանում ու խնամում մայրենի լեզուն, պատմութեանը, մշակոյթը:*

*Շարադրութիւնները կարօտի ու հայրենաբաղձութեան արտայայտութիւն են՝ շաղախուած սիրով, ջերմութեամբ եւ անկասելի մղմամբ դէպի հայրենի բնօրրանը:*

*Մաղթում եմ բոլորին առողջութիւն եւ յաջողութիւն իրենց հայրենանուէր աշխատանքում»:*

**Ս. ԽՐԻՄԵԱՆ**
ԵՐԵՒԱՆԻ ՔԱՂԱՔԱՊԵՏԱՐԱՆԻ
ԿՐԹՈՒԹԵԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՊԵՏ

ԾՆՆԴԵԱՆ 130 ԱՄԵԱԿ

## ԹՈՒՄԱՆԵԱՆԱԿԱՆ ՇԱԲԱԹ ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՄԷՋ

*Մեծ բանաստեղծի ծննդեան 130 ամեակին առթիւ, վարժարանի տնօրէնութիւնը գեղեցիկ գաղափարը ունեցած էր կազմակերպել «Թումանեանական Շաբաթ» մը, 15-18 Նոյեմբեր 1999-ին, որպէս յարգանքի տուրք Հայ ականաւոր գործիչի յիշատակին: Արդարեւ Համայնքի միակ կառոյցն էր, որ կը նշէր Յ. Թումանեանի 130 ամեակը Եգիպտոսի մէջ:*

*Յովհաննէս Թումանեանի կեանքն ու ստեղծագործութիւնը ծանօթացնելու համար աշակերտութեան, կազմուած էր գործադիր յանձնախումբ մը, որոնց կողմէ մշակուած էր համառօտ գրութիւններ նախակրթարանի եւ բարձր դասարաններու համար եւ որ բաժնուեցաւ աշակերտներուն: Անոնց տրուեցան հեքիաթներու, աւանդավէպերու, առասպելներու եւ պատմուածքներու գրքոյկներ: Ցուցադրուեցան տեսաերիզներ Թումանեանի հեքիաթներու եւ «Անուշ» օփերայէն: Մօ. Դաւիթ Զալեան աշակերտներուն, սորվեցուց, «Անուշ» օփերայէն հատուածներ եւ ուրիշ երգեր:*

*Երեքշաբթի 16 Նոյեմբերի առաւօտեան, աշակերտները հաւաքուեցան «Պըլըքտանեան» հանդիսասրահ, ներկայ ըլլալու Յ. Թումանեանի գործերու ներկայացման աշակերտութեան կողմէ: Ներկայ էին նաեւ կարգ մը ծնողներ եւ վարժարանի հոգաբարձութեան անդամներ:*

*Հանդէսին բացումը կատարեց Տիկ. Շուշանիկ Շապոյեան որ ներկայացուց Թումանեանը իբրեւ բացառիկ դէմք հայ գրականութեան մէջ եւ հետզհետէ իւրաքանչիւր դասարան հանդէս եկաւ արտասանութեամբ եւ ընթերցումով: Անոնք արտասանեցին բաւական լաւ առոգանութեամբ, եւ մանաւանդ լաւ հասկացողութեամբ: Անանկնալ մըն էր Պր. Աւետիս Մովսէսեանի ելոյթը, որ արտասանեց Յ. Թումանեանի «Կտակը», յաջող դիմախաղերով:*

*Յետոյ ներկաները եւ աշակերտութիւնը հրաւիրուեցան ճաշարանի սրահին մէջ պատրաստուած Թումանեանի անկիւնը, ուր ցուցադրուած էին բանաստեղծին գիրքերը, նկարները, պատի թերթերը, պատրաստուած Տիկ. Շ. Շապոյեանի կողմէ, օգնութեամբ Պր. Յակոբ Համբիկեանի եւ Տիկիններ՝ Սիլվա Գասապեանի ու Հռիփսիմէ Գումրույեանի:*

*Պէտք է ըսենք թէ այսպիսի միջոցառումներ օգտակար են նախ ընթերցանութեան ապա հայ մշակոյթի ծանօթացման:*

*Շնորհակալ աշխատանք մը իսկապէս, որուն համար գնահատութեան խօսք ունինք բոլոր անոնց, որոնք սատար հանդիսացան սոյն ձեռնարկի յաջողութեան. յատկապէս դպրոցի տնօրէնութեան եւ անոր մրաջան տնօրէնուհի Տիկ. Հերմինէ Վարժապետեանին:*

ԱՊԱՀՈՒՆԻ



## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը տեղեկացնում է, որ ՀՀ Կրթութեան եւ գիտութեան նախարարութիւնը նախատեսում է կազմակերպել սփիւռքահայ ուսուցիչների վերապատրաստման մեկամսեայ դասընթացներ առանձին-առանձին նախակրթարանների, միջին կարգի դասարանների եւ աւագ դպրոցի ուսուցիչների համար:*

*Դասընթացները վարուելու են արեւմտահայերէնով, Հայաստանի եւ Սփիւռքի լաւագոյն մասնագէտների ներգրաւմամբ:*

*Սփիւռքի կազմակերպութիւնները եւ կրթօճախները կարող են իրենց յայտերը՝ ուսուցիչների քանակի եւ նախընտրելի ժամկէտների նշումով ներկայացնել ՀՀ Կրթութեան եւ Գիտութեան նախարարութիւն Գահիրէում ՀՀ դեսպանութեան միջոցով:*

*Հրաւիրուող ուսուցիչների կեցութեան պայմանները, դասընթացների ուսումնական ծրագրերը եւ դասատախտակը կը ներկայացուեն համապատասխան յայտերի առկայութեան դէպքում:*

ԳԱՀԻՐԷՈՒՄ ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ

## Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀԻՆ ՀԵՏ

1 ☞ *կան Կուսակցութեան, Աշխատաւորական Կոմունիստական Կուսակցութեան եւ Հայաստանի Կոմունիստներու Միութեան շարքին, կը յիշուի նաեւ Հայաստանի Սոցիալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան անունը (ղեկավար՝ Էռնեստ Սողոմոնեան):*

*Այս կապակցութեամբ ՍԴՀԿ Հայաստանի կենտրոնական վարչութիւնը կը յայտնէ թէ, 112-ամեայ կուսակցութիւնը բացարձակապէս ոչ մէկ կապ ունի «Արդարութիւն» դաշինքի հետ եւ բանակցութիւններ չէ վարած դաշինքի մաս կազմող կուսակցութիւններուն հետ:*

# Յովհաննէս Թումանեան

ԳՐԵՑ՝ ԱՒԵՏԻՔ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Գէորգեան Ճեմարանում աշակերտ եղած ժամանակ 1892 թուին, մի բարեկամ ուղարկել էր ինձ Թումանեանի բանաստեղծութիւնների առաջին հատորից մի քանի օրինակ, որպէսզի սպառէի ընկերներիս շրջանում:


Յովհ. Թումանեան

Նոյն թուի աշնանը, երբ Թիֆլիս էի գնացել, ներկայացայ իրեն: Նա պաշտօն ունէր Կովկասի Հայոց Հրատարակչական Ընկերութեան գրասենեակում: Նա քաղցրութեամբ ընդունեց ինձ եւ հարցրեց թէ ի՞նչ տպաւորութիւն էր գործել գիրքը:

- Մենք շատ սիրեցինք ձեր բանաստեղծութեան ժողովրդային ոճը, - պատասխանեցի ես եւ արտասանեցի, իբրեւ ապացոյց որ սիրում ենք, մի երկու ոտանաւոր ժողովրդային ոճով գրուած ոտանաւորներից:

Թումանեանն ուրախ ժպտաց եւ իսկոյն նուիրեց ինձ իր բանաստեղծութիւնների երկրորդ հատորը, որ նոր էր լոյս տեսել:

Թումանեանի վարմունքը պարզ էր եւ ընկերական: Նրա դէմքը ողողուած էր կարծես մի ներքին լոյսով: Փարթամ էին մազերը, աչքերը խոր ու խոհուն: Ժպիտը միշտ ներկայ էր դէմքի վրայ: Հազիւ քսան եւ չորս տարեկան էր, ուրախ, զուարթ, երիտասարդ:

1895 թուի ձմեռը, Յովհաննէսը երեւաց Ալեքսանդրապոլում: Իջել էր հիւրանոց, բայց ես նրան բերեցի եւ տեղաւորեցի մեր տանը: Մի շաբաթ մնաց մեզ մօտ, գալիս էր Թիֆլիսից Ախալցխայի եւ Ախալքալաքի վրայով եւ գնում էր Երեւան, Էջմիածին: Ինչ-որ կարեւոր առաքելութեամբ էր շրջում նա: Հայ կեանքը ալեկոծուել էր արեւմտահայերի ջարդերի սարսափելի լուրերով եւ ջարդերից մազապուրծ փախած հայ գաղթականների սրտակեղեք պատումիւններով: Յուզուած էր ողջ կովկասահայութիւնը: Անշուշտ, Յովհաննէսի ուղեւորութիւնը կապուած պիտի լինէր կոտորածների եւ գաղթականութեան հետ, որովհետեւ նա անվերջ տեսակցութիւնների մէջ էր քաղաքի մտաւորականութեան եւ հասարակութեան ներկայացուցիչների հետ, հետաքրքրւում էր գաղթականների վիճակով եւ տետրակներ էր լցնում նրանց պատմածներով:

Ձմեռուայ ցրտերին, Յովհաննէսին ճանապարհ դրինք դէպի Երեւան:

1901 թուականի աշնանը Յովհաննէսը եկաւ Ալեքսանդրապոլ: Երբ իրար ողջագուրուեցինք, Յովհաննէսն ասաց.

- Անիում դեռ չեմ եղել, շատ եմ ուզում տեսնել, անպայման գլուխ բեր էդ բանը, շատ եմ խնդրում:

Մի երկու օր անց ճանապարհ ընկանք դէպի Անի: Կանգ առանք ճանապարհին մեր տանը Ղազարապատ գիւղում հանգստանալու եւ մօրս տեսնելու:

Յովհաննէսը մեր ջրաղացի վարպետին եւ գիւղացիներին, որոնք հեքիաթներ եւ ժողովրդական երգեր ասացողներ էին, հարցնում էր «Հազարան Պլպուլ»-ի մասին, ժամերով զրոյց էր անում նրանց հետ եւ լսածները գրի էր առնում տետրակի մէջ: Երկու գիշեր միայն կարողացանք մնալ մեր տանը, Յովհաննէսը անհամբեր էր, ուզում էր շուտով տեսնել Անին:

Մեր գիւղից Անին հազիւ քսանհինգ քիլոմեթր լինէր:

Այցելեցինք Հոռոմոսի նշանաւոր վանքը, որի նախագաւիթը սքանչելի է: Լուսանկարուեցինք Աշոտ Ողորմածի դամբարանի աջ ու ձախ կողմերում կանգնած:

Մօտենում ենք Անիի հոյակապ պարիսպներին եւ բուրգերին. Յովհաննէսը յուզուած է, ոչինչ չի ասում, միայն արագացնում է քայլերը հայեացքը շարունակ պարիսպներին: Վերջապէս քաղաքի աւազ դրան առջեւ ենք: Յովհաննէսը կանգնեց եւ ուղղակի բեւեռուեց իր տեղում: Երկար, լռելեայն նայեց եւ գլուխը օրօրելով դարձաւ դէպի մեզ: Արդէն մութ էր, երբ հասանք վանահայր վարդապետի բնակարանը, որն այցելուների հիւրանոցն էր միաժամանակ: Մի սարսափելի ճիչի հետ պայթեց հրացանը, որի գնդակն ուղղակի մեր երկուսիս առջեւով անցաւ: Եթէ մի քայլ առաջ լինէինք, ո՛վ գիտէ ի՜նչ պիտի լինէր մեր վիճակը:

Պարզուեց որ վանահայրը բացակայ է, եւ ծառան վախենալով թէ եկողները աւազակներ են, դիմել է անտեղի ինքնապաշտպանութեան:

- Տօ, - ասաց Յովհաննէսը ծառային, *պերպանքա* հրացանը տեսնելով, - մի փամփուշտով երկու բանաստե՞ղծ պիտի սպանէիր:

- Լա՜ւ պրծաք, ըսել է՝ ձեր օրհասը չէր եկել.- պատասխանեց ծառան ամենայն անտարբերութեամբ:

Վաղ առաւօտից սկսեցինք թափառել պանծալի աւերակների մէջ: Յովհաննէսը հիացմունքով եւ ուշով դիտում էր ամէն մի բեկոր: Լուռ, մտասոյզ թափառում էր անցեալի հետ ներքին խօսակցութեամբ տարուած: Կանգնում էր հրաշակերտ շէնքերի առաջ, հայեացքը լարած նայում էր սիւներին, կամարներին, քանդակներին, ապա աչքերը գոցում եւ ականջները լարում, կարծես մի հրաշալի երաժշտութիւն էր լսում ո՛չ սովորական, ո՛չ այս աշխարհից:

Անին իր վեհասքանչ ճարտարապետութեամբ խոր տպաւորութիւն թողեց Յովհաննէսի վրայ:

Երբ մեկնում էինք Անիից, Յովհաննէսը վերջին անգամ նայեց Անիին եւ ասաց.

- Մի՞թէ այս գեղեցկութիւնը պիտի մեռնի առանց հետք թողնելու հայկական եւ համաշխարհային ճարտարապետութեան վրայ: Այսօր զարգացման ի՜նչ աստիճանի հասած կը լինէր մեր արուեստը, եթէ բարբարոս ցեղերը չքայքայէին մեր երկիրը:

1903-1905 թուականները ծանր տարիներ էին հայութեան համար: Փակուեցին Կովկասի հայկական դպրոցները, մշակութային հիմնարկները, թերթերը: Ցարական կառավարութիւնը Կովկասի հարեւան ժողովուրդներին գրգռեց իրար դէմ: Թափուեց ժողովուրդների արիւնը:

Ահա այդ օրերին էր որ Լոռիում, ձի հեծած, խաղաղութեան սպիտակ դրօշը բարձր պահած Յովհաննէսը անցնում էր գիւղից գիւղ եւ հաշտութեան դաշն կնքում, որի շնորհիւ Լոռիում կոտորածներ չեն լինում:

1906 թուին, ամառը գնացի Դսեղ գիւղը Թումանեանի մօտ հիւր: Ապրում էին պապենական հին տան մէջ: Մեծ ընտանիքը կառավարում էր Յովհաննէսի մայրը՝ Նանին, շերեփը ձեռքը իբրեւ իշխանութեան գաւազան, հրամայում էր մեծին ու փոքրին: Առաւօտից մինչեւ ուշ երեկոյ ծուխ էր բարձրանում երդիքից, ամբողջ օրը թոնիրների ու օճախների մէջ կրակ կար, նրանց վրայ դրուած էին կերակրի կաթսաները:

Լոռիում եմ, Յովհաննէսի հետ, նրա յարկի տակ: ի՜նչ կար աւելի քաղցր, քան այդ ժամերը: Շրջում ենք Դսեղ Գիւղում, նրա շրջակայքը: Հին, հնադարեան գիւղ է Դսեղը, ամէն կողմ անցեալի բեկորներ կան: Գնում ենք գերեզմանատուն: այցելում ենք Յովհաննէսի հօր շիրիմին: Արցունքոտւում են Յովհաննէսի աչքերը: Ութ տարի է անցել հօր մահից, բայց վիշտը չի անցել:

- Ինչ որ կայ իմ մէջ լաւ բան, հօրիցս է,- ասում է Յովհաննէսը:

Գնում ենք տեսնելու Դսեղի լիճը, որ տեղացիները «ծով» են կոչում: Բարձրանում ենք մի զառիվեր, որտեղից սկսւում են գիւղի չքնաղ անտառները: Ամէն կողմից դէպի երկինք են խոյանում լեռնազագաթները, լանջերը անտառապատ, բարձր ժայռերի վրայ՝ հսկայ ծառեր, աւելի բարձրում՝ արծուի բները: Ձորակներից ծուխ է բարձրանում: Սարերի լանջերին հովիւների պինաներն են, ուր ապրում են աժդահա Սաքոները: Ահա Չաթինտաղը, որի գլխին միշտ մթին ամպեր են, որոտ ու կայծակ: Ահա Քոշաքարա սարը, որի թաւուտները լիքն են եղնիկներով, եւ որոնց ետեւից մանուկ Յովհաննէսը վազել է օրն ի բուն: Գիւղի շուրջը բազկատարած շառաչում են «կանաչ, վիթխարի ընկուզենիները», եւ արդեօք որի՞ տակ Յովհաննէսն օրհնութիւն ստացաւ գիւղի մեծերից:

Չիեր նստած թափառում ենք Լոռուայ ձորերում եւ գիւղերում:

Լոռին հեքիաթի ու առասպելի դիւցազնական մի աշխարհ է, որի ամէն մի անկիւնը մի աւանդավէպ ունի, ամէն մի քարը՝ մի հերոսական անցեալ:

Ահեղագոչ Դեբեդ գետի հին կամուրջի վրայ ահա նստած է մի գուսան մի աշուղ եւ պատմում է դեւերի ու մարդկանց միջեւ եղած հին կռիւների, ժողովրդի ծոցից դուրս եկած կտրիճների մասին, որոնք ըմբոստացել են բռնակալների եւ կեղեքիչների դէմ:

Նահապետական Լոռին իր շքեղ բնութեամբ, իր աւանդութիւններով եւ սովորութիւններով, իր ցաւերով ու իր պայքարով եղաւ Յովհաննէսի ներշնչումների աղբիւրը: Յովհաննէսի լեզուն, ոճը, պայծառ ոգին՝ այս չքնաղ երկրից է գալիս: Յովհաննէսը սիրում էր Լոռին իր ամբողջ հոգով, իր սրտի ամբողջ կրակով: Այդ նրա երեւակայութիւնը, գեղեցկացրեց նրա ստեղծագործութիւնը: Յովհաննէսը Լոռու մարմնից մարմին էր, հոգուց հոգի: Ո՛չ մի ձեռք չպէտք է դիպչէր նրան: Ո՛չ մի օտար շունչ, ոչինչ չպէտք աղարտէր նրա նուիրական գեղեցկութիւնը:

Յովհաննէսի մշտական երազն էր՝ Դսեղում կամ մի աւելի նկարչագեղ վայրում շինել մի առանձնատուն, գրադարանը տեղափոխել այնտեղ եւ այնտեղ պարապել ու աւարտել իր չքնաղ երկերը:

Չիրականացաւ բանաստեղծի այդ իղձը:

1908 թուին ես ու Յովհաննէսը ձերբակալուեցինք ու նետուեցինք Թիֆլիսի Մետեխի բանտը: Մեր խցիկները մօտիկ էին իրար: Փետրուար ամսին լրացաւ Յովհաննէսի քառասունամեակը: Այդ առթիւ նա գրեց իր «Վայրէջք» գեղեցիկ բանաստեղծութիւնը: Բանտում տխրութեան եւ ուրախութեան խառն զգացմունքներով տօնեցինք Յովհաննէսի տարեդարձը:

1911-ին ես հարկադրուած պէտք է հեռանայի Հայրենիքից: Թիֆլիսից դուրս եկայ Յունիսի վերջին: Աննկարագրելի էին հրաժեշտի ծանր վայրկեանները: Արդէն ուշ գիշեր էր: Յովհաննէսի հետ վերջին անգամ գրկախառնուեցինք: Երկուսով էլ լուռ էինք: Ոչ մի բառ:

Այդ եղաւ մեր վերջին տեսակցութիւնը:

